ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ



ԲԱԶՄԱՀԱՏՈՐՅԱԿԻ ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

*Աղայան Ծ. Պ., Առաքելյան Բ. Ն., Գալոյան Գ. Ա.,*
*Երեմյան Ս. Տ., Խաչիկյան Լ. Ս., Հակոբյան Ա. Մ.,*
*Հովհաննիսյան Ա. Գ., Ներսիսյան Մ. Գ.*

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ · 1974

# ՀԱՏՈՐ V

# ՀԱՅԱՍՏԱՆԸ 1801-1870 ԹՎԱԿԱՆՆԵՐԻՆ

ՀԱՏՈՐԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

*Աղայան Ծ. Պ. (պատասխանատու խմբագիր),*
*Ավետիսյան Վ. Ա., Գրիգորյան Զ. Տ., Դիլոյան Վ. Ա.,*
*Ղազարյան Հ. Մ. (պատ. խմբագրի տեղակալ), Ներսիսյան Մ. Գ.*

## ԲԱԺԻՆ Դ

## ՀԱՅԱՍՏԱՆԸ 1830—1860-ԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԻՆ



## ԲԱԺԻՆ Դ

## ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԸ

## ԲԱԺԻՆ Ե

## ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՂԹԱՎԱՅՐԵՐԸ

Գլուխ տասնմեկերորդ.— Հայկական գաղթավայրերը 1800—1870 թթ.



## ԲԱԺԻՆ Զ

## ՄՇԱԿՈՒՅԹԸ (1801—1870)

Գլուխ տասներկուերորդ.— Լուսավորություն, գիտություն, մամուլ (Գ. Խ. Ստեփանյան)



Գլուխ տասներեքերորդ.— Գրականություն և արվեստ





ԳԼՈՒԽ ԻՆՆԵՐՈՐԴ

# ԱԶԳԱՅԻՆ-ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԸ 1850—1860-ԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԻՆ

## 1. ԶԵՅԹՈՒՆՑԻՆԵՐԻ ԻՆՔՆԱՊԱՇՏՊԱՆԱԿԱՆ ԿՌԻՎՆԵՐԸ 1830—50-ԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԻՆ

Արևմտյան Հայաստանում և հատկապես Հայկական Կիլիկիայի լեռնագավառներում 1830—50-ական թթ. բռնկվեցին սուլթանական կառավարության դեմ ուղղված մի շարք ապստամբություններ. տեղի ունեցան զինված ելույթներ, ինքնապաշտպանական կռիվներ։ Մարտերի կենտրոնը մնում էր Լեռնային Կիլիկիայի Զեյթուն գավառը։

Մարաշի փաշայության մեջ մտնող ըմբոստ, քաջակորով ու ազատատենչ լեռնականներով բնակեցված Զեյթունը շարունակում էր պահպանել իր կիսանկախ դրությունը։ Ամուր պաշտպանական վայրեր, հարմարավետ աշխարհագրական դիրք ունեցող Ուլնիայի բնակիչների թիվը հասնում էր 35—40 հազարի։ Այստեղ մշակում էին Պիրիդի երկաթի, կապարարծաթի հանքերը, արտադրում երկաթ, վառոդ, պատրաստում զենք ու զինամթերք, այն օգտագործելով արշավող զորաբանակներին դիմագրավելու, լեռնահամայնքի իրավունքները պաշտպանելու նպատակներին։

XIX դարի երկրորդ քառորդին սուլթանական կառավարությունը ուժեղացնում է Զեյթունի կիսանկախության վերացման իր վաղեմի քաղաքականությունը։ Եգիպտական արշավանքով, Հունաստանում, Սիրիայում ծավալված ազատագրական պայքարի ճնշումով զբաղված Մահմուդ II-ը սկզբում օգտագործում էր կուսակալ փաշաներին, նրանց կռվեցնում Զեյթունի հետ, փոխադարձաբար թուլացնում երկուսի ուժերը, հիմնական հարվածը վերապահելով ապագային։ 1829 թ. Կեսարիայի նահանգապետ Քեոսե փաշան հանձնարարություն է ստանում նվաճել Զեյթունը։ Թուրքական բանակը Կոկիսոնի մոտ հանդիպում է փոքրաքանակ զեյթունցիների համառ դիմադրությանը։ Յաղուպյան Աստվածատուրի գնդակով սպանվում է դրոշակակիր Ջելլադը, փաշայի զորքը խուճապահար նահանջում է, իսկ Զեյթունը շարունակում է մնալ կիսանկախ։

1832 թ. Մարաշի Սուլեյման փաշան շարժվեց դեպի Զեյթուն և բանակ

դրեց Ջերմուկի դաշտում[1]։ Թուրք փաշան նպատակ ուներ գրավել բերդաքաղաքը և հիմնովին կործանել այն։

Օտար բանակի թվաշատությունից երբեք չընկճվող զեյթունցիները անմիջապես մոռանում են բոլոր հակասությունները, միավորվում և գիշերը հանկարծակի հարձակման անցնելով, չորս կողմից շրջապատում են Սուլեյման փաշայի զորամիավորումները, մի մասը ջարդում, մյուսի մեջ խուճապ առաջ բերում և ստիպում փախուստի դիմել։ Սուլեյման փաշան մարտադաշտում 309 դիակ թողնելով «շունչը Մարաշ կառնե և քովը եկողներուն կըսե թե... այդ կյավուրներուն հետ թշնամությունը անօգուտ է, պետք է բարեկամությամբ վարվիլ»[2]։



Զեյթուն քաղաքի ընդհանուր տեսքը

Զեյթունի հերթական հաղթանակին օգնեցին նաև արտաքին հանգամանքները։ Այդ ժամանակ Եգիպտոսի Իբրահիմ փաշան գրավել էր թուրքական բազմաթիվ նահանգներ, տիրել Կիլիկիայի դաշտային վայրերին և շարժվում էր դեպի մայրաքաղաք։ Նման իրադրության մեջ սուլթանական կառավարությունը ոչ միայն չէր կարող մտածել Զեյթունը սրով նվաճելու մասին, այլև խորամանկ, ուժեղ հակառակորդի առաջխաղացման վտանգի դեմ հանդիման՝ ստիպված էր «փոքրերի» նկատմամբ մեղմանալ։ Այդ շրջանում սուլթանին ատելի քրդական իշխանապետերը անկախության ֆերմաններ էին ստանում, պետությունը հաստատում էր նրանց իրավունքները, միայն

1 Հ. Մ. Պողոսյան, նշվ. աշխ., էջ 136։
2 Գր. Գալուստյան, Մարաշ կամ Գերմանիկ և հերոս Զեյթուն, էջ 130։

թե բանակ տրամադրեին կառավարությանը, ճանաչեին նրա գերիշխանությունը։

Օգտագործելով սուլթան Մահմուդի այդ քաղաքականությունը՝ զեյթունցիները որոշում են մարտերում փառաբանված հերոս Դելի-քեշիշ մականունը ունեցող Տեր Օհան քահանայի գլխավորությամբ պատվիրակություն ուղարկել մայրաքաղաք[3], որը խնդիր պիտի ունենար վերահաստատել տալու Մուրադ IV-ի շնորհած հրովարտակը և, հարկաչափը կայունացնելով, ազատվել Մարաշի փաշաների ապօրինություններից։ 1833 թ. Տեր Օհանը հասնում է Կ. Պոլիս, ներկայանում Մահմուդ II-ին և վերահաստատել տալիս Զեյթունի՝ ֆերմանը վակֆի իրավունքը։ Հարկաչափը մնում էր նախկին տասնհինգ հազար դահեկանը։ Տեր Օհանի հաջողությունն արդյունք էր և այն բանի, որ Մահմուդ II-ը այդ օրերին շահագրգռված էր զեյթունցիներին սիրաշահելու և իր կողմը գրավելու։ Այստեղ, փաստորեն, Զեյթունի խնդրանքը համընկնում էր սուլթանի ցանկությանը, ուստի և վերահաստատվում էին գավառի նախկին իրավունքները։

1833 թ. Եգիպտոսի Իբրահիմ փաշան, ձևականորեն ընդունելով Թուրքիայի գերիշխանությունը, իրեն ենթարկեց Սիրիան, Պաղեստինը և Կիլիկիան, որոնք շարունակեցին մնալ եգիպտական գերագահության տակ մինչև 1840 թ. Լոնդոնի պայմանագիրը[4]։ Մինչ այդ Իբրահիմ փաշայի բազմաթիվ փորձերը Զեյթունի հպատակեցման համար դրական արդյունքի չհասան։

Եգիպտացիների արշավանքները Զեյթունի վրա շարունակվեցին նաև հաջորդ տարիներին։ «Մասյաց աղավնի» պարբերականի վկայությամբ «զեյթունցիք Խոզան օղլուի ցեղին հետ դաշնակցելով քաջությամբ դեմ կեցան եգիպտացվոց բանակին, չորս տարի հուսահատաբար կռվեցան Իբրահիմ փաշայի հետ, և վերջապես ստիպեցին, որ ետ կենա յուր անպտուղ աշխատանքեն, ու մեկդի քաշվի»[5]։ 1840 թ. եգիպտացիները թողեցին Կիլիկիան, և Զեյթունը ազատվեց Իբրահիմ փաշայի հարձակումների վտանգից։

1841 թ. 500 հեծյալներով Խասեք անունով մի թուրք զինվորական մըտավ Զեյթուն իբրև հյուր, ապա երեք օր պայմանաժամանակ դնելով, պահանջեց հարկագումարը։ Նրա զինվորներին իշխանները կալանավորեցին և հասկացրին, որ թուրք հարկահավաքը հանկարծ փողոց դուրս չգա, «վասնզի, ըսին, մեր երիտասարդները, այստեղ թուրք տեսած չըլլալուն համար՝ ծանր պիտի թվի իրենց քո ներկայությունդ և առաջին անգամ հանդիպողը պիտի սպաննե քեզ»[6]։ Զորապետը ստիպված էր խնդրելու, որ իրեն զորքի հետ միասին բաց թողնեն։ Իշխանները պատասխանեցին, թե իրենք թուրք զինվորներին արդեն վռնդել են գավառից և պահանջեցին ուղեկիցներից յուրաքանչյուրին 10-ական ոսկի վճարել, այլապես կկողոպտեն բոլորին և մերկամարմին

---

3 Տե՛ս Հարություն Ս. Նաշալյան, Զեյթունի քաջամարտիկ Տեր-Օհանի քաջագործությանց դրվագներեն, Պեյրութ, 1958, էջ 49—50։

4 Տե՛ս Հ. Պողոսյան, նշվ. աշխ., էջ 142—143։

5 «Մասյաց աղավնի», 1864, հուլիս, էջ 187։

6 «Զեյթունի պատմագիրք», հրատարակություն Զեյթունի հայրենակցական միության, Պուենոս-Այրես, 1960, էջ 189—190։

կարտաքսեն գավառից։ Կողոպտելու եկած խասեքը հարկադրված ընդունեց բոլոր պահանջները և ամոթահար վերադարձավ Մարաշ։

1842 թ. Յուսուֆ փաշայի զորաբանակը շրջապատեց հարևան Թեճերլանցի Թուրքմեն ցեղերին։ Նրանց դրությունը անհուսալի էր, փրկության ելք չկար. Թուրքերը որոշել էին բոլորին սրի քաշել։ Այդպես էլ կլիներ, եթե օգնության չհասնեին զեյթունցիները։ Լեռնագավառի հայերի ու Թեճերլանցիների մեջ վեճերը, զինաբախումներն անընդմեջ էին, սակայն այժմ տեսնելով հարևանների վիճակը, զեյթունցիները օգնության հասան նրանց։ Զեյթունի երեք իշխանները և 500 քաջերի գլուխն անցած Տեր-Օհան Դելի քեշիշը Ղանտըրի տակ ճակատամարտ տվեցին։ Թուրքական բանակը նահանջեց Կոկիսոն։ Հայերը հաղթանակ տարան և Թեճերլանցիները շնորհակալությամբ, առատ նվերներ տալով զեյթունցիներին, խոստացան մշտնջենապես բարեկամ մնալ նրանց։

1847 թ. Զեյթունի վրա է արշավում Թոփալ Սատո անունով զորապետը և բանակը մոտեցնում բերդաքաղաքին։

Կես գիշերին, եկեղեցու զանգերով տրված ազդանշանով, սկսվում է զեյթունցիների հարձակումը։ Զարդն ահավոր էր[7]։ Ամենուր թշնամին գթություն էր աղերսում։ Սպանվում է Թոփալ Սատո զորապետը, իսկ զեյթունցիք, սակավաթիվ զոհեր տալով, հաղթանակ են տանում։

Կոտորածի լուրը հասնում է մայրաքաղաք։ Սուլթանն ու իր պալատականները մեկ անգամ ևս համոզվելով, որ Զեյթունն անընկճելի է, որոշ ժամանակ դադարեցնում են արշավանքները, իսկ 1850 թ. որոշում են սիրաշահել իշխաններին և այդ միջոցով լեռնաշխարհը ենթարկել իրենց։ 1851 թ. Զեյթունի չորս իշխանները՝ իշխանապետ Մահտեսի Հովհաննես Շովրոյանը, Մարտիրոս Սուրենյանը, Աստվածատուր Յաղուբյանը, Աստվածատուր Ենիտունյանը հրավիրվեցին Կ. Պոլիս՝ բանակցությունների[8]։

Փոխադարձ զիջումներով պայմանագիր կնքվեց Թուրքական կառավարության և Զեյթունի միջև։

Պայմանադրության համաձայն, զեյթունցիները պարտավորվում էին ամեն տարի կանոնավորապես Աբդուլ Մեջիդին վճարել 60 քիսե հարկ, սակայն միաժամանակ պաշտպանել իրենց կիսանկախ վիճակը։ Սուլթանը հաջորդ տարում փոխեց իր քաղաքականությունը Զեյթունի հանդեպ։ Ավելացվեցին հարկերը։ 1852 թ. զեյթունցիները աղերսագրեր են առաքում Կ. Պոլսի պատրիարքին, հայոց կաթողիկոսին, որտեղ հիշատակվում է. «բայց արքա թագավորի վերկին վաթսուն քիսե ըստակ է կտրվածը և կանոնադրբեն և հաստատությամբ և անշարժությամբ և անհնար և առանց խաղխտությամբ և ի նոցանե արքայեն եկեալ սպասավորքն Ուլնեյու այսինքն Զեյթունեն նյուքյուսին համարն չափ խնդրելով կամին զոռով չափեն դուրս ավելի վերկի առնեն, իսկ սակս ամենայն ժողովուրդ խեղճ և անկարող են ավելի տալոյ ոչ կարեն. խեղճությունը մեր դուք հոգացեք...»[9]։

---

7 Տե՛ս Գր. Գալուստյան, Մարաշ կամ Գերմանիկ և հերոս Զեյթուն, էջ 132։

8 Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 158, վավ. 39, 1851, մայիսի 20։

9 Նույն տեղում, թղթ. 163, վավ. 31։

*Ակնհայտ է, որ Թուրքական կառավարությունը այս անգամ խորամանկությամբ էր գործել։*

*Ղրիմի պատերազմում «դաշնակիցների» տարած հաղթանակից հետո սուլթանական կառավարությունը, ամրապնդված համարելով իր դիրքերը, ձգտում էր ամեն գնով ոչնչացնել տակավին հարատևող փոքրաթիվ կիսանկախ համայնքների իրավունքները, դիմադրության դեպքում՝ նաև ողջ ազգաբնակչությանը։ Սուլթաններին ամենից շատ մտահոգում էր Զեյթունի հըպատակեցումը։ Այդ ուղղությամբ արված քայլերը ավելի վճռական էին դառնում. մտահղացվում էին նորանոր ծրագրեր։*

*1850-ական թթ. երկրորդ կեսին Օսմանյան կայսրությունը հաճությամբ ընդունում էր Հյուսիսային Կովկասից գաղթած չերքեզներին, նրանց բընակեցնում Մարաշի կուսակալության լեռնագավառներում, տալիս հողային կալվածքներ ու արտոնություններ, սիրաշահում վերջիններիս՝ օգտագործում զեյթունցիների դեմ։ Կառավարության հրահանգով չերքեզները 1858 թ. ներխուժեցին Զեյթունի սահմանները՝ ավերածություն ու մահ սփռելով հայկական գյուղերում։ Բերդաքաղաքից դուրս եկած հայ քաջամարտիկները չերքեզներին դիմագրավեցին Քոշ-դաղ լեռան ստորոտում։ Չդիմանալով զեյթունցիների գրոհին, չերքեզները խուճապահար փախուստի դիմեցին։*

*Բ. Դուռը դիմեց նոր քայլի։ Սուլթանը Մարաշի կուսակալին հանձնարարում է խստացնել ճնշումները Կիլիկիայի հայ բնակչության նկատմամբ, կանոնավոր ու անկանոն զորաջոկատների, հատկապես չերքեզների միջոցով ասպատակել Ալբիստանի, Հաճընի և Մարաշի հայ գյուղերը, Զեյթունն օղակի մեջ առնելով կտրել դրսաշխարհից և նոր արշավանքի միջոցով վերջնականապես բնաջնջել պետությանն այդքան հոգսեր պատճառող արծվաբույնը։ Դրվում էր Զեյթունը հիմնահատակ ավերելու խնդիրը[10]։*

*1860 թ. օսմանյան մի բանակ, Խուրշիդ փաշայի գլխավորությամբ, հարմար առիթի էր սպասում Զեյթունի վրա արշավելու։ Փաշան 10 հազարանոց կանոնավոր զորքով, չերքեզների ու խաժամուժի ուղեկցությամբ, ներխուժեց լեռնագավառ և բանակ դրեց Զեյթունից 20 կմ հեռավորության վրա գտնվող Ջահան գետի հովտում։*

*Հունիսի 8-ին Թուրքական բանագնացները հայ իշխաններին հաղորդեցին, թե փաշան պահանջում է անցած 12 տարիների հարկը և անվերապահ հպատակություն, այլապես կսկսի գրոհը[11]։ Ստանալով հայ իշխանների բացասական պատասխանը, զայրացած փաշան զորքը շարժում է դեպի Զերմուկի դաշտ և փաստորեն սկսում կռիվը։ «Այս միջոցին զեյթունցիք Պոլիս գտնվող իրենց եկեղեցականներեն քաջալերիչ նամակ ստանալով, կհարձակին բանակին վրա, որ խուճապահար կփախչի և շատերը կամուրջեն անցնիլ չկարենալով գետը կնետվին կեավուրներին գերի չիյնալու համար»[12]։ Խուր-*

---

10 *Տե՛ս Վ.* Մելիքսեթյան, *Զեյթունի 1862 թ. ապստամբությունը, Առանձնատիպ Հայաստանի պատմության պետական թանգարանի, «Աշխատություններ», հատ. Բ, Երևան, 1950։*

11 *Տե՛ս* Զեյթունցի [Մ. Սեմերճյան], *Զեյթունի անցյալեն և ներկայեն, մասն Ա, Վիեննա, 1900, էջ 102—104։*

12 Դր. Գալուստյան, *նշվ. աշխ., էջ 135։*

շիդ փաշան, այժմ գլխիկոր, իշխաններից թույլտվություն է խնդրում Ախր-Դաղի ճանապարհով Մարաշ վերադառնալու։ Պարտված թշնամին խուճապահար հեռանում է լեռնագավառից։ Սրանով ավարտվում է Զեյթունի կիսանկախության պաշտպանության համար մղվող պայքարի առաջին էտապը։

## 2. ԶԵՅԹՈՒՆԻ 1862 Թ. ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆԸ

*Սուլթանական բռնապետության դեմ սկսված ապստամբական կռիվները ազգային-ազատագրական պայքարի բնույթ են ստանում։ Դեռևս դարասկզբին ապստամբության դրոշ են պարզում հույները, բուլղարները, սերբերը, ռումինացիները, սիրիացիները։ 1804 թ. ծայր առան սերբերի ազգային շարժումները, 1821 թ. ոտքի կանգնեցին հույն ժողովրդի հերոս զավակները։ 1862 թ. ապստամբեց Չերնոգորիան, 1866—1868 թթ.՝ Կրետեն, 1875 թ.՝ Բոսնիան և Հերցոգովինան, 1876 թ.՝ Բուլղարիան։ Թուրքական կառավարությունը դիմում էր կտրուկ միջոցների, որպեսզի կանխի նման շարժումները արևմտահայության մեջ։ Որքան ուժեղանում էին Թուրքիայի հպատակ ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումները, այնքան ավելի էին խստացվում ազգային ու սոցիալական ճնշումները, հետապնդումներն ու հալածանքներն Արևմտյան Հայաստանում և Կիլիկիայում, առավել ևս ըմբոստ, կիսանկախ համայնքների՝ Սասունի ու Զեյթունի նկատմամբ։*

*Խուրշիդ փաշայի պարտությունից հետո Թուրքիան մշակեց նոր ծրագրեր, Կիլիկիայում կենտրոնացրեց ստվարաթիվ բանակ և ամեն կերպ ջանաց հպատակեցնել, նույնիսկ բնաջնջել Զեյթունը, որպեսզի ազատվի հետագա բարդություններից։ «Ալի փաշա զրուցած էր 1861-են առաջ տոքթոռ Պաոթ՝ հռչակավոր գերմանացի ճանապարհորդին՝ թե՝ «Կիլիկիո լեռներուն մեջ կան քանի մը ապստամբ ժողովուրդք, հուսամ թե քիչ ատենեն զանոնք անհետ կընենք»[13]։*

*1862 թ. Մարաշի կուսակալ նշանակվեց Ազիզ փաշան։ Նրան տրվեց կանոնավոր բանակ, հրետանի, լայն լիազորություններ՝ Լեռնային Կիլիկիայի ապստամբող ցեղերին, հատկապես չերքեզներին զինվորագրելու, արշավանքի նախապատրաստություն տեսնելու և ապա Զեյթունի վրա արշավելու համար։ Շեյխերի, դերվիշների ու մոլլաների թափորը շարժվում էր Կիլիկիայի քաղաքներով ու գյուղերով, բորբոքում հետամնաց մահմեդական բնակչության կրոնական մոլեռանդությունը։*

*Լուրեր էին տարածվել, թե Զեյթունի բնակչությանը սրակոտոր անելուց հետո, նրա ունեցվածքը բաժանվելու է արշավանքի մասնակիցներին։ Այդ պատճառով ամեն օր Ազիզ փաշայի բանակատեղ էին գալիս թուրքերի, չերքեզների, քրդերի զինված ջոկատներ։ Գնալով հսկայական չափեր էր ընդունում Մարաշի կուսակալի բանակը։ Ամեն ինչ պատրաստ էր, հարկավոր էր արշավանքի առիթ փնտրել, որը և չուշացավ։*

*Հուլիսի վերջերին Ազիզ փաշան 12 հազարանոց բանակով Մարաշից*

---

[13] «Փորձ», 1879, № 11, էջ 21—22։

դուրս եկավ և շարժվեց դեպի Ջահան գետը։ Նրան միացան շրջակա Թուրք, Թուրքմեն, քուրդ ավարածարավ, ասպատակություններով պարապող Թափառաշրջիկ ցեղերը, որոնց խոստացել էր ավար և հարստություն։ Զեյթունի վրա էին արշավում Պայաղետ օղլի Ահմեդ փաշան՝ 5000 բաշիբոզուկներով, Մարաշի նախկին կառավարիչ Իբրահիմ փաշան՝ 1000 զինվորով, Քարատիշլի Օսման փաշան՝ 800 զինվորով, Մարաշի շրջակա 12 բեյերն իրենց աշիրեթներով, Զեյթունի սահմանամերձ շրջաններում ապրող ցեղերը, բացի Կոզանօղլուներից, որոնք մերժում են լեռնագավառի վրա հարձակվելու Ազիզ փաշայի առաջարկը։ «Անոնք կրսեին լավ դրացիներ և հիանալի դաշնակիցներ են մեզի, անոնց արյունով ողողված սուրերը կրնան մեզի դեմ դառնալ»[14]։ Արշավանքի նախօրեին Թուրքական հրոսակախմբերի Թիվը ոմանց կարծիքով հասնում էր 40, նույնիսկ՝ 52 հազարի։ Նրանց կողի էին առաջնորդում առջևից ընթացող 150 շեյխ և մոլլա։

1862 թ. հուլիսի 27-ին Ազիզ փաշան անցավ Ջահան գետը և սկսեց իր հարձակումը։ Շրջակա հայկական բոլոր գյուղերի բնակիչները Թողեցին իրենց բնակավայրերն ու կայքը և ապաստանեցին քաղաքում։ Մեկ մարդու նման ոտքի է կանգնում Զեյթունը։ Ամրացվում են դիրքերը, դարաններ ու ծուղակներ են պատրաստվում։ Զենք են վերցնում բոլոր չափահասներն անխտիր, նույնիսկ ալեհեր ծերունիները, պատանիները։ Աստվածածնի վանքում հավաքվել էր մեծ բազմություն։ Եկեղեցական Թափորից հետո, նախքան Թշնամու հետ գոտեմարտի բռնվելը, մարդիկ համբուրվում էին հարազատների հետ, ոգևորում իրար։

Դեռահաս աղջիկներին ու կանանց տեղավորեցին Յաղուպյան Թաղամասի այն հատվածում, որն ընկած էր Շուղրի կամրջի մերձակա բարձունքի վրա։ Զեյթունցի քաջուհիները այստեղից քարեր պիտի տեղային Թշնամու գլխին, իսկ պարտության դեպքում նետվեին գետը, որպեսզի չընկնեին Թշնամիների ձեռքը։ -

1862 թ. հուլիսի 28-ի առավոտյան Ազիզ փաշայի բանակը մտնում է Զեյթուն գավառը։ Ավերվում ու մոխրակույտերի են վերածվում ճանապարհին ընկած 10-ից ավելի գյուղեր։ Առաջին հանդիպումն հայերի հետ տեղի է ունենում Զաքըր-դերե Քեփիր կոչված վայրում ուր, հակառակ խորհրդարանի որոշմանը, ամրացել էր 500 զինվորի գլուխ անցած Շովրոյան իշխանը։ Մեկ ամբողջ օր տևող անհավասար մարտում, 72 զինվորի կորստով, Շովրոյանը կանգնեցնում է Թշնամու առաջխաղացումը, սակայն դիմադրավումն անհուսալի համարելով, հարկադրված, գիշերը նահանջում է քաղաք։

Արեգին գյուղի ավերման մասին զեյթունցիները գրում էին. «արք և կանայք և տղայք բոլոր սուրի բերան գնացին, տուները կողոպտեցան և ամբողջ գյուղը հրո ճարակ եղավ։ Արյունը փողոցներու մեջ կվազեր, և հրդեհին մուխը սոսկում ու սարսափ կծավալեր մերձակա գյուղերը։ Փաշան հրամայեց գյուղին մոտակա հայ վանքին դռները խորտակել, այս արյան ծարավի մարդիկը կուսակալին աչաց առջև և նրա հրամանավ վանահայրը և միաբանք

---

14 «Զեյթունի պատմագիրք», էջ 278։

փողոտեցին... Եվ նվիրական սպասք, անոթ և զարդեր բաժանելեն վերջ յուր զորաց՝ հրամայեց փաշան վանքն էլ հրդեհել»[15]։

Ոգևորված այս հաղթությունից, Արեգին գյուղը կործանելուց հետո, փաշայի զորաբանակները ներխուժում են ս. Փրկչի վանքը, սրախողխող անում Մամբրե վարդապետին և շարժվում դեպի Ջերմուկի դաշտը։ Մյուս կողմից, թուրք ու չերքեզ աշիրեթները Քարատիշի Օսման փաշայի գլխավորությամբ մոխրակույտի են վերածում Ավագկալը (Մխալ), թալանում ամեն ինչ և գալիս միանում հիմնական բանակախմբերին։ Երկու բանակները, դեմ-հանդիման, կանգնած էին իրարից կես ժամվա հեռավորության վրա։ Սպասվում էր ահեղ ճակատամարտ։

Հուլիսի 29-ի գիշերը իշխանները և հոգևորականները վերջին խորհուրդն արեցին ս. Աստվածածնի վանքում և ուժերը մարտական դասավորության մեջ դրին։ Նրանք իրենց 5000 կանոնավոր ռազմիկներին բաժանեցին խմբերի, նշանակեցին հրամանատարներ, պատվիրեցին գործել խստագույն կարգապահությամբ, անխուճապ, մեռնել, բայց չփախչել, առավել ևս չհանձնվել թշնամուն։ Նրանք որոշում են մեռնել հերոսաբար։

Չնայած իր ահռելի բանակին, հաշվի առնելով նախորդների ստացած դասերը, խորամանկ փաշան դիմում է նոր խարդավանքի։ Ժամանակ շահելու, զեյթունցիներին խաբեությամբ հանգստացնելու, ապա հանկարծակի հարձակման անցնելու մտադրությամբ, փաշան բանագնացներ է ուղարկում հայերի մոտ և ծանր պայմաններով հաշտություն առաջարկում։ Թուրքերը պահանջում էին վճարել անցած տարիների հարկը՝ 500 հազար դահեկան, ապա և իրենց հանձնել Քեթմենի դեպքերի ղեկավարներին՝ Կարապետ քեհյային, Ջափար Վարդանյանին։ Զեյթունցիները, հասկանալով փաշայի խորամանկությունը, ապագա անցքերի պատասխանատվությունից խուսափելու խոհեմ մտադրությամբ համաձայնվեցին վճարել 128 հազար դահեկան[16], ինչքան որ ունեին, սակայն հրաժարվեցին «մեղադրյալներին հանձնելուց»։

Ազիզ փաշան, նախքան ճակատամարտ տալը, հոգեբանական գրոհ էր սկսել զեյթունցիների դեմ։ Ամեն անգամ բանագնացներ ուղարկելով, փաշան հայտնում էր իր բանակի թիվը, ջանալով սարսափ տարածել, դրանով իսկ առանց կռվի գրավել բերդաքաղաքը։ Զեյթունի իշխանապետ Հազար Շովրոյանը նրա բանախոսներին վստահ պատասխաններ էր տալիս, թե լեռնականները մտադիր չեն այդպիսի զիջումների գնալ, իսկ ինչ վերաբերում է բանակի թվաշատությանը, ապա թող հայտնի լինի բանակապետին, որ զեյթունցիները շատ բեյերի ու փաշաների, մեծաքանակ զինվորների հետ են չափել իրենց ուժերը, այժմ էլ առանց երկմտելու պատրաստ են վարելու մարտը[17]։

Բանակցությունների դադարի պահին լուրեր են ստացվում, թե Պայաղետ-օղլի Ահմետ փաշան իր զինվորներով շարժվում է Ավագ-Կետիկի կիր-

---

15 «Արձագանք», 1895, դեկտեմբեր 6 (18), № 141, տե՛ս նաև Հ. Պողոսյան, նշվ. աշխ., էջ 166—167։

16 «Կռունկ հայոց աշխարհին», 1863, № 3, էջ 222—223։

17 Տե՛ս Հ. Պողոսյան, նշվ. աշխ., էջ 170։

ճը և հաջորդ օրը պիտի միանա ընդհանուր զորաբանակին։ Իշխանները 500 հոգիանոց մի ջոկատ են ուղարկում Մարաշի թուրքերի դեմ, նրանց պարտության մատնում և հաղթականորեն վերադառնում Զեյթուն։

Ահմեդի ջարդված ու խուճապահար բանակի բեկորները, միանալով Ազիզ փաշայի զորքին, սարսափ են ներազդում բոլորին, իսկ զեյթունցիները, ոգևորվելով անդրանիկ հաջողությունից, պատրաստվում են վճռական ճակատամարտի։ Իշխան Յաղուպյանը կռվելու էր Ավագկալի ճակատամասում՝ 12 բեյերի դեմ։ Սուրենյանը և Շովրոյանը ամրացել էին Զեյթունի նախադռան կիսավեր ճեմարանի մեջ, իսկ Ենիտունյան իշխանը 1500 մարտիկներով դարան պիտի մտներ վանքի և քաղաքի միջև ընկած ձորում։ 500 զինվորներ պիտի գնային թուրքական բանակին ընդառաջ, կռվելով նահանջեին և զորքը քաշեին դարանակալների մեջտեղով։ Վճռական պահը դարանակալներին պետք է ազդարարեին եկեղեցիների կոչնակները, որից հետո պետք է սկսվեր հարձակումը։

1862 թ. օգոստոսի 2-ի (14) առավոտյան Զեյթունի լեռներն ու ձորերը լցվում են հրացանազարկերի ու թնդանոթի որոտով։ Ազիզ փաշան ամրակոծում էր կենտրոնական թաղամասերը, Օսման բեյի բանակի թուրքմենները Անեձորից 12000 զինվորով շարժվում էին ճեմարանի մարտկոցի դեմ։ Յաղուպյանը ստիպված միանում է մյուս զորախմբին և այս հատվածում կենտրոնացնում 3000 զինվոր՝ երկու իշխանների գլխավորությամբ, որոնք զինվորներին հրամայում են չկրակել, մինչև թշնամին այնքան մոտենա, որ «վառոդն ալ գնդակին հետ փորերնին մտնե»։

Ս. Աստվածածնա վանքը պաշտպանում էր ծերունազարդ վարդապետ Մահտեսի Գրիգոր Մարտիրոսյանը, ունենալով 7 չափահաս զինվորներ և փոքրաթիվ պատանիներ։ Դերվիշներ ու շեյխեր առաջը գցած թուրք բանակախմբի չորս դրոշակակիրները միանգամից փնդակահարով են լինում։ Վանքի դըռները կացնով ջարդելու փորձերը անհաջող են անցնում, դռան մոտ կուտակվում են թուրքական զինվորների դիակները։

Մյուս թևում թուրքական բանակի մի ջոկատ հասնում է քաղաքի եզերքը, որտեղ արյունահեղ մարտը տևում է երկու ժամ։ Փախուստի կեղծ ցույցով զեյթունցի առաջապահ գունդը չերքեզներին քաշում է այն կողմը, ուր դարանամուտ սպասում էին Ենիտունյանի գլխավորած 1500 քաջերը։ Հասնում է կանխորոշված պահը։ Հնչում են եկեղեցիների կոչնակները, թաքստոցներից ելնում են լեռնականները, սկսվում է կոտորածը։

Անսպառելի հարվածներից շփոթված չերքեզները, իսկ քիչ անց նաև ձախ թևում կռվող թուրքմենական աշիրեթները խուճապահար փախչում են։ Զեյթունցիները շարունակում են հետապնդումը։

Հետագայում «Կոտորածի ձոր» կոչված վայրից փախուստի դիմող թուրքական բանակը մարտադաշտում թողնում է 756 դիակ՝ 9 բեյերի հետ միասին, զինամթերք, պարեն։

Ազիզ փաշան, տեսնելով իր բանակի ջախջախումը, թնդանոթաձգի սպանությունը, զեյթունցիների հակահարձակման անցնելը, նահանջի հրաման է

արձակում և մի կերպ փրկվում գերի ընկնելուց։ Թուրքական բանակը խուճապահար, սարսափից գլուխը կորցրած նահանջում է։ Օգտագործելով հարմար պահը, 5000 զեյթունցի զինվորները, իրենց պատրաստած լավ կրակող չախմախլի հրացաններով զինված, դուրս են գալիս թաքստոցներից, մինչև Ջահան գետը հետապնդում փախչող թուրքերին և կոտորում նրանց։

1862 թ. օգոստոսի 2-ի հաղթանակը կատարյալ էր։ Փախուստի դիմող թուրքական բանակը ռազմադաշտում թողնում է երկու թնդանոթ, 2000-ից ավելի դիակ։ Փառավոր հաղթանակ տարած զեյթունցիները միայն 77 հոգու կորուստ տվեցին։ Անօրինակ այդ սխրագործության ժամանակ խիզախությամբ կովեցին շատերը։

Հայրենանվեր երիտասարդ Մարկոս Թաշճյանը որոշում է մոտենալ թուրքական բանակատեղին, սպանել Ազիզ փաշային, խուճապ առաջացնել թշնամու զորքերի մեջ։ Ընկերները փորձում են ետ պահել նրան, ասելով «անմիտ, ուր կերթաս, մեռնելու կերթաս»։ Նա պատասխանում է. «Այո, գիտեմ պիտի մեռնիմ, բայց ուրիշներ պիտի ապրեցնեմ»։ Թաշճյանը հերոսի հանդգնությամբ մոտենում է թուրքական բանակին, կրակում, իր կարծիքով ըսպանում Ազիզ փաշային, սակայն խրականում՝ հայերին մեծ վնաս պատճառող թնդանոթաձգին։ Հայրենակիցներին ազատելով թնդանոթի անխնա կըրակից, վերադարձին նա հերոսաբար զոհվում է։

Չաքըր-դերեի մարտահատվածում հերոսաբար էր կովում Մելիքսեթ Քասմյանը։ Քաջը մարտում ծանր վերքեր ստանալով, սողեսող մոտենում է Փրկչի լեռանը։ Այդ պահին վրա են հասնում փաշայի զինվորները։ Թուրք հրոսակները Քասմյանի կենդանի լինելը ստուգելու նպատակով կտրում են նրա ականջները։ Հերոսը տանում է բոլոր տանջանքները։ Մայրը որդուն գտնում է տակավին կենդանի ու ահավոր տառապանքների մեջ։ Այս դեպքը պատմում են Մկրտիչ Պեշիկթաշլյանին։ Մեկ օր հետո ծնվում է մեծ քնարերգուի «Դու զով խնդրես մայր իմ անուշ» բանաստեղծությունը։ Մարտերում անօրինակ սխրանքներ գործեցին նաև Գալուստ վարդապետը, Զոպա Ապարդյանը, Թորոսենց Հակոբը, Գուգուբենց Փանոսը, որոնք բոլորն էլ հերոսաբար ընկան ճակատամարտում։

Զեյթունի հերոսամարտից հետո Ազիզ փաշան, վրեժխնդրությամբ լըցված, շրջակա թուրքական ցեղերին արտոնություն է տալիս ճանապարհներին կամ ամենուր կողոպտել և սպանել զեյթունցիներին։ Սրանով իսկ Մարաշի կառավարիչը ծանրացնում է ջրեպանների դրությունը, որոնք առևտրականներին ծառայելով բավական եկամուտ էին տալիս լեռնագավառին։ Բիչ անց Զեյթունը դրվում է պաշարված կացության մեջ, կտրվում դրսի հետ ունեցած հարաբերություններից։ Պաշարումը լեռնականներին կանգնեցնում է սովամահության վտանգի առջև։

1862 թ. սեպտեմբերին Ազիզ փաշան զեյթունցիներից պահանջեց երկու թնդանոթները, ապա հարկի մի մասը։ Նրան պատասխանեցին, որ եթե վերացվի գավառի պաշարումը, ապա լեռնականները կկատարեն փաշայի ցանկությունը։ Պահանջը կրկնվում է։ Զեյթունցիները Մովսես քահանայի և գավառի արքեպիսկոպոսի միջոցով 30 հազար ղուրուշ հարկ և ռազմավարի մի մասը ուղարկում են Մարաշ։ Ուխտադրուժ փաշան ընդունելով այդ, պա-

հանջում է, որ իրեն ներկայանան չորս իշխանները։ Մովսես քահանայի առաջնորդությամբ Մարաշ են գալիս Զեյթունի չորս իշխանների որդիները, որոնց անմիջապես կալանավորում և բանտ են նետում, պահանջելով մեծ իշխաններին։ 40 ծերունիներից բաղկացած Զեյթունի նոր պատվիրակությունը աղերսում է ազատ արձակել կալանավորներին և վերացնել պաշարումը։

Փաշան ստիպված համաձայնվում է։ Զեյթուն է ուղարկվում Սուլեյման բեկը՝ հանձնարարություն ունենալով հարկեր հավաքել։ Նա մի քանի օրում 25000 ղուրուշի հարկ է հավաքում, ապա չկարողանալով դիմանալ գավառում, ութ օրից հետո հեռանում է Զեյթունից։ Արծվաբնի օղակումը շարունակվում է։



Զինված զեյթունցիներ

Սուլթանն իմանալով իր բանակի ծանր պարտության մասին, որոշում է Բելգրադի նախկին կառավարիչ Աշիր փաշային 150 հազարանոց զորք տալ՝ հանձնարարելով շրջապատել և հիմնահատակ կործանել Զեյթունը, իսկ բնակիչներին սրակոտոր անել։ Կառավարությունը սկսում է արշավանքի նախապատրաստությունը, սակայն փոխվում է ծրագիրը, պաշտոնից ազատվում է Ազիզ փաշան, Մարաշի նոր կառավարիչ է նշանակվում Աշիրը, որին հանձնարարվում է փոխադարձ զիջումների գնով հաշտվել Զեյթունի հետ։ Վերացվում են Զեյթունի որոշ արտոնությունները, սահմանվում է զինվորական հարկ, առաջին անգամ Թուրք զորախումբ է մտցվում քաղաք։

Սուլթանին ձեռնտու չէր Զեյթունը դարձնել մի նոր Հունաստան կամ Չիրնոգորիա, մեծ տերություններին նորանոր միջամտությունների առիթ տալ։ Ուստի Աբդուլ Ազիզը խորամանկորեն, քայլ առ քայլ զիջեց, ամենից առաջ

*երկնչելով համահայկական նոր ու հուժկու շարժումներից, խուսափելով Ռուսաստանին միանալու կամ անկախանալու արևմտահայերի անչատողական ձգտումներին սնունդ տալուց։*

*Գործին միջամտեց նաև Մերձավոր Արևելքում նվաճողական ծրագրեր ունեցող Նապոլեոն III-ը։*

*Կ. Պոլսում Երեմիա Տևկանց Տեր-Սարգսենցի գլխավորությամբ հավաքվում են մի խումբ հայ մտավորականներ, ամիրաներ ու էֆենդիներ և որոշում դիմել Նապոլեոն III-ին, կանխելու Զեյթունին սպառնացող աղետը։ Կազմվում է երկու գրություն։ Մեկն, իբրև հանձնարարական, ուղարկվում է Փարիզ՝ Կարապետ Շահնազարյանին, որպեսզի նա օգնի Գրիգոր Ապարտյանին[18], մյուսը ուղղված էր Նապոլեոն III-ին[19], որտեղ նկարագրում էին Ուլնիայի իրավիճակը, սուլթանի նոր մտադրությունները, ապա խնդրում օգնել Զեյթունին։*

*Պատրիարքի միջնորդությամբ, վաճառականի անցագիր հանելով, պոլսահայ երևելիները Զեյթունից Կ. Պոլիս եկած Գրիգոր վարդապետ Ապարտյանին ուղարկում են Փարիզ։ Նա Ֆրանսիայի մայրաքաղաքում Կ. Շահնազարյանին հաղորդում է դեպքերի ընթացքը և երկուսով դիմումներ են ուղարկում կառավարությանը։*

*1862 թ. դեկտեմբերի 11-ին Կ. Շահնազարյանն ստանում է իր գրության պատասխանը, որտեղ ասվում էր, թե հանձնարարված է Կ. Պոլսի ֆրանսիական դեսպան Տրուեն դը Լուիսին, ինչպես նաև Հալեպի ֆրանսիական հյուպատոսին, հայերին պաշտպանել և թույլ չտալ արշավանքի կրկնություն։ Դեկտեմբերի 31-ին Տրուեն դը Լուիսը անձամբ ներկայանում է մեծ սադրազամ Ալի փաշային, հայտնում Նապոլեոնի կամքը և պահանջում Կիլիկիայում տիրող խժդժությունների վերացումը։ Սիրիայի դեպքերից դաս առած, Թուրք բարձրաստիճան պալատականը առերես համաձայնություն է տալիս, իսկ գաղտնաբար Մարաշի կուսակալին հրահանգում շարունակել Զեյթունի պաշարումը և սովամահությամբ վերջ տալ ըմբոստ լեռնականներին։*

*Ալի փաշայի դիտավորությունները չվրիպեցին պոլսահայերի ուշադրությունից։ Զեյթունով խանդավառված Մ. Պեշիկթաշլյանը, Մ. Մամուրյանը, Երեմիա Տևկանցը, արդեն մայրաքաղաք հասած Մ. Խրիմյանը, սրանց հետ ժամանակավորապես միացած, դավանափոխության խոստում առած կաթոլիկների համայնապետ Անտոն Հասունյանը նոր բողոքագրեր են առաքում ֆրանսիական դեսպանին, Կարապետ Շահնազարյանին հանձնարարում վերըստին դիմել ֆրանսիական կառավարությանը, որը, ելնելով իր քաղաքական շահերից, նորից ճնշում գործադրեց սուլթանի վրա։ Զեյթունի պաշարումը վերացվեց։*

*Ավելին, սուլթանական կառավարությունը առհարկի համաձայնում է հանձնաժողով կազմել և լեռնային Կիլիկիայում տիրող իրավիճակը քննել։ Սկզբում Մարաշ է գնում Կ. Պոլսի ֆրանսիական դեսպանության քարտուղարը, միջնորդում Ազիզ փաշայի առաջ և մահապատժից ազատում վա-*

---

18 *«Բանբեր Հայաստանի արխիվների», 1964, № 3, էջ 56—78։*

19 *ԴԱԹ, Թ. Ազատյանի արխիվ, I բաժին, վավ. 142։*

ղուց-ինչ բանտում շղթայված մի խումբ զեյթունցիների, որոնցից երկուսն արդեն տանջամահ էին արվել։ Կալանավորված իշխաններին բերում են մայրաքաղաք և քիչ անց ազատ արձակում։ 1863 թ. դեկտեմբերի 6-ին Մարաշ ուղևորվեց Զեյթունի գործը քննող հանձնախումբը՝ մեծ եպարքոսի օգնական Շեյին բեյը, հայերի ներկայացուցիչ Սարգիս Աղաբեկյանը, կաթոլիկների պատգամավոր Դավութ էֆենդին, ֆրանսիական դեսպանատան աշխատակից Ժյուլ Ռոբերը։ Հանձնաժողովը ուսումնասիրեց ապստամբության հետ կապված մանրամասնությունները, կառավարությանը վերադարձրեց թուրքերից գրաված ռազմավարի դեռևս չհանձնված մասը, զեյթունցիներին պարտադրեց կանոնավոր հարկ տալ և թույլատրեց ս. Աստվածածնա բարձունքի վրա զորանոց կառուցել, այնտեղ մշտական հսկող զորախումբ պահելու մըտադրությամբ։

Այսպիսով, Զեյթունի խնդիրը լուծվում էր փոխադարձ զիջումների գընով։ Եթե թուրքական կառավարությունը հրաժարվում էր նոր արշավանքից, «խնայում էր լեռնականների» կյանքը, ապա ուլնեցիներն էլ որոշ չափով զրկվում էին իրենց դարավոր կիսանկախ դրությունից։

Ֆրանսիական կառավարությունը վաղուց էր հետաքրքրվում Կիլիկիայով։ Տակավին 50-ականների սկզբներին Նապոլեոն III-ի առաքած միսիոներները վխտում էին Տավրոսում և քրիստոնյա ազգաբնակչությանը քաշում կաթոլիկ համայնքի գիրկը, որպեսզի նրանց օգտագործեն ֆրանսիական պետության նվաճողական քաղաքականության իրականացման համար։ Փարիզի քաղաքագետներն այս նպատակին էին ծառայեցնում նաև արկածախնդիր Լևոն Լուսինյանին, որը հանրագրեր էր կազմում, ամեն տեղ ներկայանում իբրև Լուսինյան տոհմից սերված, Հայաստանի բախտով հետաքըրքըրվող մի անձնավորություն։ Իրականում նա ջանում էր հայերին հեռու պահել Ռուսաստանի ազդեցությունից և Նապոլեոն III-ի արևելյան քաղաքականության գործիք դարձնել։

Ֆրանսիայի արևելյան քաղաքականությունը, հայասիրական «փրկարար միսիան» ուներ ոչ միայն քաղաքական, այլև տնտեսական հիմքեր։ Նապոլեոն III-ին հետաքրքրում էր Կիլիկիայի բամբակը։ Նա ձգտում էր Միջերկրականի ծովամերձ գոտին վերածել բամբակացան դաշտերի։

Բացահայտելով Ֆրանսիայի վարած արևելյան քաղաքականության դրդապատճառները, չի կարելի սակայն հայերի նկատմամբ բռնած դիրքի խնդրում հավասարության նշան դնել սրա և Անգլիայի միջև։ Կ. Պոլսի անգլիական «Լևանտ հերալդ» թերթը, դեսպանի անմիջական մասնակցությամբ, հալածանք սկսեց Կիլիկիայի ապստամբ հայերի դեմ։ Նրանից ետ չէր մնում «Տեպա» պարբերաթերթը, որի միջոցով պարզ էր դառնում իր պետության դիրքորոշումը՝ վերջ տալ Սերբիայի ու Հունաստանի անկախությանը, «խաղաղեցնել» Կիլիկիան ու Հայաստանը, Ռուսաստանին ու Ֆրանսիային զրկել կայսրության մեջ ունեցած հենակետից։

«Ծաղիկ», «Մեղու», «Սեր», «Մասիս», «Փարիզ» թերթերը մերկացրին անգլիական կառավարության հակահայկական քաղաքականությունը։ Այդ բանը չվրիպեց նաև օտարների աչքերից։ Ֆրանսիացի ականավոր գրող և հրապարակախոս Ժիրարդենը Աբդուլ-Ազիզի վարած հայահալած քաղաքականության նոր կուրսի պատասխանատվությունը դնում էր Անգլիայի վրա։

## 3. ԶԵՅԹՈՒՆԻ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅԱՆ ԱՐՁԱԳԱՆՔՆԵՐԸ

*Զեյթունի իրադարձությունները լայն արձագանք գտան հայ իրականության մեջ։ Կոստանդնուպոլսի հայ հասարակական զանազան խմբավորումներ տարբեր կերպ արձագանքեցին Ուլնիայի հերոսամարտերին։*

*Երբ թուրքական բանակը արշավում էր Զեյթունի վրա, Կ. Պոլսի հայ ամիրաները, բարձրաստիճան հոգևորականները ձևացնում էին, թե իրենց ոչինչ հայտնի չէ կատարվող անցքերից։ Ապստամբության հաղթանակից հետո, ամիրաների մի մասը միջնորդի դեր կատարեց Բ. Դռան և Զեյթունի միջև, հորդորեց հպատակություն կառավարությանը, նույնիսկ դատապարտեց ապստամբների անխոհեմ ընթացքը։*

*Ազգային ժողովի երեսփոխանները, մասնավորապես «սահմանադրական» ճանաչված Սերվիչենը, Գր. Օտյանը, Պալյան և Աղաթոնյան եղբայրները, երկնչելով ժողովրդական զանգվածների հուժկու շարժումներից, հանդես եկան խաղաղասիրական քարոզներով, պատճառաբանելով, թե հայն այլևս արյուն չունի թափելու, ուստի նա պետք է զարգանա, լուսավորվի և այդ ճանապարհով գտնի իր փրկությունը։*

*1862 թ. օգոստոսի 1-ին, Ազիզ փաշայի Զեյթունի վրա հարձակվելու օրը, Կ. Պոլսի հայ արհեստավորները, պանդուխտ օրամշակները մայրաքաղաքում ցույց կազմակերպեցին։ Ավելի քան 2000 ցուցարարներ պատրիարքից պահանջում էին գործադրել արևմտահայերին խոստացված Սահմանադրությունը, վերջ տալ հալածանքներին Արևմտյան Հայաստանում, դադարեցնել արյունահեղությունը Կիլիկիայում։ Առավոտից մինչև երեկո տևող ցույցը ճնշվեց զենքի ուժով։*

*Մեկ շաբաթ չանցած, Կ. Պոլսում սկսեցին լուրեր տարածվել Ազիզ փաշայի բազմահազարանոց բանակի պարտության մասին։ Կատաղած էր կայսերական պաշտոնեությունը, ոգևորություն ու ցնծություն՛ էին ապրում հայ աշխատավորական զանգվածները, առաջադեմ մտավորականությունը։ Զեյթունը հայ ժողովրդի ոգևորության ու ազգային հպարտության խորհրդանիշըն էր այդ օրերին, վկայում է Սրբուհի Երիցյանը։ «Այն տարին (1862 թ.—* խմբ.) *Զեյթունի անցքերը մեծ ազդեցություն ունեցան Պոլսո և այլ տեղերի հայոց վերա. ամենայն ոք Կիլիկիան ուներ ի բերան, ամենայն ոք մասնակից էր դրամական հանգանակությանց... Նույնիսկ հռոմեադավան հայ երիտասարդները մոռացել էին դեպի իրանց լուսավորչական եղբայրներն ունեցած ատելությունը, և ամենայն սիրով թե նյութապես, և թե բարոյապես օգնում էին այդ ձեռնարկություններին»*[20]։

*Ապստամբության մասին շատ քիչ տեղեկություններ էին ստացվում, որովհետև Ազիզ փաշան այնպես էր օղակել Կիլիկիան, որ ոչ մի լրաբեր չէր կարող դուրս գալ այնտեղից։ Նույնիսկ անանցանելի լեռնակիրճերի վրա պահակակետեր էին հաստատված, իսկ Զեյթունն առնված էր աքցանի մեջ։*

*Մեծ դժվարություններ հաղթահարելով, 1862 թ. հոկտեմբերի կեսերին Կ. Պոլիս հասան Զեյթունի պատգամավորները՝* Տեր-Հակոբ քահանան և Մը-

---

20 *«Փորձ», 1877, № 4, էջ 193։*

Նացական Սեմերճյան-Զեյթունցին: *Հաջորդ օրը գումարված խառը ժողովում նրանք պատմեցին ընդհանուր եղելությունը և հանձնեցին իշխանների խընդրագրերը՝ իրենց օգնության հասնելու մասին։ Պոլսահայերն անմիջապես հանգանակություն կատարեցին, կազմեցին մի աղերսագիր և սրանց ձեռքով մատուցեցին Ալի փաշային։*

*Երկու զեյթունցիները մայրաքաղաքի մտավորականության, գավառահայ պանդուխտների, եկեղեցականների մեծ մասի ամենացանկալի հյուրերն էին։ Ոգևորությունը գնալով մեծացավ և որոշվեց հանձնաժողով կազմել, հանգանակություն կատարել և օգնություն հասցնել ապստամբներին։*

*Զեյթունին օգնություն կազմակերպելու նպատակով ստեղծված ընկերությունն իր մասնաճյուղը հաստատեց Թիֆլիսում։ Մատթեոս Մամուրյանին հանձնարարվեց կազմել գրություններ, կապ հաստատել Թիֆլիսի մասնաճյուղի հետ և «պահել» հանգանակած գումարի հաշվեկշիռը։ Հանգանակվեց 2000 օսմանյան ոսկի, որը մաս-մաս ուղարկվեց Զեյթուն։ Հանգանակությանը մասնակցեցին ամենատարբեր դասերի ու խավերի ներկայացուցիչներ, հեռավոր ու մոտավոր քաղաքների հայերը։ Անգամ Ինդոնեզիայի սակավաթիվ հայ գաղթօջախը մասնակցում էր Զեյթունի օգնության գործին։*

*Զեյթունի հերոսամարտը լուրջ ազդեցություն ունեցան նաև Պետերբուրգում, Մոսկվայում և Ռուսաստանի այլ քաղաքներում սովորող հայ ուսանողության քաղաքական մտայնության վրա։ 1863 թ. ռուսական այդ երկու մեծ քաղաքներում կազմակերպվեցին ուսանողական խմբակներ, որոնք համախմբվեցին «Ժողով» անունով կազմակերպության շուրջը։ «Ժողովը» քաղաքական աշխատանք էր տանում ուսանողության մեջ։ Խմբի մեջ մըտնող 42 հայ ուսանողների ջանքերով քննության էին առնվում «հետաքրքիր նյութեր», Թուրքիայից եկած նամակներ, հայ ազատագրական շարժումներին, Զեյթունին ու Վանին վերաբերող հոդվածներ և այլն։*

Զեյթունի հերոսամարտը լայն արձագանք գտավ հայ պարբերական մամուլի էջերում: *Ապստամբության մասին Պոլսի հայկական բոլոր պարբերականներից հայատառ թուրքերեն* «Մյունատի» *շաբաթաթերթը տպագրեց առաջին հոդվածը, որը կարդացվեց լարված հետաքրքրությամբ և բորբոքեց առաջադեմ մտավորականների ու ժողովրդական զանգվածների արդարացի վրդովմունքը թուրք բռնակալների նկատմամբ*[21]*։ Հաջորդ օրը «...հիշյալ լրագրի խմբագիր պ. Կարապետ Փանոսյանը առանց որևիցե բացատրության բանտարկվեցավ այնպիսի խիստ կերպով, որ երկար ժամանակ ոչ ոք չգիտեր, թե նա սպանվեցավ, թե կենդանի է»։ Երեմիա Տևկանցը վկայում է, թե Փանոսյանը նստած սուլթանի քթի տակ «փարավոնական բարբարոս»*[22] *էր անվանել նրա զորավար Ազիզ փաշային, պահանջելով պատժել վերջինիս արյունարբու զինվորներին։ Փանոսյանը բանտարկվեց, իսկ «Մյունատին» ընդմիշտ փակվեց։*

*Արևմտահայ առաջադիմական «Մեղու» պարբերաթերթն ավելի հանգամանորեն անդրադարձավ Զեյթունի ապստամբությանը։ Թերթի խմբա-*

---

21 *Մատենադարան, ձեռագիր 4177, էջ 9—12։*

22 *Նույն տեղում, էջ 10։*

գիր Հարություն Սվաճյանը մասնակցեց պոլսահայերի օգոստոսի 1-ի ցույցին, հրապարակեց մարտաշունչ հոդվածներ, որտեղ նա դատապարտում էր ցարական «Սովրեմեննոե սլովո» և անգլիական «Լևանտ հերալդ» թերթերի թղթակիցներին, որոնք պաշտպանում էին մեծ տերությունների նվաճողական քաղաքականությունը։ Սվաճյանն ուղղակի զենքի էր կոչում արևմտահայությանը։ Ապստամբության օրերին նա տպագրեց Ս. Շահազիզի հետևյալ տողերը.

Ոչ ոք չէ կարող հոգուս նպատակ
Ճնշել, խորտակել բռնության զենքով.
Ո՛չ սուր, ո՛չ արյուն, ո՛չ բանտ, ո՛չ կայծակ,
Ո՛չ նույնիսկ գեհեն մշտավառ բոցով[23]։

Զեյթունի ապստամբության օրերին Սվաճյանը, հրապարակախոսությանը զուգընթաց, գաղտնի աշխատանք էր ծավալում պոլսահայության մեջ։ Սուլթանական կառավարության հրամանով օգոստոսի 10-ից 20-ը «Մեղու»-ն ևս փակվեց։ Սվաճյանը ենթարկվեց հարցաքննության և սպառնալիքի։ Նույն տարվա վերջերին մի քանի ամսով Սվաճյան-Մեչուխեչյան «անհետացավ» հրապարակից։ Թուրքահպատակ հայկական գավառները շրջելիս, հավանաբար, նա եղել է նաև Կիլիկիայում։

Զեյթունի դյուցազնամարտը պաշտպանություն գտավ Զմյուռնիայի հայ առաջադեմ «Ծաղիկ» տասնօրյա հանդեսի էջերում, որն այդ օրերին խմբագրում էին Ար. Հայկունին և Գ. Ջիլինկիրյանը։

1862 թ. օգոստոսի 1-ի, 10-ի և 20-ի համարների ընդարձակ առաջնորդողները և մի քանի այլ հոդվածներ նվիրված էին Կ. Պոլսի օգոստոսի 1-ի ցույցին, մասամբ նաև Զեյթունին և նրա ապստամբությանը։ Հոդվածներում բացահայտորեն ապստամբության մարտակոչ էր նետվում։ Օգոստոսի 1-ին Ա. Հայկունին գրում էր. «Հայե՛ր, արդեն ժամանակը անցած է, և մեզ կամ դեպի ճշմարիտ բարեկարգություն դիմելեն և կամ կորուսելեն ի զատ ուրիշ հույս մնացած չէ, ...արիանանք ուրեմն և փառավոր կյանքը մը ձեռք անցնելու փափաքեն ավելի մահվան ձեռքեն ազատելուն համար հարկ եղած միջոցները ձեռք առնումք, առանց աջ կամ ահյակ ծռելու ճակատնիս բարձրացունեմք, անվեհեր լինիմք և մեր վատ թշնամիներուս ցուցընենք մեյ մը ինքզինքնիս, և հայտնեմք նոցա, թե հայությունը մեռած չէ, ցուցընենք նոցա թե որքան դյուրակործանելի և խարխուլ են իրենց ամբարշտական պարիսպները և վերջապես հայտնեմք, թե հաղթությունը միմիայն ճշմարիտ ազգասիրաց վերջին մրցանակն է»[24]։

Հատկանշականն այն է, որ «Ծաղիկը» արմատական դիրքերից հարձակումներ էր գործում ոչ միայն թուրքական կառավարության, նրա կուսակալների, այլև այն հայերի վրա, որոնք պառակտում էին ազգը և դավաճանում ազատագրական համընդհանուր շարժմանը։ Նա «ասպարեզը զինու զորությանն» էր թողնում և անմիջականորեն «զինական հեղափոխություն» էր

---

23 «Մեղու», 1862, № 170, էջ 179։

24 «Ծաղիկ», 1862, օգոստոս, № 40, էջ 333։

պատգամում յուրայիններին։ Օգոստոսի վերջին արգելվեց նաև «Ծաղիկը»։ Կալանքի տակ դրվեց և խոշտանգումների ենթարկվեց Գր. Չիլինկիրյանը։ Հ. Սվաճյանը, Ա. Հայկունին, Գր. Չիլինկիրյանը անցան գաղտնի աշխատանքի։ Նրանց ջանքերով երևացին մի շարք թռուցիկներ, որոնք զենքի էին կոչում և համերաշխ պայքարի նախապատրաստում հայ ժողովրդին[25]։

Ապստամբության մասին հաղորդագրություններ տպագրեցին «Մասիս», «Արշալույս Այրարատյանը» և Կ. Պոլսի ու Զմյուռնիայի մյուս թերթերը։

Նույն ժամանակ «Երևակի» ռեակցիոն խմբագիր Հովհաննես Չամուռճյանը կառավարության ուշադրությունն էր հրավիրում դեմոկրատական թերթերում տպագրվող հոդվածների վրա, պատճառ դառնալով նրանց փակմանը։

Ապստամբությունն արձագանք գտավ կովկասահայության մեջ, Ռուսաստանի հայ գաղթավայրերում և Փարիզում։ Թիֆլիսում հրատարակվող «Կռունկ հայոց աշխարհին» հանդեսը դրվատում էր զեյթունցիների քաջագործությունները, դատապարտում սուլթանական կառավարությանը։ «Կիլիկիայի անցքերու պատճառով հրավեր Ռուսաստանի հայերուն» կոչ-հոդվածում խմբագրությունը հայերին հիշեցնում էր կիլիկեցիների անցյալի փառքը, նրանց ըմբոստ ու քաջակորով բնավորությունը, արևելահայերին պարտավորեցնում՝ դրամական միջոցներով օգնել վշտացյալ ու վիրավոր եղբայրներին[26]։

Նույն տարվա հոկտեմբեր ամսվա համարում «Կռունկը» Ստեփաննոս Պալասանյանի թարգմանությամբ տպագրում էր ֆրանսիացի ճանապարհորդ Վիկտոր Լանգլուայի «Ճանապարհորդություն ի Կիլիկիա և լերինս Տավրոսի» աշխատությունը, նպատակ ունենալով արևելահայության մեջ համազգային պայքարի ու միասնական պետության ստեղծման գաղափար հղացնել։ Նոյեմբերին ամսագիրը տպագրում էր նոր լուրեր Զեյթունի մասին, որոնք քաղված էին «Արշալույս Այրարատյան», ֆրանսիական «Օպինիոն Նասիոնալ» և «Նորդ» լրագրերից։

Զեյթունի իրադարձություններին մանրամասնորեն անդրադարձավ Կալկաթայում Եղիազար Հարությունյանի խմբագրությամբ լույս տեսնող վիմատիպ «Եղբայրասեր»-ը՝ հնդկահայ վերջին պարբերականներից մեկը։

«Եղբայրասեր» տասնօրյա հանդեսը 1862 թ. օգոստոս ամսից սկսած արտատպում էր Զեյթունի «անցքերին» վերաբերող մանրամասն տեղեկությունները, բացատրում այդ շարժումների համազգային քաղաքական բնույթը, բացահայտում, թե ինչպես Վանի զինված ելույթը, այնպես էլ Ուլնիայի ապստամբությունը բռնկվել էին սուլթանների վարած ազգահալած քաղաքականության, ազգային ճնշումների և սոցիալական հարստահարությունների ուժեղացման պատճառով։ «Արշալույս Այրարատյան», «Մասիս», «Փարիզ» պարբերականների հաղորդագրությունների հիման վրա Տեր-Հարությունյանը կազմում է մի ընդարձակ տեսություն, կոչ անում հնդկահայերին՝ օգնություն կազմակերպել Զեյթունի հերոսներին[27]։

25 Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 193, վավ. 148, 151, 157, 158։

26 «Կռունկ հայոց աշխարհին», 1862, էջ 780։

27 «Եղբայրասեր», № 23, էջ 185 և հետ.։

«Եղբայրասերը» Զեյթունը դիտում էր իբրև ազատագրական պայքարի ելած հայրենասերների խորհրդանիշ։ Պարբերականը դատապարտում էր Անգլիայի, Թուրքիայի ու Պարսկաստանի քաղաքական կուրսը՝ հզոր աշխարհակալների ձիերի սմբակների տակ տրորվող, դանդաղորեն քայքայվող ու ձուլման ենթարկվող փոքր ազգերի նկատմամբ։

Զեյթունին համակիր էջեր էին նվիրում նաև «Հյուսիս», «Կովկաս», «Մասյաց աղավնի», «Փարիզ», «Մեղու Հայաստանի» և արևելահայ ու աշխարհասփյուռ գաղթօջախների այլ թերթեր։

1864 թ. «Մասյաց աղավնի» պարբերականը հրատարակեց Գևորգ Քանանյանցի «Զեյթունի հայք և զանոնք Կովկաս փոխադրելու առաջարկությունը» հոդվածը[28], ուր առաջարկվում էր զեյթունցիներին գաղթեցնել Ռուսաստան։

Զեյթունի հերոսամարտը ոգևորության աղբյուր հանդիսացավ հայ մտավորականության համար, այն նյութ տվեց հրապարակախոսներին, սյուժե՝ արձակագրին, երգվեց հայրենանվեր բանաստեղծների գրչով։

Ունիայի դեպքերը խոր տպավորություն գործեցին քնարերգու բանաստեղծ Մկրտիչ Պեշիկթաշլյանի վրա։ Քաջատեղյակ լինելով ապստամբության ընթացքին, բանաստեղծը 1862—1863 թթ., հերոսամարտի առաջ բերած ընդհանուր ոգևորության մթնոլորտում, գրեց «Հայ քաջորդի», «Մահ քաջորդվույն», «Թաղումն քաջորդվույն», «Հայ քաջուհին» Զեյթունին նվիրված երգերի հիանալի շարքը, ինչպես նաև «Եղբայր եմք մեք» բանաստեղծությունը։ Իրար հետ օրգանապես կապված, քառամաս այս դյուցազներգական պոեմի հերոսը Մելիքսեթ Քասմյանն էր, որը կյանքից առավել ազատությունն էր սիրում և ծանր վերքեր ստացավ հայրենիքի ու նրա ազատության համար մղվող պայքարում։

Հիշյալ շարքում կերտված է նաև ազգային-ազատագրական պայքարի մասնակից զեյթունցի կնոջ կերպարը։ Նրանում խտացել է Պեշիկթաշլյանի հավատամքը՝ հայ ժողովրդի քաղաքական վերածնության, հայ պետականության ստեղծման մասին։

Զեյթունի դեպքերը մեծ ազդեցություն ունեցան Ռ. Պատկանյանի վրա։

Հայերի ազգային-ազատագրական շարժմանն արձագանքել է Սմբատ Շահազիզը։ Ջերմ տողեր նվիրելով Իտալիայի ազատագրական շարժման հերոսներին, ոգեշնչվելով նրանց հաղթանակով, նա միաժամանակ մեծարել է Զեյթունի հերոսական ապստամբությունը։ Ազգային-ազատագրական պայքարի միասնություն քարոզող բանաստեղծի տեսադաշտից չեն վրիպել այն դավերը, որ զեյթունցիների շուրջը նյութում էին կաթոլիկ քարոզիչները։ 1863 թ. «Եզվիտներ և Զեյթուն» բանաստեղծության մեջ նա գրում էր.

Զեյթո՛ւն, սրբազան մնացորդ անցյալի,
Տավրոս լեռների հայ ազգ բնակիչ,
Արթո՛ւն կաց,— գիտե՞ս, վրադ է գալի
Եզվիդ ամբոխը, գայլեր գիշատիչ։

28 Տե՛ս «Մասյաց աղավնի», 1864 հունիսի, էջ 186—191։

Նոքա յուրյանց հետ շատ ոսկի ունին,
Նոքա կշռում են դորանով կրոն...
Ականջ չդնես գետնաքարշ լեզվին,
Թքի՛ր լրտեսին,— զինվորվի՛ր Զեյթուն։

Շահազիզի այս տողերը քաղաքական տագնապի ահազանգ էին[29]։ Հեղինակը նպատակ ուներ այլադավան քարոզիչներին զրկել Կիլիկիայում միսիոներական հասկաքաղից, վերացնել ազգային միասնության վրա կախված այդ վտանգը։

Ինչ խոսք, ով կարող էր Զեյթունի փառքն ավելի գովերգել, քան ինքը՝ պայքարող ու նահատակվող, խիզախ ու անվեհեր զեյթունցին։ Զեյթունի ժողովրդական բանահյուսությունը ներծծված է ազատասիրական մոտրումներով, մեռնող քաջի գովասանքով, վախկոտի պարսավանքով, մարտական ոգով։ «Քայլերգ Զեյթունի» (Հարություն Չագրյանի), «Երգ զեյթունցվոց», «Զեյթունն անկախ» (Մ. Փորթուգալյանի), «Զեյթունցիներ», «Զեյթունցիք», «Զեյթունցիներուն» և այլ բանաստեղծությունները[30], որոնք երգի են վերածված, գովերգում էին գավառի քաջամարտիկների սխրանքները, ոգևորում Տավրոսի բնակիչներին։

Զեյթունի ապստամբության լուրը թափանցեց հայաբնակ բոլոր անկյունները, ոգևորեց ազատության ծարավի հայ ժողովրդին և խոր ազդեցություն ունեցավ հայ ազատագրական շարժումների հետագա ծավալման վրա։

Հայ ազատագրական շարժման շահերով ապրող առաջադեմ մտավորականները չբավարարվելով միայն գրական-հրապարակախոսական գործունեությամբ, հիմնում են նաև ընդհատակյա քաղաքական խմբակներ, ժողովրդին ազատագրական պայքարի ոգեկոչող ընկերություններ։

Տակավին Ղրիմի պատերազմի օրերին, 1853 թ., Կոստանդնուպոլսից Զեյթուն ուղևորվեց Մելիքյան Հովակիմը։ Զեյթունի անդրանիկ գաղափարական քարոզիչը սկզբում ուսուցչի պարտականություն էր կատարում, սակայն ուներ այլ խնդիրներ ևս։ Հ. Մելիքյանը ինքնապաշտպանական խմբեր էր կազմակերպում, զենք գնում, առավելապես ազատասիրական գաղափարներ սերմանում, ձգտում ժողովրդին ոտքի հանել սուլթանական լծի դեմ[31]։ Հ. Մելիքյանը նպատակադրվել էր չսահմանափակվել Զեյթունով, այլ կամրջել արևելահայերի ու արևմտահայերի ազատասիրական բաղձանքները, Կովկասից դրամական օգնություն ստանալով՝ զարկ տալ զենքի արտադրությանը։ Մելիքյանը այնպիսի ազդեցություն ուներ, որ Զեյթունի չորս իշխանները նրան կարգում են իրենց ընդհանուր ղեկավար՝ վալի[32]։ Մելիքյանը կառուցել տվեց մի ընդարձակ դպրոց, ռազմական նշանակություն ունեցող ամրություններ և, իր գործունեությունն ընդարձակելու մտադրությամբ ճանա-

29 «Հայ նոր գրականության պատմություն», ՀՍՍՀ ԳԱ գրականության ինստիտուտ, հատ. 2, Երևան 1962, էջ 305։

30 «Զեյթունի պատմագիրք», էջ 798—820։

31 Տե՛ս Զէյթունցի, Զեյթունի անցյալեն և ներկայեն, մասն Ա, 91—92։

32 *Esat Uras*, Tarihte ermeniler ve ermeni meselesi, 1950, Ankara, էջ 494։

պարհվեց Ռուսաստան՝ հանգանակություն կատարելու։ Սակայն Էրզրումում նա ձերբակալվեց ու հրապարակավ կախաղան հանվեց։

Մելիքյանին հաջորդեցին շատերը, սակայն նրանց մեջ առավել ուշադրության արժանի է Եղիա Տնտեսյանը (1834—1881)։ 1862 թ. հուլիսի 24-ին Կ. Պոլսից Ադանայի և Սսի վրայով նա մեկնեց Հաճըն։ Տնտեսյանը հայտնի նրաժշտագետ էր, ուսուցիչ, «Անձնվեր ընկերության» անդամ, որը և Տավրոս մեկնելիս հանձնարարություն ուներ ազատասիրական գաղափարների պրոպագանդ մղել ժողովրդի մեջ։ Հուլիսի 24-ին Ադանայից, սեպտեմբերին Հաճընից Տնտեսյանի գրած նամակներից ակնհայտ է, որ նա պատասխանատու խնդիր լուծելու պարտավորություն ուներ, ինչպես նաև «գաղտնապահ բարեկամներ»[33]։ Հայրենասեր ուսուցիչը Կիլիկիայում, հատկապես Հաճընում ու Զեյթունում, մնաց մինչև 1863 թ. հուլիսի 18-ը[34]։ Տնտեսյանը զեյթունցիներին հայրենասիրական եռանդ ներշնչեց, հանձնեց «Անձնվեր ընկերության» հանգանակած դրամը և մեկ տարի հետո միայն վերադարձավ մայրաքաղաք։

Ե. Տնտեսյանի հետ մերձավոր հարաբերությունների մեջ էր երիտասարդ Գրիգոր վարդապետ Ապարտյանը, որը կապում էր Կ. Պոլիսը Տավրոսի, Տավրոսը՝ Փարիզի հետ։ Անշուշտ հայրենանվեր այս սուրհանդակն էր, որն հիշատակվում է Ս. Թագվորյանի Մ. Նալբանդյանին առաքած հանրահայտ նամակում[35]։

Զեյթունի ապստամբության ղեկավարների, Տավրոսից Պոլիս ժամանած պատվիրակների հետ գործարար կապեր էին պաշտպանում 1860 թ. հիմնըված «Բարեգործական ընկերության» անդամների մի մասը, մասնավորապես նրա ձախ թևը։ «Բարեգործականի» ատենադպիր Մկրտիչ Պեշիկթաշլյանը 1862 թ. հոկտեմբեր-նոյեմբեր ամիսներին մի քանի անգամ ընդունում է Զեյթունից եկած սուրհանդակներին, մանրամասն տեղեկանում գավառի դրությանը, իր մոտ հավաքում «գաղափարամերձ անձնավորություններին» և ապստամբներին նյութական օգնություն և բարոյական աջակցություն ցույց տալիս։

Ապստամբությունից որոշ ժամանակ անց Մ. Պեշիկթաշլյանը և Երեմիա Տևկանցը ստանում են երկու նամակ Զեյթունից։ Նամակները Պոլիս էր բերել Տեր Հակոբը, իսկ քիչ անց մայրաքաղաք էր եկել Մնացական Սեմիրճյանը (Զեյթունցին)։ Պեշիկթաշլյանը և Երեմիա Տևկանցը ապստամբների սուրհանդակներին մեկ ամիս պահում են Կ. Պոլսում, ապա նոյեմբերի վերջերին տեղի ունեցած պոլսահայ մտավորականների մի ժողովում որոշում են նամակներ ուղարկել Զեյթուն։ Նամակները պատրաստում է Մկրտիչ Պեշիկթաշլյանը՝ խոստանալով օգնություն հասցնել նրանց։ Այս նիստին

33 Վ. Զարդարյան, Հիշատակարան, հայ երևելիներու կենսագրությունները, լուսանկարները, ձեռագիրները, գրությունները, հատ. Ա, Կ. Պոլիս, 1910, էջ 343 և հետ.։

34 Հ. Պողոսյան, Հաճընի ընդհանուր պատմություն և շրջակա Գոզան-տաղի հայ գյուղերը, Լոս-Անջելոս, Կալիֆորնիա, 1942, էջ 421—424։

35 Տե՛ս Աշոտ Հովհաննիսյան, Նալբանդյանը և նրա ժամանակը, հատ. 1, էջ 498, տե՛ս նաև «Փարիզ», 1862, № 64։

մասնակցում էր նաև Զեյթունով խանդավառված Պոլսի հայոց պատրիարքարանի նորընտիր դիվանապետ Մատթեոս Մամուրյանը[36]։

1862 թ. նոյեմբերի 16-ին կրկին Պոլիս եկած Գրիգոր վարդապետ Ապարտյանը, Մ. Պեշիկթաշլյանի բնակարանում, նրա «համակիրներին» տեղեկացնում է Զեյթունում տիրող իրադրության, իշխանների մտադրության մասին։

1862 թ. դեկտեմբերի 12-ին Կոստանդնուպոլիս են ժամանում զեյթունցիների նոր պատվիրակները՝ Տեր-Մովսեսը, Աստվածատուր և Ղազար իշխանները, նրանց սպասավոր Կարապետը[37]։ Այս նոր պատվիրակությունն ավելի հարուստ տեղեկություններ հաղորդեց պոլսահայ առաջադեմ մտավորականությանը, ընդունվեց «Բարեգործական ընկերության» գործադիր ու ղեկավար կազմի կողմից և Զեյթուն տեղափոխեց «Գավառական տառապելոց նպաստի անվամբ» կոչված ընկերության հանգանակած դրամի մի մասը։ Նախքան Զեյթուն մեկնելը պատվիրակությանն ընդունեց պատրիարքական տեղապահ Ստեփանոս Մաղաքյան եպիսկոպոսը։ Պատվիրակության անդամները նրա ընկերակցությամբ այցելեցին արտաքին գործերի մինիստր Ալի փաշային, Մովսես քահանայի միջոցով հաղորդեցին Զեյթունում տիրող դրության մասին[38] և կառավարությանը հանձնեցին Մ. Պեշիկթաշլյանի, Մ. Մամուրյանի, Ե. Տեկյանցի խմբագրությամբ իշխանների կազմած դիմումը։

Այսպիսով, Մնացական Սեմերճյանի, Մովսես քահանայի, տեր Հակոբի, Տավրոսից եկած այլ հայ պատվիրակների միջոցով Մկրտիչ Պեշիկթաշլյանը, Հովհաննես ավագ քահանա Մկրյանը, Երեմիա Տեկյանցը, երիտասարդ վարդապետ Մկրտիչ Խրիմյանը և նրա սան ու ապագա զինակից Գ. Սրվանձտյանցը ապստամբությունից հետո զեյթունցիների հետ գործարար կապերի մեջ էին։ Մտավորականների և հայրենասերների մի ամբողջ բույլ էր այդ, որը համահավաքում էր նրանց մեկ ընդհանուր նպատակի՝ ժողովրդի ազատագրման համար։ Այնուամենայնիվ, այս գործիչներն ապստամբների հետ կապեր հաստատեցին կամ արձագանքեցին շարժմանը՝ նրա բռնկումից հետո միայն։

Հայ ազատագրական շարժման պատմության համար հետաքրքիր վավերաթուղթ է Պաղտասար Նորատունկյանի նամակը։ Նորատունկյանը 1862 թ. Փարիզում էր և մասնակցում էր Վ. Լանգլուայի նախագահությամբ Ֆրանսիայի մայրաքաղաքում կազմված, Մարաշի կոտորածների պատճառով տուժած ընտանիքներին օգնություն հասցնող հանձնաժողովի աշխատանքներին, որին անդամակցում էին Կ. Շահնազարյանը, Ա. Մուրադյանը և ուրիշներ[39]։ 1863 թ. Նորատունկյանն անցավ Եգիպտոս, քիչ հետո եղավ Հռոմում, որտեղից և հոկտեմբերի 21-ին Պոլիս առաքեց իր ծրագիր-նամակը՝ Հայաստանի ազատագրման վերաբերյալ։

Նամակում ասվում էր, թե նա տեսակցություն է ունեցել լեհ իշխան Չարտորիժսկու հետ, որն առաջարկել է հայերից զորախումբ կազմել՝ «ի

36 Մատենադարան, ձեռագիր 4177, էջ 14—20։

37 Նույն տեղում, էջ 26բ։

38 Նույն տեղում, էջ 28ա, տե՛ս նաև «Մասիս», 1862, 22 դեկտեմբերի։

39 Տե՛ս Աշոտ Հովհաննիսյան, նշվ. աշխ., էջ 559։

նպաստ լեհական հեղափոխություն»։ Չնայած Նորատունկյանը տեսակցություն էր գնացել ֆրանսիացի «հայտնի ծովակալին», նրանից տեղեկացել լեհ հեղափոխականների ծրագրի մանրամասներին, սակայն գաղափարամերձ Մ. Պեշիկթաշլյանի նման վստահություն չէր ցուցաբերում ֆրանսիական ծրագրին, այն է՝ Կ. Պոլսից մարդիկ ուղարկել Բարձր Հայք, այնտեղ կազմակերպել հայ և քուրդ «քաջամարտիկներ», արշավել Վրաստան և Ռուսաստան, թուլացնել ցարական կառավարությանը և դրանով նպաստել Լեհաստանի ազատագրմանը։

Պ. Նորատունկյանը մերժում էր լեհ-ֆրանսիական ծրագրերը, բացասաբար արտահայտվում Բոնապարտի մասին, սակայն դրվատում ֆրանսիական հեղափոխության գաղափարներն ու պայքարի մեթոդները։ Նա առաջարկում էր ապստամբական ոգի ներարկել հայերին, ազգի փրկությունը որոնել նրա սեփական ուժերի մեջ։ Նորատունկյանը տրտնջում էր Նապոլեոնին օգնության դիմողներից, ասելով, որ «Զեյթունի գործը խայտառակ կերպով վերջացավ», միաժամանակ պահանջում «եռյակների» սիստեմով ստեղծել ընդհատակյա կոմիտեներ, հիմք դնել Հայաստանի ազատագրումը նախաձեռնող եռանձնյա կամ հինգ հոգուց բաղկացած մասնաժողովի[40]։ «Կարելի է հարցնես թե ո՞վ կարող է այդպիսի ծանր բեռի մը տակ մտնելով, հաջողիլ զատոնք գործադրելու։

Այն ժամանակ պիտի պատասխանեմ. ՄԵՆՔ և միմիայն հետևյալ հոդվածներն անմիջապես հավատով ընդունելով։ Ա. մասնաժողով մը երեք կամ հինգ անդամներե բաղկացյալ։ Բ. պաշտոնն, ազգիս արտաքին գործերն վարել։ Գ. նպատակն. Հայաստանի շղթաները խորտակել»[41]։

Մեծ ակնածանքով էր խոսվում Մ. Պեշիկթաշլյանի մասին։ Հիշյալ նամակը գտնվել է Գ. Սրվանձտյանցի թղթերի մեջ։ Սրանից զատ հայտնի այլ տվյալներ չեն հրապարակվել վերոհիշյալ ծրագրի մասին։ Սակայն այսքանն էլ բավարար է եզրակացնելու, թե Զեյթունով խանդավառված վերոհիշյալ անձնավորությունները երկնում էին ընդհանուր Հայաստանի ազատագրման ծրագրեր։ Այդուհանդերձ, նրանք նախընտրում էին պայքարի դավադրական մեթոդներ և հեռու էին ազգային-ազատագրական լայնահուն շարժումներ կազմակերպելու մտադրությունից։

1870 թ. ֆրանս-պրուսական պատերազմի օրերին ֆրանսիական կառավարությունը, լեհերին իր շահերին ծառայեցնելու, բանակում զինվորագրելու մտադրությամբ, կրկին հրապարակ հանեց լեհական հարցը։ Նապոլեոն III-ը լեհ վտարանդիներին հավաստիացնում էր, թե Ավստրիայի ու Պրուսիայի դեմ մղվող պատերազմի հաղթական ավարտից հետո Ֆրանսիան կօգնի լեհական վտարանդիներին, կվերականգնի նրանց երկրի անկախությունը։

Ոգեշնչված այս առաջարկով, Կ. Պոլսում և ընդհանրապես Թուրքիայում ապրող լեհ վտարանդիները ջանացին կապեր հաստատել սուլթանից ու ցարական կառավարությունից դժգոհ Կովկասի ժողովուրդների ներկայացու-

40 Տե՛ս Աշոտ Հովհաննիսյան, նշվ. աշխ., էջ 561—562, տե՛ս նաև Մ. Ներսիսյան, նշվ. աշխ., էջ 141—142, նամակի տեքստը տե՛ս «Դիվան հայոց պատմության», գիրք ԺԳ, էջ 57—58։

41 «Դիվան հայոց պատմության», գիրք ԺԳ, էջ 57։

ցիչների հետ, ծրագրեցին վերահաս ապստամբությանը մասնակից դարձնել նրանց. հաղթանակի դեպքում «անկախություն կստանային բոլորը, այդ թվում և հայ ժողովուրդը»։ Գեներալ Իգնատևը 1871 թ. հունվարի 5-ին Կոստանդնուպոլսից գաղտնի խորհրդական Վեստմանին տեղեկացնում էր[42], թե լեհերն արդեն ակտիվ պրոպագանդ են մղում Թուրքիայում ապրող հայերի, վրացիների, նույնիսկ մահմեդականների մեջ, ունեն բազմաթիվ կողմնակիցներ, նրանց միջոցով կապեր են հաստատել Թիֆլիսում, Երևանում, Ղարաբաղում և այլուր խարսխված «կազմակերպության» կենտրոնների հետ։ Կոմիտեի ներկայացուցիչ հայերը և վրացիները իբրև թե հանգանակությամբ դրամ են հավաքում, զինապահեստներ ստեղծում, զենք տեղափոխում ու մըթերում, մի խոսքով «նախապատրաստվում ապստամբության»[43]։ 1871 թ. հունվարի 16-ին Կովկասի փոխարքան կայսրին զեկուցում էր, թե Իգնատևի հաղորդագրությունը ոչ ամբողջապես, բայց և այնպես հաստատվում է[44]։

Ցարական կառավարող շրջանները հակահարվածի նախապատրաստություններ էին տեսնում։ Գաղտնի գրություններ էին ուղարկվում Երևանի, Թիֆլիսի, Ղարաբաղի, Քութայիսի, Ելիսավետպոլի, Բաքվի, Ստավրոպոլի, Թերեքի, Կուբայի, Դաղստանի կառավարիչներին։ Զորքը կազմ ու պատրաստ էին պահում, ցարական պահնորդական բաժնի գործակալները վխտում էին ամենուրեք։ Սակայն, ինչպես հայտնի է, նման ապստամբություն տեղի չունեցավ։ Ըստ երևույթին, դրան խանգարեց Ֆրանսիայի պարտությունը։

1870 թ. իրադարձությունների մասնակիցները, որոնք կապված էին լեհերի հետ, կտրված էին ժողովրդից և պայքարի դավադրական, եվրոպացիների «օգնությամբ» անկախություն ստանալու անիրականանալի ու խաբուսիկ մեթոդը գերադասում էին համընդհանուր ժողովրդական հեղափոխական շարժումներից։

Զեյթունի ազատագրական շարժման հարցերով առավելապես հետաքրքրվել են Միքայել Նալբանդյանը, Հարություն Սվաճյանը, Սերովբե Թագվորյանը, Հովհաննես Քյաթիպյանը, Կարապետ Փանոսյանը, որոնք արտահայտում էին աշխատավորության շահերը և ձգտում հայ ազատագրական պայքարը շաղկապել համասլավոնական, ինչպես նաև իտալական հեղափոխական շարժումների հետ։

1850-ական թթ. վերջերի, առավելապես 1860-ականների սկզբի հայ ազատագրական շարժման մեջ մեծ դեր է խաղացել հեղափոխական-դեմոկրատ Միքայել Նալբանդյանը։ Նա գաղափարապես լուրջ աշխատանք ծավալեց և՛ արևելահայ, և՛ արևմտահայ հատվածներում։

1862 թ. ցարական ոստիկանության կողմից Նոր Նախիջևանում Մ. Նալբանդյանի տանը կատարած խուզարկության ժամանակ հայտնաբերվեցին մի շարք փաստաթղթեր, որոնք լույս սփռեցին նրա արտասահմանյան գործունեության վրա։ Հայտնի է, որ Մ. Նալբանդյանը 1860 թ. նոյեմբերի 22-ից մինչև դեկտեմբերի 21-ը առաջին անգամ և 1861 թ. նոյեմբերի 20-ից մինչև

---

42 Վրացական ՍՍՀ ԿՊՊԱ, ֆ. 5, ց. 1, գ. 2093, թթ. 1—2։

43 Նույն տեղում։

44 Նույն տեղում, թ. 5։

դեկտեմբերի 27-ը երկրորդ անգամ եղել էր Կոստանդնուպոլսում։ Նա եղել էր նաև Փարիզում, Լոնդոնում, Իտալիայում, Հնդկաստանում։

Ցարական ոստիկանության հայտնաբերած մի նամակից՝ գրված 1862 թ. մայիսի 14-ին, Ս. Թագվորյանի կողմից և այլ փաստաթղթերից պարզվում է, որ Նալբանդյանը կապեր էր հաստատել ռուսական և իտալական հեղափոխական-ազատագրական շարժման ղեկավարների հետ[45]։ Նա մշակել է ծրագրեր Հայաստանի ազատագրման մասին, համաձայնեցրել արտասահմանյան վտարանդի բարեկամների հետ, ստացել նրանց հավանությունը։ Նամակից երևում է, որ Մ. Նալբանդյանը, Հ. Սվաճյանը, Ս. Թագվորյանը և Հ. Քյաթիպյանը խոստացել էին զինված ուժեր կենտրոնացնել մի որևէ տեղ, հավանաբար Կիլիկիայում կամ Պոնտոսի ծովեզրին, գաղտնի խմբակ հիմնել, լրագիր հրատարակել, սվինավոր հրացաններ, թնդանոթներ, ռումբեր, վառոդ արտադրել ու մթերել, դրամ հավաքել, ապստամբություն բարձրացնել։ Բազմաթիվ փաստեր կան ենթադրելու, որ Մ. Նալբանդյանի պոլսահայ բարեկամները կապվելու էին կամ արդեն կապված էին Գերցենի, Մաձձինիի, Բակունինի և այլոց հետ. նրանց ուշադրությունը սկզբից ևեթ կենտրոնացած է եղել Կիլիկիայի՝ Զեյթունի վրա։

Այսպիսով, Մ. Նալբանդյանին գաղափարամերձ մտավորականները Կ. Պոլսում ծավալել են նաև ընդհատակյա գործունեություն, խոստացել հիմնել գաղտնի կոմիտե, կատարել Եվրոպայի ու Ռուսաստանի ազատագրական պայքարի ղեկավարներին իրենց ուսուցչի տված խոստումները։ Զեյթունի հերոսական ապստամբությունից ամիսներ առաջ Մ. Նալբանդյանը և նրա պոլսահայ բարեկամները մտահոգվել էին տավրոսահայության բախտով, դրամ էին հավաքել ու հանձնել նրանց, հնարավորություն ընձեռել՝ զենք գնելու համար։

Պարզվում է, որ Ս. Թագվորյանը բանակցություններ է վարել Զեյթունում ազատագրական շարժումներ կազմակերպելու վերաբերյալ, այդ նպատակով էլ դրամ է հանձնել Կիլիկիայից Կ. Պոլիս եկած վարդապետին՝ զենք, զինամթերք գնելու և այնտեղ փոխադրելու համար։ Ինչպես Մ. Նալբանդյանը, այնպես էլ Պոլսում եղած «քսան-երեսուն» մտավորականները 1862 թ. գարնանը տեղյակ են եղել Զեյթունի իրադարձություններին և ձգտել են Տավրոսի ու մայրաքաղաքի հայության մեջ կապեր ստեղծել։ Հատկանշական է, որ Նալբանդյանն ուսումնասիրում էր Ռուսաստանում, Անգլիայում, Ֆրանսիայում վառոդ պատրաստելու տեխնիկան, մի բան, որ իրեն, ըստ երևույթին, պետք պիտի լիներ առաջիկայում[46]։

Մ. Նալբանդյանի, Հ. Սվաճյանի, Ս. Թագվորյանի և այլոց՝ Զեյթունի հետ ապստամբությունից առաջ ունեցած կապերի կամ Արևմտյան Հայաստանում ազատագրական շարժումներ կազմակերպելու օգտին է խոսում ծածկագիր այն բառարանը, որը կազմվել էր հավանաբար Կ. Պոլսում, արևմտահայերեն, և բաժանվել գործին մասնակից, տարբեր քաղաքներում ու եր-

---

45 Տե՛ս Մ. Նալբանդյան, Անտիպ երկեր, խմբագրությունը և կոմենտարները Աշոտ Հովհաննիսյանի, Երևան—Մոսկվա, 1935, էջ 442 և հետ.։

46 Տե՛ս Մ. Գ. Ներսիսյան, նշվ. աշխ., էջ 137—138։

կրրներում ապրող հայ դեմոկրատներին, իրար հետ նամակագրական կապեր պահպանելու նպատակով։ Ծածկագիրը Մ. Նալբանդյանի թղթերում հայտնաբերել է ցարական ոստիկանությունը, որի բառացանկում գտնում ենք. «վաճառականության տուն մը բանալ —Զօրք կենտրոնացնել և շատցնել տեղի մը մեջ: Սեղանավոր մը ունենալ տեղի մը մեջ —Քոմիթե ունենալ տեղի մը մեջ: Քրիդիթ ունենալ —Լրագիր հաստատել տեղի մը մեջ: Սամսոնի բարեկամ —Ռուս: Լոնդոնի բարեկամ —Հերցեն: Ճենովայի բարեկամ —Իթալիա: Լիվոռնոյի բարեկամ —Կարիպալտի: Պոլսո բարեկամ —Տաճկաստան, Հիվանդ —Հայաստան: Բամբակ —Կիլիկիա: Փարիզի բարեկամ—Չարտորիժսկի: Պարոն Մարտիրոս —Մածծինի: Պարոն Ալմինքար —Պաքունին: Ժամացույց —Սվինավոր հրացան: Քրոնոմեթր —թնդանոթ: Ալյուր —վառոդ: Շորյան —ռումբ: Ռեքոլթեն (հունձք—խմբ.) առաջ ստակ տալ երկրագործաց կամ վաճառականաց —Ազգայնություն զարթեցնել տեղի մը մեջ: Պաղ բռնել կամ ապրանք մը գնելու համար ինքը զինքը հոժարամիտ չցցնել —Ապստամբություն (ընդգծումները մերն են խմբ.)»[47]:

Բառերի այս բացատրությունները գալիս են լրացնելու Ս. Թագվորյանի նամակը և վկայում են, որ Մ. Նալբանդյանն ու արևմտահայ դեմոկրատները մտադրվել էին արևմտահայության մեջ ծավալել հայրենասիրական գաղափարներ և ժողովրդին զինելով՝ կապել Լոնդոնում գործող ռուս հեղափոխական դեմոկրատների, ինչպես նաև իտալական ազատագրական շարժման գործիչների՝ հատկապես Մաձձինիի հետ։

Ենթադրվում է, որ Պոլսում ստեղծվել է նաև «Մասոնական օթյակ», որը ղեկավարել է Ս. Թագվորյանը կամ Հ. Սվաճյանը։

Մասոնական կազմակերպություններ ստեղծվեցին նաև Զմյուռնիայում։ «Տիգրան» ժողովարանը հիմնվեց «Օտտո-Ֆելոզից»՝ «Հայկ կամ Օրիոնից» հետո, նրանից անկախ և անմիջականորեն ենթարկվում էր Մանչեստրի բաժանմունքին[48]։ 1864 թ. Պոլսի Գում-Գափու թաղամասում հիմնվեց «Արամ» ժողովարանը[49]։ Անգլիական մասոնությանը ենթարկվող բոլոր այս կազմակերպություններն էլ հեռու էին նալբանդյանական կոմիտեներ լինելուց։ Սակայն եղել են մտավորականների խմբեր, որոնք կազմակերպություն են ըստեղծել 1866 թ., ունեցել են դեմոկրատական կազմ և գործել են գաղտնի։

XX դարի քսանական թթ. սկզբներին Կոստանդնուպոլսի մի նպարավաճառի խանութում, պատահաբար, Ռուբեն Բերբերյանի ձեռքն է ընկնում սևագիր թղթերի մի կապոց, որը պարզում էր մայրաքաղաքում հիմնված «Սեր» ընկերության գործունեությունը, բացահայտում նրա մասնակիցների կազմը, հետապնդած նպատակները, կապը դրսի երկրների հետ։

Ըստ Բերբերյանի հրապարակած վավերագրերի, «Սեր» օթյակը գաղտնի «ֆրեր-մասոնական» կազմակերպություն էր։ Այն հիմնվել էր 1866 թ. մայիսի 7-ին, Պոլսի Գույե Գափու թաղի Եազըճի փողոցի № 21 տանը։

«Սեր» օթյակն ուներ անդամների բավական մեծ թիվ։ Ընտրվել էր գոր-

---

47 Մ. Նալբանդյան, Երկերի լիակատար ժողովածու, հ. 4, Երևան, 1949, էջ 283—284։
48 «Արշալույս Արարատյան», 1866, № 795։
49 «Մասիս», 1864, № 654։

ծադիր և ղեկավար մարմին՝ հանձին Մատթեոս Մամուրյանի (եղբայրության հռետոր), Հ. Սվաճյանի, Ս. Թագվորյանի, Ե. Տնտեսյանի, Ս. Հեքիմյանի, Թոմանոս Սեթեֆճյանի, Մ. Երեմյանի, Էքշեշյանի։ Իբրև հյուրեր կանչվում էին Գր. Չիլինկիրյանը, Հ. Նորատունկյանը, որոնց մասնակցությունը պատճառիթ բնույթ էր կրում Կ. Պոլսում քիչ լինելու պատճառով։ 1867 թ. ընդունվեցին նաև երեք նոր անդամներ՝ բողոքական Ղազարոս Դավութը, հայ ազգային միությունների վարչության անդամ Սիմոն Մաքսուտ բեյը և քնարերգու բանաստեղծ Մկրտիչ Պեշիկթաշլյանը[50]։

«Սեր» ընկերության նշանաբանն էր՝ գիտություն, աշխատանք, ազատություն, եղբայրություն, իսկ քիչ հետո ընդունվեցին ֆրանսիական հեղափոխության կոչերը՝ ազատություն, հավասարություն, եղբայրություն։

«Սեր» ընկերության ժողովներում լսվում էին զեկուցումներ։ 1866 թ. հունիսի 5-ին Մամուրյանը «Սեր» ընկերության դռնփակ նիստում կարդաց «Միքայել Նալբանդյանց» զեկուցումը, որը «Մ. Մ.» ստորագրությամբ տըպագրվեց «Մեղու» հանդեսի նույն թվականի հուլիսի 15-ի համարում։

Այսպիսով, 1860-ական թթ. Թուրքիայի առափնյա քաղաքներում կազմակերպված մշակութային բազմաթիվ ընկերությունների կողքին հիմնվել է նաև գաղտնի ընկերություն, որի նպատակն էր Արևմտյան Հայաստանի ոչ միայն լուսավորությունը, տնտեսական զարգացումը, այլև քաղաքական ազատագրումը։ Նույն տարիներին Մոսկվայում, Բաքվում, Թիֆլիսում ևս հիմնադրվում են մշակութային մի շարք ընկերություններ, աշակերտական խմբակներ, որոնց մասնակիցների մեջ կային նաև դեմոկրատական հովերով տարված մտավորականներ։

Ժողովրդին ազգային-ազատագրական պայքարի ոգեկոչող խմբակներ են հիմնադրվել նաև Արևելյան Հայաստանում, մասնավորապես Ալեքսանդրապոլում։ Սահմանամերձ այս քաղաքն, ունենալով արհեստավորական բազմաթիվ կազմակերպություններ, առևտրական մերձավոր կապեր Թուրքիայի հետ, քաջատեղյակ էր սուլթանների մագիլներում խոշտանգվող արևմտահայ եղբայրների դրությանը։

1868 թ. հունիսի 1-ին Ալեքսանդրապոլի վիճակային դպրոցին կից բացվում է «Որբախնամ» ընկերություն, որն ուներ 100 անդամ և միավորում էր քաղաքական տարբեր հայացքներ ունեցող անձնավորությունների։ 1869 թ. սկզբներին «Որբախնամ»-ը պառակտվում է. նրա ձախ թևին պատկանող անդամների նախաձեռնությամբ ապրիլ ամսին հիմնադրվում է «Բարենպատակ ընկերությունը»։ Ընկերության նախաձեռնողն ու ղեկավարը տեղի մասնավոր դպրոցի ուսուցիչ Արսեն Կրիտյանն էր, նրա օգնականը՝ Պետրոս Հայկազունին[51], որոնք իրենց շուրջն էին համախմբել 43 անդամների և ձևավորել «Բարենպատակը»։ Այդ ընկերության մեջ ընդգրկված էին ուսուցիչներ, աշակերտներ, արհեստավորներ, ծառայողներ։ «Բարենպատակն» ուներ իր կանոնադրությունը, Ալեքսանդրապոլում և նրա մերձակայքում գաղտնի ժո-

---

50 Տե՛ս Հայկ Ղազարյան, նշվ. աշխ., էջ 519—524։

51 Տե՛ս Վ. Ա. Պարսամյան, Հայ ազատագրական շարժումների պատմությունից, Երևան, 1958, էջ 119—164, տե՛ս նաև Մ. Գ. Ներսիսյան, նշվ. աշխ., էջ 141—146։

ղովներ էր գումարում, քննարկելով հայ ժողովրդին այդ պահին հուզող քաղաքական ազատագրության, ինչպես նաև հայոց լեզվի, գրականության, պատմության դասավանդման, դպրոցական ուսուցման և այլ խնդիրներ։

Ընկերությունը հետաքրքրվում էր Արևմտյան Հայաստանի ճակատագրով, ձգտում այնտեղ ապստամբական շարժումներ կազմակերպել, ժողովրդին ոտքի հանել սուլթանական բռնապետության դեմ։ Ա. Կրիտյանը չափածո տողերով երանի էր տալիս այն մարդկանց, որոնք կարող էին ազատ ու անկաշկանդ ապրել իրենց հայրենիքում։ Նա հայերին կոչ էր անում. «մի՛ հապաղեք հայեր շարժվելու դեպի Հայաստանի կենտրոնը», իսկ Հայաստանի կենտրոն ասելով Արսեն Կրիտյանը հասկանում էր Վասպուրականը։ Ընկերության անդամ Պետրոս Հայկազունին այդ նույն նպատակով անցավ Արևմտյան Հայաստան, ճանապարհորդության ընթացքում ուսումնասիրեց երկիրը, վերադարձին հանգանակություն կատարեց՝ զենք գնելու և այնտեղ առաքելու նպատակով։

«Բարենպատակ ընկերության» անդամները կապերի մեջ էին Կոստանդնուպոլսի հայ առաջավոր մտավորականների հետ։ Նրանք Հ. Ծսայանի միջոցով այնտեղից ստանում էին գրականություն, պարբերական մամուլ, մասնավորապես Ռուսաստանում արգելված գրքեր, այդ թվում Մ. Նալբանդյանի «Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ» աշխատությունը։

«Բարենպատակ ընկերությունը» գործեց շուրջ վեց տարի, գոյություն ունեցավ մինչև 1875 թ. ապրիլ ամիսը, երբ Երևանի նահանգական ժանդարմական վարչության պետ մայոր Զոլոտովսկին հայտնաբերեց խմբակը[52], խուզարկություններ կատարեց, ձերբակալեց ընկերության գրեթե բոլոր անդամներին։ Մեկ տարի անց կայացվում է համեմատաբար մեղմ դատավճիռ, հավանաբար այն պատճառով, որ «Բարենպատակի» գործունեության սուր ծայրն ուղղված էր մի պետության դեմ, որին Ռուսաստանը բարյացակամորեն չէր վերաբերվում։

Այսպիսով, 1850-1860-ական թթ. հայ իրականության մեջ հասարակական-քաղաքական ակտիվ գործողությունների սկզբնավորման տասնամյակներ էին։ Սակայն գործող խմբակները տակավին իրար հետ շաղկապված չէին։ Մտավորականությունը կտրված էր գավառից, անհրաժեշտ չափով տեղյակ չէր ժողովրդի վիճակին և կապված չէր նրա հետ։ Այդուհանդերձ, Զեյթունի 1862 թ. ապստամբության արձագանքը Հայաստանի երկու հատվածներում, աշխարհասփյուռ հայ գաղթօջախներում, գաղտնի կազմակերպությունների երևան գալը պատահական չէին։ XIX դարի երկրորդ կեսին զգալի տեղաշարժեր կատարվեցին երկրի սոցիալ-տնտեսական կյանքում, ուժեղացան տնտեսական, կուլտուրական-գաղափարական կապերը երկու հատվածների միջև. Թուրքական բռնապետական լծից արևմտահայության ազատագրման խնդիրն արդեն հուզում էր ողջ հայ ժողովրդին, ուժեղանում էր նրա ազգային կոնսոլիդացիայի պրոցեսը, որն իր հերթին նպաստում էր համազգային մշակույթի զարգացմանը։

---

52 Տե՛ս Վ. Ա. Պարսամյան, Հայ ազատագրական շարժումների պատմությունից, էջ 163—164։

1850—1860-ական թթ. ձևավորվեց և քաղաքացիության իրավունք ստացավ հայ աշխարհաբար գրական լեզուն իր երկու՝ արևելահայ և արևմտահայ ճյուղերով։ Լուսավորական համազգային շարժումը հաղթանակ տարավ գրաբարի, կղերա-ֆեոդալական մտայնության դեմ։ Ձևավորվեց ու զարգացավ աշխարհաբար, աշխարհիկ գրականությունը, բարեփոխվեց հայկական դպրոցը, հիմնադրվեց ազգային թատրոնը, ստեղծվեց հայկական անդրանիկ օպերան, նոր հուն ընտրեց գրատպությունը։

Հայ մտավորականությունը, հատկապես դեմոկրատ գործիչները, տոգորվում են ազգային գաղափարներով, մշակում ազգային-ազատագրական շարժման գաղափարախոսություն, քաղաքական կապեր են դարբնվում արևելահայ ու արևմտահայ հատվածների միջև։ Այսպիսով, հիշյալ տասնամյակների «կուլտուրական վերածնությունը», հայ ազգության կազմավորման, ժողովրդի գաղափարական հասունացման, գրական-կուլտուրական վերելքի արտահայտություններն էին՝ այն դեպքում, երբ սուլթանական բռնապետության դեմ ուղղված հայ ազատագրական շարժումն ընդունում էր համազգային ձև և համադեմոկրատական բովանդակություն։

## 4. ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵԼՈՒՅԹՆԵՐԸ ԱՐԵՎՄՏՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Հայ հասարակական-քաղաքական ու ազատագրական շարժումները ծավալվում էին ոչ միայն Կիլիկիայում, գաղութահայ օջախներում, այլև Արևմտյան Հայաստանի մի շարք գավառներում։ Մուշի, Վանի, Կարինի, Դերսիմի հայ ռայան բողոքագրերով, ցույցերով ու զինված ելույթներով դիմագրավում էր սուլթանական բռնապետությանը, քուրդ ցեղապետերի հարկային ճնշումներին, կրոնական խտրականությանը, իր ֆիզիկական գոյությանը վերջ տալու ահավոր փորձերին։ Ջնախապատրաստված, անկազմակերպ և տարերային ձևով ոտքի էր կանգնում Արևմտյան Հայաստանի հայ աշխատավորությունը, զենքը ձեռքին պաշտպանում իր պատիվն ու իրավունքը։ Այս առումով ուշագրավ փորձեր է արել Վանի հայ ազգաբնակչությունը։

Վասպուրականն Արևմտյան Հայաստանի սիրտն էր, նրա հայաշատ և համեմատաբար լուսավորված գավառը։ Հայրենիք վերադառնալով, Մ. Խրիմյանը իր հետ գավառ բերեց պարբերաթերթ հրատարակելու, դպրոց բացելու մտահղացում։ Նա Վարագում հիմք դրեց տպագրական գործին։ Մ. Խրիմյանի ու Գ. Սրվանձտյանցի «Արծվի Վասպուրական», «Արծվիկ Տարոնո» պարբերաթերթերը հայրենիքում լույս տեսնող անդրանիկ հանդեսներն էին, որոնց շուրջը համախմբվեց գավառահայ նորաստեղծ մտավորականությունը։

1860-ական թթ. Թուրքական կառավարող շրջանները ավելի խստացրին ազգային ճնշումներն ու հալածանքները, որոնց ի պատասխան ծայր առավ Վանի 1862 թ. զինված ելույթը։ Նույն թվականի փետրվարի 26-ին «Փարիզ» պարբերականը գրում էր. «Հայաստանի Վան քաղաքի մեջ տաճիկ զինվորները քրիստոնեից խաչը վիրավորելու համար կռիվ եղավ ու միջնաբերդն առնվեցավ։ Երկու կողմեն մեռելոց և վիրավորելոց թիվը հազարը կհասնի»[53]։

53 «Փարիզ», 1862, № 62, 28 փետրվարի։

Վանի ելույթի լուրն անմիջապես տարածվեց հայկական մի շարք գաղթօջախներում։ 1862 թ. ապրիլի 5-ին հնդկահայ պարբերականներից «Եղբայրասերը» հաստատում էր նախորդ հոդվածագրերի հայտնած տեղեկությունները Վանի անցքերի մասին և բանակռիվ մղում նրանց դեմ, ովքեր սուտ էին համարել հրապարակված լուրը[54]։ Մոսկվայում հրապարակվող «Հյուսիսափայլ» ... 

Թեոդոսիայի «Ռադուգա» (Ծիածան) լրագիրը ապրիլի 18-ին տպագրում էր Կ. Պոլսից ստացված մի թղթակցություն, որտեղ հանգամանորեն խոսվում էր Վանի զինված ելույթի, նրա սկսման դրդապատճառների և ընթացքի մասին։

«Ռադուգայի» արևմտահայ թղթակիցը պատմում էր, որ մինչև «Թանզիմաթը» թուրքահպատակ քրիստոնյաները հուղարկավորության ժամանակ զրկված էին հանգուցյալի առջևից խաչ և խաչվառ տանելու իրավունքից։ Սակայն Վանի հայերը «Թանզիմաթից» առաջ և հետո հուղարկավորությունը կատարում էին ավանդական ձևով, բոլորովին չերկնչելով մահմեդականների սպառնալիքներից։ Աբդուլ Մեջիդի մահվանից հետո տեղի թուրքերը ներկայացուցիչներ ուղարկեցին Վանի փաշայի մոտ և պահանջեցին «զսպել հայերին», վերջ տալ հուղարկավորության այդ ձևին, այլապես իրենք կկոտորեն նրանց։ Լուրն իսկույն տարածվեց քաղաքով մեկ։ Հայերը, մի վարդապետի միջոցով, տեղեկացրին փաշային, որ եթե նա թուրքերին թույլ տա իրենց վրա հարձակվելու, օգնության պիտի կանչեն «... բարեկամ քրիստոնյա քրդերին»[56]։

Փաշան խոստանում է կանխել այդ եղեռնը։ Սակայն, կարճ ժամանակից հետո, մահանում են և՛ այդ փաշան, և՛ հայ հարուստներից մեկը։ Հուղարկավորության ժամանակ մոլլաների կողմից «գրգռված տաճիկների» ամբոխը հարձակվում է հայերի վրա, որի պատճառով տեղի է ունենում ընդհարում։ Վանի և շրջակայքի զինված հայերը պաշտպանեցին հուղարկավորության մասնակիցներին։ Նրանց մեջ կային նաև քրիստոնյա քրդեր, որոնք եկել էին շրջակա գյուղերից։ «... Բուն բերդի մեջ սկսվեցավ ձեռամբարձի սոսկալի կռիվը (ծեծք) և կոտորած։ Բերդը մնաց հայերի ձեռքում, որովհետև նրանք թվով շատ էին տաճիկներից։ Ասում են՝ այս և այն կողմից շատ մարդիկ սպանվեցան և վիրավորվեցան, բայց նոցա թվույն վերա լսված համբավները շատ տարաձայն են»[57]։

«Ռադուգայի» Կ. Պոլսի թղթակցի հոդվածը թարգմանաբար տպագրվեց

54 «Եղբայրասեր», 1862, № 4, ապրիլի 5, էջ 30։
55 Մատենադարան, ձեռագիր 4177, էջ 49ա։
56 «Радуга», 1862, 15 ապրիլի։
57 Նույն տեղում։

«Համբավաբեր Ռուսիո» պարբերականում[58]։ Նույն հոդվածը արտատպեցին եվրոպական մի շարք թերթեր, ինչպես նաև «Փարիզ» պարբերականը[59]։

1860-ական թվականներին Արևմտյան Հայաստանում, մասնավորապես նրա քրդախառն հայկական գավառներում՝ Մուշում, Քղում և Ջարսանջակում, քուրդ ցեղապետերի և հայերի միջև զինված ընդհարումներ եղան։ 1863 թ. Մուշի քուրդ բեկերի կատարած անարդարությունների դեմ սկսվեց հայ ազգաբնակչության բողոքը, որը հետագայում վերածվեց զինված ելույթի։ Մուշի ելույթի մասին մահմեդականացած եվրոպացի զինվորականներից Յ. Միլինգենը իր հուշերում պատմում է, թե «Մշո գավառի բազմամարդ հայ բնակչությունը 1863 թվականին բացահայտ ապստամբություն բարձրացրեց իր հարստահարիչների դեմ»[60]։ 1863 թ. ելույթից հետո մշեցիները պատվիրակություն ուղարկեցին Պոլիս՝ Բ. Դռանը բողոքելու։ Բուստ փաշան անհետևանք թողեց նրանց բողոքը, դրա համար էլ պատվիրակները վերադարձան՝ սպառնալով հեռանալ Վրաստան կամ Ռուսաստան։ Մեծ վեզիրը զայրացած հայտարարեց, կարող են գնալ, ուր որ ուզեն և որ ռուսական սահմանները միանգամայն բաց են նրանց համար։ Հայտարարությունից հետո 300 հայ ընտանիք որոշեց գաղթել Ռուսաստան։

Մուշի 1863 թ. ժողովրդական ելույթի մասին հայտնի են միայն կցկտուր տեղեկություններ։ 1865 թ. Կ. Պոլսի Ազգային ժողովը արձանագրում էր. «երբ քաղաքական ժողովը վարչության ղեկը ձեռք առավ, նկատեց, որ իր նախորդին տնօրինմամբ Մուշի ծանր խնդիրը գրեթե լուծված էր»[61]։ Մուշի «ծանր խնդիրը» 1863 թ. ելույթն էր, որն ուղղված էր աշիրաթապետերի դեմ։ Տարիներ հետո Մ. Իզմիրլյանը գրում էր, թե՝ կառավարությունը Մուշի սահմանակից ցեղապետերին «ձերբակալելով՝ նույն երկրեն հեռացուց, և սով ժողովրդյան աշխատությանը մեծ դյուրություն ընծայեց, սակայն այդ աքսորյալ գլխավորներեն ոմանք սկսան վերադառնալ նույն երկիրը, որով ավելի ևս կենդանացավ և գրգռեցավ սոնց բարբարոսությունը»[62]։

1862 թ. սկսած Էրզրումի վիլայեթի Քղի գավառում ևս տեղի ունեցան բողոքի ցույցեր՝ ուղղված տեղի ցեղապետերի դեմ։

Ղրիմի պատերազմից հետո, ինչպես ողջ Էրզրումի վիլայեթում, այնպես էլ Քղիի և Երզնկայի գավառներում տեր ու տնօրեն էին դարձել քուրդ էմիրները։ Սրանք ինքնիշխան կերպով կառավարում էին Քղիի և Երզնկայի գավառները, հաշվետու և հարկատու չլինելով ո՛չ կենտրոնական կառավարության և ո՛չ էլ Էրզրումի վիլայեթի թուրք կառավարիչներին։

Քղիի քուրդ աղաները բռնագրավել էին հայերի հողակտորները, հափշտակել անասունները։ Հարստահարված քրիստոնյաները դրամ են հավաքում և Կ. Պոլսի դատարանում դատ սկսում հարստահարիչ քուրդ բեյերի դեմ։ Այդ բեյերը 1863 թ. Կ. Պոլսում դատվեցին և աքսորի դատապարտվեցին։

58 «Համբավաբեր Ռուսիո», 1862, № 21։

59 «Փարիզ», 1862, № 26։

60 Մ. Գ. Ներսիսյան, նշվ. աշխ., էջ 124։

61 «Ատենագրութիւնք ազգային ընդհանուր ժողովոյ», հ. Ա, Կ. Պոլիս, 1865, («Տեղեկագիր քաղաքական ժողովո, կեդրոնական վարչութեան առ ազգային ընդհանուր ժողովն»), էջ 26։

62 Մատենադարան, Մ. Իզմիրլյանի արխիվ, թղթ. 14, վավ. 616։

Սակայն երկու տարի հետո նրանք վերադարձան իրենց տեղերը և շարունակեցին ասպատակությունները[63]։ Զեյթունի և Վասպուրականի ապստամբություններից գազազած սուլթանական կառավարությունը այժմ հովանավորում էր քուրդ աղաններին, նրանց գրգռում հայերի դեմ։ Բ. Դուռը նրանց ձեռքն է հանձնում Էրզրում—Դիարբեքիր ճանապարհաշինարարության համար հայերից և մյուս ազգություններից բանվորներ հավաքագրելու գործը։ Օգտվելով այդ հովանավորությունից, քուրդ աղաները խտրություն էին դնում ճանապարհաշինարարության համար հավաքագրվող բանվորների միջև, հայերին աշխատանքի էին ուղարկում ավելի հեռու վայրեր, նույնիսկ չվճարելով կոպեկներ կազմող նրանց աշխատավարձը։

Այս ծանր պայմանների պատճառով 1868 թ. Ղղիի գավառի հայերը հրաժարվեցին աշխատող ձեռքեր տալ Էրզրում-Դիարբեքիր ճանապարհի շինարարության համար[64], կազմեցին բողոքագրեր և ուղարկեցին Կ. Պոլսի հայոց պատրիարքարանին ու Ազգային ժողովին։ Քաղաքական ժողովի ընթացքում երեսփոխանների պահանջով երկու դիմում ուղարկվեց Բ. Դուռ, որտեղ պատմվում էր հայերի կրած ճնշումների ու հարստահարությունների մասին։

Դիմումները մնացին անպատասխան։ Հայերը ստիպված եղան նոր դիմումներ ուղարկել սուլթանի պալատականներին, հատկապես մեծ վեզիրին։ Տեսնելով, որ անընդմեջ բողոքագրեր են ստացվում, մեծ վեզիրը հայկական պատրիարքարանին է ուղարկում պատասխան գրություններ, որոնք լի են առաջնորդարանին, հոգևորականությանը և ժողովրդին արված սպառնալիքներով։

Կառավարության՝ հայոց պատրիարքարանի և Ղղիի հոգևոր առաջնորդի վրա բարդած մեղադրանքներից երևում է, որ Մելքիսեդեկ վարդապետն է հրահրել ղղեցիներին՝ հրաժարվել պարհակ կատարելուց, ապա հայերից հավաքել է մի մեծ խումբ, մեկնել Էրզրում և բողոքել վիլայեթի կառավարչին։ Չգոհացնող պատասխան ստանալով, նա մեկնել է Կ. Պոլիս՝ գավառում կազմված բողոքագրերը արքունիք հասցնելու[65]։

Նոր բազմաթիվ բողոքագրերից զայրացած Բ. Դուռը կարգադրում է բռնի ուժով բանվորներ վերցնել, իսկ ըմբոստներին պատժել։ Տեղի են ունենում զինված ընդհարումներ։ Կ. Պոլիս են կանչում քուրդ էմիրներին, բայց նրանք չեն ներկայանում։ Կառավարությունը, անտեսելով հայերի պահանջները, Ղղիի 1868 թ. «միջադեպի» մեղքը ամբողջությամբ բարդում է Ազգային ժողովի երեսփոխանների վրա։

Սուլթանի ներկայացրած մեղադրանքներից սարսափած՝ Ազգային ժողովի տնտեսողական դիրք բռնող երեսփոխանները մեղանչական գրություններ են հղում կառավարությանը։ Փոխադարձաբար իրար ուղղված բազմա-

---

63 «Ատենագրութիւնք երեսփոխանական ընդհանուր ժողովոյ», հ. Բ, Կ. Պոլիս, 1870, («Տեղեկագիր քաղաքական ժողովոյ կեդրոնական վարչութեան 1870—1871 ամի առ ազգային ընդհանուր ժողովն»), էջ 15։

64 «Ատենագրութիւնք...», հ. Բ, «Համարատուութիւն ազգ. կեդրոնական վարչութեան 1872—1873 ամի առ ազգային ընդհանուր ժողովն», էջ 16։

65 Նույն տեղում, էջ 17։ Այս փաստաթղթերը տպագրված են հայատառ թուրքերենով, որոնք հայերեն է թարգմանել Ա. Սաֆրաստյանը։

թիվ գրություններից, որոնք հայատառ թուրքերենով տպագրված են Ազգային ժողովի արձանագրությունների մեջ[66], դժվար չէ եզրակացնել, որ Քղիի դեպքերի շուրջը եղած վիճաբանությունը շարունակվել է մինչև 1872 թվականը[67]։

1860-ական թվականներին քուրդ ցեղապետերի դեմ բազմաթիվ բողոքներ են ուղարկվել մայրաքաղաք նաև Դիարբեքիրի վիլայեթի Չարսանջակ գավառից։ Չարսանջակը, Բալուի հետ միասին, Դիարբեքիրի վիլայեթի մեջ մտավ 1865 թ. վարչական բաժանումների ժամանակ և շարունակեց մնալ նրա կազմում մինչև Բեռլինի վեհաժողովը[68]։

Գավառի հայ և քուրդ ազգաբնակչությունը խառն էին բնակվում։ Աշխատավորական խավերն ապրում էին բարեկամական մթնոլորտում։ Դերսիմի և Չարսանջակի քրդերը լավ հաճախորդներ էին առևտրական հայերի համար։ Նրանց մեջ տարածված էր, այսպես կոչված, «քիրվայությունը», մի սրբազան ուխտ, որը հաճախ բարձր էր դասվում եղբայրությունից[69]։ Հայ և քուրդ աշխատավորության միջև սկսված բարեկամությունը գնալով խորանում էր։ Սակայն, հակառակ աշխատավորների շահերի, Դերսիմի ու Չարսանջակի քուրդ վերնախավը խլել էր հայերի հողերը և երբեմնի սեփականատերերին դարձրել իր մարաբաները։

1860-ական թվականների սկզբներից Չարսանջակի հայերը նման ծանր դրությունից դուրս գալու տքնաջան փորձեր էին կատարում։ Նրանք Կ. Պոլսի հայոց պատրիարքարանին և Թուրք պալատականներին բազմաթիվ բողոքագրեր ուղարկեցին, ապա ծայր առան ժողովրդական ելույթներ՝ ուղղված քուրդ ցեղապետերի դեմ։ Ժողովրդի հիմնական պահանջն է եղել վերադարձնել այն հողերը, որոնք հայերի կողմից ժառանգաբար օգտագործվել են իբրև մասնավոր սեփականություն։

Չարսանջակի դեպքերի մասին հարուստ տվյալներ են պահպանված Կ. Պոլսի Ազգային ժողովի ատենագրությունների մեջ։ Այդ փաստաթղթերից պարզվում է, որ շարժումը սկսվել է ոչ թե 1865 թ., այլ դրանից բավական առաջ, նույնիսկ 1860 թ.։ 1872 թ. օգոստոսի 5-ին Կ. Պոլսի պատրիարքարանը Բ. Դռանը ուղղած բողոքագրում Չարսանջակի խնդրի կապակցությամբ գրում էր. «Չարսանջակի գավառում բնակվող հայ ազգային մարդկանց պապենական սեփականություն եղող տունը և պարտեզն ու արտերը մուսուլման հպատակներից՝ գյուղական աղաների կողմից գրավված լինելու և հայ ազգի մարդկանց իբրև վարձակալ համարելով նրանցից հարկեր և այլն պահանջելով նեղություն և ճնշում է գործադրվել, գործը հանձնվել է դատարան, վեճը գնալով ուժեղացել է հայերի և բեյերի միջև։ Այն 10—12 տարուց ի վեր շարունակվում է հայ ժողովրդի մարդկանց և նրանց ճնշող քայքայողների միջև»[70]։ Վեճը ավելի սուր կերպարանք ստացավ 1865 թ., երբ Չարսանջակի հայ բնակչությունը ենթարկվեց նոր հարստահարության, որի հետևան-

66 «Ատենագրությունք...», հ. Բ, էջ 16—23։
67 Նույն տեղում, էջ 21։
68 Տե՛ս Գ. Երևանյան, Պատմություն Չարսանճագի հայոց, Պեյրութ, 1956, էջ 147։
69 Նույն տեղում, էջ 137։
70 «Ատենագրությունք երեսփոխանական ընդհանուր ժողովո», հ. Բ, էջ 15—16։

*քով ոտքի կանգնեց Դիարբեքիրի հայ հասարակությունը և որոշեց 24 հոգուց բաղկացած պատվիրակության միջոցով բողոքագրեր ներկայացնել սուլթանին և նրա պալատականներին։ 1865 թ. մարտի 31-ին բողոքագիրը Աբդուլ-Ազիզին հանձնվեց, որն իր հերթին այն ուղարկեց «փոխանորդին»՝ Ֆուատ փաշային։ Հայատյաց Ֆուատը, փոխանակ ունկնդրելու հպատակների բողոքի ձայնին, նրանցից 15-ին բանտարկեց և մեկ շաբաթ հետո միայն արձակեց, պայմանով, որ վերջիններս անմիջապես վերադառնային իրենց տեղերը[71]։ Հուսահատված չարսանջակցիները ներկայացան Կ. Պոլսի Ազգային ժողովին։ Նրանց տված տեղեկությունների համաձայն կազմվեց ընդարձակ բողոքագիր և առաքվեց Ասիայի կայսերական բանակի հրամանատար Դերվիշ փաշային։*

*Հիշյալ բողոքագրում պատմվում էր, թե չարսանջակցիները 1860 թ. ընկըրկած վեճի ու պայքարի մեջ են գավառում նստած ցեղապետերի հետ։ Չարսանջակցիները պահանջում են Կ. Պոլիս կանչել 7 ցեղապետերին և դատ բացել նրանց դեմ, մանավանդ, որ հայերի իրավացիությունն է հաստատում Դերվիշ փաշան[72]։ Սակայն այս բողոքագրերը ևս սովորականի նման մնացին անպատասխան։*

*Չարսանջակցիները ստիպված դիմեցին ամենայն հայոց կաթողիկոսին։ 1867 թ. հունվարի 20-ին նրանք վերջինիս ուղարկեցին մի աղերսագիր, որը լի էր գավառի հայերի անելանելի դրությունը նկարագրող սրտաճմլիկ փաստերով[73], Կաթողիկոսը պատասխան գրությունով Կ. Պոլսի պատրիարքին և քաղաքական ժողովի երեսփոխաններին հանձնարարում էր հետամուտ լինել Չարսանջակի խնդրին։ Բողոքները շարունակվում են։ Առանձնացվում է հանձնաժողով, որը բողոքագրերը առաքում է Բ. Դուռ։ 1870 թ. այդ հանձնաժողովը հաղորդում էր. «Չարսանջախցիք դարձյալ ներկայացան, և հուսահատական վիճակնին հայտնելով կուզեին, որ գաղթեն, որովհետև իրենց գործն այսպես կախ մնալուն-համար երկրագործություն ընելու ալ թույլ չեն տար եղեր»[74]։*

*1870 թ. վերջերին միայն Թուրքական կառավարությունը քուրդ բեյերին կանչում է Կ. Պոլիս և վճռում «Չարսանջակի խնդիրը»։ Սակայն 9 ցեղապետերը շարունակեցին ասպատակել ողջ գավառը և սպառնալ, թե կապստամբեն կուսակալի և կենտրոնական կառավարության դեմ։ Փաստորեն ոչ մի հարց չլուծվեց[75]։*

*Բողոքները շարունակվեցին։ Ազգային կենտրոնական վարչության 1872—1874 թթ. նիստերում նորից քննարկվում են Չարսանջակի աշխատավորության ներկայացրած դիմումները։ 1872 թ. օգոստոսի 3-ի նիստում Ազգային քաղաքական ժողովի երեսփոխանները, Չարսանջակի հարցի առի-*

---

71 *Տե՛ս* Մ. Գ. Ներսիսյան, *նշվ. աշխ., էջ 124—125։*

72 *«Ատենագրությունք ազգային ընդհանուր ժողովո», հ. Ա, Կ. Պոլիս, 1865, «Տեղեկագիր քաղաքական ժողովո, կեդրոնական վարչութեան առ ազգային ընդհանուր ժողովն», էջ 33—34։*

73 *«Ատենագրությունք երեսփոխական ընդհանուր ժողովո», հ. Բ, Կ. Պոլիս, 1870, («Տեղեկագիր քաղաքական ժողովո կեդրոնական վարչութեան...»), էջ 13։*

74 *Նույն տեղում, էջ 14։*

75 *«Ատենագրությունք...», հ. Բ, էջ 24։*

թով, մեծ վիճաբանություններ ունեցան։ Նրանք կազմեցին մի ընդարձակ ու ընդհանրացնող բողոքագիր և Գր. Օտյանի միջոցով հանձնեցին սուլթանին։

Ինչպես այս, այնպես էլ 1863—1874 թթ. «Զարսանջակի հարցի» կապակցությամբ, տեղացիների և Ազգային քաղաքական ժողովի կողմից կառավարությանն ուղղված բողոքագրերից և ոչ մեկը արդյունք չտվեց։ Հայերի կացությունը փնալով վատթարացավ, մանավանդ, որ 1870-ական թթ. Բ. Դուռը ամեն կերպ հրահրեց ազգամիջյան ընդհարումներ, կազմակերպեց քրիստոնյաների թալան, բռնի կրոնափոխություններ, ըմբոստների ոչնչացում։

Այսպիսով, 1850—60-ական թթ. Արևմտյան Հայաստանում և Հայկական Կիլիկիայում եղած զինված ապստամբությունները, ժողովրդական ելույթները ուղղված էին սուլթանական կառավարության, թուրք հրոսակների և վաչկատուն, ռազմատենչ քուրդ ֆեոդալների դեմ։ Այդ բոլոր ելույթներն էլ ժողովրդական զանգվածների մեջ դարերով կուտակված ցասման բուռն արտահայտություններ էին, որոնք բռնկում էին տարերային կերպով և ստիճանաբար իրենց վրա հրավիրում արևմտահայ և ողջ հայ առաջադեմ մտավորականության ուշադրությունը։

Արևմտյան Հայաստանում բռնկված բոլոր ելույթներն էլ մեկուսացված մնացին, գավառները գործեցին անջատ-անջատ և հաջողության չհասան։ Այդուհանդերձ, նրանք հայ ժողովրդի մեջ զարթեցրին պայքարի ոգի, ներշնչեցին հաղթանակի ու ազատության հույս և նպաստեցին ազգային կոնսոլիդացիային, իսկ նորաստեղծ դեմոկրատական մտավորականությանը ստիպեցին սուլթանական տիրապետությունից ազատվելու միջոցներ որոնել։

ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐՈՐԴ

# ՀԱՅ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ՀՈՍԱՆՔՆԵՐԸ 1850—1860-ԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԻՆ

*XIX դարի 50—60-ական թվականներին տնտեսական ու քաղաքական բնույթի փոփոխություններով պայմանավորված լուրջ տեղաշարժեր կատարվեցին հայ հասարակական-քաղաքական կյանքում։ Համառուսական և համաեվրոպական ազգային-ազատագրական, հեղափոխական շարժման վերելքը լայն արձագանք գտավ հայ իրականության մեջ։*

*Անդրկովկասի միացումը Ռուսաստանին մեծապես նպաստեց տնտեսական կյանքի առաջընթացին, Արևելյան Հայաստանում և ողջ երկրամասում հայ զանգվածների համախմբմանը։ Արտադրողական ուժերի զարգացմանը զուգընթաց աճեց բնակչության ընդհանուր կենսամակարդակը, որոշ օրինականություն հաստատվեց երբեմնի ֆեոդալական անիշխանության զոհ դարձած երկրում։ Ընդլայնվեցին գյուղի և քաղաքի առևտրական կապերը, անհամեմատ ուժեղացան տնտեսական, մշակութային ու գաղափարական շըփումները Ռուսաստանի հետ՝ նպաստելով արտադրողական ուժերի և մշակույթի զարգացմանը։*

*Կապիտալիստական հարաբերությունների ձևավորումը, քաղաքային կյանքի աշխուժացումը, գյուղացիության շերտավորման խորացումը, համքարությունների քայքայումը և այդ հողի վրա արհեստավորական դասի ըմբոստացումը պարզորոշ երևան հանեցին սոցիալական ներհակությունների սըրումը և համապատասխան արձագանք գտան դասակարգային փոխհարաբերությունների մեջ։*

*Նկատելի տեղաշարժեր կատարվեցին նաև արևմտահայության սոցիալ-տնտեսական կյանքում և որոշակի նախապայմաններ ստեղծվեցին բուրժուական հարաբերությունների մասնակի զարգացման համար։ Դրանց նպաստեցին կենտրոնախույս ուժերի ոչնչացումը և այլազգի առևտրական բուրժուազիայի գործունեության առժամանակյա հովանավորումը։ Հատկապես զգալի աշխուժություն դրսևորեց հայ միջնորդ-առևտրականների դասը, որի կապերն Արևմուտքի հետ նպաստեցին նրա կողմից եվրոպական ազատամտական գաղափարների որդեգրմանը և շահագրգռեցին նրան մտահոգվելու Օսմանյան կայսրության մեջ անցկացվելիք բարեփոխումների հարցով։*

Այս ժամանակահատվածում որոշ զարգացում ապրեցին նաև բուն Արևմտյան Հայաստանի քաղաքները՝ Վանը, Կարինը, Եվդոկիան, Սեբաստիան, Բաղեշը և այլն։ Այստեղ ձևավորվեց իր շահագրգռություններով հայրենի բնաշխարհի հետ կապված գավառահայ առևտրա-արդյունագործական դասը, որը պայքար ծավալեց եվրոպական գործարանային արտադրանքների մրցակցության դեմ։

Հայաստանի երկու հատվածներում և գաղութահայ իրականության մեջ տեղի ունեցող այս բոլոր տեղաշարժերն ու երևույթներն էլ պայմանավորեցին անցյալ դարի 50—60-ական թթ. դասակարգային հարաբերությունների և շահագրգռությունների բյուրեղացումը, հասարակական-քաղաքական հոսանքների երևան գալը և նրանց որոշակի սահմանազատումը։

Հայ իրականության մեջ դեռևս իր բավական ազդեցիկ դիրքերը պահպանած հոգևորականությունը՝ դաշնակցած արևելահայ աղայական և արևմտահայ ամիրայական վերնախավին, ամեն կերպ ջանում էր խոչընդոտել պատմության առաջընթացը և դրանով իսկ դառնում էր իրենց դարն ապրած ֆեոդալական հարաբերությունների և միջնադարյան կաստայականության ջատագով։

Այս հողի վրա ձևավորվեց կղերա-աղայական հոսանքը արևելահայ և կղերա-ամիրայականը՝ արևմտահայ իրականության մեջ, որոնք պաշտպանում էին գրաբարն՝ ընդդեմ աշխարհաբարի, ֆեոդալական միապետությունը՝ ընդդեմ բուրժուական հանրապետության, կրոնական մեռյալ դոգմաները՝ ընդդեմ լուսավորականության, դրանով իսկ արգելափակելով ազգային-ազատագրական շարժման ու նրա գաղափարաբանների ուղին։ Սակայն ֆեոդալական հարաբերությունների քայքայման, կապիտալիզմի զարգացման և բուրժուական լիբերալիզմի, հատկապես հեղափոխական դեմոկրատիայի ասպարեզ գալով այդ հոսանքը շուտով կորցրեց իր ազդեցությունը՝ իբրև հասարակական մտքի ուրույն ուղղություն։

Ժամանակաշրջանի մյուս՝ ազգային-պահպանողական հոսանքը ծնունդ առավ որպես անմիջական հետևանք այն պայքարի, որ հարկադրված էին մղել տեղական մանր արդյունաբերողներն ու վաճառականները արտասահմանյան կապիտալի և գործարանային արտադրանքի մրցակցության դեմ, հանուն իրենց գոյատևության։ Ազգային արժեքների պահպանման և զարգացման մեջ տեսնելով իրենց ապագայի ողջ կռվանը, ազգային-պահպանողականներն ընդառաջում էին հայկական տնտեսական ու մշակութային կյանքի մասնակի «եվրոպականացմանը», ազգային կյանքի առաջընթացին։ Նրանց պահպանողականությունը անշարժության ու լճացման քարոզ չէր, այլ ազգային յուրահատկության պահպանության հորդոր։ Նրանք կողմնակից էին հայ եկեղեցու ավանդական ծեսերի բարեփոխությանը, պաշտպանում էին աշխարհաբարը՝ գրաբարի հիմքի վրա, սեփական լեզուն, եկեղեցին և ազգությունը ջանում փրկել օտարակալ տերությունների ուծացման քաղաքականությունից։

Դարամիջին ձևավորվեց առևտրա-արդյունաբերական հայ բուրժուազիան և այն ներկայացնող լիբերալ-բուրժուական հոսանքը։ Արևմտահայ լիբերալներն հիմնականում արտահայտում էին կոմպրադորական բուրժուա-

*դիայի շահերը, իսկ արևելահայ լիբերալները՝ կովկասահայ առևտրա-արդյունաբերական կապիտալի շահախնդրությունները։*

*Լիբերալ-բուրժուական հոսանքը պայքար է ծավալում ֆեոդալական հասարակարգի պաշտպանների դեմ, ձգտում հաստատել բուրժուական կարգեր, գրաբարը փոխարինել աշխարհաբարով, զարկ տալ աշխարհիկ գրականությանը, ժողովրդի լուսավորությանը, նոր դպրոցի հաստատմանը, գիտության զարգացմանը։ Լիբերալ-բուրժուական հոսանքը հետամտում էր հայ բուրժուազիայի տնտեսական, քաղաքական ու գաղափարական դիրքերի հաստատմանը Հայաստանում։ Ժողովրդին իր կողմը գրավելու համար նրանք խոսում էին ողջ ազգի անունից, երբեմն առաջադրելով նաև այնպիսի խնդիրներ, որոնք իրոք ունեին ժողովրդանպաստ բովանդակություն։ Սակայն «լիբերալները եղել են և մնում են բուրժուազիայի գաղափարախոսները,—գրում էր Վ. Ի. Լենինը.— որը չի կարող հաշտվել ճորտատիրության հետ, բայց որը վախենում է հեղափոխությունից, վախենում է մասսաների շարժումից, մի շարժում, որն ընդունակ է տապալելու միապետությունը և ոչնչացնելու կալվածատերերի իշխանությունը։ Այդ պատճառով էլ լիբերալները սահմանափակվում են «ռեֆորմների համար մղվող պայքարով», «իրավունքների համար մղվող պայքարով», այսինքն՝ իշխանության բաժանումով ճորտատերերի և բուրժուազիայի միջև»*[1]։

*Հայ հասարակական մտքի պատմության մեջ ամենաառաջավոր ուղղությունը հեղափոխական-դեմոկրատական հոսանքն էր, որը զինվորագրվեց ռուս հեղափոխական-դեմոկրատական շարժմանը, դարձավ նրա ջոկատներից մեկը և պայքարի մարտադրոշ պարզեց ոչ միայն ցարական ու սուլթանական միապետական վարչակարգի, այլ ֆեոդալիզմի պաշտպանների ու հաշտվողական լիբերալների դեմ։ Մ. Նալբանդյանի գլխավորած այս հոսանքը, արտահայտելով աշխատավորական լայն խավերի շահերը, ձգտում էր ոչ միայն հայ ժողովրդի ազգային-ազատագրությանը, այլև գյուղացիությանը հողով բավարարելուն և նրա սոցիալական ազատագրությանը։*

*Ինչպես Ռուսաստանում, այնպես էլ հայ իրականության մեջ հեղափոխական-դեմոկրատական հոսանքը մինչև մարքսիստական գաղափարախոսության տարածումը մնում էր այն միակ հոսանքը, որը զորեղ ազդեցությամբ էր գործում ժողովրդական զանգվածների վրա և ձգտում հեղափոխական շարժման միջոցով լուծել թե՛ ազգային և թե՛ ագրարային հարցերը։*

## ԱՐԵՎԵԼԱՀԱՅ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՀՈՍԱՆՔՆԵՐԸ

### 1. ԿՂԵՐԱ-ԱՂԱՅԱԿԱՆ ՀՈՍԱՆՔ

*XIX դարի երկրորդ կեսից սկսած պատմության բեմահարթակում բախվում էին ցարիզմի հետ կապված կղերա-աղայական ռեակցիան և ժողովրդական շահերը պաշտպանող արևելահայ դեմոկրատիան, որը սկսում էր դիմադրել ցարիզմի սահմանած գաղութային ռեժիմին և պայքարել սոցիա-*

---

[1] Վ. Ի. Լենին, *Երկեր, հատ. 17, էջ 133։*

լական ու ազգային-ազատագրական խնդիրների կենսագործման համար։

Միակողմանի կլիներ, սակայն, ի սկզբանե կղերա-աղայական հոսանքի ներկայացուցիչներին դիտել իբրև միջնադարյան ֆեոդալական գաղափարախոսության ջատագովներ։ Հայտնի է, որ այդ հոսանքի ներկայացուցիչներ Ն. Աշտարակեցին և Խ. Լազարյանը ոչ միայն զգալի դեր խաղացին Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միացնելու գործում, այլև դարձան Թիֆլիսի Ներսիսյան դպրոցի և Մոսկվայի Լազարյան ճեմարանի հիմնադիրներ, ռուսական կողմնորոշման ջատագովներ։

Իրադրությունը փոխվեց 40-ական թթ. սկսած։ Ձնայած ցարիզմը չարդարացրեց հայ իշխող վերնախավերի բոլոր սպասելիքները, նրանք, սակայն, ի վերջո գոհացան իրենց տրված արտոնություններով ու առանձնաշնորհումներով և չէին բաժանում ցարական վարչակարգի հանդեպ հայ աշխատավորության տրտունջները։ Հայ կալվածատերերի ու արևելահայ կղերի շահախնդրությունները միազոդվելով առևտրա-վաշխառուական բուրժուազիայի միտումներին՝ հիմնական հարցերում սկսում են համընկնել ռազմա-ֆեոդալական վարչակարգի պահպանման ռեակցիոն քաղաքականության հետ։ Երկնչելով լիբերալ-բուրժուազիայի և հատկապես հասունացող դեմոկրատական հոսանքի առաջադրած պահանջներից, հայ իշխող վերնախավերի պաշտպաններն ու նրանց շահախնդրությունների ձայնատարները կապվեցին ցարական բյուրոկրատիայի հետ, դիմակայավեցին ազատամտական գաղափարներին։

Կղերա-աղայական հոսանքի աչքի ընկնող ներկայացուցիչներից մեկը Ն. Աշտարակեցին էր, որը 1843 թ. սկսած գործելով իբրև ամենայն հայոց կաթողիկոս, ուղղություն էր տալիս իր կուսակիցներին։

XIX դարի առաջին կեսին Պետերբուրգում և Մոսկվայում հայ եկեղեցու վեքիլների իրավունքները վերապահված էին Լազարյան տոհմի ներկայացուցիչներին։

Ուշագրավ է, որ քսանական թվականներին Ռուսաստանի հայ եկեղեցու վիճակավորին հղած մի նամակում Հովհաննես և Խաչատուր Լազարյանները հայտնում էին, թե մտադիր են Մոսկվայից Պետերբուրգ փոխադրվել, «քանզի ի լինիլ մեր հուպ առ իշխանս՝ եւ դիւր եղիցի մեզ ծառայել տէրութեան և բարձրանալ յաստիճանէ յաստիճան, օգնական և հոգատար լինիլ ամենայն գործոց սիրելի հասարակութեան մերոյ եկեղեցւոյ սրբոյ, որոց ըստ շաւղաց ծնողաց մերոց նուիրեալ եմք զաւուրս մեր և կարողութիւն»*։ Նրանք իրագործեցին այդ մտադրությունը և դիրքեր գրավեցին ռուսական բյուրոկրատիայի բարձր շրջաններում։

Հիրավի, Լազարյանները միայն հարուստ կալվածատերեր ու գործարանատերեր չէին, այլև ցարական պետության խորհրդականներ։ Բայց հակառակ իրենց խոստման, նրանք այդ դիրքը օգտագործում էին ոչ թե ազգի ու

* Ա. Երիցյան, Ամենայն հայոց կաթողիկոսությունը և Կովկասի հայք XIX դարում, մաս Ա, էջ 73։

եկեղեցու անկախության օգտին, այլ սրանց դիմազրկման համար՝ այս մարզում հանդիպելով Ներսես Աշտարակեցու դիմադրությանը[2]։

Վճռական էր մանավանդ նրանց դիմադրությունը հայերի ազգային-քաղաքական ինքնորոշման հարցերում։ 1860-ական թվականների սկզբներին, անդրադառնալով Ջեյթունի ապստամբությանը, Խաչատուր Լազարյանը հայերի ազգային-ազատագրական պայքարի գաղափարը դատապարտում էր[3]։

Ազգային-մշակութային հարցերում Լազարյանները դիմադրում էին հայ գրականության աշխարհականացման ձգտումներին՝ ըստ ամենայնի մերժելով նոր գրական լեզվի քաղաքացիականացման և գրական մտքի աշխարհականացման պահանջը։ Մոսկվայի արևելյան ճեմարանում նրանք հովանավորում էին գրաբարի պաշտպանության կուսակիցներին՝ Սալլանթյանին, Մսերյանին ու դատապարտում Ստ. Նազարյանի և, մանավանդ, Մ. Նալբանդյանի հրապարակախոսության մարտական ուղեգիծը։ Խաչատուր Լազարյանը կկամենար, որ «Մասյաց աղավնի» պարբերականը լույս ընծայվեր ոչ թե գրական լեզվով, այլ՝ գրաբար։ Խմբագիր Այվազովսկին հարկ համարեց նրան պարզաբանել, որ ստիպված է աշխարհաբար հրատարակել իր թերթը սոսկ հաշվի առնելով այն իրողությունը, որ գրոց «վսեմ, համեղ և կանոնավոր» լեզվին անտեղյակ են իր ընթերցողները։ «Արդ,— գրում էր նա,— եթե ռամկորեն ես գրելով հազիվ 200 բաժանորդս ունիմ տակավին ի հայոց Տաճկաստանի... զինչ լինիցին, եթէ բոլորովին ի գրոց բարբառ յօրինիցիմ զգրուածսն»[4]։

Անդրադառնալով «Հյուսիսափայլի» ուղեգծին, Խաչատուր Լազարյանը գտնում էր, որ «ճշմարտապես օգտակար ամսագրի գլխավոր պարտականությունը և նպատակը պետք է լինի որչափ կարելի է շուտ ամրացնել հայ ժողովրդի մեջ խաղաղություն, համերաշխություն և բոլորին էլ տանել դեպի ընդհանուր բարի նպատակ, բայց ոչ մի դեպքում չբաժանել, չտարածել թշնամանքի սերմեր և չգրգռել կրքեր ու արատներ, որոնք առանց այն էլ չափազանց շատ են տարածված անբարեհույս հայերի մեջ»[5]։ «Մարդկանց կրոնա-բարոյական կրթությունն է միայն,— գրում է նա մի այլ տեղ,— որ առանց խռովության, առանց մտքեր հուզելու և առանց ազատամտության, առանց նիհիլիզմի ձախորդ, մոլար ու վնասակար գաղափարների սահմանում է բարոյականություն, խոնարհություն, աշխատանք և կարգապահություն»[6]։ Խաչատուր Լազարյանի համար ընդունելի չէր նույնիսկ 1836 թ. ցարիզմի հայ եկեղեցուն պարտադրած «Պոլոժենիե»-ին կաթողիկոսի կողմից ցույց տրվող դիմադրությունը։ Նա ցարական Ռուսաստանին հնազանդ լինելու կոչ էր անում Մատթեոս կաթողիկոսին, նախազգուշացնելով ընդդիմադրության վատթար հետևանքներից[7]։ Զարմանալի չէ, որ Խաչատուրը Լազարյան ճեմարա-

---

2 Մատենադարանի ձեռագրատանը պահված նյութերը ցույց են տալիս, որ ի վերջո նրանք կշռադատում էին հայ և ռուս եկեղեցիների միավորման հեռանկարներն անգամ։

3 Տե՛ս Ա. Երիցյան, նշվ. աշխ., էջ 79 և հետ.։

4 Նույն տեղում, էջ 254։

5 Աշ. Հովհաննիսյան, Նալբանդյանը և նրա ժամանակը, գիրք 2, Երևան, 1956, էջ 20։

6 Նույն տեղում, էջ 20—21։

7 Նույն տեղում, էջ 21։

նի աստվածաբան Մսեր մագիստրոսի գրքերի անվերապահ խրախուսողն ու մեկենասն էր։

1859—1862 թթ. Մոսկվայում Մսերյանի խմբագրությամբ լույս տեսած «Ծռաքաղ» երկշաբաթաթերթը արևելահայ կղերա-աղայական հրապարակախոսության օրգաններից մեկն էր[8]։ Հրաժարվելով քաղաքացիական բանուկ տոմարից, «Ծռաքաղ»-ը ղեկավարվում էր հին հայկական տոմարով։

1861 թ. Մսերը և իր որդին՝ Զարմայր Մսերյանցը, որին ի դեպ վստահված էր նաև Մոսկվայի հայերեն հրատարակությունների գրաքննչի պաշտոն, «Ծռաքաղ»-ին կից լույս էին ընծայում «Համբավաբեր Ռուսիոյ» լրագիրը։ Լրագրի պարզ հայերենը տարբերվում էր «Ծռաքաղ»-ի խրթին լեզվից։

Պետերբուրգի և Մոսկվայի ռեակցիոն վերնախավին արձագանքում էր կովկասահայ բարձրադիր կղերի ու կալվածատերերի դասը, որին ձայնակցում էին ապրանքատերերն ու փողատերերը, Հյուսիսային Կովկասի և Անդրկովկասի խոշոր կապալառուներն ու ռուսական զարգացող արդյունաբերության հետ կապված հայ առևտրականները, Կովկասի վարչական ու ռազմական օրգաններում ծառայող հայ բարձրադիր զինվորականներն ու պաշտոնատերերը։

Արևելահայ ազգային-քաղաքական կյանքում այս հասարակախավերի մտայնության գործնական հիմնավորումը դրսևորվել է նրանց գաղափարախոսներից մեկի՝ Առաքել Արարատյանի մոտ։ Իր մի գրվածքում նա արձանագրում էր, թե հայերը աճում են և բազմանում ամենուրեք, նրանք միաբան են ուսումնառության և շահութաբերության բոլոր գործերում և ամենուրեք պահպանում են ու խնամում իրենց լեզուն ու կրոնը։ Ուր էլ գտնվեն նրանք, «իրենց բնակավայրը դարձնում են բնիկ աշխարհ ու հայրենիք՝ տիրանալով անբավ կալվածքի ու հարստության... հասնում մեծամեծ պաշտոնների ու արտոնությանց... Անգամ մեր հարազատ թագավորները չէին տա մեզ այն, ինչ տալիս է ռուսաց ամենախնամ տերությունը մեզ մատակարարած ուսումով, ոռճիկով, պատիվներով ու աստիճաններով։ Եվ միայն Ռուսաստանում չէ, որ իրենց խոհեմ ընթացքով հայերը վայելում են նման բարիքներ»[9]։

Առ. Արարատյանի միտքը յուրովի լրացնում էր Սարգիս արքեպիսկոպոս Ջալալյանցը, բանաձևելով այն հայացքը, թե իբր հայերը պատրաստ են հավատարմորեն ծառայել բոլոր թագավորներին և իշխաններին, եթե միայն վերջիններս չեն դիպչում նրանց կրոնին[10]։ Ուստի հասկանալի էր, թե ինչու Ջալալյանցի համախոհ Ալ. Թահիրովը, ռուս ոստիկանության ծառայող հայազգի չինովնիկներից մեկը, դատապարտում էր Ալեքսանդր II-ի դեմ Դ. Կարակոզովի կատարած մահափորձը։

---

8 Պարբերականի ուղղության մասին գաղափար է տալիս նրա խոսուն գլխագարդը՝ Մեծ և Փոքր Մասիսները՝ Նոյի տապանով և նեղ շրջապարիսպների մեջ ներփակված էջմիածնի վանքը։ Աջից՝ պատարագչի հանդերձանքով զգեստավորված Լուսավորիչը՝ մի ձեռքում Ավետարան, մյուսը՝ դեպի վանքն ու Մասիսը պարզած, ձախից՝ Հայկ Նահապետը, զենք ու ասպարով, աջ ձեռքին աղեղ, ձախը զոդիակոսի կենդանաշրջանի վրա։

9 Առ. Արարատեան, Սխալանք վարդապետարանին կրօնի ի զգուշութիւն համազգեաց, Տփխիս, 1858, էջ 16 և հետ.։

10 Ս. Ջալալեանց, Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, հատ. 2, Տփխիս, 1848, էջ 102։

Կրկնելով Ջալալյանցի միտքը, Ալ. Թահիրովը արևմտահայերին խորհուրդ էր տալիս հասկացնել սուլթանին, որ հավատարիմ կմնան իրեն, եթե իր հովանու տակ առնի հայոց եկեղեցին[11]։

Կովկասահայ այս գործիչներին համամիտ էր Ստեփանոս քահանա Մանդինյանը՝ «Մեղու Հայաստանի» լրագրի խմբագիրը։ Գերմանական ուժ վերագրելով մարդկանց ուսմանը, նա դատապարտում էր այն տեսությունները, որոնք ըմբոստանում են աստծո կամ թագավորի դեմ[12]։ Պատասխանելով այն հայերին, որոնք քննադատում էին հայ եկեղեցու իրավունքները սահմանափակող ցարական «Պոլոժենիե»-ն, Սարգիս Ջալալյանցը, Ալեքսանդր Թահիրովը, Հակոբ Կարենյանը և Գալուստ Շերմազանյանը ծածկագիր մի գրքույկում հավաստում էին, որ Ռուսիո հայերը տիրում են իրենց կալվածներին և ստանում քաղաքական այն իրավունքները, որոնք ունեն նաև իրենք՝ ռուսները։ Այս մտայնության առաջացման համար նպաստավոր մթնոլորտ էր ստեղծված մանավանդ Կովկասում Վորոնցովի փոխարքայության օրոք։

Ակներև է, որ դրվատելով ցարիզմը, այս հոսանքին հարողները աչքի առաջ ունեին սոսկ կղերա-աղայական ընտրյալներին հատկացված արտոնությունները ու բարիքները կամ իրենց զավակների ուսում ստանալու դյուրությունները։ Նրանք շրջանցում էին այն իրողությունը, որ ուսումնական և գրագետ կոչված հայերը կազմում էին աննշան քանակ միայն։ «Ռուսիայի հայոց մեջ,— գրում է Ալ. Երիցյանը,— հիսուն թվականին հազիվ թե մի 20 կամ 30 անձ լիներ համալսարանական գիտությամբ. հայկաբան գիտնականների թիվը գուցե հասներ հարյուրի, բայց դոցա մեջ հայտնի նշանավորները հինգ-վեց հատ էին. մի հարյուր անձը համարելու էր այն հայերի թիվը, որ շատ քիչ փող ծախսելով պատրաստ էր երբեմն-երբեմն հայերեն գիրք առնելու. մի երկու այդքան էլ կլինեին, որոնք ուրիշներից գրքեր փոխառնելով կարդալու վարժված էին։ Այն ժամանակ մոտավորապես այսքան էր կարդալու ընդունակություն ունեցող հայերի թիվը ամբողջ Ռուսաստանում, իսկ մնացած կես միլիոնից ավելի հայ հասարակությունը, այբուբենից անգամ զուրկ, ընկղմված էր խոր տգիտության մեջ»[13]։

1850—1860-ական թթ. արևելահայ կղերա-աղայական հոսանքի առավել աչքի ընկած գործիչների ցանկը չի կարելի լրիվ համարել առանց Գաբրիել Այվազովսկու։

Վենետիկի ս. Ղազարի վանքում ուսումը ավարտելուց և վարդապետական գավազան ստանալուց հետո, Այվազովսկին մի պահ վարում էր «Բազմավեպ» ամսագրի խմբագրությունը։ Փոխադրվելով Փարիզ, 1848 թ. հեղափոխությանը հաջորդած ռեակցիայի տարիներին, Մուրադյան վարժարանում նա ըստանձնեց վարիչի պաշտոն և ջանք չէր խնայում հեռու պահել սաներին այդ պահին Ֆրանսիայում տարածված ազատամտական ու սոցիալիստական մտքերից և միաժամանակ հայ կյանքում բոնապարտիստական Ֆրանսիայի քաղաքականության ձայնատար դարձնել նրանց։ 1850-ական թթ. Այվազովսկին

---

11 «Արևելյան Ավարայրի», 1866, էջ 352։

12 Տե՛ս Ստ. Քահանա Մանդինեանց, Հայելի դաստիարակութեան տղայոց, Տփխիս, 1859, էջ 103, 106։

13 «Փորձ», 1879, նոյեմբեր, էջ 48։

մասնակցում է Հայկազյան վարժարանի հիմնադրմանը և միաժամանակ ձեռնարկում արևմտահայ ամիրաների սոցիալական պատվերները կատարող «Մասյաց աղավնի» պարբերաթերթի հրատարակմանը։ Սակայն շուտով վրա է հասնում նրան հովանավորողների մայրամուտը, և Այվազովսկին հարկադրված էր իր գրական-հրապարակախոսական գործունեության համար որոնել նոր հանգրվան։ Լազարյանների և Փարիզի ռուսական դեսպանության օժանդակությամբ 1858 թ. նա փոխադրվում է Ռուսաստան, ուր, ապավինած ռուսահայ մեծատունների ձեռնտվությանը, հիմք է դնում խալիբյան վարժարանին և վերանորոգում «Մասյաց աղավնի» թերթի հրատարակությունը. բոնապարտիստական ձայնատարի փոխարեն թերթը դառնում է ցարիզմի փողհարը։ Ցարական կառավարությունը, շրջանցելով Էջմիածնի իրավասությունը, Այվազովսկուն է հանձնում Բեսարաբիայի և Նոր Նախիջևանի թեմի հայ եկեղեցական վարչությունը, նրան գործիք դարձնելով արևելահայերի և արևմտահայերի նկատմամբ վարած իր քաղաքականությանը։

Այվազովսկին ներքին գործոց մինիստրին հասցեագրած իր ամբաստանագրում կանգ չէր առնում անգամ քաղաքական քսությունների առաջ՝ անխընա նշավակելով լիբերալ և, մանավանդ, դեմոկրատական հոսանքների հայ գործիչներին։

«Հյուսիսափայլ»-ի մեջ զետեղված հոդվածներն անխնա պարսավելով, նա նպատակ ուներ խափանելու ամսագրի տպագրությունը և մանավանդ պատուհասելու Նալբանդյանին՝ կառավարական օրգանների առաջ նրան բնութագրելով իբրև «բանսարկուի և խռովարարի»[14]։

Իր համախոհ Հարություն աղա խալիբին հասցեագրած նամակներից մեկում Այվազովսկին հույս էր հայտնում, թե ցարական գրաքննությունը պիտի վերականգնի Նիկոլայ I-ի խստությունները, «զի բազումք չարաչար վարեն զայսպիսի ազատութիւն ի Ռուսիոյ»[15]։ Ձգտում էր նաև այն բանին, որ հայ եկեղեցուն վերաբերող գրքերի գրաքննությունը իրեն վերապահվի, հնարավորություն տալով կատարելու այն պարտականությունները, որոնք դրված են իր վրա կայսեր կողմից[16]։

Հետռեֆորմյան տասնամյակներին, զարգացող կապիտալիզմի հարվածների տակ Ռուսաստանի և Անդրկովկասի կղերա-աղայական միտքը թևակոխեց իր կազմալուծման շրջանը։ Հետագայում կղերա-աղայական դասի փոքրիշատե կենսունակ տարրերին մնում էր միայն համակերպվել հասարակական-տնտեսական կյանքում կապիտալիստական հեղաբեկմանը և իրենց գոյատևման համար դիրքեր գրավել արևելահայ բուրժուազիայի շարքերում։ Հին կղերա-աղայական և նոր բուրժուական ուժերի վերադիրքավորումը նպատակ էր դնում հեղափոխական թափ ստացող դեմոկրատական ուժերին միացած շարքերով դիմադրելու։

---

14 Գրականության և արվեստի թանգարան, Ն. Նախիջևանի արխիվ, վավ. 8։

15 Նույն տեղում։

16 Մատենադարան, Օրիցյանի արխիվ, գործ № 10, վավ. № 361, տե՛ս նաև՝ գործ № 156, վավ. № 363։

## 2. ԱԶԳԱՅԻՆ-ՊԱՀՊԱՆՈՂԱԿԱՆ ՀՈՍԱՆՔ

Այս հոսանքի դեմ իր պայքարը դյուրացնելու մտայնությամբ լիբերալ հրապարակախոսությունը նրան համառորեն ներկայացնում էր «կղերա-պահպանողականության» պիտակով։ Պարզունակացնելով հակառակ հոսանքների դեմ իրենց հայացքների պաշտպանության գործը, լիբերալները գիտակցաբար անտեսում էին ազգային-պահպանողականների դիրքավորման ինքնուրույնությունն ու առանձնահատկությունները։

Եթե կղերա-աղայական ռեակցիան ազգի գոյության միակ հենարանն էր համարում հայադավան եկեղեցին, ապա ազգային-պահպանողականների համար գերագույն հեղինակությունը ոչ թե հայադավան եկեղեցին էր, այլ նրան իր գոյության պատվարներից մեկը դարձնող ազգը։ Զնույնացնելով ազգի հետ, եկեղեցին հանդես էր գալիս նրանց մոտ որպես ազգը միավորող, այն պահող գործոններից մեկը, բայց ոչ միակը։ Եթե, օրինակ՝, կղերա-աղայական հոսանքի գաղափարախոս Առաքել Արարատյանը գրում էր, թե գրաբար լեզուն ու կրոնն են ազգության սյուները[17], ազգային-պահպանողական գաղափարախոս Մարկոս Աղաբեկյանը եկեղեցուց զատ ազգության բարոյական շաղկապ էր համարում ոչ թե գրաբարը, այլ ազգային կենդանի լեզուն։ Ընդսմին ազգային լեզուն և գրականությունը, ազգային պատմությունը, ավանդություններն ու բարքերը և, վերջապես, մանուկների ազգային ուսումնառությունն ու դաստիարակությունը—սրանք էին նրա համար այն գործոնները, որոնք եկեղեցու, նրա դավանության հետ մեկտեղ երաշխիք էին նկատվում ազգի կենդանությանը[18]։

Ազգային-պահպանողական այն մտայնությունը, որ ստեղծվել էր Անդրկովկասում՝ Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միացնելուց հետո, սրվում էր հիմնականում այն դժգոհություններից, որոնք ծավալվում էին Կովկասում և մասնավորապես կովկասահայ միջավայրում՝ ցարիզմի գաղութային քաղաքականության շուրջը։ Վտանգված համարելով ազգի ու եկեղեցու գոյությունը Ռուսաստանում՝ նրանք յուրովի ընդդիմակայում են ցարիզմին, նրա գաղութային քաղաքականությանը Կովկասում։

Արևելահայ ազգային-պահպանողականները իրենց սոցիալ-տնտեսական շահախնդրություններով դրսևորում էին այն անբավականությունը, որ սրվում էր կովկասահայ առևտրական բուրժուազիայի միջավայրում Ռուսաստանի արդյունաբերական ապրանքների կովկասյան ներմուծումը հովանավորող ցարիզմի մաքսային քաղաքականությունից։ 1846 թ. ի վեր շեշտակիորեն կրճատվեց արևմտաեվրոպական ապրանքների ներմուծումը, հարվածի տակ դնելով արտասահմանյան շուկաների հետ կապված և կովկասյան տրանզիտով շահագրգռված հայ առևտրականների շահերը։ Կովկասահայ առևտրական բուրժուազիան ավելի շատ զբաղված էր արտասահմանյան ապրանքները Կովկասի, Պարսկաստանի կամ Թուրքիայի շուկաներում վաճառելու գործով, քան ռուսական կապիտալիզմի մենատիրությանը նպաստող ցա-

17 Առ. Արարատեան, Դիմագրավ ընդդէմ սատան յարուցելոյ ամենապատուական նախամայր լեզուիս Հայոց, ի Տփխիս, 1858, էջ 8։

18 «Կռունկ», 1860, էջ 925։

րական քաղաքականությամբ։ Ազգային-պահպանողականները տրտնջում էին ցարական գաղութային քաղաքականության դեմ, պաշտպանում տեղական հայ առևտրականների շահերը, դաշնակիցներ որոնում արդյունաբերողների ապրանքների ներմուծումից տուժող տեղական մանր արտադրողների միջավայրում, պաշտպանության տակ առնում գյուղի ու քաղաքի մանր գործատերերին ու ապրանքավաճառողներին։ Իրենց հերթին վերջիններս հաճախ ձեռք էին մեկնում նրանց, հանգամանք, որ դեռ հիմք չի տալիս ազգային-պահպանողականներին արևելահայ մանր արտադրողների կամ արևելահայ գյուղական ու քաղքենի դեմոկրատիայի հետևողական արտահայտիչներ համարելու։ Այս առումով ուշագրավ է վրաց առաջավոր գործիչ Ն. Նիկոլաձեի 1865 թ. Գերցենի «Колокол»-ում տպագրված հոդվածը, ուր նա, նկարագրելով Թիֆլիսի համքարների ելույթը, գրում էր. «Թիֆլիսի քաղաքային աշխատավոր բնակչությունը (рабочее население) ձեռք է տվել մոքալաքներին, որպեսզի համատեղ դիմադրեն ռուս կառավարությանը... Մարդիկ, որոնք ոչ մի գաղափար չունեին կուսակցությունների պրակտիկայի մասին, այն ժամանակ քայլեցին «ընդհանուր թշնամու» դեմ, ձեռք-ձեռքի տված, մոռանալով, որ երեկ մոքալաքը կողոպտում էր այսօրվա իր զինակից մշակին և որ վաղը պիտի կրկնվի նույն պատմությունը»[19]։

Այստեղ Նիկոլաձեն նկատի ուներ 1865 թ. հուլիսի 27-ին Թիֆլիսի քաղաքային վարչության դեմ տեղի ունեցած այն ապստամբությունը, որի հրահրման գործում քաղաքագլուխ Գալուստ Շերմազանյանը ամբաստանում էր Պ. Շանշյանին, Պ. Սիմեոնյանին, դ-ր Ռոտինյանին, Գաբրիել Խատիսյանին, Համբ. Ենֆիաջյանին և Գր. Իզմիրովին, որոնց մեծ մասը հայ ազգային-պահպանողականների ղեկավարներն էին։ Այս շարժումը հիմնականում ուղղված էր ցարիզմի գաղութային քաղաքականության դեմ, որի գործիքն էր քաղաքային վարչությունը[20]։

Հայ ազգային-պահպանողականների ղեկավարները՝ Պ. Շանշյանը և Գ. Ախվերդյանը, պաշտպանում էին տեղական առևտրի ու արդյունաբերության ընթացիկ շահերը և մեծապես ընդառաջում հնօրյա համքարությունների պահանջներին։ Նրանք նշում էին երկրի բնակչության վրա ծանրացող հարկերն ու թանկությունը, մանր արհեստավորների քայքայումը, նրանց աճող թըշվառությունը[21]։

Ցարիզմի կովկասյան իշխանավորներին Շանշյանն առաջարկում էր օգնել Անդրկովկասի տեղական առևտրի ու արդյունաբերության զարգացմանը, հոգ տանել մանավանդ Կասպից և Սև ծովերի հետ միացող առևտրական ճանապարհների կարգավորմանը և նպաստել Երևանի նահանգի երկրագործությանը, բարելավել Արարատյան դաշտի ոռոգման գործը և տեղական ճանապարհները, որով, ըստ նրա, կվճռվեր նաև Թիֆլիսի համքարություններին հուզող խնդիրներից մեկը՝ էժան հացի մատակարարումը։

Քննադատելով «կապիտալիստներին»՝ Ախվերդյանը փաստապես հա-

19 «Исторические записки», 1940, № 8, էջ 223։

20 Գրականության և արվեստի թանգարան, Ներսես Աբելյանի արխիվ, գործ 26, թ. 11 և հետ.։

21 П. Шаншиев, Два слова об амкарах, Тифлис, 1857, стр. 32.

կադրվում էր միայն ցարական գաղութարարների կողմից մենաշնորհված այն դրամատերերին, որոնք «հանուն ազատ արդյունագործության» արգելափակում էին տեղական արդյունագործության զարգացման ուղիները և պահանջում տեղական ձեռնարկություններին պաշտպան կանգնած առևտրաարդյունագործական համքարությունների լիկվիդացումը։ Ընդսմին Ախվերդյանը համքարությունները չէր դիտում որպես մեկընդմիշտ ստեղծված և որևէ փոփոխությունների չենթարկվող կազմակերպություններ։ Նա հայտնում էր սոսկ այն համոզմունքը, որ համքարությունների «հանկարծական ոչնչացումը», առանց դրանք հանրօգուտ և «ժողովրդի հասկացություններին ու կարիքներին համապատասխանող այլ կազմակերպություններով փոխարինելու, քաղաքաբնակչության մեծ մասի համար անժամանակ բան կլիներ և կառաջացներ ավելի շատ չարիքներ, քան այն, ինչ որ անհիմն կերպով նրանց վերագրվում են»[22]։

Մասսայական թշվառություններն ու ոճիրները կանխող համքարությունների կազմակերպված փոխօգնությունը տեղական առևտրի և արդյունաբերության զորեղ հենարանն էր համարում նաև Պ. Շանշյանը[23]։ Բայց դարձյալ սխալ կլիներ հետևցնել, թե դրանով նա սկզբունքորեն ժխտում էր կապիտալիզմը։ Շանշյանը մեծարում էր Ադամ Սմիտի բուրժուական տնտեսագիտության դասական ուսմունքը, դրվատում մասնավոր սեփականության և «ազատ աշխատանքի» բուրժուական իրավունքը՝ որպես զարգացող առևտրի և արդյունաբերության առաջին պայման և փառաբանում մանչեստրականության հռչակած նախաձեռնումների սկզբունքը՝ որպես առևտուրն ու արդյունաբերությունը շարժող ու կանոնավորող ուժ։ Նրա կարծիքով համքարությունն այլ բան չէ, քան բուրժուական սկզբունքով ղեկավարվող «առևտրական և արդյունագործական դասակարգ»։ Շանշյանը համոզված էր, որ քաղաքակիրթ ժողովուրդների մոտ միայն անձնական շահը կարող է հասցնել զարգացման՝ կազմելով «առևտրական և արհեստագործական ընկերություններ»[24]։

Շանշյանը գտնում էր, որ առանց համքարության Թիֆլիսի նահանգում չէր լինի ոչ արդյունագործություն, ոչ երկրագործություն, կպակասեր աշխատանքը շարժող գլխավոր ուժը՝ փողը[25]։

Համքարների օգտին ունեցած իրենց ելույթներով Ախվերդյանը և Շանշյանը հակադրվում էին քաղաքական իշխող այն ուղեգծին, որով ռուս և եվրոպական արդյունաբերողների ձեռքն էր տրվում Կովկասի շուկան։

Միայն ցարիզմի տնտեսական քաղաքականությունը չէ, որ քննադատում էին ազգային-պահպանողականները, նրանք մերկացնում էին նաև Անդրկովկասում սահմանված գաղութատիրական ռեժիմը։

Իր հիշողություններում Ղ. Աղայանը Ախվերդյանին բնութագրում է որպես լուսամիտ մի անձնավորություն։ Աղայանը բերում է նրա խոսքերը. «Մենք մեր աչքով տեսնում ենք, թե հայերենն ու վրացերենը ինչպես են դուրս մղվում մեր ազգի կանանց բերաններից, մեր տներից։ Այսքանը բավական

22 *Ю. Ф. Ахвердов*, Тифлисские амкары, Тифлис, 1883, Заключение.

23 *Տե՛ս Шанишев*, Два слова об амкарах.

24 *Նույն տեղում։*

25 *Նույն տեղում, էջ 22 և հետ.։*

է, որ մեր մեջ նախանձ զարթի պատվասիրության և ազգասիրության զգացման ու սկսենք դրա առաջքն առնել աղջկանց դպրոցներ բանալով, թատրոն հիմնելով, գրականությունը ճոխացնելով, վերջապես ուրիշ ազգերին մեզ օրինակ առնելով, նրանց վարմունքը մեզ համար խոսակցության նյութ չինելով։ Պետք է հետաքրքրվենք ու իմանանք, թե որպիսի՞ ճանապարհ ունեն մեր վիճակում եղող եվրոպական ազգերը, այն ազգերը, որոնք մեռած տեղից գլուխ են բարձրացրել և ազգայնապես ապրելու իրավունք են հայտնում։ Նրանք այսօր առաջ են գնում ոչ թե մեզ նման կուրորեն, այլ գիտակցաբար, մի նախամտածված և նախագծված ուղղությամբ և շատ չի քաշիլ, այդ ազգերը կանցնեն առաջնակարգ զորեղ ազգերի կարգը՝ իրենց զարգացումով ու դիրքով»[26]։

Առաջ քաշելով «ազատ դպրոցի» հայացքները, Շանշյանը դրանց հակադրում էր «սոցիալական» («սոցիալիստական»— խմբ.) դպրոցին, որի սկզբունքն ընդունելի չէր համարում օրինավոր կառավարության համար։ Նա գտնում էր, որ վերանորոգությունն ամեն բանի մեջ պետք է լինի «խաղաղ և օրինավոր ճանապարհով»[27]։

Շանշյանի նացիոնալ-սեպարատիզմն իսկ «խաղաղասիրական» էր իր բնույթով։ Հայերին նա չէր ըմբոստացնում ցարիզմի դեմ, գտնելով որ «հայերը, դժբախտաբար, անընդունակ են ապստամբելու»[28]։ Խոսելով իտալական ապստամբության մասին, նա գտնում էր, որ Իտալիան ազատություն ստացավ՝ «փախչելով անդունդ գլորող հանկարծահաս պատրիչ ապստամբությունից և հավատարիմ ժառանգորդ մնալով կոմս Քավուրի երկու ամենամեծ ավանդին՝ ֆրանսիական դաշնակցության և անկախ ազատության»[29]։ Մնալով «բարի քրիստոնյա», Շանշյանը հրահանգում էր. «Զքավորութենե ելնելու համար անիրավ միջոցներու չդիմել և միշտ նախապատիվ համարել աղքատությունն անիրավութենեն»[30]։ Նա հանգում էր նույնիսկ այն մտքին, թե ամեն մի փոփոխություն ի չարեն է և վերջիվերջո կարող է տանել ազգը դեպի կործանում։ Նման մտավախությամբ բռնված, նա դիմադրում է նույնիսկ ազգի լուսավորության գործը կղերից ժողովրդին փոխանցելու լիբերալ լուսավորիչների պահանջին[31]։

Ռուս արդյունաբերական բուրժուազիային հովանավորող ցարական գաղութարարներին դիմադրելով, 1860—1863 թթ. ազգային-պահպանողական օրգան «Կռունկ»-ը կովկասյան բուրժուազիայի համար տնտեսական ապահովության կռվաններ էր որոնում Կովկասի ու Մերձավոր Արևելքի շուկաներում, վերապահելով հայ առևտրականներին այդ երկրների տնտեսական կապերը հաստատողի դերը։

Ամսագրի խմբագիր Մ. Աղաբեկյանը առաջ էր քաշում այն միտքը, թե հայ առևտրականները պետք է գործ դնեն իրենց դրամագլուխը ոչ թե Ռու-

---

26 Ղ. Աղայան, *Երկեր*, հատ. 3, Երևան, 1940, էջ 189։

27 Պ. Շանշյան, *Ուսումն պարտուց*, հատ. 2, Կ. Պոլիս, 1870, էջ 67 և հետ.։

28 Ն. Գեղամյան, «Գործ», ամսագիր, Բաքու, 1917, էջ 70։

29 «Կռունկ», 1861, № 7, էջ 566։

30 Պ. Շանշյան, *Ուսումն պարտուց*, հատ. 2, էջ 123։

31 «Լումա», 1898, գիրք Ա, էջ 18 և 40։

ստանում, այլ Կովկասում և Հայաստանում։ «Օտար մարդիկ,— գրում էր նա,— գալիս են հեռու երկրներից և տիրանում են մեր բնության բերքերին, սակավ առ սակավ դառնում են տանուտեր մեր տան մեջ, հեռացնելով յուրյանցից մեզ՝ իսկական տանուտերերիս, իսկ մենք կարծես թե շնորհակալության ժպիտով նայում ենք նոցա, գոհ ենք նոցանից, երևի էնդուր համար, որ մերը խլում են մեզանից...»։ «Կռունկ»-ի խմբագիրը առարկում է Ստ. Նազարյանցի այն մտքին, թե հայերն իրենց արտադրական կադրերի պատրաստումը պիտի հոգան Ռուսաստանում և որ դրա համար միջոցներ պիտի հայթայթի կազմակերպվելիք «Ընդհանուր հայկական ընկերություն»-ը։ Աղաբեկյանը առարկում էր դրան։ «Մենք,— գրում էր նա,— ավելի հարմարավոր և օգտակար ենք համարում այդպիսի մի ընդհանուր հայկական ընկերության փողերով առաջին տարին հաստատել մեր կողմերում, այսինքն՝ Թիֆլիսում կամ Հայաստանի քաղաքներից մեկի մեջ մի օրինավոր ուսումնարան, որ մեր երեխայքը ուսանին երկրագործություն, զանազան արվեստներ և վաճառականություն»։ Նման ուսումնարանում, գրում է Աղաբեկյանը, պիտի սովորեն «կովկասյան և արարատյան հայերի զավակները»։ Նա չէր առարկում, որ այդպիսի մի ուսումնարան էլ ստեղծվի Հարավային Ռուսաստանի հայերի համար։ Աղաբեկյանը համամիտ էր նրանց, ովքեր տրտնջում էին, թե հանրակրթական ուսումնարանները «հացի տեր» չեն դարձնում իրենց զավակներին։ Առաջարկում էր հայ դպրոցների ձեռքը տալ «գութանը, մանգաղը, թիակը, բահը, մուրճը, խարտոցը, սղոցը, կացինը, և մյուս գործիքը», «մոտեցնելով նոցա բնությանը և կենաց հանգամանքներին»։ Կարծում էր, որ ստեղծվելիք հայկական ընկերության մասնակիցներն են լինելու նաև հայ արհեստավորները, համքարները։

1865 թ. Կ. Պոլսի Ազգային ժողովին ուղղված իր տեղեկագրում նա քննադատում էր հայ եկեղեցու վարչական իրավունքները սահմանափակող ցարական «Պոլոժենիե»-ն և կոչ անում «օրինական» ճանապարհով պաշտպանության տակ առնել նրա ինքնուրույնությունը։ Հայոց կաթողիկոսության խաթարված իրավունքները պաշտպանելու համար նա առաջարկում էր Կ. Պոլսի Ազգային ժողովին՝ օգնության հասնել ցարիզմի կրնկի տակ տառապող ռուսահայ ազգակիցներին[32]։ Աղաբեկյանի այս հայացքը պոլսահայերի Սահմանադրության ներշնչած ազգային ինքնախաբեության արդյունք էր։

Աղաբեկյանը չէր հրաժարվում Թուրքիայի ներսում ազգային-քաղաքական բարեփոխությունների հեռանկարներից։ Արևելահայ հրապարակախոսների մեջ առաջիններից մեկն էր նա, որ ոչ միայն անդրադարձավ արևմտահայ ազգային-ազատագրական շարժմանը, այլև դրական վերաբերմունք ցուցաբերեց դեպի նա։ Գերագնահատելով Ազգային սահմանադրությունը, նա կարծում էր, թե հայ ժողովուրդը Թուրքիայում բարոյականի հետ ունի և ազգային-քաղաքական ազատություն, որը ծնվում է կամ ծնվելու վրա է թուրքահպատակ մյուս բոլոր ազգերի քաղաքական ազատագրման հետ մեկտեղ[33]։

32 Մ. Աղաբեկյան, Տեղեկագիր ամենայն հայոց կաթողիկոսության արդի վիճակի վրա, Կ. Պոլիս, 1865, էջ 6։

33 Տե՛ս «Ծիլն Ավարայրի», 1866, հատ. Ա, էջ Դ և Ե։

Երբ 1860 թ. Մ. Խրիմյանը անցավ Կովկաս, Աղաբեկյանի «Կռունկ»-ը նրան հայտարարեց Վասպուրական աշխարհի «ազգային և բարոյական լուսավորության»[34] փողհար։ Թիֆլիսում Խրիմյանը իր մի քարոզում խիստ էր արտահայտվել ցարի հասցեին։ Թիֆլիսի վիճակավոր Սարգիս Ջալալյանցի սադրանքով՝ փոխարքայության դիվանը անապարեց արևմտահայ անհանգիստ եկեղեցականին հեռացնել Կովկասից[35]։

Զեյթունի ապստամբության օգտին հանգանակություն անելու նպատակով Կովկասում կազմակերպվեց հատուկ կոմիտե, որի նախաձեռնողների և աջակցողների շարքում հանդիպում ենք ազգային-պահպանողական գործիչներ Մ. Աղաբեկյանին, Հ. Էնֆիաջյանին և Պ. Սիմեոնյանին։ 1863 թ. իր ձեռքն առնելով «Մեղու Հայաստանի» թերթի խմբագրման գործը, Սիմեոնյանը փոխեց նրա ուղղությունը և ընդարձակ տեղեկանքներ տպագրեց Լեհաստանի ապստամբության և Զեյթունի հերոսական ինքնապաշտպանության մասին։

Պ. Սիմեոնյանի գաղափարակցությունը Պ. Շանշյանի հոսանքին, պատահական չէր։ Սրանք երկուսով սովորել էին Դորպատի համալսարանում և հեռացվել համալսարանից հակակառավարական ուղղության համար։ Սրանց գաղափարամերձ էր նաև դորպատյան համալսարանի մի այլ ուսանող՝ Գ. Խատիսյանը[36]։

Անդրադառնալով զեյթունցիների ապստամբությանը, Սիմեոնյանը նրանց կողմնորոշում էր ոչ թե դեպի ֆրանսիական կառավարությունը, այլ դեպի ֆրանսիական ժողովուրդը[37]։

Ազգային պահպանողականների մեջ կային նաև գործիչներ, որոնք հայ ազգային շարժման ապավենը որոնում էին արևմտաեվրոպական պետությունների քաղաքական միջամտության մեջ։ Այդ տեսակետից ուշագրավ է Շահնազարյան Կարապետ վարդապետի դիրքորոշումը։

Աշխարհով մեկ սփռված ազգակիցների ապաբախտության պատճառը Շահնազարյանը համարում էր հայ «իշխաններին», որոնք իրենց հպատակներին ժառանգություն թողեցին միայն «տգիտություն, ստրկություն, արտասուք և նախատինք»։ Նա եկեղեցու բռնավորներին համարում էր «չարագույն քան զօտարազգիս»[38]։

Նա միայն եկեղեցին չէր համարում ազգի ինքնագործունեության ասպարեզը. «Արդ իբրև հայ կփափագիմ,— գրում էր նա,— որ ազգս ոչ միայն ազատ ըլլար, այլև իր հայրենիքին ինքնիշխան տիրեր, քաղաքական հրահանգներով ծաղկեր, աշխարհաշինություն փայլեր, զինվորական և ընտանեկան առաքինություններով նախանձելի ըլլար, մարդկության օգտակար անդամ և իր նախահորը (Հայկին—խմբ.) արժանավոր ժառանգ. վերջապես կբարեմաղթեմ, որ իր բազմաժամանակյա ստրկության գարշությունը ճանաչելով ինքն ալ ցանկանար, օր առաջ մարդկության նպատակին համեմատ ազատորեն ապրիլ...»[39]։

34 «Կռունկ», 1860, էջ 595 և հետ.։

35 Գրականության և արվեստի թանգարան, Գաբր. Պատկանյանի հիշատակարան, թ. 740։

36 Նույն տեղում, Ներսես Աբելյանի արխիվ, գ. 26, թ. 11—12։

37 «Մեղու Հայաստանի», 1863, № 6, էջ 47, № 7, էջ 68։

38 Կ. Վ. Շահնազարյանց, Դաշանց թղթո քննությունն ու հերքումը, Փարիզ, 1862, էջ 128։

39 Նույն տեղում, էջ 58։

Ազգային-պահպանողական մյուս գործիչների պես Շահնազարյանը ևս քննադատում էր ցարիզմի գաղութային քաղաքականությունը։

Իր հայացքներով Կ. Շահնազարյանին մոտ էր կանգնած Գաբրիել Պատկանյանը։

1830—1840-ական թթ. Պատկանյանը հանդես եկավ Նոր Նախիջևանում որպես ցարիզմին հենարան ծառայող կղերա-ազնվական տարրերի քննադատ։ 1850-ական թթ. սկզբներին նա քահանայազրկվեց, ենթարկվեց կալանքի ու աքսորի։

1863—1864 թթ. իրավունք ստանալով Վյատկայից փոխադրվել Պետերբուրգ, Գ. Պատկանյանը հանդիսանում էր իր որդու՝ բանաստեղծ Ռ. Պատկանյանի ջանքերով լույս տեսնող «Հյուսիս» շաբաթաթերթի գրեթե միակ հրապարակախոսը։ Մառանալով կղերա-ազնվական հոսանքի քարոզած «ուր հաց, անդ կաց» աշխարհաքաղաքացիական սկզբունքի դեմ, նա օտարության մեջ դեգերող հայ առևտրականներին հորդորում էր հայրենիք վերադառնալ և իրենց բարեկեցության հիմք դարձնել հայրենի հողը[40]։

Հայը պահում է յուր տոնը, յուր լեզուն, յուր ազգությունը, յուր նախնյաց անունը, ասում է Գ. Պատկանյանը, «բայց համեմատելով այժմյան ազգերուն, հայը չի կարող ասվել ազգ»։ «Ազգ դառնալու համար,— ասում է նա,— նրանք պետք է ունենան հավաքականություն և ընդհանուր նպատակ»[41]։ Համազգային նպատակի շուրջը միավորվելու համար հայերը պետք է համախմբվեին հայրենի հողի վրա։ «Աչքի առաջ ունենալով Եվրոպայի ազգերի և մանավորապես Ռուսաստանի հովանավորությունը՝ կարելի է հուսալ, որ օսմանցիներն ու պարսիկները վերջ տան իրենց հետապնդումներին և հայերը գտնեն իրենց համար համախմբության կենտրոն և ազգության մեջ ընդհանուր նպատակ, ազգ դառնան և ազատություն վայելեն»[42]։ Նման հույսեր էր ներշնչում Պատկանյանին, մանավանդ, 1860 թ. հռչակված Ազգային սահմանադրությունը։

Հայրենադարձության և ազգային համախմբման հեռանկարների հետ Պատկանյանը միավորում էր նոր խնդիրներ։ Հողագործ հայերը չեն ազատագրվի աղքատության ճիրաններից, եթե անփոփոխ մնա հողագործության պապենական եղանակը։ Առանց հողամշակման նոր եղանակների, ազգը չի կարող հաղթահարել բնաջնջման վտանգը[43]։ Եթե հայերը կամենում են դիմանալ եվրոպական մրցությանը, պիտի յուրացնեն մեքենագործության արհեստը։ Արհեստագործության մեջ եվրոպացիները հետևում են աշխատանքի բաժանման սկզբունքին, մինչդեռ հայերը շարունակում են կառչել արտադրության մենագործ եղանակից։ Իր ընթացքը պետք է փոխի նաև վաճառականությունը։ Առանց հաշվապահության, վաճառագիտություն կամ «ապրանքագիտություն» չկա։ Հայ վաճառականները առանց դրա չեն կարող ծավալել իրենց առևտուրը, «Եվրոպայի միլիոններին բաժանորդ լինել» և դա-

40 Գ. Պատկանյան, Ուսումնասե՞ր են հայք, Մատենադարան, Պատկանյանի արխիվ, թղթ. № 37, վավ. № 34, էջ 35։

41 «Հյուսիս», 1863—64, էջ 177 և հետ.։

42 Նույն տեղում, էջ 178։

43 Նույն տեղում, էջ 187։

տապարտված պիտի լինեն միայն սպասավորել եվրոպական վաճառականներին[44]։ Պատկանյանը մատնանշում է վաճառականական ընկերություններ և վաճառատներ կազմակերպելու անհրաժեշտությունը. առանց դրանց նրանք չեն դիմանա «եվրոպացոց մեծ մեքենաշինությանը»[45]։

Հայաստանի տնտեսական զարգացման հեռանկարները Պատկանյանը սերտորեն առնչում էր ազգային լուսավորության հետ։

Գաբրիել Պատկանյանը հաճախ էր ոգեշնչվում ազգային անցյալի հերոսական դրվագներով։ Նա 1860-ական թվականներին ժամանակակից երիտասարդության մասին իր մի անտիպ հոդվածում գրում էր.

«Ո՞ր թմրյալ հոգին չպիտի հասկանա, թե արդի պատանիք պատրաստ են այսօր յուրյանց օրն և արեն ողջակեզ բերել ի սուրբ սեղան ազգին և յուրյանց արյան հետին շիթն կաթեցուցանել իբրև կայլակ մի ձիթո ի կանթեղ հայրենասիրության՝ հօգուտ տառապյալ ազգին...»[46]։

Այնուամենայնիվ Շահնազարյանի պես Պատկանյանը ևս հայերի ազատագրման հեռանկարները չէր շաղկապում մարտական սխրանքների ու զոհաբերությունների հետ։ Նա ևս փրկություն էր ակնկալում միայն եվրոպական պետություններից։

Այս ամենից հետո զարմանալի չէ, որ հերոս լեռնցիների ազատության գրավականը նա ևս տեսնում էր միայն Նապոլեոն III-ի միջամտության մեջ[47]։ Իբրև խաղաղ վերանորոգումների և եվրոպական դիվանագիտության ջատագով, Պատկանյանը ևս կատաղի հակառակորդ էր հեղափոխական ցընցումների։ 1862 կամ 1863 թթ. նա գրեց անտիպ մնացած իր «Փայտե ձիու վրա նստած հառաջադիմություն» պամֆլետը, ուր իր սրտի ամբողջ մաղձը թափում էր պրոգրեսի առանին «չարագրգիռ քարոզիչների» գլխին՝ արձագանքելով Լոնդոնի վտարանդիների և նրանց հայ կուսակիցների դեմ ռուս ռեակցիոն մամուլի էջերից տեղացող լուտանքներին։

Վաթսունական թվականների կեսերին, Ռուսաստանում արդեն գլուխ բարձրացրած ռեակցիայի պայմաններում, Պատկանյանը փոխում է իր դիրքորոշումը։ Նա երես է դարձնում արևմտահայ ազատագրական շարժումից և, Շահնազարյանի օրինակով, փրկության հույսեր կապում արևմտաեվրոպական պետությունների դիվանագիտական խաղերի հետ։

Թե որքան նեղ էր ազգային-պահպանողականների ակնկալած ազգային ռեֆորմների շառավիղը, կարելի է հետևցնել Մ. Աղաբեկյանի այն ազդարարությունից, թե ազգը կաթողիկոսական խնդրից բացի ուրիշ ոչինչ չունի բարեկարգելու։

Ժողովրդական, դեմոկրատական զանգվածները նրանց պատկերանում էին որպես պատմության կրավորական, անշարժ ու լճացած գործոն։

Հիրավի, ազգային-պահպանողականների մոտ ժողովուրդը որպես կույր տարերք իր կնիքն է դնում նույնիսկ պատմության ղեկավար գործիչների

44 «Հյուսիս», 1863—64, էջ 226։

45 Նույն տեղում, էջ 226 և հետ.։

46 Գրականության և արվեստի թանգարան, Գաբրիել Պատկանյանի արխիվ, թղթ. 129բ, վավ. 67։

47 Մատենադարան, Պատկանյանի արխիվ, թղթ. № 137, վավ. № 67։

վրա, նրանց հայեցակետով պատմական գործիչները անզոր են, եթե արմատներ չունեն ժողովրդի անցյալի մեջ։ Եվ այս չէ՞ միթե պատճառը, որ չնայած «ազգի» և «ժողովրդի» մասին իրենց արած հաճախակի հուշարկումներին, նրանց երկերը քիչ բան են տալիս ժողովրդի կարիքներն ու նպատակամղումները հասկանալու և նրա կյանքի օրինաչափությունները ըմբռնելու համար։ Ցատալիստորեն ապավինելով անցյալի պատմական տարրերին, ազգային-պահպանողականները ստվերի տակ էին թողնում ոչ միայն անհատ գործիչների ստեղծարար նախաձեռնությունը, այլև պատմության ընթացք տվող ժողովրդական զանգվածների ներգործոն դերը՝ ազգի փրկությունը սպասելով դրսից կամ վերուստ տրվելիք բարենորոգումներից։

## 3. ԼԻԲԵՐԱԼ-ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՀՈՍԱՆՔ

Լիբերալ-բուրժուական հոսանքը արձագանքում էր բուրժուական այն հասարակախավերին, որոնց բարեկեցությունը կախված էր արդյունաբերական կապիտալի հետ կապված ռուսահայ գաղթավայրերից, որոնք XIX դարի 50—60-ական թվականներին դարձան հենց այդ հոսանքի գործունեության հանգրվանները։ Այդտեղից էին ստանում նրանք և նյութական աջակցություն, և գաղափարական զորեղ մղումներ։ Պետերբուրգն ու Մոսկվան, Ն. Նախիջևանը, Ղրիմն ու Աստրախանը, Ղզլարն ու Մոզդոկը շատ ավելի անմիջականորեն էին կապված XIX դարի 50—60-ական թվականների արևելահայ լիբերալների լուսավորական գործունեության հետ, քան Երևանն ու Ալեքսանդրապոլը, Մեծ Ղարաքիլիսան ու Նոր Բայազետը։ Հատկանշական է, որ «Հյուսիսափայլ»-ը ավելի շատ բաժանորդներ ուներ Ռուսաստանի հայ գաղթավայրերում, քան կովկասյան տրանզիտի հետ կապված հայ առևտրականների այնպիսի հանգրվաններում, ինչպես Թիֆլիսն ու Շամախին, Ագուլիսն ու Շուշին։ XIX դարի կեսերին Ռուսաստանի հաղորդակցության ճանապարհների, ապրանքային տնտեսության և կապիտալիստական հարաբերությունների զարգացմանը զուգընթաց ամրանում էին Ռուսաստանի հայաբնակ ու ցրիվ գաղութների փոխադարձ կապերը և աշխուժանում հայկական համայնքների ազգային-հասարակական կյանքը։ Եթե դարասկզբին Ռուսաստանի հայաբնակ գաղութներում հարստություն էին կուտակում և ազգային կյանքում գործոն դեր կատարում հայ այն տարրերը, որոնք լայնորեն օգտագործում էին ցարիզմի կողմից իրենց շնորհված արտոնությունները, ապա դարամիջին այդ վայրերում ավելի ազդեցիկ էին դառնում այն տարրերը, որոնց նյութական կուտակումները կապված էին գլխավորապես արդյունաբերական կապիտալի տնտեսական ու տեխնիկական նվաճումների հետ։ Մանր արտադրության վրա հիմնված առևտրա-վաշխառուական հին կենցաղը տեղի էր տալիս նոր, բուրժուական հարաբերություններին։ Սկսվում է երիտասարդության ուժեղ հոսք դեպի Ռուսաստանի կրթական օջախները, մեծանում են ազգային գրականության ու դպրոցի, տպագրության ու մամուլի պահանջները։ Անհրաժեշտություն էր դառնում գրական նոր լեզվի մշակումը։ Երիտասարդության մեջ հասունանում էր բուրժուական-դեմոկրատական լուսավորչության բնորոշ ձգտումը

դեպի հասարակական կենսաձևերի եվրոպականացումը։ Գիտությունը և բանականությունը հակադրվում են եկեղեցու դավանաբանական նեղմտությանը։ Համաժողովրդական շահեր արտահայտող «նոր ուսումնականների» ազգային գիտակցությունը հակադրվում է կղերա-ազգայնական արտոնվածների հայացքներին, նպաստում լուսավորության գործի ժողովրդականացմանը, ազգի բախտը կապելով ոչ միայն ունևորների մեկենասության, այլև լուսամիտ դաստիարակողների ստեղծագործ մտքի հետ։

Արևելահայ լիբերալ-բուրժուական հոսանքի պարագլուխ Ստ. Նազարյանի ազգային-լուսավորական հայացքները կազմավորվեցին XIX դարի 30—40-ական թվականներին, Ռուսաստանում իշխող ֆեոդալա-ճորտատիրական սիստեմի տիրապետության պայմաններում։ Նրա վրա ազդեցություն էին ունեցել ազգային-ազատագրական այն տրամադրությունները ու հայացքները, որոնք հույսեր էին ներշնչում արևելահայերին՝ Ռուսաստանի օգնությամբ թոթափելու պարսկա-թուրքական լուծը։ Երեսնական թվականներին, Դորպատում ուսանելիս, Աբովյանի հետ մեկտեղ բարեբախտություն նկատելով Հայաստանի միացումը Ռուսաստանին, Նազարյանը պատմական այդ իրադարձությունը նախերգ է համարում հայ ժողովրդի ազգային-քաղաքական ազատագրումը մարմնավորող լուսավորության։ 1843 թ., երբ կաթողիկոս ընտրվեց Ներսես Աշտարակեցին, Նազարյանը վստահ էր, թե նոր կաթողիկոսը և Լազարյաններն իրենց ձեռքը կառնեն ազգի ղեկը, նրան կառաջնորդեն դեպի եվրոպական լուսավորություն։

Նիկոլայ I-ի բռնատիրությունը հուսախաբության մատնեց Նազարյանին։ Աբովյանին և Աշտարակեցուն գրած նամակներում նա ոչ միայն մերկացնում էր մեծատունների սորկահաճությունը, այլև նրանց հովանավորող ցարական բյուրոկրատիայի քաղաքականությունը։ Աբովյանին ուղղած մի նամակում հայտնում էր, թե այդ մասին գերմաներեն մի ճառ է գրել՝ «Մի հայացք Հայաստանի ներկայի և ապագայի մասին, հոգևոր տեսակետից» խորագրով։ Հայտնում էր նաև, որ ճառը գրվանի տակ էր մնացել՝ «վտանգավոր» բովանդակություն ունենալու պատճառաբանությամբ։ Զգալով ազգի դիմազրկման վտանգը, այս ժամանակաշրջանում Նազարյանը ազգի կենսունակության և հարատևության երաշխիք էր համարում ոչ միայն նրա լեզուն ու կրոնը, այլև «քաղաքական անոթը»։ 1845 թ. Նալբանդյանի «Յաղագս հայկական դպրութեան ճառ»-ը խմբագրելիս Նազարյանը այն միտքը մտցրեց, թե «դառազան իշխանութեան է, որ հովանաւորէ և զգիտութիւն և զուսումն ազգի և ոչ ուրեք ծաղկեցան իմաստութիւնք առանց ազգային պետութեան»[48]։ Այս նույն միտքն էր կրկնում նա 1859 թ., երբ հույների ազգային-ազատագրական շարժման մասին գրում էր, որ չկա ավելի վեհափառ տեսարան, քան այն, երբ ժողովուրդը «յուր կյանքը և պատիվը պաշտպանելու համար, վեր է կալնում զենքը, որ արիասիրտ պատրաստակամությամբ կամ հաղթե, կամ մեռանի»[49]։

Զպետք է այնուամենայնիվ եզրակացնել, թե իրենց անկախությունը զենքի ուժով պաշտպանող ազգերի մասին մեծ ակնածանքով խոսող Նազարյա-

48 Մ. Նալբանդյան, Երկերի լիակատար ժողովածու, հատ. 2, էջ 42 և հետ.
49 «Հյուսիսափայլ», 1859, էջ 898։

նը իր ժողովրդի ինքնապահության և զարգացման երաշխիքը նա որոնում էր զինված ապստամբության մեջ։ Նա մերժում է պայքարի հեղափոխական ճանապարհը, լուսավորությունը համարում հայերի նյութական բարեկեցությունը երաշխավորող այն միջոցը, որը կոչված է «հոգի և զորություն տալ ազգին դիմանալու օտարի կլանող բռնությանը»[50]։

Տակավին 40-ական թվականներին Նազարյանը ձգտում էր իրավունք ստանալ արևելահայ աշխարհաբարով հայ պարբերական հրատարակելու Կազանում, ուր նա ստանձնել էր համալսարանի արևելյան լեզուների ամբիոնը։ Պարբերականի նպատակն էր «հաղորդել ժողովրդյան եվրոպական քաղաքականության (քաղաքակրթության— խմբ.) և կրթության հառաջադիմությունը և կատարել աշխարհումը ցաք ու ցիր եղած Հայկա որդվոց մեջ մտավորական առ ու տուրք», քաջալերելով նրանց ազնիվ ու գեղեցիկ նախաձեռնությունը ազգային լուսավորության մասին, միավորել նրանց «ի մի մարմին բարոյական՝ հոգևորեալ հասարակաց մտածությամբ»։ Ցարական կառավարությունը չընդառաջեց երիտասարդ գիտնականի ինչպես այս, այնպես էլ սրան հաջորդած ազգային-մշակութային այլ մտահղացումների կենսագործմանը[51]։

Հայերեն պարբերականի հրատարակումը իրագործվեց միայն Ղրիմի պատերազմից հետո՝ Ռուսաստանում սկսված հեղափոխական իրադրության տարիներին։ 1858 թ. Մոսկվայում Նազարյանի խմբագրությամբ սկսեց լույս տեսնել «Հյուսիսափայլ» ամսագիրը։

«Հյուսիսափայլ»-ը որպես եվրոպական գիտության և ռուսական քաղաքակրթության դրոշակակիր ձգտում էր իր ձայնը Մոսկվայից հասցնել Կովկասի հեռավոր անկյուններն ու Ասիայի խորքերը։ Նրա նպատակն էր ծառայել ազգի բազմությանը, ժողովրդի կրթությանը, և լինել ազգի ինքնապահպանության զենք՝ «արտաքին սպառնալիքի» դեմ։

«Հյուսիսափայլ»-ը հակադրվում էր հայ կյանքում տիրող կղերական մտքի գերիշխանությանը և դառնում ազգային-լուսավորության բերան։ Ազգային ռեակցիային դիմադրելու համար ռուսահայ լիբերալ բուրժուական հայացքներ պաշտպանող Նազարյանը հանդես եկավ բուրժուա-դեմոկրատական հոսանքի միասնական ճակատում։ Պատահական չէ, երբ 1861 թ. էջմիածնի սինոդը սպառնում էր արգելել ամսագիրը, նրան պաշտպանելու համար հրապարակ եկան Պետերբուրգի մի խումբ հայ գործիչներ, որոնց մեջ էին և լիբերալ, և պահպանողական, և դեմոկրատ մտավորականներ՝ Նիկողայոս և Պետրոս Շանշյանները, Մովսես և Ղազար Բուդաղյանները, Մկրտիչ Սանասարյանը, Ռափայել Պատկանյանը, Ղազարոս Ղաֆյանը և ուրիշներ։ Թիֆլիսում ևս ռեակցիայի դեմ ընդհանուր ճակատ ստեղծելու համար ազգային-պահպանողականները հենակետեր էին որոնում դեմոկրատական հասարակախավերի մեջ։ Նրանք էին, որ առաջին անգամ հրատարակեցին և Սայաթ-Նովային և Խաչատուր Աբովյանին։ Առավել հատկանշական է, սա-

50 «Հյուսիսափայլ», 1859, էջ 898։

51 Աշ. Հովհաննիսյան, Մ. Նալբանդյանը և նրա ժամանակը, հատ. 1, Երևան, 1955, էջ 134 և հետ.։

կայն, որ ամսագրի հենց սկզբնավորման պահից Նազարյանը զինակցեց հայ դեմոկրատիայի առավել աչքի ընկնող հրապարակախոսի՝ Միքայել Նալբանդյանի հետ, որը և դարձավ նոր պարբերականի գլխավոր աշխատակիցը։

Ի տարբերություն Նալբանդյանի, որը հենվում էր ողջ հայ դեմոկրատական լայն հասարակախավերի վրա և արտահայտում նրանց գաղափարախոսությունը, Նազարյանի հրապարակախոսությունը զարգացման «եվրոպական քաղաքակրթության» ուղին բռնած արևելահայ լիբերալ բուրժուազիայի գաղափարախոսությունն էր։



«Հյուսիսափայլ»-ի տիտղոսաթերթը

Բնութագրելով հայ վաճառականությանը, Նազարյանը տակավին 1851 թվականին էր դիտում, թե հայերի գնելու և վաճառելու զբաղմունքը հեռու է եվրոպական «քաղաքականության» (քաղաքակրթության—խմբ.) հետ կապված վաճառականությունից, որովհետև իրենց անկրթության հետևանքով հայերը զուրկ են վաճառաշահ արտադրանքի գործատներից («գործարանս վաճառաշահական յօրինուածոց») և չունեն առևտրական այնպիսի ընկերություններ, որոնք միլիոններ են խաղացնում[52]։ Տասը տարի անց նա հայերին հորդորում էր «իմացական վաճառաշահության և տուրևառքի հրապարակ բանալու ազգի մեջ»[53], այլ խոսքով՝ նրանց հանձնարարում անարտադրական առևտրից անցնելու կապիտալիստական արդյունաբերության։

«Վաճառականական ժողովուրդ» համարելով հայերին՝ «Հյուսիսափայլ»-ի խմբագիրը հազիվ էր նշմարում հայ գյուղացի դասին։ Անդրկովկասի համքարությունների հարցում նա առարկում էր ազգային-պահպանողական «թիֆլիսցիներին»։ «Այն արվեստակից համքար կամ սնաֆ ասված միաբանու-

52 Ստ. Նազարյանց, Յաղագս փործական հոգեբանութեան ճառ, Մոսկվա, 1851, էջ ԻՁ և հետ.։
53 «Հյուսիսափայլ», 1861, էջ 5։

թյանցը,— գրում էր նա,—որոնց շատ սիրում են Թիֆլիսեցի հայերը, մեծ զորություն և ազդեցություն ընծայել ամենևին արտաքին բան է. և ոչինչ խորհուրդ չունի, եթե ոչ մի արտաքին կարգ ու կանոն պահելու արվեստակիցների մեջ և հսկելու նոցա նյութական օգտի վերա»։ «Ոչ մի տեղ այդ արվեստակիցների հոգաբարձությամբ չէ հառաջացել... ոչինչ ընկերական կարգադրություն, ոչ մի ուսումնարան, ոչ մի ժողովրդական գրանոց, ոչ մի ընթերցանության կամ մի այլ իմացական գործողության ժողով»[54]։

Նազարյանի կարծիքով արդյունաբերող վաճառականությունը պիտի լիներ ազգային կյանքը շարժող և ազգի բարեկեցությունը պահպանող զսպանակը։ Նա էր դարձյալ, որ պիտի չեզոքացներ կղերի միապետությունը, մշակեր «ամբոխի» կորդացած միտքը և ապահովեր ժողովրդի բարօրությունը։ Ամեն ինչ պետք է սկսել առևտրի ու վաճառականության կարգավորումից, սրանց «եվրոպականացումից»։

1860 թ. «Հյուսիսափայլ»-ում տպագրելով «Ժողով վաճառականների ի Մոսկվա» վերտառությամբ մի նախագիծ, Նազարյանը բարձրացնում էր հայ և ռուս բուրժուազիայի տնտեսական փոխհարաբերությունների հարցը։ Նա խորհուրդ էր տալիս հրաժարվել տեղական մանր արտադրության և արտասահմանյան կապիտալի հետ զոդված գործառնությունից և վաճառականական ընկերությունների միջոցով կապվել ռուսական արդյունաբերության հետ։ Միայն այդ միջոցով է հնարավոր ընդարձակել ազգային առևտրի ծավալը և հետզհետե անցում կատարել դեպի գործարանային ու ֆաբրիկային արդյունաբերությունը։ Ոչ միայն հայերի առևտուրը, այլ նրանց գյուղատնտեսությունն իսկ չունի զարգացման այլ հեռանկար, քան կապիտալիզմի ուղին։ Նազարյանը մատնանշում է այն դերը, որ կարող էին խաղալ հայերի մեջ «եվրոպական խոհեմ կարգով կազմակերպված այգեգործությունն ու մետաքսագործությունը»[55]։ Միայն նման միջոցով է, որ պիտի «ազգը զորանա»։ Ազգի զարգացման համար անհրաժեշտ է, որ հայ պատանիները ստանան նաև «վաճառականական և պոլիտեխնիկական կրթություն»[56]։ «Հյուսիսափայլ»-ի էջերում Նազարյանը արծարծում էր բաժնետիրական հիմունքներով կազմակերպվելիք ռուսահայ գործարանային արդյունաբերության գաղափարը և դրա հետ կապված հայ առևտրական կապիտալի զարգացման սոցիալ-տնտեսական հեռանկարները։

Մատնանշելով կապիտալիստական զարգացման այդ ուղին, Նազարյանլուսավորիչը ելնում էր ոչ թե արևելահայ բուրժուազիայի դասակարգային շահերը պաշտպանելու նեղ մտահոգությունից, այլ արևելահայ հասարակական կյանքի բուրժուական ուղու հետ լծորդված ազգի ընդհանուր բարեկեցության, նրա համախմբման ու ինքնապահովման մղումներից։ Հայ վաճառականության շահերն իսկ նրան պատկերանում էին ազգի ընդհանուր առաջադիմության և «հասարակաց» (ընդհանրության) շահախնդրության հետ լծորդված։ Նույն մերձեցմամբ վեր հանելով վաճառականության կապիտալիստական

54 Ստ. Նազարյանց, Երկեր, հատ. Ա, Թիֆլիս, 1913, էջ 112։
55 Նույն տեղում, էջ 163 և հետ.։
56 Նույն տեղում, էջ 278 և հետ., 282 և հետ., հմմտ. նաև «Հյուսիսափայլ», 1858, էջ 233։

զարգացման հեռանկարները, հրապարակախոսը խարազանում էր ազգի «հարստականների» (նախակապիտալիստական շրջանի «մեծատունների») հետամնացությունն ու եսականությունը և եվրոպական լուսավորության ու առաջադիմության պահանջների անտեսումը նրանց կողմից[57]։

Ղրիմի պատերազմում ցարիզմի կրած պարտությունը ցույց տվեց, որ իշխող ճորտատիրական կարգերը պատճառ են դառնում Ռուսաստանի հետամնացությանը և արգելք նրա առաջընթացին։ Այս նշանակում է, որ ճորտատիրական կարգերը անհամատեղելի էին դարձել Ռուսաստանի պետական շահերի հետ։ Անգամ ցարիզմի ղեկավարները հանգեցին այն եզրակացության, որ եթե գյուղացիության ազատագրությունը տեղի չունենա «վերից»՝ ռեֆորմի միջոցով, այն տեղի կունենա «վարից»՝ հեղափոխական ճանապարհով։

Ի՞նչ ուղիներով պիտի գնա երկրի հետագա զարգացումը՝ ռեֆորմի՞, թե՞ հեղափոխության. այս երկընտրանքի առաջ էր կանգնած Ռուսաստանն այդ պահին, և երկրի երկփեղկված հասարակական միտքը հածում էր հիմնական այդ հարցի շուրջը։

Չնայած երկրում օրավուր աճում էին ճորտերի տարերային հուզումները, բայց հեղափոխություն, այնուամենայնիվ, չկատարվեց. վճռական այդ պահին ռուս ճորտերը գիտակից ու կազմակերպված հեղափոխական դասակարգ չէին կազմում։ Դիմադիր բուրժուազիան ոչ միայն չգլխավորեց ապստամբող ճորտերին, այլև երկյուղ կրելով հեղափոխությունից, փարեց ցարական ռեֆորմներին։ Վճռական րոպեին նա ձայնակցում էր խաղաղ ռեֆորմների ընթացքը իր օգտին շրջող կալվածատերերին։

Հասկանալի է, որ այս պայմաններում դեպքերի ընթացքը թեքվում էր բուրժուա-կալվածատիրական դասակարգերին ձեռնտու ռեֆորմների կողմը և, հաշվի առնելով իր համար նպաստավոր ուժերի այդ դասավորությունը, ռեֆորմներից անմիջապես հետո ցարիզմը հակագրոհի անցավ ապստամբություն սպառնացող գյուղացիության դեմ։

XIX դարի վաթսունական թվականների սկզբին կղերա-աղայական հոսանքին դիմադրող մինչ այդ միասնական բուրժուա-դեմոկրատական ճակատը իր ազդեցությունը գործեց նաև հայ կյանքում։ Գյուղացիական հեղափոխության դեմ հակագրոհի էին անցնում հայ կղերա-աղայական հոսանքը և ազգային-բուրժուական մտքի պահպանողական ու լիբերալ տարատեսակությունները։

Համառուսական հեղափոխական իրադրության տարիներին Նազարյանը մտահոգված էր ռուս ճորտերի բարոյական ազատության խնդրով միայն։ «Այս րոպեիս,— գրում էր նա,— գտնվում է Ռուսաստանը մի խորհրդավոր վերածնության ասպարեզի մեջ»։ Նա ողջունում էր ցարի գաղափարը—«ազատել ռուսաց շինականը դարավոր, տմարդացուցիչ ծառայության լծի տակից և այդպես ճանապարհ բանալ նորան դեպի բարոյական ազատությունը...»[58]։ Նազարյանը վստահ էր, որ ցարական առաջիկա ռեֆորմների շնորհիվ ոչ միայն ռուս ժողովրդի «իմացական զորությունքը կարող են այժմ ազատա-

57 Նույն տեղում, էջ 282։

58 «Հյուսիսափայլ», 1859, էջ 451։

պես աճել և զորանալ», այլև, որ նոր հորիզոններ են բացվում նաև ժողովրդի առաջ. «Եվրոպան բաց ու արձակ է հայերու առջև, նոքա կարող են մասնակից լինել նորա կրթությանը և լուսավորությանը»[59]։

Երբ ցարիզմը հարձակման անցավ Ռուսաստանում բռնկվող գյուղացիական-ապստամբությունների դեմ և ռուս լիբերալները խոհեմության կոչեր էին հղում գյուղացիական հեղափոխությունը հրահրող Ռուսաստանի ազատամիտ ուսանող երիտասարդությանը, արևելահայ լիբերալների պարագլուխ Ս. Նազարյանը ևս փորձում էր սաստել հեղափոխական տրամադրություններով համակված հայ երիտասարդներին։ «Հայը Ռուսաստանում վայելում է քաղաքացու իրավունքը,— հիշեցնում էր նա,— ոչինչ բռնություն չի հասնում նորա ընտանիքին և ոչ նորա վաստակին, ամենը նա կարող է վայելել օրենքի պաշտպանության տակ, ցուցանելով միայն յուր պարտքն իբրև քաղաքացի մի տերության, որ նյութապես և բարոյապես սնուցանում է նորան, և տալիս է ամեն մի հային նույնքան իրավունք, որքան յուր ազգին, ամենևին անխտիր իբրև միևնույն թագավորության որդիները»[60]։



Ստեփանոս Նազարյան

Նազարյանը հանգում էր այն մտքին, թե հայ ժողովրդի Ռուսաստանին միացած հատվածը. արդեն իսկ թոթափել է քաղաքական ստրկության լուծը և հիմա նրան մնում է միայն «ազատապես աճել ու զարգանալ»։

Իր դիրքավորումով Ս. Նազարյանը սահմանազատվում էր կովկասահայ պահպանողականների ազգային-քաղաքական ինքնորոշման նպատակամըղումներից և միաժամանակ բարեկամական խոսք ուղղում ազգի մեծատուններին։

«Հյուսիսափայլ»-ի խմբագիրը ուզում էր հավատացնել հայ մեծատուններին, թե նրանց ձեռքում է գտնվում նույնիսկ հայ «հասարակի» փրկության բանալին, նրա մերկությունը ծածկելու հնարը, նրա լուսավորությունն ու բարօրությունը»[61]։ Նա չէր հակադրվում անգամ հայ եկեղեցուն, քանի որ նրան թվում էր, թե միայն եկեղեցու միջոցով է, որ հայերը պիտի առաջ տանեն ազգաշինության և լուսավորության գործը. դրա համար հարկավոր է միայն, որ «իմացության և կրթության պարագլուխ եկեղեցին վերանորոգվի «ավետարանական ուսմունքով»։

---

59 Ստ. Նազարյանց, Երկեր, հատ. Ա, էջ 93։
60 «Հյուսիսափայլ», 1861, էջ 252։
61 Նույն տեղում, էջ 253։

«Հյուսիսափայլ»-ը իր հրատարակության վերջին տարում՝ 1864 թ. ասպարեզ իջավ դարձյալ «խաղաղության շյուղը ձեռքին»։ Նազարյանը նորից մոտեցավ երբեմնի հակառակորդներին՝ «անկեղծ ու աննենգ եղբայրությամբ»։

Այնուամենայնիվ, խորացող ռեակցիայի պայմաններն աննպաստ էին անգամ նահանջող լիբերալիզմի համար։ 1867 թ. Նազարյանը թույլտվություն էր խնդրում կառավարությունից հրատարակելու նոր պարբերական՝ «Լապտեր Հայաստանի»-ն, որի էջերում նախատեսվում էր ոչ միայն ազգային-պահպանողական Կ. Եզյանի և Գևորգ Քանանյանի, այլև հայկական ռեակցիայի պարագլուխներից մեկի՝ Մ. Մսերյանի աշխատակցությունը։

Նազարյանի այս մտահղացումը չիրականացավ միայն այն պատճառով, որ Երրորդ բաժանմունքը «սեպարատիստական» տենդենցներ էր նշմարում Նազարյանի մեջ, ի դեմս նրա տեսնում էր մեկին, որը «հետամուտ է կառավարության շահերին հակառակ՝ հայ ազգային ձգտումներին»[62]։

Ցարական ժանդարմները սխալ հետքերի վրա էին։ Նրանք անտեսում էին հրապարակախոսի հայացքների մեջ կատարված հեղաբեկումը, հաշվի չէին առնում, որ Նազարյանը ազգային-քաղաքական ակնկալություններ չուներ ոչ միայն Արևելյան Հայաստանի, այլև նույնիսկ Հայաստանի արևմտյան հատվածի ազգային քաղաքական հեռանկարների նկատմամբ։ «Այժմ փառք և գոհություն ամենակարողին,— գրում էր նա արևմտահայերի Ազգային սահմանադրության կապակցությամբ,— մեր հայրենակիցքը թե Տաճկահայաստանի և թե Ռուսաստանի մեջ կարող են ապրել առանց թաղելու յուրյանց ձեռքի վաստակը հողի տակ, առանց տների պատերի մեջ փակելու յուրյանց կին ու զավակը»[63]։ Նազարյանը «ազգային օջախ» չէր որոնում ո՛չ Ռուսաստանի և ո՛չ իսկ Թուրքիայի սահմաններում։ «Ո՜հ, այս րոպեիս մեր ցան ու ցիր հողերին զարկած, բրդզզած կյանքի մեջ, մեր հայրենիքը չեն Անի քաղաքի ավերակները, որ ոմանք կարճատես մարդիկ հրավիրում են մեզ կենակից լինել բուերի և խլեզների,— ոչ, մեր հայրենիքը այս րոպեին մեր սրտի և հոգու մեջ է, թեպետ նույնպես ավերակ և փլատակված, ինչպես Անի քաղաքի անցած փառահեղությունը»[64]։

Փոքր-ինչ հետո Նազարյանը ազգային-հոգևոր անկախության այս գաղափարը պարուրում էր կրոնա-բարոյական ազատությամբ և հումանիզմով։ Նա այն միտքն էր հայտնում, թե որքան դանդաղ ընթանա որևէ ազգի լուսավորությունը, նույնքան ապահով կլինի նրա նպատակի իրագործումը, «եթե նա տևողապես կհիմնավորվի բանականության, կրոնական ազատության և ավելի վերին, իբրև կրոն պայծառակերպված բարոյականության և մարդկայնության վրա»[65]։

Հայ լիբերալիզմի կապը այդ ժամանակաշրջանում թույլ էր անդրկովկասյան հայության հետ։ Անդրկովկասում իսկ, ուր հազիվ միայն իր առաջին

---

62 «Հայ նոր գրականության պատմություն», հատ. 2, Երևան, 1962, էջ 86։
63 «Հյուսիսափայլ», 1861, էջ 252։
64 Նույն տեղում, 1860, էջ 72։
65 Նույն տեղում, 1862, էջ 302։

*փայլերն էր անում կապիտալիզմը, հայ բուրժուազիան ամուր հենարան չուներ արևելահայ լիբերալիզմի ազգային-քաղաքական դիրքավորման համար։ Սակայն այդ մի պահ էր, երբ արևելահայ բուրժուազիան նշմարում էր իր նկատմամբ ցարական քաղաքականության հովանավորությունը։*

## 4. ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ-ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՀՈՍԱՆՔ

*1859—1861 թվականների համառուսական հեղափոխական իրադրության տարիներին հայ հեղափոխական դեմոկրատները Միքայել Նալբանդյանի գլխավորությամբ կազմում էին ռուսական հեղափոխական դեմոկրատիայի ընդառաջող հեղափոխական ջոկատներից մեկը, որին խոշոր դեր էր վերապահված հայ հասարակական-քաղաքական մտքի հետագա զարգացման մեջ։ Ճնշված ու հարստահարված ժողովրդական զանգվածների դասակարգային շահերը Նալբանդյանը տարբերանշում էր համաժողովրդական այն շահերից, որոնց պաշտպանության համար ժողովրդի անունից մինչ այդ հանդես էին գալիս միայն արևելահայ բուրժուազիայի պահպանողական և լիբերալ գաղափարախոսները։*

*Եթե սկզբնապես ազգային գործիչները ազգի լուսավորությունը ակնկալում էին իշխող վերնախավերի ձեռնտվությունից և նրա զարթոնքի կրողներ համարում լուսավորված մտավորականությունը, ապա Մ. Նալբանդյանը «Հասարակ ժողովրդի» մեջ տեսավ ազգի հենարանն ու վերակենդանության լծակը։ Հատկանշական է, որ նա երիտասարդության առաջավոր ջոկատներին նվիրեց «Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ» աշխատությունը։ Մ. Նալբանդյանը հանդես եկավ որպես հայ հասարակական մտքի և ազգային-ազատագրական շարժման հեղափոխական-դեմոկրատական ուղղության հրապարակախոսը։ Այդ երկում նա պայքարի կոչ արեց հայ առաջավոր երիտասարդությանը՝ հանդես գալ հանուն հայրենիքի վերածնության, հանուն նրա ազատագրման և «կենսանորոգ ու որոտընդոստ հարության»։*

*Ֆեոդալա-կալվածատիրական բռնության դեմ Խ. Աբովյանի պարզած հայ դեմոկրատական ազգայնության դրոշը Մ. Նալբանդյանի և իր հետևորդների համար դարձավ ցարական գաղութատիրության և սուլթանական բռնատիրության դեմ ուղղված ազգային-ազատագրական շարժման զինանշան։ Հայ դեմոկրատիայի ազգային-ազատագրական ջանքերը նրանք գաղափարապես և կազմակերպչորեն կողմնորոշում էին դեպի Ռուսաստանում բռնկող գյուղացիական հեղափոխությունը, Արևմուտքում արծարծված ազգային և սոցիալական շարժումները։*

*Դրանով էլ հատկանշվում է հայ դեմոկրատական մտքի մեջ նրանց կատարած սոցիալ-քաղաքական շրջադարձը։*

*Մ. Նալբանդյանը ծնվել է 1829 թ. հոկտեմբերի 26-ին (ն. տ. նոյեմբերի 7-ին) Նոր Նախիջևան (ներկայիս Դոնի Ռոստովի Պրոլետարական շրջան) քաղաքում՝ արհեստավոր-դարբնի ընտանիքում։ Մի քանի ամիս խալֆայական դպրոց հաճախելուց հետո, մանուկ Միխայելին տալիս են Գաբրիել Պատկանյանի մասնավոր վարժարանը։ Ուշիմ ու շնորհալի պատանու մեջ Պատկանյանը սեր է արթնացնում դեպի գրաբարը, հայոց մատենագրությունն ու*

պատմությունը և միաժամանակ նրան վարժեցնում ռուսերենի մեջ ոչ միայն որպես պետական լեզու, այլև ռուս հեղինակների «բանաստեղծական գեղեցիկ մտաց» յուրացման միջոց։

Նալբանդյանի աշակերտության տարիներին ազգային-պահպանողական Պատկանյանը պայքարի մեջ էր Ն. Նախիջևանի քաղաքային և հայ եկեղեցական վարչությունների մեջ բույն դրած աղայական և կղերական վերնախավի հետ։ Սուր ընթացք ստացավ նրա պայքարը քաղաքագլուխ Հարություն աղա Խալիբի և նրան հովանավորող ռուս բարձրաստիճան պաշտոնեության ու հայ եկեղեցական իշխանությունների դեմ։ Ոչ միայն իր գրվածքներում, այլև սաների հետ ունեցած զրույցներում Պատկանյանը նշավակում էր քաղաքի տըգետ մեծատուններին ու խաբեբա առևտրականներին, ձևապաշտ իշխաններին ու ծխապաշտ տերտերներին։

Պատահական չէ, որ իր դպրոցական տարիներին, նրան աշակերտած պատանի Նալբանդյանը մի ոտանավորում մերկացնում էր ազգային ֆամուսովների ու տարտյուֆների մռայլ դիմագծերը։ Պատկանյան-ուսուցչի հետ մեկտեղ պատանի Նալբանդյանին ևս բաժին հասավ Խալիբին հովանավորողների՝ Ներսես Աշտարակեցու և փոխարքա Վորոնցովի հալածանքից։ 1845 թ. կաթողիկոսը ստիպեց ուսուցչին Նոր Նախիջևանից տեղափոխվել Թիֆլիս, իսկ տիրացու Մուխալին առաջարկեց հաճախել Մկրտիչ Եկենյանի ընծայարանը։ Համոզված, որ սովորելու ոչինչ չունի նոր ուսուցչից, Մուխալը հրաժարվեց նրա դասերից, իր դեմ բորբոքելով կաթողիկոսի սուր զայրույթը։ Հալածանքը Մ. Նալբանդյանի դեմ էլ ավելի բորբոքվեց, երբ Նոր Նախիջևանի և Բեսարաբիայի թեմի վիճակավորը դպրի կոչում տվեց Պատկանյանի սանին, առաջնորդարանի գրագրի և հետո նույնիսկ թեմական քարտուղարի պաշտոն հանձնելով նրան։

Թեմական քարտուղարի պաշտոնը հնարավորություն էր տալիս երիտասարդ Նալբանդյանին ծանոթանալու Ն. Նախիջևանի, Ղրիմի, Օդեսայի, Քիշնևի հայ գաղթավայրերի վիճակին, շփվելու ռուս և ուկրաինացի աշխատավորության հետ և համակվելու առաջավոր մտավորականության տրամադրություններով։ Առաջնորդի քարտուղարը մեծ հեղինակություն էր վայելում և իր դեմ բորբոքում կղերա-աղայական վերնախավերի դժգոհությունը։ Վերջիններիս սադրանքով Ներսեսը կարգադրում է էջմիածնի սինոդին՝ պատասխանատվության կանչել անհանգիստ «դպրին»։ Հրաժարվելով հոգևոր կոչումից, իրեն հասցեագրված զրպարտությունների մասին Մ. Նալբանդյանը գըրավոր բացատրություններ է ներկայացնում և, էջմիածին մեկնելու փոխարեն, ուղևորվում Պետերբուրգ՝ քննություն բռնելու համալսարանում հայոց լեզվի դասատուի իրավունք ստանալու համար։

1853 թ. Նալբանդյանը հայոց լեզվի դասատուի պաշտոն է ստանձնում Մոսկվայի Լազարյան ճեմարանի դասարանական բաժանմունքում։ Բայց հակառակորդները այստեղ ևս հանգիստ չեն տալիս նրան։ Աղայական ոսկեպարկի, կաթողիկոսական գավազանի և ոստիկանական մտրակի դեմ ըմբոստացող երիտասարդի մեջ նրանք նշմարում էին հարստահարված ժողովրդի մոլեգին պաշտպանին։ Նրանք նույնիսկ երկյուղ էին ապրում այն բանի համար, որ նա Մոսկվայում գտնվելով կարող է սպառնալից լինել մեծատունների և

նրանց աղոթող եկեղեցականների համար։ Ի վերջո պարզվում է, որ սինոդի կողմից հոգևոր կոչումից ազատված Նալբանդյանը ենթակա չէ եկեղեցական պատասխանատվության։ Նրան «Սիբիր քշելու» կաթողիկոսի սպառնալիքը մնում է անիրագործելի։ Լազարյանները ստիպված եղան նրան հեռացնել ճեմարանից։ Այնուամենայնիվ, հնարավոր համարեցին միջնորդելու, որպեսզի նա բարձրագույն ուսում ստանալու համար ազատ ունկնդիր համարվի Մոսկվայի համալսարանի բժշկական ֆակուլտետում։

50—60-ական թվականների Մոսկվայի ու Պետերբուրգի համալսարանների բնագիտական և բժշկական ֆակուլտետները առաջավոր գաղափարների օջախներ էին ցարական Ռուսաստանում։ Այստեղից լույս ու ջերմություն էին ստանում բնական գիտություններն ու մատերիալիստական աշխարհայեցությունը՝ քննադատության մթնոլորտ ստեղծելով իդեալիստական գաղափարախոսության դեմ և ձայնափող դառնալով երկրում ծավալվող դիմադիր տրամադրությունների։

1854—1855 ուսումնական տարվանից մինչև 1858 թվականի վերջերը ուսանող Նալբանդյանի համար լարված մտավոր աշխատանքի ժամանակաշրջան էր։ Բնական գիտությունների յուրացումը մեծ և արգասավոր ազդեցություն ունեցավ նրա հայացքների ձևավորման վրա։ Ջերմ խոսքերով էր նա հիշում իր ուսուցիչներից՝ օդըմտելաբանության ուսմունքի հիմնադիր, նշանավոր գիտնական Կ. Ռուլյեի անունը։ Սակայն այդ իսկ պահին Նալբանդյանի հայացքների կազմավորման վրա ազդում էին ոչ միայն համալսարանի ամբիոններից հնչող գաղափարները, այլև Ղրիմի պատերազմից հետո երիտասարդությանը համակած մտավոր-քաղաքական խմորումները, թշնամանք սնելով նրանց մեջ դեպի ցարիզմն ու ճորտատիրական կարգերը, բյուրոկրատական քաշքշուկները, մտքի և մամուլի վրա ծանրացած ոստիկանական բռունցքը։ Մի ժամանակ էր այդ, երբ տարբեր հասարակաշերտերում պայքարի տրամադրություններ էին կուտակվում ճորտերի ազատագրման օգտին, հոգատարության կոչեր լսվում մարդու բարեկեցության և նրա մտավոր-բարոյական արժանիքների գնահատման ու պաշտպանության օգտին։

Մոսկվայի համալսարանում ուսանելիս և ապա 1859—60 ուսումնական տարում թեկնածուական քննություն հանձնելու համար Պետերբուրգի համալսարանի հետ ունեցած շփումների ժամանակ Նալբանդյանը հնարավորություն ունեցավ հիմնավորապես ծանոթանալու ռուս դեմոկրատական մտավորականությանը համակած հեղափոխական հայացքներին, հափշտակությամբ հետևելու Չերնիշևսկու և Դոբրոլյուբովի մերձավոր աշխատակցությամբ լույս տեսնող «Современник»-ին և հետաքրքրությամբ որոնելու Գերցենի և Օգարյովի՝ Լոնդոնում հրատարակվող «Полярная звезда» և «Колокол» պարբերականների համարները։ Ուսանող երիտասարդները ձեռքից ձեռք էին տալիս Գերցենի հոդվածները[66]։ Մ. Նալբանդյանը ուսումնասիրում էր Բելինսկու և Գերցենի, Չերնիշևսկու, Դոբրոլյուբովի ու եվրոպական ուտոպիստ սոցիալիստների երկերը[67]։ Նրա այդ տարիների գրվածքներում արդեն զգացվում

---

66 «Революционная ситуация в России в 1859—61 гг.», М., 1962, էջ 346 և հետ., 353։

67 Աշ. Հովհաննիսյան, Նալբանդյանը և նրա ժամանակը, հատ. 2, էջ 186 և հետ.։

է մատերիալիստական և հեղափոխական-դեմոկրատական հայացքների ազդեցությունը։

Նալբանդյանի հայացքներով համակված էին հայ ուսանողական այն շրջանները, որոնք համոզված էին, թե հայ ժողովրդի լուսավորական ջանքերը և ազգային-քաղաքական ինքնորոշման ձգտումները չունեն ավելի վստահելի հենարան և ուղեցույց, քան ցարիզմին հակադրված դեմոկրատական Ռուսաստանն ու նրա առաջավոր միտքը[68]։

Դրանք առաջին հայ մտավորականներն էին, որոնք հստակորեն տեսնում էին երկու Ռուսաստան։ Դրանցից մեկը, իշխող դասակարգերին զորավիգ, սահմանափակում կամ ճնշում էր հպատակ ազգությունների ազատաբաղձությունը, արհամարհում կամ կաշկանդում նրանց դպրոցների ու լուսավորության, լեզվի ու գրականության զարգացումը։ Մյուսն՝ ընդառաջում էր նրանց ազգային-մշակութային ու քաղաքական ինքնագիտակցությանն ու ազատագրական ձգտումներին։ Նալբանդյանի պաշտպանած գաղափարները անդրադարձնում էին արևելահայ դեմոկրատական երիտասարդությանը ոգեշնչող հայացքները, նպաստում նրանց մտքերի հստակեցմանն ու բյուրեղացմանը։

Ուշագրավ է, որ 50-ական թվականների վերջերին և 60-ական թվականների սկզբներին հետզհետե հեղափոխական-դեմոկրատական երանգ ու ուղղություն ստացող հայ ուսանողության հայացքներին դիմադրելու համար Մոսկվայի ու Պետերբուրգի համալսարաններում կազմակերպում էին հայրենակցական «ժողովներ» (միություններ), որոնց նպատակն էր զսպել հայ ուսանողների «երիտասարդական կրքերը» և նրանց հեռու պահել մյուս ազգությունների պատկանող ուսանողների «խլրտումներից»[69]։ Մոսկվայի «ժողովներում» դասախոսություններով հանդես էին գալիս Նազարյանն ու Մսերը, իսկ Պետերբուրգի հայրենակցական կազմակերպությունների գործունեությունը ղեկավարում էր ազգային-պահպանողական գործիչ Կ. Եզյանը։ Նման կազմակերպություններ կային նաև վրաց ուսանողների մեջ[70]։

Ուսանող Նալբանդյանին համակած մտքերի ու հույզերի մասին ցայտուն պատկերացում են տալիս տակավին 1854—55 թվականներին գրված նրա «Յաղագս հայկական դպրութեան ճառ» վերնագրով խորհրդածությունները։ Գրաբարով գրված այդ էջերն, ըստ էության, նվիրված են աշխարհաբարի պաշտպանությանը և լուսաբանում են հայ նոր գրականության հանգուցային խնդիրները։ Ակներև է Բելինսկու գրական-քննադատական հայացքների ազդեցությունը հեղինակի վրա և նրա տրամադրությունը հայ հին գրականության վաստակների վրա հանգչող կղերամիտ հայկաբանների դեմ։ Նալբանդյանը հետախուզում է հայ գրականության անցյալը, նրա արդի տկարության պատճառներն ու զարգացման գալիք ուղիները որոշելու համար։ Ելնելով արդիական պահանջներից, նա քննադատում էր հին հայ մատենագրության մեջ իշխող կղերա-ֆեոդալական մտայնությունն ու արդի գրաբարյանների ժամա-

68 Նույն տեղում, էջ 31 և հետ., էջ 79 և հետ.։

69 Նույն տեղում, էջ 151 և հետ., էջ 186 և հետ.։

70 *Н. Николадзе*, Воспоминания о шестидесятых годах, «Каторга и ссылка» ամսագիր, 1927, № 1, էջ 33 և հետ.։

նակավրեպ հայացքները։ Հայ նոր գրական լեզվով ստեղծվելիք գրականությունը, ասում է նա, պետք է ճանապարհ հարթի դեպի ազգի մտավոր զարթոնքն ու քաղաքական վերածնությունը։ Այստեղից էլ հենց աղբյուրանում է հին հայ մատենագրության գնահատականների նրա խստաչարությունը և հետագայում էլ՝ հանդիպող նրա այն միտքը, թե «ազգի անդաստանում հինգ հատ ցորենաբույս չկա, բայց փուշ և որոմ՝ բյուրավոր» կամ նրա այն գանգատը, թե ազգի մատենագրության չքավորությունը բարձրացած է մինչև ի «Կոկիսոն հայոց»։ Դառնալով նույն այդ խնդրին, 1857 թվականին հրապարակված «Թափառական հրեայի» հայերեն թարգմանությանը կցած իր առաջաբանում Նալբանդյանը առաջ էր քաշել դարձյալ հայ գրականության աշխարհականացման ու ժողովրդայնացման այդ խնդիրը և հատուկ եռանդով շեշտել գրական ռեալիզմի պահանջը։ «Աբեղայական խուցը չէ այն դիտանոցը, որտեղից կարելի լիներ ազատ տեսողութեննով նկատել աշխարհի իրողությունքը և նկարագրել այնպես, ինչպես որ կային»,— շեշտում էր նա։

Ռուս առաջավոր մտքի ներշնչումներից զատ՝ Նալբանդյանը ընդառաջում էր առաջադիմական այն հայացքներին, որոնք նրանից առաջ հայ կյանքի ու գրականության մասին մշակել և ձևակերպել էին Խ. Աբովյանը և Ս. Նազարյանը։ Հայ նոր գրականության այդ ռահվիրանները տակավին 40-ական թվականներին էին վերագնահատում անցյալի հայ գրականությունը՝ կյանքի արդիական պահանջներից ելնելով։ 50-ական թվականների կեսերին Մ. Նալբանդյանի գրած «Յաղագս հայկական դպրութեան ճառ»-ը կրում էր նույնիսկ Ս. Նազարյանի խմբագրող գրչի միջամտության հետքերը[71]։ Սակայն ի տարբերություն Ս. Նազարյանի, նա չէր սահմանափակվում սոսկ արևելահայ նոր գրական լեզվի պաշտպանության խնդրով, այլև մտահոգված էր, որ հայ նոր գրական լեզուն միջոց դառնա հայերի համազգային համախմբման, իսկ ազգային-մշակութային զարթոնքին ձգտում էր հաղորդել ազգային-քաղաքական միտումներ։

Ս. Նազարյանի և Մ. Նալբանդյանի լուսավորական ջանքերի համար կարևոր ասպարեզ բացվեց, երբ նրանք ձեռնարկեցին «Հյուսիսափայլ» ամսագրի հրատարակմանը։

Ազգային լուսավորության ու ազգային բարեկեցության խնդիրներ, մտքի ու խղճի ազատության գաղափար, մամուլի և գրականության, կնոջ և ընտանիքի և, վերջապես, հայրենիքի ազատագրման հարցեր. սրանք էին «Հյուսիսափայլ»-ում Նալբանդյանի զետեղած գրական-հրապարակախոսական նյութերի թեմաները։ Նրան ամենից շատ հուզում էին ընթացիկ կացության ու քաղաքականության, լուսավորության և գիտության, մամուլի և գրականության խնդիրները։ Հեղինակի զգայացունց և ալեկոծ լեզուն, նրա տողերի բուռն ու անհանգիստ ինտոնացիաները հակադրվում էին դժգույն ու անկենդան այն ոճին, որ իշխող էր հայ ընթացիկ մամուլի էջերում, միաժամանակ անհարիր՝ ազգային զարթոնքի ուղին բռնող ընթերցողի մտածությանն ու պահանջներին։ Մ. Նալբանդյանի հյուսիսափայլյան հրապարակախոսության առանցքը ևս ազգային լուսավորությունն էր։ Դրանով էլ հենց պայմանավոր-

71 Աշ. Հովհաննիսյան, Նալբանդյանը և նրա ժամանակը, հատ. 1, էջ 111 և հետ.։

ված էր նրա նյութերի բազմազանությունը, դրանց հանրագիտական բովանդակությունն ու մարտական-քննադատական ուղղությունը։

Սակայն ի տարբերություն «Հյուսիսափայլ»-ում իշխող լիբերալ-բուրժուական գաղափարախոսության՝ Մ. Նալբանդյանը ազգային-քաղաքական ակտիվ տրամադրություն էր ներշնչում ամսագրի ընթերցողներին և ավելի շեշտակի դարձնում նրա հրապարակախոսության դեմոկրատական նպատակասլացությունը։

Հայ ժողովրդի հետամնացության գլխավոր պատճառը Մ. Նալբանդյանը ևս համարում էր նրա անդաստիարակությունն ու անկրթությունը և դրանից առաջացած «անմիաբանությունը»։ «Այնտեղ,— ասում է նա,— ուր չկա կրթություն և դաստիարակություն, չէ կարող լինել և ընկերական կյանք. իսկ ուր չկա ընկերական կյանք, այնտեղ թագավորում են միմյանցից բաժանող և հեռացնող եսական սկզբունք...»[72]։ «Ազգային դպրոցները,— գրում էր նա,— պարտական են բանալ մանուկների միտքը, պինդ տնկել նոցա մեջ ազգության սերմը, վառել նոցա սրտում հայության կրակը»[73]։ Դպրոցը ներշնչելու է սաներին «սեր, ընկերություն, ազգասիրություն, մարդասիրություն, առաքինություն, աշխատասիրություն, արիություն» և այլն։ «Հանրակրթական գիտելիքներից զատ դպրոցը ազգին պիտի տա կանոնավոր տնտեսական, գյուղական և վաճառական գիտությունք, որպեսզի հաստատ հիմքերի վրա կանգնի նորա թե երկրագործությունը և թե վաճառականությունը»[74]։ Նալբանդյանը նշավակում էր ոչ միայն ուսուցման խալֆայական սիստեմը, այլև քննադատում Վենետիկի Մուրադ-Ռաֆայելյան, Փարիզի Հայկազյան, Թիֆլիսի Ներսիսյան դպրոցների ու Մոսկվայի Լազարյան ճեմարանի ուղղությունը։

Չնայած ազգային լուսավորության խնդիրը Ս. Նազարյանի և Մ. Նալբանդյանի գաղափարական համագործակցության հիմքն էր, այնուամենայնիվ, այս հարցում ևս սկզբից ևեթ աչքի է ընկնում նրանց տարախոհությունը։ Ս. Նազարյանը պաշտպանում էր հայերի գիմնազիական ու բարձրագույն ուսման և «ազգային ուսումնական դպրոցի» պահանջը կամ շեշտում մասնագիտական՝ վաճառականական և արհեստագիտական դպրոցներ հիմնելու կարևորությունը, առաջ էր քաշում «տերության համար հայ ուսումնական չինովնիկներ կամ «մտահայյաց ժողովրդակարգերի» համար լուսավոր կադրեր և եկեղեցու համար կրթված տիրացուներ պատրաստելու խնդիրը։ Մ. Նալբանդյանը շեշտում էր ժողովրդական հանրակրթարանների անհրաժեշտությունը։ Նա կամենում էր ազգային կրթության գործը սկսել ոչ թե նրա վերնատնից, այլ հիմքից, ապահովելով ժողովրդական «ընդհանուր և հասարակ կրթությունը» և այն ծառայեցնել աշխատավորության նյութական բարեկեցության շահերին։ Նա դնում էր ոչ միայն քաղաքային, այլև գյուղական տարրական դպրոցներ հիմնելու խնդիր։ Պահանջում էր «Հայաստանի բոլոր գյուղերում և քաղաքներում հաստատել պարզ դպրոցներ, որոնց պաշտոնը էր լե-

---

72 Մ. Նալբանդյան, Երկերի լիակատար ժողովածու, հատ. 1, Երևան, 1945, էջ 256։

73 Նույն տեղում, էջ 455։

74 Նույն տեղում, էջ 358 և 461։

զու և գիր ուսուցանել ազգի զավակներին։ Այնպիսի գյուղերում, ուր ժողովրդի չքավորությունը արգելառիթ է այս գաղափարի իրագործությանը...»[75]։

Մատնանշելով «լույսի» և «խավարի», «ճշմարտության» և «ստրկության» ներհակությունը՝ «Հյուսիսափայլ»-ի հրատարակության առաջին տարում Նալբանդյանը տակավին չէր բացահայտում ազգի ներսում բախվող դասակարգային ներհակությունները։ Այնուամենայնիվ, այս հարցում ևս ավելի ու ավելի էին ակներև դառնում ամսագրի լիբերալ և դեմոկրատական թևերի հակադրությունները։ Այսպես, մինչդեռ Ս. Նազարյանի հրապարակախոսությունը ելնում էր խղճի ու մտքի ազատության սկզբունքից և, ըստ էության, դառնում անհատի «բարոյական» ազատության շուրջը, Մ. Նալբանդյանի գերիշխող գաղափարը ազգության հարցն էր, որն ի վերջո նույնանում էր ժողովրդի սոցիալական և քաղաքական ազատագրման խնդրի հետ։ Մինչդեռ Ս. Նազարյանը հակվում էր տիրող կարգերին համակերպվելուն, Նալբանդյանի հայացքները հասունանում էին այդ կարգերի հետ պառակտվելու ուղղությամբ։

Ի վերջո ակներև էր դառնում նրա և Նազարյանի անկամրջելի տարակարծությունը։ 1859 թ. Մ. Նալբանդյանը հրաժարվում էր հայ իշխանավորների և հարուստների միջոցներով ազգը լուսավորելու մտքից և նույնիսկ ժխտում ազգի վերնախավի ազգասիրությունը։ «Ազգասե՞ր. ո՛րտեղից ո՛րտեղ... Դու երկու կոպեկով ոչ միայն ազգասեր պատվանունը, այլև քո բոլոր ազգը և քո հոր ոսկերքը կհանես գերեզմանից և կվաճառես»[76],— ասում էր նա ազգի հարուստին։ «Ազգության հաստարանը և լծակը,— գրում էր նա,— է հասարակ ժողովուրդը... Եվ ազգ ասելով չենք իմանում այն մի քանի մարդիկ, որ արծաթի սանդուղքով վեր են բարձրացել ազգի մակերևույթից, այլ այն խեղճ ու կարեկցության արժանի ժողովուրդը, որի վրա ծանրացել է ազգային ապաբախտության հետևանքը»[77]։

Ազգաշինության գործը, ասում էր Մ. Նալբանդյանը, պիտի առաջանա ցածից ու հիմքից, հասարակ ժողովրդից։ Երես շուռ տալով ազգի վերնախավերից, ազգի մտավորականները պիտի կողմնորոշվեն դեպի հասարակ ժողովուրդը, ուղղություն և զարկ տան ազգաշինության գործին[78]։

Մ. Նալբանդյանը հանգում էր այն համոզման, թե չի կարող խոսք լինել ազգի «եվրոպական լուսավորության» մասին, եթե ապահովված չէ նրա քաղաքական ազատությունն ու նյութական բարգավաճությունը։ «Ուր չկա մտքի և բանականության ազատություն,— գրում էր նա,— այնտեղ կա հոգու ստրկություն, իսկ ուր ստրկություն՝ այնտեղ չկա կյանք։ Հայոց ազգը առանց նորան ևս քաղաքականապես մեռած է ներկայումս. մի վերանորոգություն, մի բարոյական վերածնություն, եթե կարելի է երբևիցե հուսալ, ապա ուրեմն պիտի լինի այն ճշգրիտ և ստույգ լուսավորության միջնորդությամբ»[79]։ Հրապարակախոսը ծառանում է ազգային մտքի և խղճի ստրկության դեմ և պա-

75 Մ. Նալբանդյան, Երկերի լիակատար ժողովածու, հատ. 1, էջ 459։

76 Նույն տեղում, էջ 225։

77 Նույն տեղում, էջ 452։

78 Նույն տեղում, էջ 453։

79 Նույն տեղում, էջ 441 և հետ.։

հանչում ազգի սոցիալական և քաղաքական ազատագրում, առանց դրան, ասում է նա, չի կարող լինել ճշգրիտ և ստույգ ազատություն. «Լուսավորությունը այնքան հիմնավոր է, որքան ազատ է և անկախ. ստրկության մեջ չի կարող լուսավորության ծիլը կանաչել»[80]։ Ներկա հասարակության մեջ ազատությունը սոսկ իշխող վերնախավերի մենաշնորհն է, որոնք մյուսներին դիտում են որպես իրենց հրամանները կատարող ծառաներ ու ստրուկներ և նրանց ազատագրական ձգտումները համարում ապստամբություն[81]։ «Հասարակ ու անզոր մարդերի» համար առանց իշխանության չի կարող խոսք լինել քաղաքական ազատության մասին։ Բայց անզոր է նաև քաղաքական իշխանությունը, եթե զուրկ է նյութական հենարանից՝ տնտեսական պատվանդանից։ «Մարդիկ,— ասում է Մ. Նալբանդյանը,— պիտի է ամրացնեին յուրյանց նյութեղեն ոտքերը, այնուհետև կարողանային գնալ բարոյականի և իմացականի քամակից»[82]։



Միքայել Նալբանդյան

Այս մտքերն ըստ էության համընկնում են այն հայացքներին, որոնք 1858—60 թթ. «Современник»-ի էջերում անց էին կացնում Չերնիշևսկին և Դոբրոլյուբովը։ Իր «Հուլիսյան հեղափոխությունը» հոդվածում Չերնիշևսկին գրում էր. «Քաղաքական իշխանությունը, նյութական բարեկեցությունը և կրթությունը իրար հետ անքակտելիորեն կապակցված բաներ են. ով դեգերում է չքավորության մեջ, չի կարող իրեն ձեռնտու եղանակով օգտվել իշխանությունից, ով չի օգտվում քաղաքական իշխանությունից, չի կարող փրկվել ճնշումից, այսինքն՝ չքավորությունից, ուրեմն՝ նաև տգիտությունից»[83]։

Չերնիշևսկու այս դրույթներից բխում էին մարտական եզրակացություններ. քանի դեռ իշխում են անաշխատ դասակարգերը, անհնարին է դուրս գալ ստեղծված վիճակից, եթե չլինի հեղափոխության միջամտությունը։ Նույն հետևությունները էին ելնում նաև Նալբանդյանի դրույթներից։

Տակավին «Յաղագս հայկական դպրության ճառ»-ում փայլատակում էր

80 Մ. Նալբանդյան, Երկերի լիակատար ժողովածու, հատ. 2, էջ 264։

81 Նույն տեղում, հատ. 1, էջ 399 և հետ.։

82 Նույն տեղում, հատ. 2, էջ 274։

83 *Н. Г. Чернышевский*, Полное собрание сочинений, том V, стр. 97.

նրա այն միտքը, թե լուսավորությունը երկնառաք տուրք չէ, այլ բարիք, որ պիտի նվաճվի «զոհիւք և նվիրագործութեամբ»։ «Լուսաւորութիւն լուսաւորեալ ազգաց գինք են անդուլ ճգնաց, կամ գինք արեան»,— գրում էր Նալբանդյանը 1859—61 թվականներին, Ռուսաստանում ստեղծված հեղափոխական իրադրության պայմաններում՝ վերադառնալով իր դրույթներին[84]։ «... Ճշմարտությունը և լույսը, ասես թե միշտ պիտո է պատերազմելով հաղթեն խավարին և ստության և հափշտակեն հաղթության ծիծեռնին»[85]։ Ոչ միայն իր ժողովրդի լուսավորության խնդիրները, այլև նրա ազատության և բարեկեցության հեռանկարները հրապարակախոսը լծորդում է ռուս և եվրոպական հեղափոխական շարժումների հետ։ Անձամբ իսկ զինվորագրվելով այդ շարժումներին՝ նա դրանց մեջ էր տեսնում իր ժողովրդի ազատագրման երաշխիքը։

Ցարական ինքնակալության դեմ պայքարելու համար Մ. Նալբանդյանը ըստ կարելույն օգտագործեց լեգալ հնարավորությունները և գրեց նույնիսկ իր «Իտալացի աղջկա երգը», «Մանկության օրեր» և, մանավանդ, «Ազատն աստված» բանաստեղծությունները։

1859 թ. բուժվելու պատրվակով մեկնելով արտասահման, Մ. Նալբանդյանը մտահոգված էր պարզելու ամսագրի խափանման դեպքում նրա տպագրությունը արտասահման փոխադրելու հնարավորությունը։

Չնայած, ինչպես երևում է, Նազարյանը սկզբում համաձայնություն էր հայտնել ամսագրի տպագրությունը արտասահման փոխադրելու, սակայն հետագայում նա հակվել էր այն մտքին, թե Ռուսաստանում սկսված ռեֆորմները հնարավորություն կտան շարունակելու նրա հրատարակությունը Մոսկվայում, եթե ընդառաջելով գրաքննչական կոմիտեին, չափավորվի պարբերականի ուղղությունը, այլ խոսքով, «սանձ դրվի» գլխավոր աշխատակցի գրչին։ Ս. Նազարյանի դիրքորոշումը որոշ սառնություն մտցրեց նրա և Մ. Նալբանդյանի փոխհարաբերությունների միջև և մի պահ խորացրեց նրանց գաղափարական անջրպետը։ 1859 թ. հետո Նալբանդյանի անունը գրեթե անհետանում է ամսագրի էջերից։

1860 թ. վերջերից Մ. Նալբանդյանը ուղևորվում է Կ. Պոլիս։ Այդ քաղաքում նա մնացել է ընդամենը երկու ամիս՝ Նոր Նախիջևանին կտակված խոշոր գումարներ ստանալու համար Հնդկաստան ուղևորվելիս և մի տարի անց Հնդկաստանից վերադառնալիս։ Նշանավոր ժամանակներ էին այդ, երբ արևմտահայ հասարակական կյանքը խլրտում էր նորահռչակ Ազգային սահմանադրության շուրջը։ Ազգային գործերը ղեկավարելու համար կշիռ էր ձեռք բերել անգլո-ֆրանսիական կապիտալի հետ լծորդված արևմտահայ կոմպրադորական բուրժուազիան, որի գաղափարախոսներն էին հենց Սահմանադրության հեղինակները։ Պոլսահայ գործիչների հետ ունեցած հանդիպումներն ու մտափոխանակումները ընդլայնում էին ռուսահայ անվանի հրապարակախոսի բարեկամների ու համախոհների շրջանը, ընդարձակում նրա ազգային-

84 Մ. Նալբանդյան, Երկերի լիակատար ժողովածու, հատ. 2, էջ 56։
85 Նույն տեղում, էջ 217 և հետ.։

*քաղաքական հարցասիրությունները, նրա գործունեությանը հաղորդում համազգային ծավալ ու լիցք։ Արևմտահայ դեմոկրատական մտավորականության առաջ նա գծագրում էր գործունեության հետևողական-դեմոկրատական հեռանկարներ, բևեռում նրա միտքը ազգի քաղաքական ու սոցիալական ազատագրման խնդիրների վրա։ Արևելահայ հրապարակախոսի հայացքները ազդեցության խոր հետքեր էին թողնում արևմտահայ առաջավոր գործիչների վրա։*

*Մ. Նալբանդյանը չգերագնահատեց Սահմանադրության առաջադիմական նշանակությունը։ Թուրքիայի մայրաքաղաք ոտք դնելուց հազիվ տասը օր անց Կ. Պոլսի «Մեղվում» նա առիթ ունեցավ դիտելու, որ «սահմանադրության» և «լուսավորության» դրոշ բռնած արևմտահայ միջավայրում իսկապես գոյություն չունի ազգի գաղափարական այն միասնությունը, որի մասին ուղղված ողջույնի խոսքում ավետում էր դեմոկրատական այդ թերթի խմբագիրը՝ Հ. Սվաճյանը։ «Մեղվի» մի այլ համարում քննարկման նյութ դարձնելով արևմտահայ գավառի համար չարիք դարձած Պողոս վարդապետի բռնի ու հակաժողովրդական արարքները, Մ. Նալբանդյանը բավական չէր համարում Սահմանադրության օրգաններից մեկի՝ կրոնական ժողովի որոշումը վտահամբավ այդ եկեղեցականի կրոնական պաշտոնակատարությունը «լռեցնելու» կամ հենց «Մեղվի» խմբագրի առաջարկը՝ նրան եկեղեցական կոչումից զրկելու մասին։ Նալբանդյանը գտնում էր, որ հանցագործը պետք է պատասխանատվության կանչվի ոչ թե կրոնական, այլ քաղաքական և քրեական ատյանների առաջ։ Դրանով նա հակադրվում էր ոչ միայն նախասահմանադրական ժամանակների մտավոր-բարոյական գործիչներին ու դրանց «խավարյալ» պաշտպաններին, այլև մերկացնում «լուսավորյալ» սահմանադրականների իսկ գաղափարական սահմանափակությունն ու անհետևողականությունը։ Սահմանադրության սկզբունքային իր քննադատությամբ նա ըստ էության ջանում էր մարտական հունի մեջ դնել գավառահայ ժողովրդի և Կ. Պոլսում դեգերող պանդուխտ գավառացիների պահանջները և բյուրեղացնել արևմտահայ «լուսավորյալ» լիբերալներից տակավին չսահմանազատված արևմտահայ դեմոկրատիայի պահանջներն ու տեսակետները։*

*1860 թ. դեկտեմբերի վերջերին, Կ. Պոլսից Լոնդոն կատարած իր ուղևորության ժամանակ, Նալբանդյանը առիթ ունեցավ շարադրելու իր հայացքը նաև հայ ժողովրդի ազատագրման հեռանկարների մասին։ Նեապոլից Սվաճյանին ուղղած իր նամակում նա զուգահեռ էր անցկացնում Իտալիայում արծարծված գարիբալդիական շարժման և հայ ժողովրդի ընթացիկ վիճակի միջև։ Գարիբալդիի ետևում, ասում է արևելահայ հրապարակախոսը, կանգնած է «հասարակ ժողովուրդը», Վիկտոր Էմանուելի ետևում՝ «քաղաքացիք» (բուրժուազիան—խմբ.): Դիմադրելով ընդհանուր թշնամուն՝ երկուսն էլ պայքարում են իրենց հայրենիքի ազատագրման համար, բայց նրանց մեջ առկա է նաև «խոշոր տարբերություն»։ Իտալիայի ազատագրմանը նրանք մերձենում են «տարբեր սկզբունքներից»։*

*Իտալական դեպքերին ի տես, հրապարակախոսը վերհիշում էր հայրենի ժողովրդի վիճակը։ «Էտնան ու Վեզուվիան ծխում էր. Արարատի հին վուլկանի մեջ միթե՞ կրակ կմնա իսպառ...»,— հարցնում էր Մ. Նալբանդյանը։*

հայկական իրականության մռայլ հետնախորքի վրա նա չէր մոռանում արևմտահայ այն համախոհներին, «որոնց կուրծքի մեջ զարկում է մի ստուգատես հայկական սիրտ»[86]։ Նույն այս խոհերով է համակված նաև հաջորդ տարում գրված նրա «Ազգային թատրոնը Պոլսի մեջ» հոդվածը, ուր «հին խելքերին» հակադրում էր նոր սերնդի հայ երիտասարդությունը, «ժամանակի և դարու այն հարազատ որդիքը», որոնք իրենց մտքով ու փորձով այլ վերաբերմունք ունեն դեպի ազգը հուզող խնդիրները, քան իրենց «ամուլ նախնիքը»[87]։ Ակներև է, որ իր շրջագայությունների ժամանակ ողջ հայ դեմոկրատիայի պարագլուխը հանդես էր գալիս ոչ միայն իր ժողովրդի ազատագրական գաղափարները շեփորողի, այլ նաև նրա մարտական ուժերը կազմակերպողի ու առաջնորդողի դերում։

Աննախընթաց հեղափոխական թափով է շարադրված մանավանդ Մ. Նալբանդյանի 1861 թ. Փարիզում հրապարակած «Երկու տող» պամֆլետը։ Ռուսաստանում արծարծվող հեղափոխական իրադրության սրման նշանակալից պահին է գրվել ու հրապարակվել այդ պամֆլետը, այն օրերին, երբ գյուղացիական ապստամբությունների բարձրացող ալիքը իջեցնելու ակնկալությամբ ցարը հրատարակում էր ճորտատիրության վերացումը ավետող փետրվարի 19-ի հրովարտակը։

Ռուս ճորտերի ըմբոստացումը մեկուսացած երևույթ չէր։ Այն արծարծվում էր բազմաթիվ երկրներում ծավալվող ազատագրական շարժումներին համընթաց։ Ժամանակը հասունացած համարելով վճռական գործողությունների համար, պամֆլետի հեղինակը կոչ էր անում հայ ժողովրդին անմասն չմնալ առաջավոր մարդկությանը համակած թոհուբոհից՝ ազգային ազատության դրոշ պարզելու համար։ «Մեր նվիրական պարտականությունն է, որչափ որ մեր ուժը կտանի, սպասավորել մարդկության, քանի որ ապրում ենք երկրագնդի վրա և խոստովանում մեր տկարությունը, որ չենք կարող բաժանվել նրա մակերևույթից»[88], գրում էր Նալբանդյանը։ Սրանով նա ջանում էր համառուսական հունի մեջ մտցնել նաև հայերի ազատագրական մտորումները։

Նալբանդյանը մեծարում է իրենց հայրենիքի ազատության համար մարտնչող ու նահատակվող հերոսներին, նրանց, ովքեր ապրում են և տքնում ընդհանուրի օգտի համար՝ «լավ հասկացած լինելով թե սուտ է մասնավոր քաջաբախտությունը, առանց ընդհանուրի երջանկության»[89]։ Բայց և միաժամանակ նշում էր ընդհանուրի օգտին տքնող այս հերոսների՝ հարազատ ազգի հանդեպ ունեցած հավատարմությունը և համամարդկային ազատագրական շարժման նկատմամբ նրանց նվիրվածությունը։ «Նոքա չկաշառվեցան օտարներից... նոքա չնենգեցին յուրյանց ազգին, նոքա չվաճառեցին յուրյանց գրիչը... նոքա արհամարհեցին օտարի տված պատիվը և աշխատեցան դժպհի պատվանշանների տեղ կրել յուրյանց ազգության անունը, այլև վեր-

86 Մ. Նալբանդյան, Երկերի լիակատար ժողովածու, հատ. 4, էջ 86։

87 Նույն տեղում, հատ. 2, էջ 307։

88 Նույն տեղում, հատ. 3, էջ 23։

89 Նույն տեղում, էջ 30։

քերի սպիք, որոնց արժանացել են մարտիրոսաբար, ազգի ազատության անունով»[90]։ Մերկացնելով իրենց խիղճն ու գրիչը վաճառքի հանող ազգադավ այլախոհներին, Նալբանդյանը գրում է, որ իր կյանքի «բուն խորհուրդն ու նպատակն» է համարում կանգ չառնել անգամ ինքնազոհության առաջ՝ հայ հասարակ ժողովրդի կոխկռտված իրավունքը պաշտպանելու համար։

«Մենք ազատակամ նվիրեցինք մեզ հասարակ ժողովրդի իրավունքը պաշտպանելու Մեր անձը և գրիչը չնվիրեցինք հարուստներին. նոքա յուրյանց արծաթե թումբերի տակ միշտ անխոցելի են, նաև բռնակալների իշխանության մեջ։

Բայց այն խեղճ հայը, այն հարստահարված, ողորմելի, աղքատ, մերկ ու քաղցած հայը, ոչ միայն ճնշված օտարներից և բարբարոսներից, այլև յուր հարուստներից, յուր հոգևորներից և կիսագրագետ ուսումնական կամ փիլիսոփա ասվածներից, ահա այն հայը ամենայն արդարացի իրավունքով գրավում է մեր ուշադրությունը և նորան դարձյալ, առանց և վայրկենական երկմտության, նվիրեցինք մեր բոլոր կարողությունը։

Պաշտպանել այն հայի առաթուր կոխված իրավունքը է մեր կյանքի բուն խորհուրդը և նպատակը։ Եվ այս նպատակին հասնելու համար չէ պիտո ընկրկինք ոչ բանտի և ոչ աքսորի առջև, ոչ միայն բանիվ և գրչով, այլև զենքով և արյունով, եթե մի օր արժանի լինինք զենք առնուլ մեր ձեռքը և մինչև այժմ քարոզած ազատությունը նվիրել և սրբել մեր արյունով»[91]։

Մ. Նալբանդյանը օգտագործեց հրապարակախոսության բոցաշունչ խոսքը ոչ միայն հայ ժողովրդի ճնշողներին ու հարստահարողներին մերկացնելու, այլև օտար կեղեքիչներից ազատագրվելու «ուղիղ ճանապարհը» մատնանշելու համար։ Այդ նպատակին նվիրեց նա 1862 թ. Սիմեոն Մանիկյան կեղծանունով Փարիզում լույս ընծայած իր «Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ» աշխատությունը։

Նշանավոր այդ գործում նկարագրելով Թուրքիայի տնտեսական տագնապը, նրա աճող պետական պարտքերը, ժողովրդի հետամնացությունն ու թշվառությունը, հեղինակը Թուրքիայի դժբախտության պատճառը համարում էր եվրոպական պետություններից նրա ունեցած կախումը։ Հատկապես մատնանշում էր եվրոպական կապիտալի ներխուժումը այդ երկրի շուկաները և դրա հետևանքով արևմտահայ հասարակ ժողովրդի համար ստեղծված ծանրր վիճակը։

«Հայ վաճառականը,— գրում էր նա,— կարողանում է դիմանալ եվրոպական կապիտալին՝ ստանձնելով նրա գործակալի նկուն դերը և պատճառ դառնալով «ազգի կաթվածահարության»։ 1858—1859 թթ. գրած իր երկերում հայրենի առևտրա-վաշխառուական կապիտալին դիմադրելու համար Մ. Նալբանդյանը պաշտպանում էր հայ վաճառականական ընկերություններ կազմակերպելու վերաբերյալ Նազարյանի առաջարկությունը։ Ի տարբերություն դրան՝ «Երկրագործության» հեղինակը Արևմտյան Հայաստանի համար առաջ էր քաշում «ազգային վաճառականություն» կազմակերպելու խնդիրը, որի

---

90 Մ. Նալբանդյան, Երկերի լիակատար ժողովածու, հատ. 3, էջ 30։

91 Նույն տեղում, էջ 23 և հետ.։

նպատակն էր՝ հայ գյուղացիությունը և քաղաքային զանգվածները մի կողմից պաշտպանելու ֆեոդալական հարստահարումներից և մյուս կողմից՝ մրցության դուրս գալու եվրոպական կապիտալի դեմ։ Հեղինակը փայփայում էր այն պատրանքը, թե դրանով հայ ժողովրդի համար տնտեսական նոր համայնականացողի պատնեշ է կառուցվելու Թուրքիայում։

Կապիտալիզմին հատուկ վարձու աշխատանքի սիստեմը Մ. Նալբանդյանին պատկերանում էր որպես ստրկության համազոր չարիք։ Կապիտալիզմը ոչ միայն չի լուծում «մարդու և հացի» խնդիրը, այլև թշվառության է մատնում վարձու գործավորներին, հարկադրելով հողազուրկ գյուղացիներին վաճառքի հանել իրենց «աշխատանքը», քանի որ չունեն ապրելու այլ միջոց։ Ազա՞տ եմ ես, միայն օրենքով, քաղաքականապես ազատ կոչվելով ազա՞տ եմ ես, քանի որ նյութական կարոտությունը ստիպում է ինձ, կամա-ակամա մի ուրիշին ստրկանալ, ուրիշին ծառայել և այդ ծառայությամբ հաց ճարել իմ ընտանիքի համար[92],— հարցնում էր Մ. Նալբանդյանը և իր հարցադրությամբ իսկ կանխում ընթերցողի բացասական պատասխանը։ Հրապարակախոսը ուներ ռուս հեղափոխական-դեմոկրատների ու դրանց հաջորդած հեղափոխական-նարոդնիկների ընդհանուր այն համոզմունքը, թե կապիտալիզմը կանխելու համար գոյություն ունի միայն մի համադարման՝ համայնական հողատիրությունը։ Դա է այն բանալին, որ կարող է մարդկանց առջև բացել ազատության, հավասարության և եղբայրության փակ դռները։ Իբրև համայնքի սեփականություն, հողը չի կարող դառնալ առուծախի առարկա։ Հողը կարող է լինել մասնավոր սեփականություն սոսկ որպես բնակատեղի կամ տնամերձ տնտեսության վայր։ «Երկրագործության» հեղինակը դրվատում է քաղաքային մանր արհեստագործությունն ու համայնական հողատիրության վրա հիմնված գյուղացիական մանր արտադրությունը։ Եթե արևմտահայությունը չպավինե համայնական հողատիրության, ապա անխուսափելի պիտի դառնան մանր գյուղացիության և մանր արհեստագործության քայքայումը, սարսափելի նեղությունն ու չքավորությունը, «որ եթե ոչ այսօր, վաղը պիտի թագավորի բոլոր Թուրքիո մեջ»[93]։ Հեղինակը նախանձելի չի համարում եվրոպական գործարանատերերի ապրանքը վաճառահանող, շուկայի հարափոփոխ վիճակից և երկրում իշխող ռեժիմի քմայքներից կախված արևմտահայ վաճառականների դրությունը։ Ազգը պիտի հրաժարվի գաղութագնացությունից, տուն վերադարձնի քաղաք տեղափոխված պանդուխտներին և հնարավորություն տա նրանց զբաղվելու երկրագործությամբ։ «...Պիտի որ ազգի մեծագույն մասը երկրագործ լինի, իսկ փոքրագույնը՝ երկրագործի դուրս բերած արդյունքը մշակող և վաճառող, որ զուգակշիռ պահվի և աղքատությունը տարագիր գնա»[94]։

Իր այս ծրագիրն էր ահա, որ Մ. Նալբանդյանն ընկալում էր որպես ազգը կործանումից փրկող «տնտեսական հեղափոխություն»։ Պանդուխտներին գյուղ վերադարձնելու և նրանց տնտեսությունը վերականգնելու համար հար-

---

92 Մ. Նալբանդյան, Երկերի լիակատար ժողովածու, էջ 52։

93 Նույն տեղում, էջ 93։

94 Նույն տեղում, էջ 70։

կավոր են նյութական միջոցներ, որոնք հայթայթելու են հայ վաճառականների կազմակերպվելիք վարկատու ընկերությունները։ Այդ ընկերությունների միջոցներով պիտի շահագործվեն Հայաստանի ջրային հարստությունները, մանր գյուղատնտեսության կողքին կազմակերպվեն խոշոր մեքենայացված գյուղատնտեսական ձեռնարկություններ և գյուղատնտեսական բերքերը մշակող խոշոր արդյունաբերություն[95]։ Միայն փողի ու ապրանքի կազմակերպված այդ շրջանառության միջոցով կարելի է բարվոքել թշվառության մատնված հայ մասսաների և անխուսափելի քայքայման դատապարտված հայ վաճառականության վիճակը։ Միայն կազմակերպված ազգային վաճառականությունը կարող է հայ ապրանքատերերին տեր դարձնել դրամի իշխանության (որչափ Եվրոպան կարիք ունի նրանց ապրանքների արտահանությանը) և այդ միջոցով դեպի ինքը դարձնել դրամի շրջանառությունը[96]։ Այս էր Մ. Նալբանդյանի պատկերացրած «տնտեսական հեղափոխությունը»։

Մ. Նալբանդյանը ենթադրում էր, որ քաղաքի և գյուղի մանր արտադրությունը հնարավոր կլինի փրկել կապիտալիզմի սպառնալիքից, եթե նրանց տրամադրվի կապիտալիստական արտադրության տեխնիկան՝ մեքենան։ Սա ֆրանսիական սոցիալիստներին հատուկ ուտոպիստական այն հայեցակետն էր, որ քննադատված է «Կոմունիստական մանիֆեստ»-ում։ Արտադրության և փոխանակման ժամանակակից միջոցները սեփականատիրական հին սիստեմի մեջ խցկելու փորձը «Մանիֆեստը» դիտում էր որպես մանրբուրժուական սոցիալիզմին հատուկ ուտոպիստական պատրանք[97]։

«Երկրագործության» արծարծած որոշ գաղափարներ անծանոթ չէին հայ միջավայրին։ Դրանցից մի քանիսին հանդիպեցինք Գ. Պատկանյանի մոտ։ Նման գաղափարները միանգամայն օտար չէին նաև արևմտահայերին։ Գյուղատնտեսական հումույթների և առանձնապես բամբակի ճգնաժամի կապակցությամբ, որ սրվել էր Եվրոպայում՝ ամերիկյան ստրուկների ազատագրության հետևանքով, Մանչեստրի հայ առևտրականները ստեղծեցին «Արարատյան» ընկերությունը, որի մասնակիցները պարտավորություն էին ստանձնում «կոմիսիոն գործ ընել ընկերության հաշվին, առևտրական ձեռնարկություններ և փոխադրական գործեր ընել»։ Արևմտահայ տնտեսագետ Ն. Զորայանը և «Փարիզ» թերթի խմբագիր Ս. Մուրադյանը համոզված էին նույնիսկ, որ հայ խոշոր կապիտալիստների այդ ընկերությունը ձեռնտու պիտի լիներ ոչ միայն հայ կապիտալիստներին, այլև նպաստելու էր հայ ժողովրդի տնտեսական և մշակութային վերածնությանը։ Հարստության անսպառ աղբյուր համարելով երկրագործությունը, նրանք հայ առևտրականներին կոչ էին անում զարկ տալ ազգի երկրագործությանը։ «Փարիզ» թերթը հատկապես շեշտում էր շերամաբուծության և բամբակամշակման կարևորությունը։ Հայ վաճառականներին թերթը հորդորում էր ճանապարհներ կառուցել և նա-

95 Մ. Նալբանդյան, *Երկերի լիակատար ժողովածու*, էջ 74 և 79։

96 *Նույն տեղում*, էջ 46 և հետ.։

97 Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, *Կոմունիստական կուսակցության մանիֆեստը*, Պետհրատ, Երևան, 1938, էջ 41—42։

վեր ձեռք բերել հայ գյուղացիների արտադրանքը Արևմուտք փոխադրելու և ազգային վաճառականությանը զարկ տալու համար[98]։

Զորայանի և Մուրադյանի գրածներից Մ. Նալբանդյանի տեսությունը տարբերվում է նրանով, որ ելնում էր հայ գյուղացիության շահերից։ Նա համոզված էր, որ հայ գյուղացիներին վարկավորելով, հայ բուրժուազիան կնպաստի Հայաստանի տնտեսական զարգացմանը և դրանով իսկ «ազգային վաճառականության» բնույթ կհաղորդի իր գործունեությանը։

Կասկած չկա, որ Մ. Նալբանդյանի առաջարկած «տնտեսական այս հեղափոխությունը» իրագործելու դեպքում Թուրքիան չպիտի կարողանար խուսափել կապիտալիզմից։ Նա միջոց չուներ արգելք դնելու հողային կապալի և փողային վարկի կապիտալիստական շահարկմանը։ Համայնապատկան ֆոնդերից առավելապես օգտվելու էին լծկան, գյուղատնտեսական գործիքներ և սերմացու ունեցող գյուղացիները։ Չենք խոսում այլևս այն մասին, որ առանց վարձու աշխատանքի օգտագործման, անհնարին պիտի լիներ ստեղծել Մ. Նալբանդյանի նախատեսած մեքենայացված գյուղատնտեսությունը կամ գյուղատնտեսական բերքեր մշակող խոշոր արդյունաբերությունը։

Այնուամենայնիվ, Մ. Նալբանդյանի «Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ» գրքին ևս կարող են վերաբերել Վ. Ի. Լենինի տողերը Գերցենի հիմնադրած նարոդնիկական դեմոկրատիզմի մասին. «Լինելով ուտոպիա այն բանի նկատմամբ, թե ինչ տեսակ պետք է լինեն (և կլինեն) հողերի նոր բաժանման տնտեսական հետևանքները, այն հանդիսանում է գյուղացիական մասսայական..., դեմոկրատական վերելքի ուղեկիցն ու սիմպտոմը»[99]։

Հնարավո՞ր է գլուխ բերել հեղինակի պատկերած «տնտեսական հեղափոխությունը» առանց քաղաքական հեղափոխության։ Հիմք կա՞ կարծելու, թե «տնտեսական հեղափոխության» հեռանկարը բացառում էր հարցի քաղաքական կողմը, չըմբռնելով «որ հնարավոր չէր դիմադրել եվրոպական կապիտալին, առանց բախվելու Թուրքիայի և նրա status quo-ն պաշտպանող եվրոպական մեծ տերությունների հետ։ Եվ վերջապես, կարելի՞ էր դիմադրել օտարազգի կապիտալիստներին կամ հայազգի կալվածատերերին՝ առանց պայքարելու նրանց հովանավորող Թուրքիայի պետական կարգերի դեմ։

Որչափ «Երկրագործությունը» գրվում էր Թուրքիայում վաճառվելու համար, հեղինակը շրջանցում էր անխուսափելի այս հարցերը։ Սակայն «Երկրագործության» հեղինակը աչքի առաջ ուներ ոչ միայն արևմտահայերի աղքատությունը վերացնելու խնդիրը, այլև նշմարում էր նրա ստրկական վիճակը։ Նա լիովին գիտակցում էր «տնտեսական հեղափոխությունը» ժողովրդի սոցիալական և քաղաքական ազատագրման հետ լծորդելու անհրաժեշտությունը։ «Տնտեսական հեղափոխությունը» Մ. Նալբանդյանը չէր պատկերացնում առանց «հողի և ազատության» համար տիրող քաղաքական կարգերի դեմ ուղղված պայքարի։ Այդ ակներև է նրա չափածո և արձակ երկերից և ցարական ժանդարմերիայի ձեռքն ընկած նրա գրագրություններից։

---

98 Ա. Կարինյան, *Ակնարկներ հայ պարբերական մամուլի պատմության*, հատ. 2, էջ 491 և հետ.։

99 Վ. Ի. Լենին, *Երկեր*, հատ. 18, էջ 453։

Արդեն իսկ «Երկու տող»-ում Մ. Նալբանդյանը հասարակ ժողովրդի ապատության ելքը տեսնում էր նրա հեղափոխական պայքարի մեջ։ Նա համոզված էր, որ «հին խելքերը երբեք համաձայնելու չէին խաղաղությամբ տեղի տալ նոր գաղափարներին և նորը պատերազմով պիտի կանգնեցնի իր դրոշը ավերակների վրա»[100]։ «Շատ ազգեր պատահեցան անբախտության, բայց այդ չեղավ նոցա համար հավիտենական մեռելություն։ Աքսորվեցան, կախվեցան, գլխատվեցան և այրվեցան, բայց նոցա հոգին կենդանի մնաց յուրյանց ամայացած հայրենիքի փլատակների մեջ»,— գրում էր Մ. Նալբանդյանը։ Օտար ու առտնին ճնշողների ու հարստահարողների գավազանների տակից Հայաստանի սարերը, ձորերն ու անտառները միայն «հեկեկանք ու հոնդյունք» են հնչեցնում, ասում էր նա, բայց ճնշված ու հարստահարված ժողովուրդների վիճակը ես վերջ է առնում, երբ նրանց փեշերի տակից դուրս են շողում դիմադրության պողպատե սրերը[101]։

«Երկրագործության» հեղինակը հեռու չէր համարում այն օրերը, երբ արևմտահայերը պիտի ըմբոստանան սուլթանի բարբարոս թագավորության դեմ՝ հայրենի իրենց հողը զենքով ազատելու և նրան «տիրաբար» իշխելու, ազատորեն մշակելու համար։ Սակայն նա չէր պատկերացնում հայերի ազատագրական շարժումը որպես ազգայնորեն մեկուսացած շարժում։ Նրանց ազատության հեռանկարը նա վերջին հաշվով շաղկապում էր ասիական ճընշված ազգերի սոցիալական և քաղաքական ազատագրման ընդհանուր տեղաշարժերի և սոցիալիզմի հաղթության պատմական հեռանկարների հետ[102]։ Բայց նախքան այդ՝ այսինքն սոցիալիզմի միջոցով «մարդու և հացի հարցը» լուծելուց առաջ՝ ասիական ազգերը, այդ թվում նաև հայերը պիտի հոգան իրենց ինքնապահովության մասին, ցույց տան, որ ընդունակ են դիմադրելու իրենց կյանքն ու գույքը հափշտակողների բռունցքին, պաշտպանելու իրենց երկրի սահմանները, ապրելու իբրև ազգ և պահպանելու իրենց ազգությունը[103]։ Հայերի կատարելիք «տնտեսական հեղափոխության» խնդրին նվիրելով իր գիրքը, Մ. Նալբանդյանը համոզված էր, որ առանց այդ հեղափոխության, անհնարին պիտի լինի նախապայմաններ ըստեղծել վերականգնելու հայերի ազգության «ջարդված» մեքենան, նրա քաղաքական անկախությունը։

* * *

1857, 1859, և 1860—1862 թթ. կատարած իր ուղևորությունների ընթացքում Մ. Նալբանդյանը այցելեց կապիտալիստական Արևմուտքի մի շարք երկրներ ու կենտրոններ։ Նա տեսավ 1848 թ. հեղափոխությունից հետո աշխատանքի և կապիտալի, ազատության և ստրկության, սոցիալիզմի և լիբերալիզմի բախումները, դիտեց հողի և կապիտալի համակենտրոնացման պրոցեսները, ականատես եղավ գյուղի և քաղաքի միջնախավերի քայքայ-

---

100 Մ. Նալբանդյան, Երկերի լիակատար ժողովածու, հատ. 3, էջ 15։

101 Նույն տեղում, էջ 30։

102 Նույն տեղում, էջ 48։

103 Նույն տեղում, էջ 81 և հետ.։

մանը, բանվորների և գյուղացիների հարստահարմանը, հպատակ և կախյալ ազգությունների ճնշված վիճակին։

Դեպի Հնդկաստան կատարած իր ճանապարհորդության ժամանակ Մ. Նալբանդյանը եղավ գաղութարարների ներթափանցած ու նրանց «քաղաքակրթությանը» սարկացած Արևելքի մի շարք երկրներում, տեսավ կապիտալի տիրապետության ներքո այդ երկրների տնտեսական հետամնացությունը և նրա ժողովուրդների զանգվածային դժգոհություններն ու ըմբոստացումները։

Նշանակալից տարիներ էին դրանք, երբ Ռուսաստանում, Չինաստանում և Հնդկաստանում սանձազերծվում էր գյուղացիական ապստամբությունների տարերքը։ Այդ պահին անդրկովկասյան ժողովուրդների մեջ ևս ազգային և սոցիալական դժգոհություններ էին կուտակված ցարիզմի դեմ, իսկ Արևմտյան Հայաստանի գավառներում հայ ժողովրդական զանգվածների մեջ խմորվում էին շարժումներ՝ ուղղված սուլթանական բռնակալության և հայ իշխող վերնախավերի դեմ։

Զարթոնքի այն ժամանակամիջոցն էր այս, երբ, Վ. Ի. Լենինի բնութագրումով, «բուրժուական դեմոկրատիայի հեղափոխականությունն արդեն մահանում էր (Եվրոպայում), իսկ սոցիալիստական պրոլետարիատի հեղափոխականությունը դեռևս չէր հասունացել»[104]։ Անցման էտապ էր ապրում այս պահին մասնավորապես հայ դեմոկրատական մտավորականությունը, որը բռնելով բուրժուական լիբերալիզմից սահմանազատվելու ուղին, սկսում էր արդեն քաղաքական և սոցիալական համադարմաններ որոնել բուրժուական «քաղաքակրթության» ավերումներին դիմագրավելու համար։

Հայ լուսավորիչների մեջ Մ. Նալբանդյանն առաջինն էր, որ շփվելով կապիտալիստական Արևմուտքի և գաղութացված Արևելքի հետ, ոչ միայն նըշմարում էր բուրժուական «քաղաքակրթության» չարիքներն ու հակասությունները, այլև ջանում էր գտնել դրանք հաղթահարելու հնարները։ Նա ոչ միայն նկատում էր արևմտահայ կոմպրադորական բուրժուազիայի կախումը Արևմուտքի գաղութատերերից, այլև սահմանազատվում արևելահայ այն լուսավորիչներից, որոնք համակեցության եզրեր շոշափելով ցարիզմի հետ՝ հայրենի իրականության մեջ խաղաղ զարգացման ուղիներ էին հարթում կապիտալիստական «քաղաքակրթության» առաջ։ Նա համամիտ չէր նաև արևելահայ բուրժուազիայի այն գործիչների հետ, որոնք քննադատելով ցարիզմի գաղութային քաղաքականությունը Կովկասում, ազգի մեջ պատրանքներ էին տարածում անգլո-ֆրանսիական հովանու նկատմամբ։

Ո՞րն էր այն նոր դիրքը, որ գրավեց Մ. Նալբանդյանը հայերի հասարակական-քաղաքական բախտը որոշելու համար, այն նոր խոսքը, որ ասաց նա իր ժողովրդին, նրա հասարակական-քաղաքական մտքի պատմության շրջադարձի այս պահին։ Մ. Նալբանդյանը խորացրեց և զարգացման հեղափոխական ընթացքի մեջ դրեց ցարիզմի հետ գժտվելու ճանապարհը բռնած Խ. Աբովյանի ազգային-դեմոկրատական քննադատությունը։ Նա առաջինն էր, որ

---

104 Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 18, էջ 14։

հայ դեմոկրատիայի ազգային-ազատագրական հեռանկարները կողմնորոշեց դեպի ռուս և եվրոպական հեղափոխական շարժումները։

Հեղինակը արձագանքում էր այն նզովքին, որ բուրժուական «քաղաքակրթության» հասցեին ուղղում էին «ճնշված մարդկության անմահ բարեկամները»՝ Ռուսսոն, Ֆուրյեն, Գերցենը։ «Սեփականության հռոմեական իրավունքի և անձի քաղաքացիական իրավունքի վրա կառուցված աշխարհը,— գրում էր Գերցենը,— կարող է հաց շպրտել քաղցածին, սակայն ճանաչել նրա «հացի իրավունքը» (право на хлеб) չի կարող»[105]։ Գերցենը տարակույս չուներ, որ հացի խնդիրը վերջիվերջո պիտի լուծվի քաղցածների օգտին, պրոլետարիատի ազատագրման օգտին։ Արդեն իսկ 1848 թ. հեղափոխությունից հետո, «С другого берега» հռչակավոր իր հոդվածաշարում նա ողջունում էր Փարիզյան սովահար պրոլետարիատի ըմբոստացումը կապիտալի թագավորության դեմ։ «Պայքարը սկսված է,— գրում էր նա,— ո՞վ կհաղթի, դժվար չէ նախատեսել, վաղ թե ուշ... կհաղթի նոր սկզբունքը»[106] (այսինքն՝ սոցիալիզմը—խմբ.)։

Գերցենին էր արձագանքում Մ. Նալբանդյանը, երբ գրեթե նրա իսկ ոճով գրում էր. «Եվրոպան ուշ ծնեցավ։ Բայց շատ արագ ծերանում է... Այո, Եվրոպան կանգնած է այսօր մի դժվար լուծանելի խնդրի առջև. այդ տնտեսական խնդիրն է՝ մարդը և հացը։ Եվ այդ խնդիրը կանուխ թե ուշ թեև սոսկալի փոթորիկներով, պիտի լուծվի։ Ոչինչ բռնություն, ոչինչ պահպանողական համակարգություն, ոչինչ ընդդիմադրություն, որևիցե կողմից, չէ պիտո կարողանա փակել նորա առաջքը, թեև այսօր հալածական և աքսորական են այդ ապագայի մարգարեքը և առաքյալքը»[107]։

Եվրոպական և ասիական ժողովուրդների վերածնումը Նալբանդյանը տեսնում էր նրանց ազատությունը կաշկանդող բռնատիրությունների հեղափոխական լիկվիդացման մեջ։ Միքայել Նալբանդյանի մտքերը արձագանքում էին Լոնդոնի հեղափոխական վտարանդիներին։ Ռուս դեմոկրատական վտարանդիությունը համերաշխ էր Մաձձինիի, Կոշուտի և ուրիշների հետ, որոնք դեռ 50-ական թվականներին ապստամբության կոչեր էին ուղղում Եվրոպայի և Ասիայի ճնշված ազգություններին։

Ռուս հեղափոխական վտարանդիները ձգտում էին, որ ազգային ազատ ինքնորոշման իրավունք նվաճելու դեպքում Ռուսաստանի ազգությունները միանան երկրի ազատագրված մյուս ժողովուրդներին և «եղբայրական ֆեդերացիա» կազմեն նրանց հետ։ Ի տարբերություն սլավոնոֆիլների, Եվրոպայի և Ասիայի ճնշված ազգությունների ազատագրումը նրանք ակնկալում էին ցարիզմի և բոլոր մյուս բռնատիրությունների դեմ վարելիք նրանց համատեղ պայքարից։

Ինչպես սլավոնների, այնպես և հայերի ազատագրման հեռանկարը Նալբանդյանը պատկերացնում էր ռուս հեղափոխական-դեմոկրատիայի ղեկավարների նման, կտրականապես մերժում էր ինչպես արևմտաեվրոպական պե-

---

105 *Герцен,* Полное собрание сочинений и писем, т. X, стр. 244.

106 *Նույն տեղում,* т. V, стр. 460 и 477.

107 Մ. Նալբանդյան, *Երկերի լիակատար ժողովածու, հատ. 3, էջ 81։*

տությունների, այնպես և ցարական Ռուսաստանի միջամտությունը արևմտահայերի ազատագրման գործում և համոզված կանգնում համադեմոկրատական հեղափոխության դիրքերի վրա։

«Արևելյան հարցի» հանգուցալուծումը Նալբանդյանը ևս չէր տեսնում Թուրքիայի ժառանգությունը վերաբաժանելու հետամուտ ցարիզմի կամ եվրոպական տերությունների մեջ։ Ի տարբերություն իրեն ժամանակակից և մանավանդ իրեն հաջորդած լիբերալ և պահպանողական հայ գործիչների, Մ. Նալբանդյանը խորապես հասկանում էր Թուրքիայի status quo-ն կամ այլ խոսքով՝ նրա առկա վիճակի «անձեռնմխելիությունը» պաշտպանող եվրոպական տերությունների քաղաքականությունը։ «Նրանք,—դառնորեն հեգնում էր Մ. Նալբանդյանը,— անդադար օգնություն են ցույց տալիս Թուրքիային, որ նա դիմանա և չկործանվի։ Որպեսզի Թուրքիո սարկացած հայ, սլավոն և հույն ժողովուրդը քաղաքակիրթ հոգաբարձվից չզրկվի... Սոքա ամենքը, իբրև բանի վարժապետ, քաղաքակրթություն են տարածում և ոչ ոք չի հարցնում աշակերտի կամքը, կամի՞ արդյոք ուսանիլ թե ոչ»[108]։

Նալբանդյանը ոչ միայն ազգային-ազատագրական ակնկալություններ չուներ գաղութակալական Անգլիայից կամ ցարական Ռուսաստանից, այլև նրանց տարածած քաղաքակրթությունից։ Գաղութակալների տարածած «քաղաքակրթության» հետևանք էր համարում, երբ մի «ազգ ճնշում և հարստահարում է մյուս ազգը», նրանց եսակենտրոն մորալի արդյունք է, երբ մի ազգ «իր մի շամփուր խորովածի համար պատրաստ է մորթել մյուս ազգի եզը»։

«Երկրագործության» մեջ Մ. Նալբանդյանը պաշտպանում էր Ռուսաստանի բոլոր ժողովուրդների հեղափոխական պայքարի միասնությունը և այդ միասնության մեջ տեսնում ազատության համար մղվող պայքարի հաջողության երաշխիքը։ Նա կոչ էր անում ճնշված ազգություններին՝ ճնշողների դեմ բարձրացնել իրենց «չխոստովանված ազգության դրոշը»։ Այդ դրոշի ներքո մղվելիք պայքարն է, ասում է նա, որ կարող է վերջ դնել չխոստովանված ազգությունների սարկությանը, նրանց աղքատությանը, նրանց բերել ոչ միայն քաղաքական, այլև տնտեսական ազատություն։

Մ. Նալբանդյանը համոզված էր, որ արևելահայերի և արևմտահայերի ազատագրումը կենսագործելու են ոչ թե եվրոպական պետությունները, այլ ասիական և եվրոպական ժողովուրդների հեղափոխական ընդվզումները և, առաջին հերթին, ասիական և եվրոպական ժողովուրդների ազատությունը բռնաղատող ցարիզմի տապալումը։ Արևմտահայ իր թղթակիցներից մեկի բերանով նա ձևակերպում էր իր սեփական միտքը. «...ինչպես մի մեծ շինվածք կառուցելու համար,— գրում է նա,— շատ նյութեր կմտնեն անոր կազմըվածքի մեջ, այնպես ալ՝ անոր կործանումեն ետքը շատ նյութեր կստացվին վատ շինվածքների համար»։ Ահա թե ինչու Ռուսաստանում խմորված ազատությունը միայն ռուս ժողովրդի ազատությունը չէ, այլ Ռուսաստանի մեջ մտնող բոլոր ժողովուրդների, այդ թվում նաև Կովկասի, Վրաստանի և Հա-

108 Մ. Նալբանդյան, Երկերի լիակատար ժողովածու, հատ. 3, էջ 89։

յաստանի ազատությունը։ «Ռուսիո ազատությունը ընդհանուր մարդկության ազատության վերաբերմամբ մեծ խորհուրդ ունի»[109]։

Այս տողերում էր գաղափարական և քաղաքական այն հանգույցը, որը Մ. Նալբանդյանին ու նրա հայ համախոհներին միացնում էր Ռուսաստանի և Եվրոպայի հեղափոխական-դեմոկրատների և Ռուսաստանի ու Թուրքիայի գյուղացիական և ազգային-ազատագրական շարժումների հետ։

Այն հանգամանքը, որ 1862 թվականի ապրիլ-մայիս ամիսներին Լոնդոնի ռուս վտարանդիները նախատեսում էին Թուրքիայում նախապատրաստվող ապստամբությունների մեջ հայերի մասնակցությունը, հանդիսանում է նույն ամիսներին Լոնդոնում գտնվող Մ. Նալբանդյանի հետ ռուս տարագիրների ունեցած հանդիպումների ու մտափոխանակությունների արդյունքը։

Մ. Նալբանդյանի արևմտահայ համախոհների նախաձեռնությամբ Թուրքիայում կազմակերպվելիք ժողովրդական ապստամբությունները ռուս վտարանդիները լծորդում էին Ռուսաստանում, մասնավորապես Կովկասում և Դոնի շրջանում «Земля и воля» հեղափոխական կազմակերպության, իտալական ազգային-ազատագրական շարժումները ղեկավարող Մաձձինիի ու Գարիբալդիի և լեհ քաղաքական գործիչ Ադամ Չարտորիժսկու Արևմուտքում ծավալած գործունեությանը։

Ռուս և արևմտաեվրոպական դեմոկրատիայի գործիչների հետ էր առնչված ոչ միայն Մ. Նալբանդյանի, այլև նրա արևմտահայ համախոհների՝ Հարություն Սվաճյանի, բժիշկ Հովհաննես Քյաթիպյանի և Սերովբե Թագվորյանի քաղաքական գործունեությունը Թուրքիայում։ Իրենց ընդհատակյա գործունեությունը վարագուրելու համար նրանք օգտագործում էին նույնիսկ Մերձավոր Արևելքի մասոնական օթյակները, որոնց հետ Մ. Նալբանդյանի գաղափարակիցներից կապված էին Ս. Թագվորյանը՝ Կ. Պոլսում և Գր. Չիլինկիրյանը՝ Զմյուռնիայում[110]։

1862 թվականի կեսերին Մ. Նալբանդյանի արևմտահայ համախոհները աջակցեցին Զեյթունում բռնկված ապստամբությանը։ Հակառակ Զեյթունի ապստամբությանը սատարող արևմտահայ լիբերալների գործ դրած ջանքերին՝ Նալբանդյանի և նրա արևմտահայ համախոհների ակնկալությունները կապված էին եվրոպական պետությունների գաղութակալական քաղաքականության դեմ գործող Լոնդոնի հեղափոխական կենտրոնի հետ, որի մեջ ռուս վտարանդիներից բացի մտնում էին նաև Գարիբալդին և Մաձձինին։ Թագվորյանի հայտնի նամակից պարզվում է, որ Նալբանդյանը հանդիպում է ունեցել Մաձձինիի հետ և ջանացել նրա հետ ծանոթացնել նաև իր արևմտահայ գործակիցներին[111]։

Այս փաստերից հայտնի է արդեն, որ արևմտահայերի ազատագրման հարցի շուրջը Նալբանդյանի հետամտած խնդիրները համընկնում էին Թուր-

---

109 Մ. Նալբանդյան, Երկերի լիակատար ժողովածու, հատ. 3, էջ 61։

110 Աշ. Հովհաննիսյան, Նալբանդյանը և նրա ժամանակը, հատ. 1, էջ 436 և հետ., էջ 471 և հետ., էջ 475 և հետ., էջ 499։

111 Նույն տեղում, էջ 505 և հետ.։

քահպատակ ժողովուրդների ազատագրական շարժումների նկատմամբ ռուս հեղափոխական-դեմոկրատների առաջ քաշած նպատակների հետ։

Այս մտահղացումը կարող ենք հավաստել ոչ միայն Արևմուտք ապավինած Բակունինի, Գերցենի և Օգարևի, այլև Ռուսաստանի ներսում գործող ռուս հեղափոխական-դեմոկրատների ելույթներից։ Հատուկ ուշադրության արժանի է մանավանդ 1860 թվականին «Russie et la Question d'Orient» վերնագրով Փարիզում տպագրված անանուն մի գրքույկը, որը գրել և հրատարակել էր ռուս նշանավոր հեղափոխական-դեմոկրատ Նիկոլայ Սերնո-Սոլովևիչը[112]։

Գրքույկի հեղինակը նշավակում է Թուրքիայի վերաբաժանմանը հետամուտ եվրոպական դիվանագիտությունը։ Խոր համակրանքով է խոսում նա Եվրոպայի և Ասիայի ճնշված ժողովուրդների մղած ազատագրական պայքարի մասին և կտրականապես դատապարտում եվրոպական պետությունների շահախնդիր միջամտությունը Արևելքի ճնշված ժողովուրդների, այդ թվում նաև արևմտահայերի ներքին գործերին։

Հեղինակը մատնանշում է կառավարությունների մարդասիրական ֆրազների և Թուրքահպատակ ժողովուրդների ազատասիրական ձգտումների միջև եղած բացահայտ ներհակությունը։ Ռազմական ուժի վրա հենված մեծ պետությունները, ասում է նա, հետամուտ են ոչ թե օսմանյան պետության ճնշված ժողովուրդների ազատագրմանը, այլ այդ պետության մասնատմանը և նրա հարստությունների հափշտակմանը։ Դատապարտում է նա Եգիպտոսը գաղութ դարձնելու անգլիական ծրագիրը և Դարդանելը նվաճելու ցարական քաղաքականությունը, առաջ է քաշում, պաշտպանում Եգիպտոսի անկախության ու Կ. Պոլիսն ազատ քաղաք հայտարարելու, նեղուցներում ազատ նավագնացություն ապահովելու գաղափարը։

«Արևելյան հարցի» դիվանագիտական լուծման գաղտնի խարդավանքներին անանուն հեղինակը հակադրում է դեմոկրատական հրապարակայնության սկզբունքը, պետությունների իրարամերժ քաղաքականությանը հակադրում դեմոկրատիայի քողազերծ քննադատությունը։ Դժբախտությունների լաբիրինթոսից խույս տալու համար, ասում է նա, պետք է որ դիվանագիտությանը հանդիպադրվի այլ ուժ՝ միշտ ավելի իմաստալից, ավելի անկողմնակալ և ավելի գործնական հասարակական կարծիքը։

Ոչ թե պետությունների միջամտությամբ, այլ Թուրքահպատակ ժողովուրդների համատեղ պայքարով է, որ պիտի վճռվի նրանց քաղաքական բախտը, ասում է հեղինակը։

Նալբանդյանը անձնական ծանոթություն էր հաստատել Ն. Ս. Սերնո-Սոլովևիչի հետ, հավանաբար, 1859 թ. Պետերբուրգում։ 1860 թ. փետրվար-մարտ ամիսներին և նույն տարվա դեկտեմբերին Լոնդոնում Սերնո-Սոլովևիչը հանդիպել էր և գաղափարապես մերձեցել Գերցենին և Օգարևին[113]։ 1862 թ. Սերնո-Սոլովևիչին ուղղված իրենց հայտնի նամակում Օգարևը և Գերցենը

---

[112] *И. Е. Бирнбаум.* Неизвестная работа Н. А. Серно-Соловьевича, «История СССР», 1963, № 3, стр. 138.

[113] *Серно-Соловьевич,* Публицистика, Письма, М., 1963, стр. 410 и др.

Նալբանդյանին բնութագրում են որպես ոսկի հոգու տեր, հեղափոխական գործին նվիրված անշահախնդիր ու գերազնվագույն մի մարդու, որի մասին ջերմ հանձնարարականներ էին ստացել Սերնո-Սոլովևիչից[114]։ Օգարևի ու Գերցենի կողմից Նալբանդյանին տրված ամենասրտագին այս բնութագրին անմիջապես նախորդում են Կովկասում հեղափոխական կազմակերպություն ստեղծելու մասին Սերնո-Սոլովևիչին տրվող հրահանգները։ Պարզվում է, որ Սերնո-Սոլովևիչը գործելու էր Նալբանդյանի հետ։ Արտասահմանում և Ռուսաստանի ընդհատակյա «Земля и воля» կազմակերպության կողմից նըրանց առաջադրված՝էր 1863 թ. գարնանը Ռուսաստանում կազմակերպվող համընդհանուր ապստամբության պահին ոտքի հանել Կովկասի բնակչությունը։ Այլ փաստերից ևս ակներև է, որ ոչ միայն Բակունինը, այլև Գերցենն ու Օգարևը Նալբանդյանին և Սերնո-Սոլովևիչին պատասխանատու դեր էին վերապահում Կովկասում և Թուրքիայում կազմակերպվելիք ազգային-ազատագրական շարժումների մեջ։ Նույն եզրակացությանն է հանգեցնում նաև Նալբանդյանի և նրա արևմտահայ գործակիցների ծածկագրությունների վերլուծությունը[115]։

Մ. Նալբանդյանին և Սերնո-Սոլովևիչին տրված հանձնարարությունները՝ Գերցենի և Չերնիշևսկու գլխավորած համառուսական հեղափոխական շարժման կարևոր խնդիրներից էին։ Բայց նրանց վիճակված չէր իրագործելու այդ հանձնարարությունները։

1862 թ. ամռանը ապստամբության կազմակերպողների ու ղեկավարների, այդ թվում նաև Մ. Նալբանդյանի ու Սերնո-Սոլովևիչի կալանքը և դրան հաջորդած աքսորն ու մահը խափանեցին Կովկասում կամ Թուրքիայում նըրանց հետագա համատեղ գործունեությունը։

Մ. Նալբանդյանի գլխավորած հեղափոխական-դեմոկրատական հոսանքը կարևոր դեր կատարեց հայ ժողովրդի հասարակական-քաղաքական մըտքի հետագա զարգացման պատմության մեջ։

## ԱՐԵՎՄՏԱՀԱՅ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՀՈՍԱՆՔՆԵՐԸ

### 1. ԿՂԵՐԱ-ԱՄԻՐԱՅԱԿԱՆ ՀՈՍԱՆՔ

XIX դարի առաջին կեսին արևմտահայ կյանքում կղերա-ամիրայականները արտահայտում էին պոլսահայ ամիրաների և բարձրաստիճան հոգևորականության շահերը։ 50—60-ական թվականներին նրանք ձևավորվեցին որպես ռեակցիոն հոսանք և դիմագրավեցին ոչ միայն ազգային-ազատագրական շարժումներին, այլև բարեփոխությունների չափավոր պահանջներին։

Կղերա-ամիրայական հոսանքի պարագլուխը դարձավ Հովհաննես Զամուռճյան-Տերոյենցը, գաղափարակիցներ ունենալով Մ. Գ. Տեյիրմենճյանին, Ա. Հասունյանին, Ղ. Պալթազարյանին և Մխիթարյան վանականներից շատե-

---

114 *Н. П. Огарев,* Избранные социально-политические и философские произведения, М., 1960, стр. 463.

115 Աշ. Հովհաննիսյան, *Նալբանդյանը և նրա ժամանակը, հատ. 1, էջ 471—472։*

րին։ Հոսանքի ձայնափողերը դարձան «Ջրհալ», «Երևակ», «Արևելյան դար», «Բազմավեպ», «Արշալույս Արարատյան» պարբերականները, որոնք գաղափարական մարտեր էին մղում առաջավոր մտավորականության դեմ։

Հակամարտությունները ծայր առան լեզվի շուրջ՝ գրապայքարով։ Կղերաամիրայականները, վախենալով, որ լեզվաշինական անմեղ ռեֆորմները կարող են խարխլել նաև հայ եկեղեցու հիմքերը, սկսեցին պաշտպանել գրաբարը։ Հ. Տերոյենցը, Ա. Աղանուրը, Վիեննայի ու Վենետիկի Մխիթարյաններից շատերը արշավանքի դուրս եկան լուսավորականների դեմ, փորձեցին նախապատվություն տալ գրաբարին, արգելեցին աշխարհաբարի մուտքը դպրոցները։

Տերոյենց-Զամուռճյանը, պատրիարքի միջնորդությամբ, 1854 թ. արգելել տվեց Ն. Ռուսինյանի «Ուղղախոսության» դասավանդումը դպրոցներում, պայքար սկսեց քերականական «նորաբուծ» կանոններով գրված Ն. Զորայանի և Կ. Ցութուճյանի հոդվածների լեզվի դեմ։

Արևմտահայ առաջավոր մտավորականները 1850—60-ականներին մշակում էին աշխարհաբարը, ստեղծում նրա քերականությունը, սակայն հետադիմականներն էլ «տեսականորեն» հիմնավորում էին իրենց դիրքը, «Երևակ», «Բազմավեպ», «Արևելյան դար» պարբերականների էջերում ազդարարում կղերա-ամիրայականների արդարացիությունն առաջինների նկատմամբ։ «Գրաբարյանների» կարծիքով ազգի լեզուն պիտի դառնար գրաբարը։ Սրանց հայացքով, կորցնել գրաբարը, կնշանակեր կորցնել «ազգության հոգակայն ու պահպանը»՝ հայոց լուսավորչական եկեղեցին։

Աշխարհաբարը հաղթանակում էր։ Նրա հակառակորդներն ստիպված էին տեղի տալ, հարմարվել նոր պայմաններին, որպեսզի մեկընդմիշտ չկտրվեին ժողովրդից։

Կղերա-ամիրայական հոսանքի գաղափարախոսները դիմակայում էին այն տեսակետին, թե հնարավոր է բարբառներից բառամթերք հավաքել, մըշակել համազգային, այսինքն՝ երկու հատվածներին հասկանալի աշխարհաբար։ Մերժելով այս, նրանք փաստորեն ճիգ էին թափում այրել արևելահայ ու արևմտահայ հատվածների միջև նոր գցված լաստերը, խաթարել համազգային զարթոնքի շարժումը։

Նրանց պահպանողական դերը դրսևորվեց գրականության մասին հայտնած տեսակետների և լույս աշխարհ հանած ինքնուրույն ու թարգմանական գործերի մեջ։ Հ. Զամուռճյանը գրեց երեսուն հատորից բաղկացած համաշխարհային կրոնների պատմությունը, ստվարածավալ «Իրավախոհը»[1]։ 1860 թ. հետո կղերա-ամիրայականները, Տերոյենցի գլխավորությամբ, գրական մարզում պայքարի դուրս եկան արևմտահայ դեմոկրատների դեմ, փորձեցին արգելել «սոցիալիզմի ու կարմիր հասարակապետության մուտքը» հայ գաղթօջախները։

Թողած եվրոպական առաջադեմ գրականությունը, Տերոյենցը թարգմանում էր «Ժակմեն Կլեռ» և Ժեռառ Աբբայի «Խորհուրդ գաղտնի ընկերության» վեպերը, որոնց մեջ խարազանվում էին XVIII դարի մատերիալիստ-լուսավո-

---

1 «Երևակ», 1859, էջ 269։

րիչներն ու նրանց հետևորդները։ Սակայն Զամուռճյանն այստեղ սոսկ թարգմանիչ չէր, այլ փոխադրող։

1868 թ. լույս տեսավ Հ. Հիսարյանի «Նեռն կամ կատարածն աշխարհի» վեպը, ուր «Բանասերի» խմբագիրը, Տերոյենցի հետևողությամբ, ջանում էր անվանարկել հայ դեմոկրատներին։

1868 թ. Մխիթարյանները հայատառ թուրքերենով հրատարակեցին «Լիոնելլուի արկածները» վեպի թարգմանությունը, ուր դատապարտվում էին Բալկաններում, Իտալիայում 1860-ական թվականներին ստեղծված գաղտնի կազմակերպությունները, Գարիբալդիի ու Մաձձինիի գլխավորած շարժումները։ Նրանք հերետիկոսության ու աղանդավորության արմատներ էին փնտրում Եվրոպայի «խաղաղ մարդկանց» մոլորեցնող Վոլտերի, Դիդրոյի, Ռուսոյի գրվածքների մեջ։ Սակայն թարգմանիչները դրանով չէին բավարարվում, այլ նման կազմակերպություններ էին որոնում Պետերբուրգում, Մոսկվայում, Թիֆլիսում, Կ. Պոլսում, Զմյուռնիայում, Պաղուայում։

Այդ նպատակին ծառայեցնելով ինքնուրույն ու թարգմանական գրականությունը, մամուլի դժգույն օրգանները, հետադիմականներն ուղղակի թե անուղղակի ծառայում էին սուլթանական միահեծանությանը։ Նրանք, դեմ դուրս գալով քաղաքական պայքարին, քարոզում էին կույր հնազանդություն սուլթանական վարչակարգին։

Տերոյենցի գլխավորած հոսանքը բացասաբար արձագանքեց Զեյթունի հերոսամարտերին, դատապարտեց «անհավատարիմ» ազգայինների «անխոհեմ» ընթացքը, Սահմանադրությունը ներկայացրեց իբրև «պետության մեջ պետություն ստեղծելու» փորձ, իսկ «Թանզիմաթը»՝ սրբագործված օրենքների ոչընչացում։ 1862 թ. օգոստոսին «Երևակը» դադարել էր, «Արևելյան դարը» զբաղված էր Մ. Նալբանդյանի «Երկու տողի» քննադատությամբ, «Ժամանակը»՝ Արմենակ Հայկունու դեմ մղվող բանակռվով։ Զամուռճյանը թռուցիկներ էր տարածում Կ. Պոլսում և ջանում ժողովրդին հեռու պահել «անհավատների վարդապետությունից»։

Կղերա-ամիրայականները միայն հայ ազատագրական պայքարը չէ, որ դատապարտում էին, այլ ազգային-բուրժուական բոլոր այն շարժումները, որոնք խարխլում էին ֆեոդալական միահեծանության հիմքերը, լիներ դա թուրքական, ցարական, թե ավստրիական։ Տերոյենցը տպագրում էր նյութեր Գարիբալդիի մասին, ապա ավելացնում «...Կարիպալտի և կարիպալտիականները շատ աղեկ մարդիկ չըլլալնին իմացած ըլլան»[2]։ Նրան անհանգստություն էր պատճառել, որ Գարիբալդիի «աջ բազուկ» Մաձձինին «...անսահման ազատության կուսակից է. որ ոչ թագավոր կուզե աշխարհի վրա և ոչ որևիցե իշխանավոր, թե՛ քաղաքական և թե՛ կրոնական մասին»[3]։

Կղերա-ամիրայականներն աստիճանաբար կապեր են հաստատում արևելահայ կղերա-աղայականների՝ Մ. Մսերյանի, Գ. Այվազովսկու, Հ. Խալիբյանի, Ս. Ջալալյանցի հետ, ձգտում միասնական ճակատով դուրս գալ ոչ միայն

2 «Երևակ», 1864, № 14, էջ 108։

3 Նույն տեղում, 1860, № 38, էջ 130։

դեմոկրատական հոսանքի, այլև լիբերալ բուրժուազիայի չափավոր պահանջների դեմ։

Հետադիմականներն անզիջում պայքարի դուրս եկան «Երկու տող» ու «Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ» աշխատություններում առաջ քաշված ծրագրերի դեմ, ջանացին ժխտել սոցիալական հեղափոխության անհրաժեշտությունը, դատապարտեցին «դիվուրաց հեղինակի» գաղափարների արևմտահայ հետևորդներին։ Այս հարցում անզիջում էր հատկապես Մ. Գ. Տեյիրմենճյանի «Արևելյան դարը»։

1861 թ. մայիսին Ջամուճյանի հանձնարարությամբ «Արևելյան դարը» տպագրեց խմբագրի ընդարձակ հոդվածաշարը, պաշտպանության տակ առավ արևմտահայ ռեակցիայի պատվարին և դատապարտեց Մ. Նալբանդյանին։ «Երկու տող» անունով սադայելական և տարտարոսաբուխ տետրակ մը դուրս ելավ այս օրերս մայրաքաղաքիս մեջ... Ինչպես կերևի հիշյալ տետրակին լեզուն հայ, ...բայց ոճը այլաբան, խոսքերն դիվօձն ու դարձվածքները հեթանոսական»[4]։ Նույն օրերին նրա և Տերոյենցի ստորագրությամբ դիմում ուղարկվեց պատրիարքարան, որտեղ «Երկու տող»-ի հեղինակին ու գրքույկի տարածողներին մեղադրանք էր ներկայացվում իբրև «անկրոնների», «անաստվածների» և պահանջում նրանց թերթերի փակում[5], խմբագիրների ձերբակալում։ Եվ իրոք, ռեակցիան հասավ իր նպատակին։ Տեյիրմենճյանը պարծենալով հարձակվում էր «Մասիս»-ի վրա, սպառնում, թե «... պիտի հարկադրես զմեզ՝ քեզ համար ալ անցագիր մը առնելու աշխատությունը կրելու. բայց գիտե՞ս արդյոք ուր երթալու համար,—հոն՝ ուր Մեղուն ու Մյունատին դադրեալ կմտածեն»[6]։

Դեմոկրատական մտավորականության զորեղացող ազդեցությունը զայրույթ էր առաջացնում կղերա-ամիրայականների շրջանում։ Ջամուճյանը, գլխավոր հարվածը վերցնելով իր վրա, պայքարում էր Մ. Նալբանդյանի, Հ. Սվաճյանի, Կ. Փանոսյանի, Մ. Այվազյանի դեմ, հրապարակախոսությամբ «վնասազերծում» «Երկրագործության» ու «Երկու տողի» ազդեցությունը, միաժամանակ հանձնարարություններ տալիս իր կուսակից խմբագիրներին՝ պայքարի դուրս գալ զատ-զատ, ջախջախել սոցիալիստներին հետևող «անհավատներին»։

Մ. Նալբանդյանի բնութագրությամբ «Երևակի ճուտ» «Ժամանակ» հանդեսն ու նրա խմբագիր Ստ. Փափազյանը հանձնարարություն ստացան չդադարեցնել պայքարը Հ. Սվաճյանի դեմ, սակայն հիմնականում զբաղվել Արմենակ Հայկունու վարկազրկման, նրա աթեիզմին՝ կրոնական իդեալիզմը հակադրելու խնդրով։

Այսպիսով, XIX դարի 50—60-ական թվականներին Թուրքիայի հայաբնակ գաղթօջախներում տակավին գործում էին կղերա-ամիրայական հոսանքի ներկայացուցիչները, որոնք, սկզբում պայքարելով լիբերալ ու դեմոկրատական մտավորականության դեմ, հետագայում կողմնակիցներ գտան ժողո-

---

4 «Արևելյան դար», 1861, № 24, էջ 203։

5 Նույն տեղում, № 25։

6 Նույն տեղում, 1861, օգոստոսի 31, № 36, էջ 53—54։

վըրդական զանգվածների հեղափոխական շարժումներից երկնչող լիբերալների մեջ, ընդհանուր ճակատ ստեղծեցին հասունացող դեմոկրատական հոսանքի դեմ։ Կղերա-ամիրայականներն ունեին Թուրքական կողմնորոշում և ձգտում էին հավերժացնել ֆեոդալական միապետությունը, լուսավորչական հայ եկեղեցու տիրապետությունը։

## 2. ԼԻԲԵՐԱԼ-ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՀՈՍԱՆՔ

Արևմտահայ լիբերալներն արտահայտում էին գաղութահայ օջախներում կենտրոնացած հայ առևտրական այն բուրժուազիայի շահերը, որը 1830-ականներից կազմակերպում էր վաճառականական ընկերություններ, կառավարությունից ստանում մաքսային առանձնաշնորհումներ և հույների ու հրեաների հետ միասին դառնում Թուրք-եվրոպական առևտրի զորեղ միջնորդ։

Ամիրայական կապիտալի ու ամիրաների մենատիրական իրավունքների դեմ պայքարող հայ նորաստեղծ բուրժուազիան, ծանոթանալով Արևմուտքի երկրներին, առևտրի եվրոպական մեթոդներին, գիտակցելով լեզուներ իմանալու անհրաժեշտությունը, 1840-ական թվականներին իր զավակներին ուղարկում էր Փարիզ, Լոնդոն, Վենետիկ, Պադուա՝ հաղորդակից դարձնելու եվրոպական լուսավորությանը։

Մուրադյան ու Ռափայելյան, ապա Մուրադ-Ռափայելյան վարժարանի առաջադեմ սաները, Սորբոնի ու Քեմբրիջի համալսարանների հայ ունկընդիրները դաստիարակվում են Վոլտերի, Ռուսսոյի, Դիդրոյի, Մոնտեսքիոյի, Սեն-Սիմոնի և այլոց գաղափարներով, շատերն ականատես դառնում, իսկ ոմանք էլ մասնակցում 1848 թ. ֆրանսիական հեղափոխությանը։

Վերադարձին, լուսավորված այս երիտասարդությունն իր հետ բերում էր առաջադեմ գաղափարներ և ջանում կյանքի մի շարք բնագավառներում բարեփոխումներ կատարել։ Ֆրանսիական ազդեցությունը ուժեղանում էր մանավանդ ծովամերձ քաղաքներում։ «Առհասարակ,— գրում է Մ. Մամուրյանը,— մեծ ու պզտիկ՝ բարիզյան կյանքը, սովորույթը, նորաձևությունը մատենագիրներն օրինակել սկսան։ Այն ատեն ոչ միայն մեր արդն ու զարդը, տարազն ու կահույքը Ֆրանսայեն եկան, այլև Ֆրանսան տվավ մեզ մտքի սնունդ, սրտի զգացում, նույնպես և մեր կրից ճարակ, և թեթևամտության նյութ»[7]։

Այդ սերնդի անդրանիկ ներկայացուցիչներն էին Նիկ. Զորայանը, Գր. Օտյանը, Սերվիչենը (Սերովբե Վիչենյան), Ն. Ռուսինյանը, Աղաթոնյան եղբայրները և ուրիշներ, որոնք դիմակայեցին կղերա-ամիրայական հոսանքին։

Դարամիջին բուրժուազիան տակավին վերելք էր ապրում։ Դեռևս չկար հասունացած դեմոկրատական մտավորականություն, դրա համար էլ, առանց երկնչելու, բարձրացնում էր հետամնաց Թուրքիան հեղաշրջելու այնպիսի խնդիրներ, որոնցից հրաժարվելու էր կամ չափավոր շրջանակների մեջ խցկելու ճիշտ մեկ տասնամյակ հետո։ Նրա չափավոր ազատամտությունը պայմանավորված էր մի կողմից Եվրոպայում ստացած ներշնչումներով, մյուս կողմից՝ կղերա-ամիրայականներին սանձ դնելու համար ժողովրդական զանգվածների մեջ հենարան ունենալու ակնկալությամբ։

7 Վալտեր Սկոտ, *Իվանոե*, Զմյուռնիա, 1872, էջ 3 (Մ. Մամուրյանի գրած Առաջաբանը)։

1850-ական թվականներին, տարբեր դասերի մասին ունեցած մտահոգություններով հանդերձ, արևմտահայ լուսավորյալների սերունդը միասնական ճակատով պայքարում էր խավարամոլների դեմ, ամեն ինչ ենթարկելով «մարդկային իմացության դատաստանին»։ Առաջադեմ այս մտավորականները խմբվում էին «Մեղու», «Մասիս», «Պեգասյան թռչնիկ», «Ծաղիկ», «Կիլիկիա», «Փարիզ» և այլ պարբերականների շուրջը, որոնցից և սկիզբ է առնում լուսավորական ու սահմանադրական շարժումը։

Արևմտահայերի մտավոր զարթոնքի ազդարարողների առաջին խնդիրը գրապայքարն էր, որը սկսվեց 1853 թ. և շարունակվեց մինչև 80-ական թվականների վերջը։

Տակավին 40-ականներին Ն. Զորայանն իր հոդվածները ոչ միայն գրում էր աշխարհաբարով ու հրատարակում «Հայաստան», «Բազմավեպ» պարբերականներում, այլև հիմնավորում էր նոր լեզվի անհրաժեշտությունը։ 1851 թ. լույս տեսան նրա «Վարժություն ընթերցանության ի պետս դպրոցաց», Գր. Օտյանի «Առաջարկություն աշխարհաբար լեզվի վերա», 1852 թ. Ն. Զորայանի «Ընթերցասիրության կամ գիրք կարդալու միջոցով մտավորական մշակության հասնելու օգտակար խրատներ», 1853 թ. Ն. Ռուսինյանի «Ուղղախոսություն» աշխատությունները։

Այդ աշխատություններում արծարծվում էր այն պահանջը, թե դպրոցներում դասավանդելու իրավունքը պետք է վերապահել աշխարհաբարին և սահմանափակել գրաբարյանների վայելած արտոնությունները։ Նրանց ջանքերով մշակվեց արևմտահայ աշխարհաբարի քերականությունը՝ Ն. Ռուսինյանի հրատարակած «Ուղղախոսությունը»։

1853 թ. հոկտեմբերի 21-ին Կ. Պոլսում հիմնվեց «Ուսումնական խորհուրդ»[8] (նախագահ՝ Ն. Ռուսինյան, անդամներ՝ Ն. Զորայան, Մ. Այվազյան, Գր. Օտյան, Կ. Յութուճյան), որը քննեց Ն. Ռուսինյանի «Ուղղախոսությունն» իբրև աշխարհաբարի քերականություն և արտոնեց նրա դասավանդումը աշխարհիկ դպրոցներում։ Սրանով իսկ պայթեց գրապայքարը, որը մինչ այդ էլ գոյություն ուներ, սակայն ավելի սրվեց, դեմ հանդիման հանեց խավարյալներին ու լուսավորյալներին[9]։ Մշակութային խնդիրների շուրջը ծագած տարաձայնությունները վերածվեցին հասարակական ու քաղաքական պայքարի։

Հ. Տերոյենցն ու իր կուսակիցները պատրիարքի միջամտությամբ դատապարտեցին լուսավորյալների «հանդուգն» քայլը, արգելեցին «Ուղղախոսության» դասավանդումը, հավաքեցին ու այրեցին Ն. Ռուսինյանի կազմած «Տարեցույցի» բազմաթիվ օրինակները, Հ. Սվաճյանին հեռացրին Պեշիկթաշի դպրատան ուսուցչի պարտականությունից։ Լուսավորյալներն ստիպված իրենց հոդվածներով էին պրոպագանդում «Ուղղախոսությունը»։

Լուսավորյալները կարողացան ձևակերպել արևմտահայերի գրական լեզուն, որի հիմքը արևմտահայ բարբառներից ու գրաբարից վերցված բառամթերքն էր։ Հետագայում չդադարած գրապայքարը հետապնդում էր աշխար-

---

8 «Մասիս», 1853, № 51։

9 Տե՛ս Հ. Աճառյան, Պատմություն հայոց նոր գրականության, Վաղարշապատ, 1906, էջ 25։

հաբարի մաքրության, տաճկերենի ազդեցություններից ու գրաբարյան ձևերից աշխարհաբարն ազատելու հարցը։

Կ. Պոլսի և Զմյուռնիայի հայ նորաստեղծ մտավորականները ոչ միայն կազմեցին Ազգային սահմանադրության տարբերակները, առաջին տասնամյակում գլխավորեցին արհեստավորության ցույցերը, այլև քաղաքական մրցահրապարակից չեզոքացրին ամիրայությանը, պատրիարքին և ազգի ներքին գործերի ղեկը վերցրին իրենց ձեռքը։ Ազգային սահմանադրության մտահղացումը, վերամշակումը և նույնիսկ անվանման պատիվը վերապահված էր լուսավորյալ սահմանադրականներին, որոնք ձգտում էին ազգային ինքնավարության։

Լուսավորյալ մտավորականության միասնականությունն ավելի ակնառու դարձավ, երբ 1860 թ. սեպտեմբերին հիմնվեց Կ. Պոլսի «Բարեգործական» ընկերությունը։ «Բարեգործականը» քաղաքական կազմակերպություն չէր և ոչ էլ հեղափոխական նպատակներ էր հետապնդում։ Ընկերությունն իր առջև խնդիր էր դրել կրթել, լուսավորել գավառահայությանը, հոգ տանել նրա տնտեսական առաջընթացի, երկիրը զարգացման կապիտալիստական ճանապարհի վրա դնելու մասին։

Տարբեր հայացքների ու համոզմունքների տեր մարդկանց համախմբող «Բարեգործականի» հիմնադիրներն էին Մ. Աղաթոնը, Հ. Շիշմանյանը (Ծերենց), անդամներն էին՝ Գր. Օտյանը, Ն. Ռուսինյանը, Մ. Մամուրյանը, Ա. Հայկունին, Մ. Պեշիկթաշլյանը, Հ. Սվաճյանը, Ս. Թագվորյանը։

Ընկերությունը 1860 թ. մշակեց իր հայտարարությունը[10], իսկ Հ. Շիշմանյանն ու Մ. Մամուրյանը արևմտահայ ու կովկասահայ պարբերականներում ազդարարեցին նրա հետապնդած նպատակները։ Հրապարակված փաստաթղթերից[11] հետևում է, որ նրանց հեղինակները ձգտում էին ապահովել Թուրքիայի, հատկապես Արևմտյան Հայաստանի տնտեսական անկախությունը, դիմագրավել Եվրոպայի քայքայիչ ազդեցությանը։

Տնտեսական հետամնաց վիճակից ազգին դուրս բերելու միջոցները նրանք համարում էին լուսավորությունը, մասնագիտական ուսուցման միջոցով կրթված բանվորներ, երկրագործներ պատրաստելը։

«Բարեգործականի» անդամները տեսնում էին հազարավոր երկրագործների հոսքը դեպի մայրաքաղաք, Զմյուռնիա ու Եվրոպա, գիտակցում էին պանդխտության աղետաբեր հետևանքները, ուստի և ունևոր պոլսահայերից պահանջում էին վճարել պանդուխտների ուղեգները, նյութական միջոցներ տրամադրել այս աշխատունակ ու կորովի գավառացիներին, նրանց վերադարձնել հայրենիք, զարկ տալ ազգային երկրագործությանը[12]։ Հարցն այնքան էր հասունացել, որ նման առաջարկին դեմ չէին անգամ կոմպրադորական բուրժուազիայի ներկայացուցիչները՝ «Բարեգործականի» աջ թևը։

«Բարեգործականն» իր բաժանմունքը հաստատեց Զմյուռնիայում, դրամ հանգանակեց ու տրամադրեց Հ. Շիշմանյանին, նրան առաքեց Կիլիկիա, ուր

---

10 «Արշալույս Արարատյան», 1860, № 663։

11 «Հայտարարություն Բարեգործական ընկերության հայոց», Կ. Պոլիս, 1861, էջ 16։

12 «Փարիզ», 1860, № 47։

*և ներքադրում էին խարխսի նետել ազգի հարատևման խնդրով մտահոգվողները։ Ծերենցն այստեղ փորձեց ագարակ գնել, երկրագործական վարժարան հիմնել, սակայն նրա ձեռնարկումը հաջողությամբ չպսակվեց։*

*1861—1863 թթ. սահմանադրական պայքարի ուժեղացումը, Զեյթունի, Արևմտյան Հայաստանի ապստամբական շարժումները, Մ. Նալբանդյանի գաղափարական ազդեցությունը քաղաքականապես հասունացրին արևմտահայ դեմոկրատական մտավորականությանը, որն առաջադրում էր պայքարի հեղափոխական գործելակերպ, հետապնդում ոչ միայն ազգային-ազատագրական, այլև սոցիալական ազատության նպատակներ։ Եվ դա օրինաչափ երևույթ էր, քանի որ կոմպրադորական բուրժուազիայի ու արևմտահայ աշխատավորական զանգվածների շահերը կարող էին համընթաց գնալ միայն որոշ շրջանում, բայց ոչ համընկնել ընդերկար։ Աշխատավոր գյուղացիների, պոլսահայ արհեստավորների ու պանդուխտների գլուխն անցած դեմոկրատական հոսանքը, ի վերջո, պայքարի ձեռնոց պիտի նետեր գաղութահայ կոմպրադորներին ու նրանց գաղափարական ձայնատարներին՝ բուրժուական լիբերալներին։*

*«...Լիբերալիզմի անջատման հարցը դեմոկրատիայից պատկանում է ամբողջ ազատագրական շարժման արմատական հարցերի շարքին,— գրում է Վ. Ի. Լենինը։— Ինչո՞ւմն է նրա թուլության պատճառը։ Արդյո՞ք նրանում, որ դեմոկրատիան* ոչ բավարար *գիտակից կերպով ու որոշակիորեն է անջատվել լիբերալիզմից, թույլ տալով վարակել իրեն նրա անզորությամբ ու տատանումներով։ Թե՞ նրանում, որ դեմոկրատիան չափից դուրս շուտ (կամ չափից դուրս կտրուկ կերպով և այլն) անջատվեց լիբերալիզմից, դրանով իսկ թուլացնելով «ընդհանուր գրոհի ուժը»։*

*Հազիվ թե թեկուզ մի մարդ, որն հետաքրքրվում է ազատության գործով, սկսի վիճել այն բանի դեմ, որ դա արմատական կարևորության հարց է։ Չի կարելի լինել ազատության գիտակից կողմնակից, առանց այդ հարցը միանգամայն որոշակիորեն լուծելու։ Իսկ այդ լուծելու համար պետք է հասկանալ, թե ինչպիսի հասարակական ուժեր, ինչպիսի դասակարգեր են կանգնած լիբերալիզմի թիկունքում և դեմոկրատիայի թիկունքում, ինչպիսի քաղաքական ձգտումներ են ընկած այդ դասակարգերի էության մեջ»*[13]։

*Արևմտահայ 1860-ական թվականների լիբերալ հոսանքի թիկունքում կանգնած էր կոմպրադորական բուրժուազիան, որը, նախքան արհեստավորությունն ու գավառահայությունն իրենց զգացնել կտային որպես քաղաքական ուժ, կատարում էր առաջադիմական դեր, պայքարում կղերա-ամիրայականների դեմ, ձգտում բարեփոխությունների ճանապարհով՝ վերևից, առանց աշխատավորության մասնակցության, արևմտահայությանը հանել ֆեոդալական խավարի թագավորությունից։ 1860-ականներին ամիրաներն ու սարաֆները, այլևս անկարող լինելով նախկին մեթոդներով դիմագրավել բուրժուական մտավորականությանը, վերանայում էին իրենց տեսակետները, համաձայնության եզրեր փնտրում լիբերալների հետ։ Կուլտուրական հեղաբեկման աջ թևը թիկունք է դարձնում երբեմնի կուսակիցներին, փորձեր անում լեզու*

13 Վ. Ի. Լենին, *Երկեր, հատ. 19, էջ 365*։

գտնել երեկվա հակառակորդների՝ կղերա-ամիրայականների հետ, պայքար ծավալում բուրժուա-դեմոկրատական գաղափարախոսության դեմ։

Կային բուրժուական մտածողներ, որոնք վաղուց էին կատարել այդ շրջադարձը։ «Մասիսի» խմբագիր Կ. Յութուճյանը, բարեշրջումների կուսակրթական շարժման խնդիրներում համաձայնելով «Ուսումնական խորհրդի» անդամներին, տակավին 1854 թվականին էր դատապարտում ազգային-ազատագրական բնույթի հեղափոխական շարժումները, «հիմարություն»[14] անվանում հունական ապստամբությունը թուրքական բռնատիրության դեմ, մանուկ ազատությունը վտանգող[15] համարում Գարիբալդիին ու Մաձձինիին, համերաշխվում Վ. Էմմանուելի, Կավուրի հետ։ «Կարիպալտի բռնվեցավ, բայց անոր բռնվելով խնդիրը լուծված և վտանգն անցած չէ...»[16]։

Յութուճյանը դատապարտեց նաև արևմտահայ ազատամիտներին, խաչակրաց արշավանքի դուրս եկավ Փարիզում հրատարակվող «Արևելք» ու «Արևմուտք» պարբերականների խմբագիր Ստ. Ոսկանյանի դեմ, մերժեց ազգային-ազատագրական պայքարի նրա առաջադրած ծրագրերը։

1861 թ. քաղաքական ժողովը Ն. Վարժապետյանին, Սերվիչենին, Ստ. Ասլանյանին, Գր. Աղաթոնին, Գր. Օտյանին, Առ. Տատյանին հանձնարարեց մշակել տպագրական օրենքի նախագիծ, որով փորձ էր արվում բռնությամբ լռեցնել արմատական մտքեր քարոզող մտավորականներին։

1863 թ. Ազգային միացյալ ժողովի մի խումբ երեսփոխաններ հայ պարբերականների խմբագիրներին ստիպեցին ենթարկվել հանձնաժողովի հրապարակած կանոնադրությանը։ Միայն Հ. Սվաճյանը մերժեց հրավերը, պատասխանելով, թե «քաղաքական ժողովն իրավունք չունի ենիչերիի պես բռնաբար մեկը պատրիարքարան կանչելու»։ Ժողովը որոշեց Հ. Սվաճյանին պարտադրել, որ նա ետ վերցնի իր առաջարկությունը, այլապես Բ. Դռան միջնորդությամբ փակել կտան «Մեղուն»[17]։ Սվաճյանը կրկին չենթարկվեց և հակառակորդների սադրանքով «Մեղուն» ժամանակավորապես դադարեցվեց։

Ազգային սահմանադրության թլպատման նախօրյակին փաստորեն հակադիր բանակ կազմեցին Գր. Օտյանը, Գր. Աղաթոնը, Մ. Աղաթոնը, մանավանդ պալատում պաշտոն ստանձնած Սերվիչենը։ Սկզբում նրանք փորձեցին հաշտեցնել հասունացող դեմոկրատիային ու բուրժուականացող կղերա-ամիրայականներին, սակայն հաջողության չհասնելով՝ դուրս եկան ժողովրդական զանգվածների հեղափոխական տրամադրությունների դեմ։

Տասնհինգամյա հասակում Գր. Օտյանը Փարիզի բարիկադների վրա տեսավ ցլուտ մկաններով հեղափոխական բանվորներին։ Վերադարձին շատերին զարմացրեց ոչ միայն իր ճարտասանությամբ, խոսքի ուժով, այլև գործով։ Մ. Նալբանդյանը ծանոթ էր նրան և անվանում էր «Ազգային ժողովի ատենապետ հոյակապ Գր. էֆենդի»։ Հ. Սվաճյանն իր առաջին շրջանի գործունեությամբ, նույնիսկ ստացած կրթությամբ պարտական էր Օտյան գերդաստանին։ «Մեղուն» գտնվում էր Գր. Օտյանի ազդեցության տակ և դժվար էր զոկել խմբագրի ու

14 «Մասիս», 1854, № 113։

15 Նույն տեղում, 1862, 11 օգոստոսի, № 548։

16 Նույն տեղում, 1 սեպտեմբերի, № 551։

17 «Ժամանակ», 1863, № 191։

գլխավոր աշխատակցի հոդվածները, մինչև 1860 թ. գաղափարական լուրջ տարաձայնություն նկատել նրանց միջև[18]։

Սակայն Գր. Օտյանը առաջին շրջանում էլ ուներ չափավոր հայացքներ. նա առաջարկում էր, օրինակ, քվեարկության իրավունքից զրկել կարդալ չիմացող արևմտահայերին։

Պատահական չէր, որ 1863 թ. Գր. Օտյանը դեմ արտահայտվեց ապըստամբական շարժումներին ընդհանրապես և իր վերանորոգչական ձեռնարկումներն ուզում էր կատարել աստիճանական զարգացման ուղիով՝ «առանց վրդովելու տիրող գաղափարները, և առանց բռնի քայքայումների»[19]։

Գր. Օտյանից ավելի աջ էր պալատական բժիշկ Սերովբե Վիչենյանը, որը ասպարեզ իջավ 1840-ական թվականներին, մասնակցեց լուսավորական շարժմանը, դարձավ Սահմանադրության հեղինակներից, բայց միշտ չափավոր ու զգույշ, հեռու որևէ «ծայրահեղությունից»։ 1861 թ. իբրև Ջամուճյանի մերձավոր, նա հաճույքով խեղանդամում էր Ազգային սահմանադրությունը, պաշտպանում հայ վերնախավի շահերն՝ ընդդեմ արհեստավորության ու օրամշակների։

Սերվիչենի մտերիմների մեջ ուրույն տեղ էին բռնում Մկրտիչ և Գրիգոր Աղաթոնյանները։ Մկրտիչը «Բարեգործականի» նախագահն էր և Իտալիայում ստացած իր վաճառականական ու շերամաբուծական գիտելիքները շահարկեց Բրուսայում, ուր կիրառում էր մետաքսագործության «ամենավերջին կատարելագործությունները»։ Նա առաջիններից մեկն էր, որ Թուրքիայում ակցիոներական ընկերություններ կազմակերպեց, որոնք զբաղվում էին առևտրական գործարքներով, աշարի վարձակալությամբ և շահութաբեր այլ գործերով։ Գրիգոր Աղաթոնը ստեղծեց երկրագործական ընկերություն և կուսակիցների հետ միասին առաջարկում էր վանական կալվածքների հաշվին լուսավորել աղքատ գյուղացիներին։ Հետագայում նա հրաժարվեց գյուղացիների մասին ունեցած իր նախկին մտահոգությունից։

Արևմտահայ լիբերալների մեջ կային նաև Ն. Ռուսինյանի նման մտածողներ, հրապարակախոսներ ու գործիչներ, որոնք ավելի ձախ էին և չէին ցանկանում հակադրվել ժողովրդին։ Ռուսինյանն առաջինը մարտահրավեր նետեց կղերա-ամիրայականներին, իր ստեղծած «Տարեցույցով» պահանջեց ընդունել ֆրանսիական հեղափոխության տոմարը[20], փորձեց հակադրվել հայ եկեղեցուն։ Դրանով իսկ նա հերետիկոսի անուն վաստակեց, իսկ նրա գրքերը կղերականության ջանքերով հրո ճարակ դարձան։ Ռուսինյանը մինչև վերջ էլ մնաց վեղարավորների անզիջում հակառակորդ. նրա «...հավատքը Ֆրանսայի 1789 թ. էր։ Անոր սկզբունքները կուզեր ծավալել հայոց մեջ... ժողովրդին կհավտար, ինչպես հավատացած էին Տանթոն ու Պոտեն»[21]։

Ջափավոր ծրագրերի իրականացումը նա կապում էր ժողովրդի հետ և հայտարարում, թե «ժողովուրդ դուն ես տերը, քո հրամանին պիտի հնա-

---

18 Հ. Ասատուր, Դիմաստվերներ, Կ. Պոլիս, 1921, էջ 91։

19 Վ. Փափազյան, Պատմություն հայոց գրականության, Թիֆլիս, 1910, էջ 647։

20 Հ. Գաբրիելյան, Հայ փիլիսոփայական մտքի պատմություն, հատ. 3, Երևան, 1959, էջ 97—99։

21 «Գեղունի», 1902, էջ 44։

զանդին ամենքը»։ Ռուսինյանը ուզում էր ազատ, ինքնավար տեսնել Հայաստանը։

Ն. Ռուսինյանն, այնուամենայնիվ, չկարողացավ գնահատել ժողովրդի ծավալած շարժումը, իրականությունից կտրվեց և դարձավ իդեալիստ մտածող։

Այսպիսով, 1860-ական թվականներին արևմտահայ լիբերալ-բուրժուական հոսանքը հեռու էր կանգնած ժողովրդական շարժումներից, սոցիալական պայքարից։

## 3. ԱԶԳԱՅԻՆ-ՊԱՀՊԱՆՈՂԱԿԱՆ ՀՈՍԱՆՔ

1850—1860-ական թթ. Արևմտյան Հայաստանում ձևավորվեց գավառահայ առևտրա-արհեստագործական բուրժուազիան, որի ձայնատար դարձած գավառահայ մտավորականությունը իր լուսավորական աշխատանքով, բարձրացրած խնդիրներով ավելի առաջադիմական դիրքեր գրավեց, քան ազգային-լիբերալները։ Ամենակարևորը, նա մտահոգված էր գյուղաբնակչության ճակատագրով։

Մինչ այդ արևմտահայ հասարակական-քաղաքական շարժման մեջ, առավել ևս գրական ասպարեզում, գավառահայությունը դեռևս էական դեր չուներ։ Կ. Պոլիսն ու Զմյուռնիան, Վենետիկը, Վիեննան ու Փարիզն էին տալիս արևմըտահայ գրական ու քաղաքական մտքի նշանավոր ներկայացուցիչներ: Սակայն Արևմտյան Հայաստանի անունից խոսող այս մտավորականները մինչև դարակեսը դեռևս գավառ չէին մեկնում և տեղյակ չէին հայրենի բնաշխարհում ապրող հայ ազգաբնակչության կրած սոցիալ-քաղաքական տառապանքներին։

Անցյալ դարակեսից գավառահայ մտավորականներն արդեն գիտակցում էին, որ իրենք պետք է մտահոգվեն գավառի ճակատագրով, ստեղծեն սեփական դպրոց, մամուլ, գրականություն, հավաքեն ու գրի առնեն հայրենի բառն ու բանը, ավանդազրույցները, դյուցազնավեպերը, առակներն ու ասացվածքները։ Գավառահայ մտավորականությունն էր, որ Կ. Պոլսի ու գաղթաշխարհի հայ առաջավոր խավերին հպատակեցրեց Հայաստանին և գավառի ողբը, հարստահարությունների դեմ մղվող պայքարը դարձրեց ընդհանուր հայ ժողովրդի մտահոգության առարկա։

Արևմտյան Հայաստանում գործող գավառահայ այս մտավորականները, սակայն դեռևս, հասունացած չէին մշակելու այնպիսի ծրագրեր, որոնք զերծ լինեին պահպանողականությունից։ Նրանք չէին կարողանում գնահատել բուրժուական հարաբերությունների առավելությունները ֆեոդալականի հանդեպ։ Նրանք դեմ էին գործարանային արդյունաբերության առաջընթացին, քանի որ վերջինս քայքայում էր հիմնականում ձեռքի աշխատանքի վրա հիմնված էսնաֆների արհեստանոցները, շուկայից դուրս շպրտում գավառահայ առևտրականներին։ Գավառահայ մտավորականության հայացքը սկզբից ևեթ հառած էր դեպի անցյալը։ Նրանք ցանկանում էին ընդլայնել բարեփոխված եկեղեցու իրավունքները, վերականգնել «հայկական թագավորությունը»։

Հեռու մնալով հեղափոխական հայացքներից, նրանք չընկալեցին Մ. Նալբանդյանի ու հայ ազգային-դեմոկրատական մտավորականության երկնած

ծրագրերը, խուսափեցին ժողովրդի զանգվածային շարժումների քարոզից, արևմտահայերի զինված ինքնագործունեության գաղափարից։

Գավառահայ ազգային-պահպանողականները համախմբված էին «Արծվի Վասպուրական» և «Արծվիկ Տարոնո» պարբերականների շուրջը։ Հոսանքի գաղափարական առաջնորդը Մ. Խրիմյանն էր, իսկ նրա գաղափարակիցները՝ հիմնականում Ժառանգավորաց դպրոցի սաները։

«Արծվի Վասպուրական»-ում Մ. Խրիմյանը ջանում էր բարձրացնել լուսավորչական եկեղեցու հեղինակությունը, երբեմն փոփոխություններ առաջարկելով նրա ավանդական ծեսերի մեջ։ Սկզբնական շրջանում խմբագիրն ու նրա աշխատակիցները դեռևս գրաբարապաշտ էին։ Մ. Խրիմյանն առաջարկում էր հայագիտական բոլոր գրվածքները, գեղարվեստական ինքնուրույն ու թարգմանական երկերը շարադրել գրաբարով, իսկ ինչ վերաբերում էր աշխարհաբարին, ապա այն դնել այնպիսի շրջանակների մեջ, որ մոտենար «սուրբ գրոց» լեզվին[22],

Սահմանադրական պայքարը, շփումը կովկասահայ անվանի մտավորականների հետ, ազատագրական շարժումների բարձրացող ալիքը, Թուրքիայի քաղաքական կուրսի փոփոխությունը, քուրդ ցեղապետերի նոր վայրագությունները, Արևմտյան Հայաստանի գյուղացիության իրավիճակի ծանրությունը բեկում առաջացրին Մ. Խրիմյանի ու նրա զինակիցների հայացքների մեջ։ Վարագը աստիճանաբար դարձավ հայրենասիրական գաղափարների կազմավորման օջախ։ Այդ հոսանքին հարեցին Գ. Սրվանձտյանցը, Նաթանյան եղբայրները, Երեմիա և Արիստակես Տէկանցները, Գևորգ Շերենցը, Գ. Աղվանյանցը, նույնիսկ Պարսկաստանից Վարագ ժամանեց ու սրանց հետ կապվեց պատանի Հակոբ Մելիք Հակոբյանը (Րաֆֆին), որի բանաստեղծական անդրանիկ փորձերը տպագրվեցին «Արծվի Վասպուրական»-ում։

1869 թ. սեպտեմբերի 4-ին Կ. Պոլսի հայոց ընդհանուր ժողովը, հակառակ սուլթանի ու նրա մեծ վեզիրի կամքի, Խրիմյանին ընտրում է արևմտահայերի պատրիարք։ Նա այդ օրերին դեգերում էր Կարինի ու նրա գավառների դիվանատներում, ուր ջանում էր կարգավորել Մշո ս. Կարապետ վանքի գործերը, ընթացք տալ Տարոնի հողազրկված գյուղացիների բողոքներին, դիմակայել քուրդ ցեղապետերի պաշտպան կաշառակեր թուրք դատավորներին։

Խրիմյանն իր հետ մայրաքաղաք էր տանում ժողովրդի բողոքը, միաժամանակ և բարեկարգությունների հույսը։ Եվ իրոք, պատրիարքության առաջին իսկ ամիսներին, ստացված բողոքները նա քննության դրեց Ազգային ժողովում, կազմեց ընդարձակ տեղեկագրեր և ներկայացրեց սուլթանական կառավարությանը։

1873 թ. Խրիմյանը հրաժարվեց պատրիարքությունից և Կ. Պոլսից վերադարձավ Վան։ Սակայն նա միայնակ չէր վերադառնում։ Նրա հետ գալիս էին հազարավոր պանդուխտ վանեցիներ, որոնք Խրիմյանի խորհրդով գնել էին հրացաններ և գալիս էին հայրենի տուն, իրենց պատիվը պաշտպանելու ավազակախմբերից։

Մ. Խրիմյանի գլխավորած հոսանքը 1860-ական թթ. հասունացնում էր

22 «Արծվի Վասպուրական», 1855, № 1, էջ 12 և հետ.։

գործիչների մի սերունդ, որը հիմնականում կրթվել էր Վարագա ժառանգավորաց դպրոցում։ Այս մտավորականների մեջ աչքի ընկավ Գարեգին Սրվանձտյանցը։

Գ. Սրվանձտյանցը 1863—1865 թթ. խմբագրում է Մշո ս. Կարապետի վանքում հրատարակվող «Արծվիկ Տարոնո» պարբերականը։ Երկշաբաթաթերթը լույս է տեսնում 1863 թ. ապրիլի 1-ից մինչև 1865 թ. հունիսի 1-ը, ընդամենը 43 համար։ «Վարդ» և գրական այլ կեղծանուններով Սրվանձտյանցը հոդ-



Մշո սուրբ Կարապետի վանքը

վածներ էր տպագրում նաև «Մեղու», «Մանզումեի էֆքյար», «Արևելյան մամուլ», «Մեղու Հայաստանի» պարբերականներում[23], գավառահայության լեռնացող բողոքները հանձնում գաղթօջախների ուշադրությանը, բարձրացնում համազգային խնդիրներ։

23 Տե՛ս «Հայ նոր գրականության պատմություն», հատ. 3, Երևան, 1964, Ա. Ղանալանյանի հոդվածը, էջ 557 և հետ.։

Գ. Սրվանձտյանցը 1860-ական թվականներին գրաբարի ու աշխարհաբարի, կրոնի ու եկեղեցու հարցերում ազգային պահպանողական էր։ Նա փորձում էր հաշտեցնել երկու լեզուները և նրանց կողմնակից բանակները՝ վրճռական տեղ հատկացնելով լուսավորված եկեղեցականների գործունեությանը։ 1860-ականներին նա տարված էր հայ ժողովրդի նահապետական անցյալով, դեմ էր բուրժուական հարաբերությունների զարգացմանը, կապիտալիզմի ու եվրոպական ապրանքների ներթափանցմանն Արևմտյան Հայաստան և ազգային կենսաձևերի «եվրոպականացմանը»։ Սրվանձտյանցը հավատարմորեն ծառայում էր արհեստագործներին, գավառահայ վաճառականներին, ջանում անխախտ դարձնել նրանց տնտեսական գործարքները, վերջիններիս փրկել արդեն ծայր առած մրցակցությունից ու քայքայումից, դիմագրավել ծավալվող պանդխտությանը։



Գարեգին Սրվանձտյանց

«Շինական Հայոց կյանք ի Հայաստան» ակնարկում, «Մշեցիների բողոքում», ապա «Մանզումեի էֆքյարում» տպագրած հոդվածներում Սրրվանձտյանցն արտահայտում էր իր դժգոհությունը պետության հարկային քաղաքականությունից, բողոքում «քաղաքից ուղարկված խարաջ ժողովողի», նրան ուղեկցող զափթիեների, անկարողից բռնությամբ հարկ գանձելու անիրավության դեմ։ Հարկերի ծանրության պատճառով գյուղացին ընկնում է վաշխառուի ճանկը՝ գրավ դրնելով հողակտորը, տունը, նույնիսկ «կնոջն ու անչափահաս մանուկներին»։ Սրվանձտյանցը մատնանշում էր, որ պետության վարած հարկային քաղաքականության և եվրոպական էժանագին ապրանքների երկիր ներթափանցման, Թուրք աղաների ու քուրդ բեկերի հարստահարությունների պատճառով թշվառության գիրկն են նետվում հազարավոր հայ ընտանիքներ, երեխաները մատնվում են քաղցի, տղամարդիկ պանդխտության ցուպն են վերցնում և շատերն անվերադարձ հեռանում հայրենիքից։

Սրվանձտյանցի միակ հույսը լուսավորության, ազգի «ճարտասան գլուխներ պատրաստելու» վրա էր։ Հայ ժողովուրդը դարձել է անդամալույծ, ուստի հարկավոր են երկու կարգի բժիշկներ՝ «հոգվույն համար Սահակ, Մեսրովբ և խրախուսիչ Ղևոնդ... իսկ մարմնույն համար անձնվեր Վարդան, Վահան, Մուշեղ և սոնց նման հայրենասեր իշխանաց խումբ»։ Այս երկու դաս զորավոր

բժիշկներ երկու կողմ կեցած պետք է բռնեն անդամալույծին աջ և ձախ ձեռքը և այնպես քաջալերելով վեր հանեն հայրենյաց մահճեն»[24]։

Սրվանձտյանցը գործնական օգնություն ցույց տվեց Միսաք Թիմուրյանի 1865 թ. Ակնում կազմակերպած «Նահապետական ընկերությանը»[25]։ Թիմուրյանը նպատակադրվել էր Տարոնում մի գյուղ գնել, «երկրագործական արդար վաստակոց համար աշխատիլ և միջոց ձեռք բերել»։ Ընկերության ծրագիրը, որը հավանություն էր գտել Սրվանձտյանցի կողմից, պատգամում էր հավաքած դրամագլխով գաղթեցնել Ակնի «խեղճ մշակներին», «դրամն ու քաղաքականությունն անոնց աշխատության հետ խառնելով, բնական ընթացքով մեր աստի կենաց պիտույքը հոգալով և բարոյականությամբ էլ մեր հոգվույն պետքերը պատրաստելով»։ Տնտեսական այս ծրագիրը պիտի գործադրվեր եկեղեցու, ուսման և «ընկերահաշտ քաղաքականության» հետ միասին[26]։ Սա մի ռոմանտիկ ծրագիր էր, որը նպատակ ուներ դարմանել հայրենի վերքերը, պանդուխտներին վերադարձնել Հայաստան և ամենակարևորը՝ հայրենիքը պատնեշել Եվրոպայից Թուրքիա ներմուծվող գործարանային արտադրության ազդեցությունից։

Գ. Սրվանձտյանցը, 1860-ական թթ. ոգևորված Արևմուտքի ու Ռուսաստանի ազգային-ազատագրական շարժումներով, հայ երիտասարդությանը պատգամում էր ինքնագիտակցություն և ազատագրական պայքարի կոչով։

Նա, կանգ չառնելով նահատակության ու զոհաբերության առջև, միասնական պայքարի էր կոչում հայ ժողովրդի լուսավոր զավակներին՝ խավարի, թշվառության և գերության ճիրաններից ազատվելու համար[27]։

Զեյթունի հերոսամարտերից հետո, Պ. Նորատունկյանից ստացած նամակի ազդեցությամբ նա ուշագրավ մտքեր հայտնեց, որոնք, սակայն, չեն ենթադրում, թե Սրվանձտյանցն ու իր ուսուցիչը այս պատմաշրջանում կողմնակից էին սուլթանական միահեծանության դեմ զինված ապստամբության բարձրացմանը, ժողովրդական հեղափոխական շարժմանը։ Ջենքի հատ ու կենտ կոչերով նրանք դիմակայում էին քրդական դերեբեյների մնացորդներին, փոխաբերական իմաստով, խավարամոլությանն ու տգիտությանը։ Պատահական չէր, որ թողած Արևմուտքի Գարիբալդիին, Հյուսիսի Գերցենին, թողած վերջիններիս Հայաստանի հետ կապող Մ. Նալբանդյանին, նրանք Մ. Պեշիկթաշլյանի հետ միասին, լիբերալ Նորատունկյանի միջոցով հաղորդակից դարձան լեհական իշխան Չարտորիժսկու ծրագրերին։ Սակայն 1860-ականների Սրվանձտյանցի ազգային-պահպանողականությունը զուգորդվում էր լուսավորականության հետ։ Իրական կյանքում եղած հակասական ու իրարամերժ կողմերն իրենց արտահայտությունն էին գտնում ժողովրդի հետ կապված եկեղեցական-մտավորականի աշխարհայացքի մեջ։

Վարագա դպրոցը տվեց գավառահայ ազգային-պահպանողական այլ մտավորականներ, որոնց մեջ աչքի են ընկնում Երեմիա և Արիստակես Տեր-

---

24 «Արծվի Վասպուրական», 1861, № 2, էջ 45։

25 Աշ. Հովհաննիսյան, Նալբանդյանը և նրա ժամանակը, հատ. 1, էջ 563—564։

26 Նույն տեղում, էջ 563, տե՛ս նաև Գ. Սրվանձտյանց, Թորոս աղբար, Կ. Պոլիս, 1879, մասն Ա, էջ 260։

27 Աշ. Հովհաննիսյան, Նալբանդյանը և նրա ժամանակը, հատ. 1, էջ 562։

Սարգսենցները։ Երեմիա եպիսկոպոսը (1831—1885)[28] եղել է Բաղեշի, Խարբերդի, Վանի հոգևոր թեմերի առաջնորդ, 1862 թ.՝ Կ. Պոլսի պատրիարքական փոխանորդ։ Նա քաջատեղյակ էր ոչ միայն ժողովրդի իրավիճակին, այլև նրա մոտավոր անցյալի ու առօրյա պատմությանը։ Անձնական տպավորություններն ու ուսումնասիրությունները, արևմտահայ անվանի մտավորականների հետ ունեցած կապերը հնարավորություն տվեցին նրան գրի առնել XIX դարի 30—80-ական թվականների Արևմտյան Հայաստանում կատարված անցքերի պատմությունը։

1862 թ. Կ. Պոլսում Երեմիան Մ. Պեշիկթաշլյանի, Մ. Մամուրյանի և պոլսահայ այլ մտավորականների հետ ընդունեց Զեյթունի ներկայացուցիչներ Մնացական Սեմերճյանին, Գրիգոր Ապարդյան վարդապետին, Հակոբ քահանային, շաբաթներով հյուրընկալեց նրանց, հավաքույթների միջոցով մայրաքաղաքի հայերին ծանոթացրեց Զեյթունի դրությանը, կոչ արեց օգնության ձեռք մեկնել տուժածներին։ Նրա նախագահությամբ կազմակերպված ընկերությունը Մ. Մամուրյանի խմբագրությամբ նամակներ առաքեց Թիֆլիս, Վարագ, Գլակ, Աղթամար և հայաբնակ մյուս վայրերը, կոչ արեց դրամական օգնություն հասցնել Կիլիկիայի սովյալներին։

Երեմիա Տևկանցի համակրանքն ապստամբների կողմն էր, սակայն ապստամբությունից հետո նա մեծ հույսեր էր դնում եվրոպական վեհապետների միջամտության վրա, կապեր էր պահպանում Փարիզում գտնվող Կարապետ Շահնազարյանի հետ, նրան նամակներ էր առաքում, հորդորում Նապոլեոն III-ի միջոցով օգնել Զեյթունին։ Տևկանցը փորձեր արեց լեզու գտնել կաթոլիկների համայնապետ Անտոն Հասունյանի հետ, այցելեց նրան և հայցեց նրա միջամտությունը։ Նա գոհունակությամբ արձանագրում է «իր և յուրայինների» հաղթանակը, այսինքն՝ Նապոլեոն III-ի միջամտությունը, Զեյթունի իշխանների ազատումը, «արյունահեղության դադարումը», սակայն անեծքի ու բանադրանքի հեղեղ է թափում ամիրաների, հատկապես սուլթանին հլուհնազանդ պալատականների, այդ օրերին իրադարձությունների նկատմամբ անտարբեր հայ կղերականների գլխին։

Երեմիա Տևկանցը սերտ կապերի մեջ էր ոչ միայն Մ. Խրիմյանի, Գ. Սրվանձտյանցի, Մ. Մամուրյանի, Մ. Պեշիկթաշլյանի, այլև Կարապետ Փանոսյանի, Հ. Սվաճյանի հետ։ Ապստամբություններից ու արյունահեղություններից խուսափող Երեմիան անկեղծորեն մտահոգված էր հայ ժողովրդի քաղաքական ինքնուրույնություն ձեռք բերելու, երկրի տնտեսական բարգավաճման, պանդխտության դեմն առնելու, աշխարհական ու եկեղեցական ուսուցիչներ պատրաստելու խնդրով։ 1860-ական թվականներին նրա գաղափարական ազդեցության տակ էին ուսումնական եղբայրները՝ վարդապետ Արիստակեսը և աշակերտ Սեդրակը։ Հետագայում նրանցից ավագը կանգնում է պահպանողականության դիրքերում, իսկ կրտսերը լրացնում ազգային-դեմոկրատների շարքերը, երկնելով Մ. Նալբանդյանին, Խ. Աբովյանին նվիրված բանաստեղծությունների մի ամբողջական շարք և «Շահենն ի Սիպիր կամ գաղթական հայը» քաղաքական-գեղարվեստական վեպը։

28 ԳԱԹ, Խաչատուր Լևոնյանի արխիվ, գործ 10, էջ 469։

Բեռլինի վեհաժողովից հետո այս հոսանքի ներկայացուցիչների մի ըղձալի մասը, հուսախաբված Եվրոպայի միջամտությունից, ոգեշնչվում է արևմտահայերի ապստամբական շարժումների գաղափարով։

## 4. ԱԶԳԱՅԻՆ-ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՀՈՍԱՆՔ

*Ի հակադրություն կղերա-ամիրայական ու լիբերալ-բուրժուական հոսանքների, Կ. Պոլսում և Զմյուռնիայում ասպարեզ իջավ հայրենասեր գրողների ու հրապարակախոսների մի երիտասարդ սերունդ, որը դիմագրավում էր սուլթանական բռնատիրությանը, ջանում նվաճել սահմանադրություն, ազատություն և անկախություն։ Հայրենասերների այս սերունդը իր շարքերից առաջ քաշեց մեծարանքի արժանի գործիչներ, մշակեց ազգային-ազատագրական պայքարի գաղափարախոսությունը։*

*Հ. Սվաճյան, Գր. Չիլինկիրյան, Ա. Հայկունի, Կ. Փանոսյան, Ս. Ոսկանյան, Մ. Այվատյան, Ս. Թագվորյան՝ ահա գրողների, հրապարակախոսների ու քաղաքական գործիչների անդրանիկ այն սերունդը, որն արևմտահայ իրականության մեջ ձևավորեց ու զարգացրեց ազգային-ազատագրական պայքարի գաղափարը։*

*Պայքարի վճռականությամբ ու կրքոտությամբ աչքի ընկնող, ֆեոդալական հին հարաբերությունների ու նրանց հավերժացմանը ձգտող գաղափարաբանության քննադատությամբ հանդես եկած, կյանքի բոլոր ձևերի եվրոպականացման, աշխարհաբար ժողովրդական լեզվի, ազգային գրականության ստեղծման մունետիկների այդ համաստեղության համար բնութագրական են Ֆ. Էնգելսի խոսքերը XVIII դարի ֆրանսիական մատերիալիստ-էնցիկլոպեդիստների մասին. «Այն մեծ մարդիկ, որոնք Ֆրանսիայում լուսավորում էին գլուխները՝ մոտեցող հեղափոխության համար, իրենք հանդես էին գալիս ծայրահեղ հեղափոխականորեն։ Ոչ մի արտաքին հեղինակություն նրանք չէին ճանաչում։ Կրոնը, բնության ըմբռնումը, հասարակությունը, պետական կարգը, ամեն ինչ ամենաանխնա քննադատության էր ենթարկվում. ամեն ինչ պետք է բանականության դատաստանի առաջ կանգներ և կամ պիտի արդարացներ իր գոյությունը, կամ թե անհետանար։ Մտածող բանականությունը դարձավ գոյություն ունեցող ամեն բանի միակ չափանիշը»[29]։*

*Գործունեության սկզբում, սակայն, Հ. Սվաճյանը, Մ. Մամուրյանը «Բարեգործական» ընկերության ձախ թևին պատկանող մյուս մտավորականները պայքարի ձևերով ու մեթոդներով քիչ էին տարբերվում Գր. Օտյանից, Ն. Ռուսինյանից։ Բարեշրջումները գերադասելով կյանքի հեղաբեկման արմատական մեթոդներից, 1860-ական թվականների դեմոկրատ գործիչները 50-ականների գաղափարակիցներից տարբերվում էին միայն նրանով, որ իրենց մտահոգության առարկան դարձրին հասարակ ժողովրդի վիճակի բարելավումը[30]։*

*1860-ական թվականների սկզբներին արևմտահայ առաջադեմ մտավո-*

---

29 Ֆ. Էնգելս, *Անտի-Դյուրինգ, Երևան, 1952, էջ 19։*

30 Հայկ Ղազարյան, *Մաթեոս Մամուրյան, Երևան, 1959, էջ 84—85։*

րականության ձախ թևը շրջադարձ է կատարում. ավարտվում էր դեմոկրատական հոսանքի ձևավորումը, իր շարքերում համախմբելով Մ. Նալբանդյանի գաղափարակիցներին ու զինակիցներին՝ Հ. Սվաճյանին և Ս. Թագվորյանին։ Դեմոկրատական հոսանքի օրգանները դարձան «Մեղու», «Ծաղիկ», «Մյունատի», «Միություն» պարբերականները։ Շրջադարձի գործում էական դեր խաղացին սահմանադրական պայքարը և գավառահայության քաղաքական շարժումները։ Զեյթունի ու Վասպուրականի հերոսամարտերը արևմտահայ մտավորականներին գործնականորեն բերեցին այն եզրահանգմանը, որ հայ ժողովրդի ազատագրման միակ միջոցը զինված պայքարն է։ Սրանց քաղաքական հասունացման համար նշանակություն ունեցան իտալական ազգային-ազատագրական, ռուսական գյուղացիական շարժումների ուժեղացումը և այդ շարժումների գաղափարախոսության ներթափանցումը Թուրքիա։ Համառուսական հեղափոխական դեմոկրատիայի ականավոր գործիչներից մեկի՝ Մ. Նալբանդյանի որոշակի ազդեցությունը ակնառու է արևմտահայ դեմոկրատական հասարակական-քաղաքական մտքի վրա։

Այսպիսով, քաղաքային արհեստավորների, պանդուխտների ու աշխատավոր գյուղացիության շահերի պաշտպան արևմտահայ դեմոկրատական հոսանքը իր ձևավորման ավարտին հասավ 60-ական թվականների սկզբին։ Սակայն բացառություն էր Փարիզում գործող Ստեփան Ոսկանյանը (1825—1901)[31]։ Ոսկանյանը դեռևս 1850-ական թվականներին յուրացրեց բուրժուա-դեմոկրատական աշխարհայացք, դարձավ մարտնչող հրապարակախոս՝ ընդդեմ կղերա-ֆեոդալական կաստայականության ու միջնադարյան խավարամտության, հանուն հայ ժողովրդի մտավոր ու քաղաքական ազատագրման։

Ստ. Ոսկանյանը ծնվել է Զմյուռնիայում։ 1846 թվականին գնալով Փարիզ, նա պաշտոնավարում է իբրև ուսուցիչ և հաճախում Սորբոնի համալսարանը։

Փարիզում 1855 թվականին Ոսկանյանը սկսում է հրատարակել «Արևելք» կիսամսյա հանդեսը, սկզբից ևեթ իր առաջ խնդիր դնելով «գրով և խոսքով» բացահայտել կղերի և ամիրաների ազգադավ գործերը։ Արևմտահայ լուսավորության մարտական օրգանն անմիջապես լայն արձագանք է գտնում հայ իրականության մեջ։ Սակայն, հազիվ մեկ տարին բոլորած, «Արևելքը» փակվեց։

1859 թ. նա հիմնադրում է «Արևմուտքը»։ Խմբագրի անհանդիստ բնավորությունը, հակակղերական պրոպագանդան, ճնշված ժողովուրդների իրավունքների պաշտպանությունը, ազգային-ազատագրական շարժումների դրվատումը «Արևմուտքի» դեմ են հանում ռեակցիոն ուժերին։ 1859 թ. նոյեմբերի 1-ին Ոսկանյանը հրաժարվում է «Արևմուտքի» խմբագրությունից։

1859 թ. վերջերին Ոսկանյանը Իտալիայում էր։ Հրապարակախոսը սկզբում համակրում էր Իտալիայի ազատարարներին ընդհանրապես, բայց շուտով վերադիրքավորվում է և ապավինում չափավոր հանրապետականներին։

---

31 Տե՛ս «Նալբանդյանը և նրա ժամանակը», հատ. 1, էջ 300—321, տե՛ս նաև «Հայ նոր գրականության պատմություն», հատ. 2, էջ 96—110։

*1864 թ. վերահրատարակված «Արևմուտքի» խմբագիրը չափավորեց իր պահանջները, դարձավ լիբերալ, իսկ երկու տարի անց մերվեց «Արշալույս Արարատյանի» ուղղությանը, սկսեց մարտնչել արևմտահայ ազգային-դեմոկրատների դեմ։ Նրա հայացքների չափավորությունն ավելի դրսևորվեց 1867 թ. սկսած Զմյուռնիայում հրատարակած* «La Reforme» *պարբերականի էջերում։*



**Ստեփան Ոսկանյան**

*Ոսկանյանը, սակայն, հայ հասարակական-քաղաքական կյանքում խոշոր ավանդ թողեց իր 1850-ական թվականների մարտնչող հրապարակախոսությամբ։ Այս տարիներին նրա հրապարակախոսության առանցքը հայ ժողովրդի լուսավորությունն էր, ազգային-ազատագրական պայքարի գաղափարախոսությունը։*

*1848 թ. ֆրանսիական հեղափոխության ժամանակ Ոսկանյանը մասնակցեց հեղափոխական ելույթներին. «փետրվարի ազատության առաջին որոտումը մեր վրայեն արևելյան գերության մըշուշը փարատեց...։ Այո՛, Լուի Ֆիլիպին դեմ ապստամբողներու հետ էինք, այո՛, ըրինք ազատության համար ինչ որ ամեն մարդու պարտքն է ընել, և զեն ի ձեռին Թույլըրի մտնելու պատիվը ունեցանք...»*[32]*։*

*Փետրվարյան հեղափոխությունից հետո, Լուի Ֆիլիպի երեկվա տապալողների ձախ թևը հոնիսին, զենքի ուժով, ջանում էր բուրժուազիայից խլել իշխանությունը։ Հունիսյան հեղափոխությունը պրոլետարական էր և Ոսկանյանը չմասնակցեց դրան, այն որակեց իբրև «մամնուկ ազատությունը վտանգողի»։ Նա չհասկացավ պրոլետարիատի մղած դասակարգային պայքարի պատմական իմաստը, բացասաբար տրամադրվեց ուտոպիստ սոցիալիստների ուսմունքների նկատմամբ։ «Կանտի աշակերտը» չընդունեց «Կապեհին դրությունը»*[33]*։ Բայց փանդավառ արևելցին պահպանողականների բանակում չէր և ոչ էլ հաշտվողական լիբերալիզմի պաշտպան։ Ոսկանյանն իր պայքարի առաջին էտապում բուրժուական դեմոկրատ էր, ֆեոդալական կարգերի ու գաղափարախոսության անհաշտ թշնամի։ Այս էլ բնորոշում է նրա տեղն ու դերը հայ հասարակական մտքի պատմության մեջ։*

32 *«Արևմուտք», 1859, № 17, էջ 131—132։*

33 *Նույն տեղում, էջ 130։*

*Ոսկանյանի համակրանքը Եվրոպայի ազատագրական շարժումների կողմն էր։ Նա հիացմունքով էր խոսում ֆրանսիական 1789 թ. հեղափոխության, Իտալիայի ազգային շարժումների, հունգարական հեղափոխության, հունական ապստամբության և ցարական Ռուսաստանի ու սուլթանական Թուրքիայի դեմ ընդվզելու փորձերի մասին։*

*Եվրոպական ու ասիական ժողովուրդների ազատագրական պայքարի դրվատանքը ինքնանպատակ չէր։ Դրանով իսկ նա հայրենասիրական կրակ էր վառում խավարապատ Թուրքիայում ապրող հայերի սրտում, ջանում նրանց ոտքի կանգնեցնել։ Սակայն նախքան ապստամբելը, հայերին պետք էր լուսավորել, հանել կղերա-ամիրայականների ազդեցությունից։ «Արևելքի» ու «Արևմուտքի» խմբագիրը հետևողականորեն պաշտպանում էր ժողովրդի լուսավորության գաղափարը։ Նա միաժամանակ չէր վարանում իր ժողովրդին զենքի, նույնիսկ հեղափոխական պայքարի կոչելու։*

*«Ժամանակը եկավ որ ռամիկն ալ զգա, որ իր ռամկությենովը մեծ բաներ կրնա ընել և ուրիշ ժողովուրդներն վար չմնար թե ազգային և թե օտարազգի բռնավորներու դեմ զինելու ատեն»*[34]*։ Ծառայելով Իտալիայի ազատագրման գործին, Ոսկանյանը հույս ուներ, որ մի օր, եթե իր ժողովուրդը ոտքի կանգնի, նրան փոխադարձ օգնության կհասնեն իտալացիները. «զԻդալիա կսիրեինք, միշտ սիրեր ենք... Այս սերը և ազատության ավյունը զմեզ թշվառության մեջ գլորեցին... Հայաստանի ավերայրաց վիճակը իր զավակներու վրա պարտք կդնե թշվառ ժողովուրդներու կարեկցիլ... Ով գիտե գուցե օր մը Իդալիայի զավակ մը մեր գերության և թշվառության դեմ բողոքե, ինչպես մենք իրեն համար բողոքելու զորությունը ունեցանք»*[35]*։*

*Ստ. Ոսկանյանը մասնակցել է գրական լուսավորական շարժմանը, արձագանքել լեզվաշինության և հայ նոր գրականության համար մղված գաղափարական պայքարին։ Աշխարհաբար լեզվի խնդիրը նա կապում էր հայ մշակույթի զարգացման, առաջընթաց շարժման հետ, պաշտպանում ու զարգացնում ժողովրդական լեզվի աբովյանական սկզբունքները*[36]*։*

*Ժողովրդի ազգային զարթոնքի, քաղաքական ինքնագիտակցության բարձրացման գործում Ոսկանյանը էական տեղ էր հատկացնում գեղարվեստական գրականությանը. այդ նկատառումով էլ ամբողջ սրությամբ դնում էր ազգային նոր գրականության ստեղծման պահանջը։*

*Ոսկանյանի գրականագիտական առաջավոր հայացքները ընթերցողին ներկայացվեցին 1859 թ., երբ հայ մամուլի էջերում երևաց նրա ընդարձակ հոդվածը Խ. Աբովյանի «Վերք Հայաստանի» վեպի մասին*[37]*։ «Արևմուտքը» բարձր էր գնահատում վեպի գաղափարական կողմը, հատկապես այն, որ Աբովյանը գրականության մեջ պատկերեց հայ գեղջուկին, ցույց տվեց նրա կենցաղն ու կենսահայեցողությունը, նրա ազատատենչ ոգին։ «Ժողովուրդին սիրտը՝ ահա գրագիտության աղբյուրը, իր անցյալը, ավանդությունները՝ ահա գրելու նյութերը, ազգ և մարդկություն՝ ահա նպատակը, ուր ճշմարիտ բա-*

---

34 *«Արևմուտք», 1859, № 7, էջ 55։*

35 *Նույն տեղում, № 17, էջ 132։*

36 *Նույն տեղում, № 10, էջ 74—75։*

37 *Նույն տեղում, № 7, էջ 40—42։*

նասերը կաշխատի ուղղիլ և իր հետ տանիլ բազմությունը, որու անդամ է»։

Անձամբ ծանոթ լինելով Ոսկանյանի հետ, Մ. Նալբանդյանը որակել է նրան որպես «մեծ հայ», «քանքարավոր», «ազատախոհ ուսումնական»։

Իր գործունեությունն ավելի ուշ ծավալեց Մատթեոս Մամուրյանը (1830—1901), սակայն գրչի բեղունությամբ, լայն ընդգրկումներով, շոշափած խնդիրների բազմազանությամբ, նրանց լուծման մասին առաջադրած մեթոդներով նա խոր հետք ակոսեց հայ հասարակական մտքի պատմության մեջ։

Արգասավոր գրչի տեր մտածողի աշխարհայացքը բարդ էր ու հակասական։ 1860—70-ական թվականներին, հիմնականում կանգնած լինելով ազգային-դեմոկրատիզմի դիրքերում, նա մի կողմից հակված էր դեպի հեղափոխական դեմոկրատիզմը, մյուս կողմից տուրք էր տալիս լիբերալիզմին ու ազգային-պահպանողականությանը։

1860-ական թվականներին Մամուրյանն իր հոդվածները տպագրում էր «Մասիս», «Մեղու», «Ծաղիկ», «Միություն», «Կռունկ հայոց աշխարհին» պարբերականներում, որոնք հետագայում հավաքեց, ամբողջացրեց ու հրատարակեց «Անկլիական նամականի կամ հայու մը ճակատագիրը» և «Հայկական նամականի» հրապարակախոսական երկերում։

Վերոհիշյալ երկերում հրապարակախոսը քննադատում էր ֆեոդալական արտադրահարաբերությունները, իշխանության միապետական ձևն ու դրա հարատևման կողմնակիցներին։

Նա խիզախությամբ քննադատում էր սուլթանական միահեծան կարգերը։

Հրապարակախոսի առաջին շրջանի գործերը պարունակում են հայ ժողովրդի ազգային ու սոցիալական ճնշման մասին արտահայտած սուր մտքեր, բացատրում դրանց ահավոր հետևանքները։

Մամուրյանը դեմ էր գաղթականությանը, պանդխտությանը և, դատապարտելով այդ երևույթները, հայերին հանձնարարում էր տնտեսական զարգացման, մեքենայական արդյունաբերության յուրացման ուղին։ «Անկլիական նամականիի» հերոսների՝ Ներսեսի ու Շուշանի օրինակով նա հայ մտավորականությանը, դրամատերերին, վաճառականներին, արդյունաբերողներին, օտար քաղաքներում շահի դիտավորությամբ բնակություն հաստատած հայերին պատգամում էր վերադառնալ հայրենի բնաշխարհը, ծաղկեցնել երկիրը, այնպես, որ «... մետաղները, զանազան արմտիք, ալրանք, ուսմունք ու լույս սփռեն, պետք է որ երկաթը, շոգին, էլեկտրականությունն կենդանություն, շարժում տան այս անշունչ ու փշալից բնության»։

Ուշագրավ են Մամուրյանի մտորումներն այն մասին, թե Հայաստանի ու Թուրքիայի տնտեսական զարգացման աշխատանքներին սիրով մասնակից կըդառնան ոչ միայն հայերը, այլև կողք-կողքի ապրող քրդերը, թուրքերը, ասորիները, թաթարները։ Համատեղ և օգտակար աշխատանքի մեջ կկոփվեր բարեկամությունը, կվերանար դրսից սողոսկած ազգային թշնամանքը։

Հայ ժողովրդի ազատագրության հարցում Մամուրյանն առաջին էտապում մերժում էր օտար միջամտությունները և հիմնական գործոն էր համարում ժողովրդական ապստամբական շարժումները։ «Հուսալ, որ օտար ազգ մը Հիսուսի ըրած հրաշք պիտի գործե... ցնորք է։ Սպասել, որ արտաքին փրկիչներ գան և հայ ժողովրդյան սև պատանքը քակեն՝ հիմարություն է։ Հեք և

մտրուկ ժողովրդյան մ՚առաջին և միակ ազատարարն ինքն է, իր աշխատությունն է, իր ներքին ուժն է, իր լույսն, միությունն ու հաստատ կամքն է»[38]։

Մամուրյանն արձագանքել էր առաջին Ինտերնացիոնալի և Փարիզի կոմունայի գործունեությանը։ Նա 1871 թ. ապրիլ ամսից սկսած տպագրում էր ինքնուրույն ու թարգմանական հոդվածներ՝ նվիրված կոմունարների սխրանքներին և բացատրում կոմունա բառի իմաստը[39], իրավամբ մատնանշում, թե Փարիզի կոմունան սկզբունքորեն տարբերվում է մինչ այդ եղած կոմունաներից, իսկ հասարակարգային իմաստով նոր որակ է մարդկության պատմության մեջ։ Մամուրյանի կարծիքով այն ֆրանսիական ուտոպիստ-սոցիալիստների երազանքների իրականացումն էր՝ նոր բովանդակությամբ։



Մատթեոս Մամուրյան

Եվրոպայից հեռու, բանվոր դասակարգի քաղաքական պայքարի հետ քիչ հույսեր կապող, Զմյուռնիայում գործող Մ. Մամուրյանը ճեղքում էր բուրժուական սահմանափակության շրջանակները, հասկանում ու դրվատում Փարիզի ազատարարների հերոսությունը, դատապարտում «արյունախում» Թիերին, որը «...Բարիզն առավ այլ ի՞նչպես, մեկ հոյակապ մասն ավերակ, մեկ մասը ճնշված ատելության և ապագա վրեժխնդրության կրյոք լի, ուրիշ մեծագույն մաս մըն ալ այն սկեպտիկյան անտարբերությամբ՝ որ ամեն բռնության գլուխ ծրելու կազմ ու պատրաստ կերևի»։ Կոմունայի մասին դրական կարծիքից զատ, իրար հակասող մտքեր հայտնելով հանդերձ, Մամուրյանը միաժամանակ գիտեր, որ Առաջին Ինտերնացիոնալի Հաագայի երկրորդ կոնգրեսը խոսք էր ասել Փարիզի հերոսամարտերի մասին, իսկ «Բանվորների միջազգային եղբայրության» հիմնադիրն ու գլխավորը Կարլ Մարքսն էր։

1860-ական թվականներին հատկապես «Արևելյան մամուլը» հրատարակելու շրջանում, խմբագիրն անդրադառնում էր XIX դարի երկրորդ կեսի ազգային-ազատագրական շարժումներին, նրանց ղեկավարների գործունեությանը, տպագրում Վաշինգտոնի, Գարիբալդիի, Մաձձինիի ընդարձակ կեն-

38 «Արևելյան մամուլ», 1876, էջ 5։

39 Տե՛ս «Արևելյան մամուլ», 1871, № 4, էջ 171—174, № 5, էջ 227, 232, № 6, 283—285, 1872, էջ 414։

սագրությունները, հայ գործիչների ուշադրությունը սևեռում սրանց գործելակերպի, ունեցած ծրագրերի վրա։

Մամուրյանն արևմտահայերին հուզող բազմաթիվ խնդիրների լուծման հարցում պաշտպանում էր Մ. Նալբանդյանի տեսակետները, որոնց հեղինակի հետ ծանոթ էր «Բարեգործականի» շրջանակներից։ Սակայն նրանց կապերն ավելի գործարար հողի վրա դրվեցին Նալբանդյանի Լոնդոն մեկնելուց և ռուս պրոպագանդիստների հետ հաղորդակցվելուց հետո։

Նալբանդյանի մահից հետո, դիմագրավելով պահպանողական բանակին, Մամուրյանը պահանջում էր գրի առնել նրա կենսագրությունը, վեր հանել նրա կյանքի ամենավառ էջերը, այն դարձնել հայ երիտասարդությանը դաստիարակող գիրք, «ուղղիչ մատյան»։

Եթե սոցիալ-դասակարգային պայքարի խնդիրներում Մ. Մամուրյանը չկարողացավ հասնել Մ. Նալբանդյանի բարձրակետին, հստակորեն չպատկերացրեց ագրարային հարցի լուծման ռուս հեղափոխական-դեմոկրատների ծրագիրը, ապա մշակութային հարցերում՝ լեզվապայքարում, գրականության և էսթետիկայի, կրոնի ու բարոյականության, կանանց հարցի մասին հայտնած կարծիքներով անգերազանցելի դեր կատարեց արևմտահայ հասարակական կյանքում։

Արևմտահայ առաջադեմ 60-ականների ծավալած դեմոկրատական շարժման մեջ ուրույն տեղ գրավեց Զմյուռնիայի «Ծաղիկ» տասնօրյա հանդեսի խմբագիր Գրիգոր Չիլինկիրյանը (1833—1923)։ Հյուգոն, Գերցենը և Մ. Նալբանդյանը դարձան նրա գաղափարական ուսուցիչները։ Նա նամակափոխանակություն ունեցավ Վ. Հյուգոյի հետ, 1861 թ. ծանոթացավ Մ. Նալբանդյանին, պրոպագանդեց Ա. Գերցենի գաղափարները։

Գր. Չիլինկիրյանը 1861—1867 թթ. սկզբում միայնակ, ապա Արմենակ Հայկունու, Մ. Մամուրյանի փոխխմբագրությամբ Զմյուռնիայում ու Կ. Պոլսում հրատարակում էր «Մեղվի» գաղափարակից «Ծաղիկ» պարբերականը, որտեղ և ծավալեց իր գրական ու հրապարակախոսական գործունեությունը։

1861 թ. սկսած «Ծաղիկը» մշակում էր հայ ժողովրդի լուսավորության, ազգային շարժման, օտար լծի թոթափման, ինքնուրույնություն նվաճելու բազմաթիվ ծրագրեր։ Օգտվելով այն հանգամանքից, որ Զմյուռնիայում, Պոլսի համեմատությամբ, ռեակցիոն ուժերը նվազ զորեղ էին, Չիլինկիրյանն ու մայրաքաղաքից այստեղ ապաստանած Արմենակ Հայկունին բացահայտում էին սուլթանների վարած հայահալած քաղաքականության էությունը, խարազանում կղերա-ամիրայականներին ու լիբերալներին և ժողովրդական զանգվածներին զինված ապստամբության կոչեր նետում։

Չիլինկիրյանը սոցիալական կնճռոտ խնդրի լուծման երկու եղանակ էր տեսնում։ Առաջինն՝ արմատական էր, հեղափոխական, երկրորդը՝ մասնավոր, բարեշրջական։ Դրանցից նա նախընտրում էր արմատականը. «... մեր նպատակն էր հայուն ապագա աղքատության դեմ հանրական դարմանը նշանակել և անկե անցնիլ մասնավոր դարմանին, որ ներկային կվերաբերի»[40]։ Բազմաթիվ գրվածքներում նա անդրադառնում էր բուրժուական հասարակարգի, ար-

40 «Ծաղիկ», 1866, 128։

տագրության ու խաշխման եղանակների քննադատությունը, հրապարակում սոցիալական խնդրի լուծման իր խոհերը։

«Մեղկի» խմբագիրը կշտամբում էր համաքաղաքացի Ստ. Ոսկանյանին «շառաշող ծեռքը ծեռնոց հագցնելու համար», սակայն 1870-ականներին ինքն էլ կտրվում էր ժամանակից, կորցնում կենդանի իրականության զգացումը, մոռանում գավառի վիշտը և արժանանում Ա. Արփիարյանի իրավացի քննադատությանը[41]։



Գրիգոր Չիլինկիրյան

Ժամանակի արևմտահայ մտավորականները անվերապահորեն Հ. Սրվանձյանի կողքին էին դնում Կարապետ Փանոսյանի, Մատթեոս Այվատյանի անունները, «Մեղվի» կողքին՝ «Մյունատի էրճիաս» (Շեփոր առավոտյան) պարբերականը։ Կարապետ Փանոսյանը և Մատթեոս Այվատյանը գրում էին թուրքերենով, ընթերցանության նյութ տալիս տաճկախոս հայերին, մասնակցում Կ. Պոլսում ծավալված դեմոկրատական շարժմանը, զինվորագրվում Նալբանդյանական հոսանքին, պայքարի սլաքներն ուղղելով ինչպես սուլթանական բռնատիրության, այնպես էլ հայ կղերա-ամիրայականների դեմ։ Նրանց ժառանգությունից քիչ բան է հասել մեզ, եղածն էլ հայատառ տաճկերեն լինելով, հատուկ ուսումնասիրության առարկա չի դարձել դեռևս։

1859 թ. Կ. Պոլսում Կ. Փանոսյանը հիմնադրեց «Մյունատի էրճիաս» հայատառ տաճկերենով լույս տեսնող նախ երկօրյա, ապա շաբաթաթերթը, որը սկզբից ևեթ կանգնեց «Մեղվի» դիրքերում, անհաշտ պայքարի մղեց մի կողմից հայ լուսավորչական ռեակցիայի կենտրոն «Երևակի», նրան հովանավորող ամիրաների ու պատրիարքի, մյուս կողմից Հռոմի կղերապետությանը հարած «Մեճմուայի», ամերիկյան միսիոներության բերան «Ավետաբերի» դեմ։ Հ. Պարոնյանը Կ. Փանոսյանի այս շրջանի գործունեության մասին գրում է. «Ժողովուրդն այս կեսարացիին ընթացքին հավանելով՝ կը քաջալերեր զայն...»[42]։ Աղքատության մեջ ապրող, աղքատների շահերը պաշտպանող Փանոսյանը սարսափ էր տարածել հայ վերնախավի վրա և բացերեց

41 «Արևելք», 1884, № 170։

42 Հ. Պարոնյան, Երկերի լիակատար ժողովածու, հատ. 3, էջ 79։

հայտարարում էր՝ «Հայեր երեկ հազար տարեկան ճշմարտություն մը կորսվեցավ պատրիարքարանին մեջ»։

«Մյունատի էրճիասն» ինչքան սիրելի էր ժողովրդական զանգվածներին, այնքան անհաճո՝ կղերա-ամիրայականներին։ Այդ էր պատճառը, որ պարբերականը հաճախ էր խափանվում, Կ. Փանոսյանը հանդես էր գալիս նաև գրքույկներով, թռուցիկներով, որոնք գաղտնաբար տարածվում էին մայրաքաղաքում, երբեմն էլ հասցվում Զմյուռնիա։

1860 թ. Կ. Փանոսյանը հրատարակել է «Սեֆիր պիր միլլեթ» (Թշվառ ազգություն), ապա «Իսլահաթ Մուհիմմե» (Կարևոր բարեկարգություն) գրքույկները։ Վերջինս ճանաչվել է իբրև հակակրոնական պրոպագանդա և բանադրանքի է ենթարկվել։ Ն. Վարժապետյանը գրեց Կ. Փանոսյանի ու Ա. Հայկունու դեմ ուղղված «Քրիստոսի սուրբ եկեղեցին և անոր հակառակորդները» գրքույկը։ Վրդովված Փանոսյանը հանդես եկավ նոր գրքույկներով, հրապարակախոսական մարտական հոդվածներով, իսկ 1867 թ. ստանձնելով ս. Փրկչի հիվանդանոցի հոգաբարձուի պաշտոնը, փորձեց բարեփոխություններ մտցնել նրա կառավարման ձևի մեջ, սակայն հաջողության չհասավ։ 1866 թ. նա հիմնում է «Մանզումեի էֆքյար» (Մտածումների շարք) պարբերականը։

Կ. Փանոսյանն առաջին շրջանում մարտնչող հրապարակախոս էր, խիզախ գործիչ, Հ. Սվաճյանի զինակիցը։ 1860-ականների առաջին կեսին նա պաշտպանում էր Մ. Նալբանդյանի ծրագիրը, հայ ժողովրդին կոչում ազգային-ազատագրական պայքարի, գործնականում մասնակցում սահմանադրական ժողովրդական շարժման ղեկավարմանը։

1862 թ. օգոստոսի 1-ի սահմանադրական ցույցի ժամանակ Կ. Փանոսյանը ցուցարարների առաջին շարքերումն էր. հրատարակում ու գաղտնի տարածում էր թռուցիկներ, որոնք զենքի էին կոչում պոլսահայ արհեստավորության ու պանդուխտներին։ Երբ Կ. Պոլիս հասավ Զեյթունի ապստամբության լուրը, «Մյունատի» լրագրի երեք համարներում շարունակաբար Կ. Փանոսյանը նկարագրում էր Տավրոսի արյունալի անցքերը, հայրենասիրության կոչ անում, «փառավոնական բարբարոսություն» անվանում թուրքական զորքի արարքը, պահանջում պաշտոնանկ անել Ազիզ փաշային, պատժել ջարդարարներին։ Օգոստոսի 20-ին փակվեց «Մյունատին», նրա հետ մեկտեղ՝ «Մեղուն», իսկ Կ. Փանոսյանը կալանավորվեց։ Կառավարությունը, սեպտեմբերի 11-ին դրամական տուգանք վերցնելով, ազատ արձակեց Կ. Փանոսյանին, իսկ «Մյունատի» պարբերականը մշտապես փակվեց։

Կ. Փանոսյանը շարունակեց գրել հրապարակախոսական գրքույկներ, շրջել գավառները։ Նա եղավ Նիկոմիդիայում, Ազգային ժողովին ներկայացրեց ժողովրդի վիճակը վեր հանող մի ընդարձակ զեկուցագիր, պահանջեց այն առաքել Բ. Դուռ։ Պետությունից ու նրա կամակատարը դարձած հայ էֆենդիներից հուսակտուր, Փանոսյանը հանգանակություն կազմակերպեց, երկու օրում 5000 ղուրուշ դրամ հավաքեց, գնաց Պարտիզակի գավառ և անձամբ հանձնեց «տառապյալներին»[43]։ Սակայն 1870-ական թվականներին նա հաշտվողական դիրք գրավեց լիբերալների հանդեպ։

---

43 Թեոդիկ, Ամենուն տարեցույց, 1924, էջ 205։

Աննահանջ, գաղափարական նույն բարձրության վրա մնաց Մատթեոս Այվազյանը։ Նա Կեսարիայից Կ. Պոլիս գալով, կրթություն ստացավ Սամաթիայի Սահակյան վարժարանում, դարակեսին աշխատակցեց «Մասիս», «Մյունատի էրմիաս» և այլ պարբերականներին։ 1861 թ. սկսած Այվազյանը դառնում է «Մեղու» պարբերականի գլխավոր աշխատակիցներից մեկը, Հ. Սվաճյանի, Կ. Փանոսյանի հետ միասին[44] պահանջում բարեշրջել հայ եկեղեցու միջնադարյան կանոնները, Սահմանադրությունը պարտադրել հոգեվորական վերնախավերին։

1861 թ. փետրվարի 10-ին «Մեղուն» տպագրում է Մ. Այվազյանի «Եկեղեցվո կառավարությունը սահմանադրական է, թե միապետական» հոդվածը։ Այստեղ նա պաշտպանում էր «Մեղվի» խմբագրին Մ. Նալբանդյանի գրած նամակում արծարծված մտքերը, պահանջում հայ եկեղեցու բարեփոխում, ապա և ուղղակիորեն առաջադրում սոցիալական անհավասարության վերացման խնդիրը։ Պատրիարքի և ամիրաների հանձնարարականով «Երեվակը» և «Արևելյան դարը» «խաչակրաց» արշավանքի դուրս եկան Մ. Այվազյանի ու նրա գաղափարակիցների դեմ։ Տերոյենցը գրում է «Մ. Այվազյանին նամակին քննությունը» գրքույկը, որտեղ գաղափարական ընդհանրություններ էր տեսնում Մ. Նալբանդյանի և Մ. Այվազյանի հայացքների միջև։ Մեղադրելով Այվազյանին, նա ավելացնում էր. «...և քու առաջդ Նալբանդյանցին իրավունքը ավելի սրբազան և անբռնաբարելի սեպված է, քան կրոնական ժողովի իրավունքը»[45]։

Մ. Այվազյանի հոդվածները տպագրվում էին «Մեղու», ապա «Մանզումեի էֆքյար» պարբերաթերթերում, իսկ քիչ անց՝ «Արարատ» հայատառ թուրքերեն սեփական օրաթերթում։

1876 թ. Տրապիզոնի հայաբնակ գյուղերից մեկում խոշտանգվում է մի հայ գյուղացի։ Այդ մասին բողոքարկող հոդվածներ են գրում «Հայրենիքը» և նոր վերաբացված «Արարատը»։ Գործը հասնում է մեծ սադրազամ Մեհմետ Ռուշտի փաշային։ Փակվում են զույգ պարբերականները, Մ. Այվազյանին կանչում են ոստիկանատուն և ծեծում[46]։ Ազատախոս խմբագիրը կիսամեռ տեղափոխվում է իր բնակարանը և մեկուկես ամիս տառապելուց հետո վախճանվում 1876 թ. դեկտեմբերի 15-ին։ Հայ դեմոկրատական հոսանքը կորցնում է իր լավագույն ներկայացուցիչներից մեկին։

60-ականների արևմտահայ գործիչների մեջ դժվար է մատնանշել մեկին, որն իր ազդեցությամբ, երգիծական տաղանդով, ժամանակի հուզող խնդիրների մասին հայտնած կարծիքներով, գավառում ծավալած հեղափոխական գործունեությամբ, հասարակ մարդկանց մասին ունեցած մտահոգություններով կարողանար հավասարվել Հարություն Սվաճյանին (1831—1874)։ Պատահական չէ, որ Կ. Պոլսի հայ մտավորականներից ամենից վաղ Հ. Սվաճյանը հարեց Մ. Նալբանդյանին, պաշտպանեց նրա հայացքները, կանգնեց նրա դիրքերի վրա, իսկ ուսուցչի ու զինակցի բանտարկության տարիներին ու մահից

---

44 Նյութերը քաղված են «Պատմություն հայ Կեսարիո», հատ. 2, էջ 2038, տե՛ս նաև Գ. Ստեփանյան, *Հայատառ թուրքերեն հայ մամուլը*, էջ 259 և հետո։

45 «Մ. Այվազյանին նամակին քննությունը», Կ. Պոլիս, 1861, էջ 14։

46 Վ. Զարդարյան, *Հիշատակարան*, հատ. Բ, էջ 388։

հետո գաղափարական ուղղություն տվեց նրա հետևորդներին։ Հ. Սվաճյանն առաջինն ստացավ արտասահմանում տպագրված Մ. Նալբանդյանի աշխատությունները, «Երկու տողը» հատվածաբար արտատպեց «Մեղու» պարբերաթերթում, հակառակորդների հարձակումներից պաշտպանեց «Երկրագործության» սկզբունքները։

Մ. Նալբանդյանը, նկատելով հեղափոխականի անզիջում բնավորությունը, խիզախելու աներեր կամքը, նրան հաղորդակից էր դարձնում իր մտորումներին, «Մեղուն» դիտում իբրև «...երիտասարդների և կենդանի ժողովրդի մաքուր բերանը, ազգի ցավերի ու ուրախության ճշմարտապես հայտարարը»[47]։ Մ. Մամուրյանը Սվաճյանին բնութագրեց իբրև «ժողովրդյան զավակ և աղետից թարգման, բռնության թշնամի և ազատության լուսամիտ ու անվեհեր կուսակից...»[48]։

Հ. Սվաճյանն ունեցել է սոցիալ-քաղաքական հայացքների զարգացման երկու շրջան։ Իր գոյության առաջին տարիներին (1856—1860) «Մեղուն» կրում էր լիբերալիզմի դրոշմը, գտնվում էր ապագա լիբերալներ Գր. Օտյանի ու Ն. Ռուսինյանի ազդեցության տակ։ Նույն տարիներին Հ. Սվաճյանը ես չափավոր պահանջներ ուներ տակավին։ Նա դեռևս քաղաքականապես չէր հասունացել և բարեփոխությունների մեթոդը գերադասում էր հեղափոխական պայքարից։ Այդ շրջանում Սվաճյանը, որպես հայ ժողովրդի փրկության միջոց, առաջադրում էր կրթությունը, «չար կրքերու մոլորությունները» մարդկանցից հեռացնող լուսավորությունը։ Բնորոշ է, որ այդ պահին «կուսակցության ոգին» դատապարտվում էր «Մեղվի» խմբագրի կողմից, համարվում «ամենաթշվառ և աղելի ոգի մը»[49], իսկ 1848 թ. ֆրանսիական հեղափոխությունը՝ արյունակիցներին իրար դեմ հանող, խաղաղությունը վրդովող երևույթ։ Արևմտահայ դեմոկրատիայի ապագա տրիբունն առաջին էտապում չհասկացավ Ստ. Ոսկանյանի մղած պայքարի իմաստը, բացասաբար արտահայտվեց նրա խմբագրած «Արևելքի» հասցեին, իսկ իր թերթի դռները բացեց ոչ միայն լիբերալների, այլև պահպանողականների առջև։

Սակայն առաջին էտապում Հ. Սվաճյանի մտահոգության առարկան ոչ թե գաղութահայ բուրժուազիան էր կամ հայ հարուստ վերնախավերն ընդհանրապես, այլ հայ գեղջուկները, օրվա հացի կարոտ մշակները, քաղաքներում հաց և աշխատանք որոնող պանդուխտները։ Ագրարային հարցն առաջադրելիս նա ջանում էր պաշտպանել եվրոպական կապիտալի ներմուծից տուժող երկրագործների, նրանց ծոցից ելած արհեստավորների ու բանվորների շահերը[50]։

1860—1861 թթ., ինչպես արևմտահայ մի շարք գործիչներ ու հրապարակախոսներ, այնպես էլ Հ. Սվաճյանը շրջադարձ է կատարում, վերանայում նախկին տեսակետները, փոխում պայքարի ձևերն ու մեթոդները։

Արդեն այդ շրջանում Հ. Սվաճյանն ազդարարում էր, որ ազգի լծակը,

---

47 Մ. Նալբանդյան, ԵԼԺ, հատ. 3, էջ 107։

48 Վրույր [Մ. Մամուրյան], Հայկական նամականի, էջ 259—260։

49 «Մեղու», 1857, № 24։

50 Աշ. Հովհաննիսյան, Նալբանդյանը և նրա ժամանակը, հատ. 1, էջ 405։

«հաստարանը» հասարակ ժողովուրդն է։ Տակավին 1858 թ. նա ծանոթ էր «Հյուսիսափայլին», արտատպում էր Ստ. Նազարյանի հոդվածները։ 1860 թ. «Մեղուն» տպագրում էր Կոմս Էմմանուելի «Հիշատակարանը» հետևյալ բնաբանով. «Ազգության հաստարանը և լծակը է հասարակ ժողովուրդը։ Մի ազգ, թող որքան կամի հարուստ լինի երևելի մարդերով, այնուամենայնիվ այդ ազգի ազգության մեքենան շարժվում է հասարակ ժողովրդի վերա, սա է այդ մեքենայի առանցքը, լծակը և հաստարանը»[51]։

Ի պաշտպանություն հասարակ ժողովրդի շահերի, Հ. Սվաճյանը պահանջում էր մամուլի, խոսքի ազատություն։ «Տպագրությունը ...պետք է, որ ամեն ճիգը թափե, ամեն վնաս, վտանգ, զոհ աչքը առնե ու պատերազմի. իր պարտության մեջ մեռնի նե ալ՝ իր պաշտպանած ճշմարտությունը օր մը պիտի պաշարվի»[52]։


Հարություն Սվաճյան

1860 թ. սկսած «Մեղուն» հետևողականորեն մշակում էր հայ ժողովրդի ազատագրման, օտարի տիրակալության տապալման ծրագրեր։ Խմբագիրն արդեն հասկանում էր իտալական ազգային շարժման ներհակությունը և մոռանալով Կավուրին ու Վ. Էմմանուելին, դրվատում էր Գարիբալդիի սխրանքները, «Կարիպալտի նոր ժամանակիս դյուցազոնը, նոր սերունդին սիրտը թնդացուց...»[53]։ Այս այն օրերին էին, երբ Պոլիս էր ժամանել Մ. Նալբանդյանը, և երկուսի մեջ կնքվում էր հեղափոխական զինակցություն։

Հ. Սվաճյանի աշխարհայացքային շրջադարձի գործում, անշուշտ, էական դեր խաղաց Մ. Նալբանդյանը, սակայն քիչ կարևոր չէին նաև սահմանադրական շարժումների ուժեղացումը, Արևմտյան Հայաստանում բռնկված զինված ելույթները։

1861 թ. տարեմուտի առաջնորդողում Հ. Սվաճյանը որոշակիորեն հայտարարեց, որ իր հինգ տարվա գործունեությունը համարում է մեկ օրվա անցած ճանապարհ, որ տգիտության ու խավարի մեջ թաղված ժողովուրդը դեռևս ազգ կազմելու իրավունքից զուրկ է։

51 «Մեղու», 1860, № 101, էջ 130։
52 Նույն տեղում, № 113, էջ 225։
53 Նույն տեղում, № 116, էջ 251։

«Մեղու» պարբերաթերթով, «Մատնություն» գրքույկով, գաղտնի թռուցիկներով, Ազգային ժողովում արտասանած ատենախոսություններով Հ. Սրվանձյանը նալբանդյանական մարտունակությամբ քննադատում էր ժողովրդին ճնշվածության մեջ պահող թուրք, քուրդ, հայ այն դասերին, կառավարության պաշտոնյաներին, հարկահաններին, որոնք խեղանդամում էին երկրի տնտեսությունը, պատճառ դառնում երկրագործների պանդխտության, գավառահայերի սովամահության, Հայաստանի ամայացման։

1862 թ. նոյեմբերին Հ. Սվաճյանը «Մեղու»-ի տնօրինությունը թողնելով Հ. Հովսեփյանցին և Ա. Մուրադյանին, հեռանում է Պոլսից, շրջում Արևմտյան Հայաստանի ու Կիլիկիայի գավառներում։ 1863 թ. հունիսի 11-ին նա կրկին վերադառնում է Պոլիս, վերստանձնում խմբագրի պաշտոնը և իր հրապարակախոսությամբ մարտական նոր թափ հաղորդում պարբերականին։

Արդեն նալբանդյանական դիրքերում կանգնած Սվաճյանը մերժում էր բարեշրջության լիբերալ քարոզները, զինված մեթոդով փորձում լուծել ժողովրդի քաղաքական ազատագրության հարցը։ «Եթե այս սուրբ պատերազմին մեջ ըլլինք՝ ազգին ամենամաքուր նահատակները պիտի ըլլանք և թող ազգն ալ մեր մահվանե ետև, մեր աչքերը գոցվելեն ետև զոհվի ուրիշին։ Իսկ եթե հաղթող ելլենք՝ երանի այն անձերուն, որ ազգի մը ազատարարն ըլլալու փառքին պիտի արժանանան»[54]։

«Մեղվի» էջերը այնուհետև լի էին քաղաքական պայքարի կոչերով, սուլթանի «շնորհած» Սահմանադրության և ցարի հրապարակած գյուղացիական ռեֆորմի քննադատությամբ։ Ավագ զինակցի բերդարգելությունը ոչ միայն չթուլացրեց Հ. Սվաճյանի հրապարակախոսության թափը, այլ ավելի ուժեղացրեց այն։ Հայ իրականության մեջ «Մեղուն» փաստորեն մընաց այն միակ պարբերականը, որ համարձակորեն պաշտպանեց հեղափոխական դեմոկրատիայի ուղեգիծը: 1864 թ. Հ. Սվաճյանը գրում է. «Այո մարդկային ազգի հառաջադիմության իրական թագավորը՝ արդարությունը, որ փորձով տեսնված է, թե առանց արյունահեղության չը պիտի կրնա տիրել երկրագունդիս, մեծ հաղթանակ մը պիտի կանգնե այս թվականիս մեջ, որուն շնորհիվ ոչ միայն պիտի հրճվին անթիվ տառապյալներ, այլև երկրորդ և երրորդ մեծագույն հաղթանակներու ալ դուռ պիտի բացվի, այլև շատ թըշնամիներ ինքնին անձնատուր պիտի ըլլան այս նոր արքային, որուն թագավորության գալիքը թվականես... առաջ քարոզվեցավ»[55]։

Սվաճյանը տեսնում էր, որ Իտալիայում ու Ռուսաստանում հասունացող հեղափոխական իրադարձությունները նորից դասակարգային պայքարի մարտադաշտի են վերածում Եվրոպան, որն ալեկոծվելով «...անպատճառ կերպարանափոխ պիտի ըլլա և անոր հավասարակշռության թասերուն մեջեն բան մը պիտի հանվի դրվի, բան պիտի պակսի և էվելնա, մինչև ցարդ արժեք չունեցած երեցողները արժեքնին պիտի գտնեն. ծանր կշռվողները պիտի թեթևնան և նոր հավասարություն մը պիտի հաստատվի...»[56]։ «Մեղվի» մարտաշունչ առաջնորդողը սոսկ 1864 թ. տարեմուտի մաղթանք չէր, այլ հայ ժողովրդին հեղա-

[54] «Մեղու», 1861, № 128, էջ 66։
[55] «Մեղու», 1864, № 227, էջ 3։
[56] Նույն տեղում։

փոխական պայքարի մարտակոչ, ուղղված սուլթանական ու ցարական միահեծանությունների դեմ։ Հատկանշական են Սվաճյանի առաջադրած ծրագրի լուծման երկու էտապները, որոնք պատգամում էին օտարի տիրապետությունը խորտակելուց հետո զենքը վայր չդնել, այլ ուղղել սեփական հարստահարիչների դեմ, հեղափոխական-քաղաքական պայքարին սոցիալ-դասակարգային բովանդակություն տալ։ Պարզ է, որ այս էտապում Սվաճյանի հայացքները որոշակիորեն սահմանազատվում էին ազգային-դեմոկրատներից և նրան աստիճանաբար դնում հեղափոխական դեմոկրատի բարձրության վրա։

Պայքարի երկրորդ էտապում «Մեղվի» խմբագիրը վերամշակում էր ագրարային հարցի մասին Նախկինում առաջադրած ծրագրերը։ Ազգային վաճառականության, երկրագործական ընկերությունների ստեղծման, պանդխտության դեմն առնելու, գյուղացուն հողով ապահովելու մասին ունեցած մտահոգություններն այս տարիներին «Մեղվի» էջերում դառնում են խոր լուսաբանության նյութ։

Մ. Նալբանդյանի «Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ» աշխատության մեջ առաջ քաշված հարցերը հուզում էին արևմտահայ դեմոկրատներին։ Այնպիսի հարցեր, ինչպես հողաշինարարության նոր սիստեմի, գյուղատնտեսությունը զարգացնելու, ազգային վաճառականություն կազմակերպելու խնդիրները մինչ այդ արդեն քննարկվել էին արևմտահայ պարբերական մամուլի էջերում։ Այդ մասին ասվում էր «Բարեգործականի» հայտարարության մեջ, Հ. Շիշմանյանի, Մ. Մամուրյանի, Հ. Սվաճյանի հոդվածներում։ Արմենակ Մուրադյանի խմբագրությամբ Փարիզում լույս տեսնող «Փարիզ» թերթը հանգամանորեն անդրադարձավ ազգային վաճառականության, ինտենսիվ երկրագործության ստեղծման, հայրենի երկրի տնտեսական զարգացման խնդիրներին։

1860 թ. ստեղծվեց վաճառականության մասին հոգ տանող հայրենասիրական քողով շղարշված «Արարատյան ընկերությունը»[57]։ «Փարիզի» խմբագիրն ողջունեց նրա կազմակերպիչներին, անգլիական գործարանային արտադրության կողմից մրցությունից դուրս նետվող հայ արդյունաբերողներին ու վաճառականներին կոչ արեց տեղափոխվել Արևմտյան Հայաստան կամ Կիլիկիա, հոգ տանել երկրի տնտեսական առաջընթացին, պայմաններ ստեղծել ժողովրդի լուսավորության և քաղաքական ազատագրության համար։ Այսպիսով, երկրագործության, ազգային վաճառականության, երկրի տնտեսական առաջընթացի խնդիրները արևմտահայ առաջադեմ մտավորականության ուշադրության կենտրոնում էին։

Մ. Նալբանդյանը ծանոթ էր այդ հոդվածներին, գաղափարական կապերի մեջ էր նրանց հեղինակների հետ։ Սակայն նրա ամենամեծ արժանիքն այն էր, որ հեղափոխական լիցք էր հաղորդում այդ բոլորին, ագրարային հարցի լուծումը քննելիս չէր բացառում հեղափոխության հեռանկարը, հայ ժողովրդի սոցիալ-քաղաքական ազատության խնդիրները դուրս էր բերում ազգային նեղ շրջանակներից, շաղկապում ռուսական հեղափոխական-դեմոկրատական, իտալական ազգային-ազատագրական շարժումների հաղթանակի հետ։

57 Տե՛ս Հայկ Ղազարյան, նշվ. աշխ., էջ 626—627։

«Երկրագործության» լույս տեսնելուց հետո «Մեղուն» առաջինը անդրադարձավ այդ աշխատությանը, «Ով որ այսօր հող չունի, վաղը հաց չունի» բնաբանով վերաշարադրեց նրա հիմնական մտքերը։ Հ. Սվաճյանը լիովին համերաշխվեց Մ. Նալբանդյանի ծրագրերին և հայտարարեց. «... ճշմարիտ հայու մը ըսածին նման, ով որ այսօր հող չունի, վաղը հաց չունի ըսելով, նույնը մինչև մեր վերջին շունչը պիտի կրկնեմք, ապահով ըլլալով մեր էությանը չափը, թե հասարակ ժողովրդի մը համար ուղղակի, և մնացած մասին համար անուղղակի, բայց և այնպես անհրաժեշտ—ինչպես որ ջուրը ձուկի համար—միակ աղբյուրը ապրուստի՝ հարստության՝ երկրագործությունն է. քանզի երբ որ ազգ մը կազմող անհատներուն մեծագույն մասը երկրագործությամբ և առհասարակ գյուղական տնտեսությամբ կպարապի, այն ժամանակ այն ազգին ընդհանրությունը հարուստ և ապահովյալ է, որովհետև անոր հիմը բընականապես դրված է բնության վրա»[58]։ «Մեղվի» ակնարկած «ճշմարիտ հայը» Մ. Նալբանդյանն էր, այս մտքերը վերցված էին նրա «Երկրագործությունից», որի հեղինակի հետ լիովին համերաշխ Հ. Սվաճյանն արդեն համոզված էր, թե «...ազգությունը ըստինքյան լոկ խոսք է և իրողապես չէ կարող մարմնանալ, առանց տնտեսական խնդրի լուծվելուն»[59]։

Հ. Սվաճյանը, չմոռանալով քաղաքական պայքարի կոչերը, այս տարիներին հիմնականում զբաղված էր տնտեսական խնդրի լուծման ծրագրերի մշակումով։ Նա հայտարարություններ էր անում «երկրագործական ընկերությունների» ստեղծման, հողի համայնացման վերաբերյալ, յուրովի կրկնում Մ. Նալբանդյանի աշխատության հիմնական դրույթները։

Հ. Սվաճյանի երազած ապստամբական շարժումները հայ ժողովրդին բերելու էին քաղաքական ազատություն, հողը պետք է խլեին օտար իշխանավորներից, այդ թվում և հայ վերնախավից և հանձնեին գյուղացու տնօրինությանը։ Այսուամենայնիվ, ագրարային հարցի լուծման մասին Հ. Սվաճյանի հրապարակախոսությունը հեղափոխական հստակ ծրագրեր չէր բովանդակում։

Մ. Նալբանդյանին հասցեագրված Ս. Թագվորյանի 1862 թ. մայիսի 14-ի նամակը, գաղտնագիր բառարանը, նրանց ընդգրկած հարցերը, Գերցենի, Մաձձինիի անունները վավերական վկայություններ են, որ Մ. Նալբանդյանը ջանում էր «Земля и воля» կազմակերպության հետ կապել արևմտահայ հետևորդներին, նրանց միջոցով ընդհատակյա աշխատանք ծավալել Թուրքիայում[60]։ Այդ հետևորդների շարքում, անշուշտ, առաջինները Հ. Սվաճյանն ու Ս. Թագվորյանն էին։

Պետրոպավլովյան բանտի նկուղում նստած Մ. Նալբանդյանը զարմանալիորեն տեղյակ էր Մեչուխեչա-Սվաճյանի գործունեությանը, նրա հրապարակած հոդվածներին։ Բոսֆորի ափերին դեգերող իր ամենասրտառուչ բարեկամին էր ձոնում նա «Ուղերձ առ Մեչուխեչյան ի Կոստանդնուպոլիս» ոտանավորը, վերջին քառատողում բացականչելով.

«Քեզ սիրեց Հայաստան, Քեզ օրհնում է բյուր բերան,
Քեզ դարնի պսակներ հյուսում է ապագան,

58 «Մեղու», 1862, հունիսի 20, № 165, էջ 138։

59 Նույն տեղում, էջ 138—139։

60 Աշ. Հովհաննիսյան, Նալբանդյանը և նրա ժամանակը, հատ. 1, էջ 502։

Ընդունիր այս երկտող իմ անշուք հյուսվածքը,
Պակասը թող լցնե սիրած իմ, Քո ազգը»[61]։

Այսպիսով, հանձին Հ. Սվաճյանի, Մ. Նալբանդյանը տեսնում էր այն զինակցին, որը պետք է շարունակեր իր սկսած գործը։

Հ. Սվաճյանը «մեղվական» երիտասարդության գլուխն անցած տոն էր տալիս արևմտահայ իրականությանն հուզող բոլոր հարցերին, սահմանադրական ու մշակութային շարժումները ծառայեցնում գլխավոր նպատակին՝ ժողովրդի սոցիալ-քաղաքական ազատագրության խնդրին։ Անկախ Ազգային սահմանադրության էությունից, Հ. Սվաճյանի գլխավորած սահմանադրական շարժումն, ըստ էության, պայքար էր հանուն ժողովրդի քաղաքական ազատագրման, հանուն Հայաստանի ինքնավարության։

Հրապարակախոսությանը, քաղաքական պայքարին զուգընթաց, Հ. Սըվաճյանը էական դեր է կատարել հայ գեղարվեստական գրականության, տեսական, գրաքննադատական մտքի զարգացման, արվեստի պատմության մեջ։ Նրա գրչին են պատկանում «Հայաստան մայր» և «Արիք Հայկազունք» հայրենասիրական բանաստեղծությունները, ռեալիստական կատվի «Քաթինքա» վիպակը, «Առանձար Ամատունի» պատմական ողբերգությունը, «Մատնություն» քաղաքական պամֆլետը։ Եթե հայ ժողովրդի ազատագրությունը Հ. Սվաճյանի տարերքն էր ու նպատակը, ապա երգիծանքը նրա պայքարի հիմնական ձևերից մեկն էր[62]։

60-ական թվականների արևմտահայ ազգային-դեմոկրատների ձախ թևին պատկանող մտավորականների մեջ Հ. Սվաճյանից զատ, հայտնի էր Սերովբե Թագվորյանը։ Նա գրական կամ հրապարակախոսական ակնառու որևէ հետք չի թողել հայ հասարակական մտքի պատմության մեջ։ Մնացել է սակայն Մ. Նալբանդյանին ուղղված 1862 թ. մայիսի 14-ի թվակիր նրա նամակը, որը, չնայած իր սակավէջությանը, ծածկագիր լինելուն, հեղաբեկում է ժամանակի հայ հասարակական մտքի, ազատագրական շարժման պատմությունը։

Ս. Թագվորյանի նամակն ու դրա հետ կապված մյուս նյութերը մի վըկայություն են, որոնք հաստատում են, որ Մ. Նալբանդյանը, ենթադրվում է նաև արևմտահայ դեմոկրատները կապեր են ունեցել Գերցենի, Օգարևի, Բակունինի և Մաձձինիի հետ, ջանացել են ծովեզերքում զորք կենտրոնացնել, վառոդ արտադրել, Զեյթունին օգնության հասնել, այլ խոսքով, հայ ազգային շարժումը զուգակցել ռուսական հեղափոխական և իտալական ազատագրական պայքարի հետ։ Թագվորյանը, Հ. Քյաթիպյանը և «քսան երեսուն» հոգի այլ մարդիկ ծանոթ էին այս ծրագրերին, գործում էին նրանց իրականացման օգտին։ Սերովբե Թագվորյանը մասնակցեց «Սեր» գաղտնի ընկերության աշխատանքներին, Հ. Սվաճյանի ու Մ. Մամուրյանի հետ միասին մշակեց նոր ծրագրեր, պաշտպանեց Մ. Նալբանդյանի անձն ու գործը։ Ս. Թագվորյանը Նալբանդյանին հետևող հեղափոխական գործիչ էր։ Նրա հետ էր նաև մասնագիտությամբ բժիշկ Հովհաննես Քյաթիպյանը, որը հե-

61 «Հյուսիսափայլ», 1864, № 3, տպագրվել է Փառախոս Ցոլակյան կեղծանունով։
62 Գ. Գասպարյան, Հարություն Սվաճյան, Երևան, 1958, էջ 45։

տագայում ևս շարունակելով ընդհատակյա աշխատանքը, Համիդի դրածոնե-րի ձեռքով խեղդամահ արվեց։

Այսպիսով, 1860-ականների արևմտահայ հասարակական-քաղաքական շարժումների մեջ ղեկավար դեր էր կատարում և ժողովրդին իր ետևից տանում ազգային-դեմոկրատական հոսանքը, որի ձախ թևն էին կազմում հեղափոխական դեմոկրատներ Հ. Սվաճյանն ու Ս. Թագվորյանը։ Շատ խնդիրներում սրանց հետ էին գավառահայ մի շարք գործիչներ, որոնք, հետագա տասնամյակների սոցիալ-քաղաքական իրադարձությունների ազդեցությամբ, թոթափում են պահպանողականության բեռը, շրջադարձ կատարում և երկնում ազատագրական ընդհատակյա կազմակերպություններ։ Արևմտյան Հայաստանը հասունացնում էր գործիչների մի համաստեղություն, որը հաջորդ տասնամյակներին ոչ միայն գաղափարական ուղենիշ էր դառնում արևմտահայ ազատագրական շարժմանը, այլև գործնականորեն ղեկավարում էր այն։

ԳԼՈՒԽ ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴ

# ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՂԹԱՎԱՅՐԵՐԸ 1800—1870 ԹԹ.

*XIX դարի առաջին կեսում հայկական գաղթավայրերի կյանքում որոշ տեղաշարժեր կատարվեցին։ Մի շարք հնագույն գաղթօջախներ քայքայվեցին, առաջացան ու կազմավորվեցին նոր գաղթավայրեր։ Փոփոխությունների ենթարկվեց նաև նրանց ներքին կյանքը։ Կապիտալիստական հարաբերությունների զարգացումը այն երկրներում, որտեղ ապաստան էին գտել բնաշխարհը թողած հայ զանգվածները, սոցիալ-դասակարգային նոր երանգավորում էր հաղորդում այդ գաղթավայրերին, փոխում նրանց դասակարգային դեմքը։*

*Բուն Արևելյան Հայաստանի տարածքում արդյունաբերական փոքրիշատե խոշոր կենտրոնների բացակայությունը ունեզրկված հայ գյուղացիության քայլերն ուղղեց դեպի Բաքու, Թիֆլիս, ինչպես նաև կենտրոնական Ռուսաստանի քաղաքները։*

*Եթե Արևելյան Հայաստանից բնակչության արտահոսքը հետևանք էր կապիտալիզմի զարգացման, ապա բոլորովին այլ էր դրությունը Արևմտյան Հայաստանում։ Այստեղ առավել զանգվածային էր արտագաղթը, բայց այն արդյունք էր թուրքական բռնապետական կարգերի հարկային ծանր քաղաքականության և անօրինակ կեղեքումների, թուրք պաշտոնյաների վայրագությունների, որոնք հարկադրում էին թշվառ գյուղացիությանը հեռանալ իր հայրենիքից՝ կյանքի և ապրուստի հուսալի միջոցներ գտնելու։ Սրանց հոսանքն ուղղվում էր առաջին հերթին դեպի Կոստանդնուպոլիս և Զմյուռնիա։*

*Արևմտահայերի մի զգալի թիվ հաստատվեց Սիրիայում, Լիբանանում և Եգիպտոսում։ Հայ գաղթականության համար համեմատաբար նպաստավոր պայմաններ կային Եգիպտոսում, որտեղ Մուհամեդ Ալին, հոգ տանելով երկրի տնտեսական ու քաղաքական առաջընթացին, հայերի համար ստեղծեց ոչ միայն տնտեսական գործունեության հնարավորություններ, այլև նրանց ներգրավեց երկրի քաղաքական կյանքում։ XIX դարի ընթացքում Եգիպտոսում հաստատվեցին զգալի թվով հայ վաճառականներ, արդյունաբերողներ, արհեստավորներ, օրավարձու բանվորներ, որի հետևանքով երկրի երկու խոշոր կենտրոններում՝ Կահիրեում և Ալեքսանդրիայում հիմնվեցին հայկական խոշոր գաղութներ։*

*Պարսկահայքի բնակչության նշանակալից մասի ներգաղթը Արևելյան Հայաստան զգալի հարված հասցրեց Պարսկաստանի տնտեսությանը։ Նրա*

խոշորագույն հայկական գաղթօջախի՝ Նոր Ջուղայի դեռևս XVIII դարի կեսերից սկսված անկումը շարունակվում էր, և հայ խոջաների երբեմնի ծաղկուն այս կենտրոնը գտնվում էր անմխիթար վիճակում։ Այստեղից արտահոսքը դեպի Հնդկաստան շարունակվում էր, թեև դրությունը աննախանձելի էր նաև Հնդկաստանում հիմնավորված հայերի համար։

Հնդկաստանի գաղութացումը խիստ աննպաստ վիճակ ստեղծեց հնդկահայերի և հատկապես հնդկահայ մեծահարուստների համար։ Զուրկ լինելով պետական հովանավորությունից, նրանք չկարողացան դիմանալ եվրոպական կապիտալի մրցակցությանը, սկսեցին քայքայվել և գործունեության ասպարեզը զիջել եվրոպացիներին։ Դա էր պատճառը, որ հնդկահայերից շատերը հեռացան այստեղից և սկսեցին բախտ որոնել հեռավոր Ինդոնեզիայում։

Կապիտալիստական հարաբերությունների ձևավորման այս ժամանակաշրջանում նկատելի զարգացում ապրեցին Նոր Նախիջևանի, Աստրախանի, Ղրիմի, Մոսկվայի, Պետերբուրգի և Հյուսիսային Կովկասի հայ գաղթավայրերը։ Նրանք առավել կամ նվազ չափով օգտվում էին XVIII դ. վերջին տասնամյակներում հրապարակված կայսերական հրովարտակներից, որոնք հայերին վերապահում էին տնտեսական և իրավա-քաղաքական առանձնաշնորհումներ և ունեին ազգային սովորույթների ու իրավական նորմերի վրա հիմնված իրենց ներքին կառավարչությունները։ Ռուսաստանի հայ գաղթօջախները տնտեսական ու մշակութային կյանքում կարևոր դեր կատարեցին ինչպես արևելահայ հասարակական-քաղաքական ու մշակութային կյանքում, այնպես էլ հայ-ռուսական հարաբերություններում։

Հայ գաղթավայրերի պատմության մեջ, XIX դարում, գնալով մեծ և կարևոր նշանակություն են ստանում Մոսկվայի և Պետերբուրգի հայ համայնքները։ Ճիշտ է, այս երկու վայրերում հայկական փոքրիշատե հոծ զանգվածներ չէին բնակվում, բայց նրանց դերը պայմանավորված էր այն հետզհետե մեծացող նշանակությամբ, որ ձեռք էր բերում Ռուսաստանը հայ ժողովրդին և Հայաստանին վերաբերող հարցերում։ XIX դարի սկզբին, երբ արդեն իրական հիմքերի վրա էր դրվում և շուտով կենսագործվելու էր օտարակալության լծից Արևելյան Հայաստանի ազատագրության հարցը, բնականաբար, մեծանում էր Պետերբուրգի և, հատկապես, Մոսկվայի դերը։ Այնքանով, որքանով հայ ազատագրական հույսերը, հայկական պետականության վերականգնման ծրագիրը այս ժամանակահատվածում գլխավորապես խարսխվում էին Ռուսաստանից ստանալիք օգնության վրա, Մոսկվան և Պետերբուրգը մեծ կշիռ էին ձեռք բերում, առաջին հերթին, ազատագրվելիք Հայաստանի ապագա կացությունը սահմանելու և ռուսական կառավարության հետ համապատասխան բնույթի բանակցություններ վարելու հարցում։ Այստեղ մշակվեց ռուսական կառավարությանը 1827 թվականին ներկայացված կայսրության կազմում Արևելյան Հայաստանի կացությունը սահմանող նախագիծը Լազարյանների կողմից, որը որոշակի ազդեցություն ունեցավ հայկական մարզի ստեղծման գործում։

Այս ժամանակաշրջանում հայ ազատագրական մտքի և ազատագրական

շարժումների արտահայտություններից էր լայն ծավալ ստացած լուսավորական շարժումը։ Հայ գործիչների կողմից լուսավորական շարժումը դիտվում էր իբրև անհրաժեշտ նախապայմաններից մեկը՝ դարեր շարունակ օտարների լծի տակ կքած հայ ժողովրդական զանգվածներին ազգային ինքնագիտակցություն ներարկելու և հարյուրամյակների ընդարմացնող նիրհից սթափեցնելու համար։

Այդ առումով մեծ դեր խաղաց 1815 թվականին ռուսական երկրորդ մայրաքաղաքում՝ Մոսկվայում հիմնադրված Լազարյան ճեմարանը։ Այս կրթական նշանավոր հաստատությունը սկզբից ևեթ ուղեցույց դեր սկսեց խաղալ հատկապես արևելահայ իրականության մեջ։ Իր ավելի քան մեկդարյա գոյության ընթացքում Լազարյան ճեմարանը կրթեց և դաստիարակեց բազմաթիվ հայ պատանիներ և երիտասարդներ, որոնք սփռվեցին ռուսական կայսրության կազմում մտնող գրեթե բոլոր հայաբնակ վայրերը և ազգային լուսավորության սերմեր ցանեցին։ Դրան զուգընթաց, Լազարյան ճեմարանի սաներից շատերը կարևոր դեր խաղացին դասագրքերի հրատարակության, հայ ժողովրդի պատմության տարատեսակ հարցերի ուսումնասիրության, թարգմանական ու թատերական գործի տարածման և, առհասարակ, գիտության բնագավառում։ Այդ առումով դժվար է գերագնահատել Մոսկվայի հայկական գաղթօջախի և այնտեղ գտնված Լազարյան ճեմարանի ու նրան կից տպարանի գործունեության նշանակությունը։

Գաղտնիք չէ, որ Մոսկվան իր նշանավոր համալսարանով այն վայրն էր Ռուսաստանում, որն անդուլ սերմանում էր ազատասիրական գաղափարներ։ Այստեղից էլ այն մեծ նշանակությունը, որ, բնականաբար, պետք է ստանար Մոսկվան արևելահայ իրականության մեջ, քանի որ մեծ թվով հայ երիտասարդներ կրթվեցին ու ազատասիրական գաղափարներ ստացան Մոսկվայի համալսարանում։ Հասկանալի է, թե ինչու նման պայմաններում Մոսկվան դարձավ կենտրոնական վայրերից մեկը, որտեղ ճակատեցին աշխարհաբարի և գրաբարի կուսակիցները, որտեղ թրծվեց հայ մեծ հեղափոխական-դեմոկրատ Միքայել Նալբանդյանի ազատասիրական ոգին։ Այս հանգամանքներով էլ պայմանավորվեց Մոսկվայի դերը հայ-ռուս մշակութային կապերի սերտացման ու ամրապնդման, ռուս առաջավոր մշակույթի նվաճումները հայ իրականության մեջ տարածելու գործում։

Չպետք է անտեսել նաև այն պարագան, որ Լազարյան ճեմարանի հրատարակությունները նպաստեցին ծանոթացնելու ռուսական հասարակայնությանը հայ ժողովրդի անցյալին, դեպի Ռուսաստանը և ռուս ժողովուրդը ունեցած անկասկած համակրանքին և Ռուսաստանից ունեցած ազատագրական ակնկալություններին։ Կարևոր երևույթ էր 1833—1838 թվականներին ռուսաց լեզվով հրատարակված եռահատոր «Հայ ժողովրդի պատմության տեսության վերաբերող ակտերի ժողովածուն», որտեղ ամփոփված էին հայ-ռուսական հարաբերություններին վերաբերող բազմաթիվ վավերագրեր։

Բնորոշ է, որ Պետերբուրգի և Մոսկվայի հայկական շրջանները սերտորեն կապված էին միմյանց հետ և միասնաբար էին հանդես գալիս հայ ժողովրդին վերաբերող կարևորագույն հարցերում, հատկապես XIX դարի առա-

ջին կեսին, երբ առաջնահերթ խնդիր էր հայ ժողովրդի ազգային ու սոցիալական ազատագրության հարցը։ XIX դարի 50—60-ական թվականներին Մոսկվան և Պետերբուրգը հայ հասարակական-քաղաքական մտքի զարգացման գործում զգալի դեր խաղացին։

Այս երկու քաղաքների հայ բնակչությունը հիմնականում կազմված էր արդյունաբերողներից, վաճառականներից, նրանց գործակատարներից, պետական ծառայության մեջ գտնվող պաշտոնյաներից և փոքրաթիվ ազնվականներից։ Դժբախտաբար, տեղեկություններ չկան, թե որքան է եղել նրանց ընդհանուր թվաքանակը։ Որոշակի թիվ է կազմել ուսանող երիտասարդությունը, որը և իր նշանակալից լուման է ներդրել՝ հատկապես լուսավորական-դեմոկրատական շարժման բնագավառում։

Լեհաստանի և Հունգարիայի հայկական խոշոր գաղութները տխուր ճակատագիր ունեցան։ Լեհահայ գաղթավայրը XIX դարի սկզբին արդեն անցել էր պատմության գիրկը։ Դրան մեծապես նպաստել էր XVIII դարում լեհահայերի կողմից կաթոլիկության ընդունումը։

Բոլորովին այլ էր հունգարահայերի համաձուլման պատճառը։ Նրանք 1848—1849 թթ. օժանդակեցին հունգարական հեղափոխությանը։ Սակայն ռեակցիայի հաղթանակը ոչ միայն ի չիք դարձրեց ձեռք բերված դեմոկրատական ազատությունները, այլև ծանր հարված հասցրեց հունգարահայերին. Նրանց բնակավայրերը քարուքանդ եղան, ժողովուրդը ենթարկվեց հալածանքների, որոնց հետևանքը եղավ գաղութի աստիճանական թուլացումը։

Դրան հակառակ, Բուլղարիայի և Դանուբյան իշխանությունների հայկական գաղթավայրերը ոչ միայն կարողացան պահպանել ազգային գոյությունը, այլև կազմակերպեցին իրենց ներքին ազգային-հասարակական կյանքը, և հարատևեցին իբրև հայ ժողովրդի տարանջատված մի մասնիկը։

Կապիտալիզմի վերընթաց զարգացմանը զուգընթաց, արևմտաեվրոպական մի շարք երկրներում՝ Անգլիայում, Ֆրանսիայում, Գերմանիայում և այլուր առևտրական գործառնություններ են ծավալում և բնակություն հաստատում հայ առևտրականներ. համալսարաններում բարձրագույն կրթություն ստանալու են գալիս բազմաթիվ հայ երիտասարդներ, և հիշյալ երկրներում առաջանում են հայկական գաղթօջախներ։

Կապիտալիզմի առաջընթացը չէր կարող իր որոշակի կնիքը չդնել հայ գաղթավայրերի ազգաբնակչության դասակարգային կազմի վրա։ Եթե նախորդ դարերում գաղութների հայ բնակչությունը հիմնականում ներկայացված էր առևտրականներով ու արհեստավորներով, ապա այժմ նրանց կողքին սկսում են հանդես գալ նաև արդյունաբերողներ, գործարանային բանվորներ։ Հայ առևտրականներից շատերը, որոնք տեր էին պատկառելի դրամագլուխների, այժմ չէին բավարարվում սոսկ առևտրական գործառնությունների նեղ շրջանակներով, այլ իրենց դրամագլուխը ներդնում էին արդյունաբերության ոլորտում։ Մյուս կողմից, չկարողանալով դիմանալ գործարանային էժան ապրանքների մրցակցությանը, զրկվելով այն արտոնություններից, որոնք ընձեռում էին նրանց միջնադարյան ցեխային կազմակերպությունները, հայ արհեստավորներն ունեզրկվում էին և իրենց գոյությունը պահպանելու համար համալրում գործարանային բանվորների շարքերը։ Բնական է, որ

Հայրենիքից հեռացող պանդուխտների նորանոր քարավանները և պետք է առաջին հերթին լրացնեին բանվորների շարքերը. սա XIX դարի համար հետզհետե ընորոշ դարձող մի երևույթ էր, որը գնալով ավելի ու ավելի լայն չափեր էր ստանում։

Հայկական գաղութների սոցիալ-տնտեսական կյանքում առաջացած այս երևույթները, ինչպես նաև այդ երկրների ներքին կյանքում տեղի ունեցած խոշոր տեղաշարժերը չէին կարող բարերար ազդեցություն չունենալ հայկական գաղթավայրերի մշակութային կյանքում։ Հայկական գաղթավայրերում բացվեցին բազմաթիվ դպրոցներ, ստեղծվեցին տպարաններ, սկսեցին հրատարակվել պարբերականներ, հիմնվեցին թատերախմբեր և մշակութային այլ հիմնարկություններ, աշխուժացավ հասարակական-քաղաքական միտքը։

## 1. ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՂԹԱՎԱՅՐԵՐԸ ՌՈՒՍԱՍՏԱՆՈՒՄ

*ՆՈՐ ՆԱԽԻՋԵՎԱՆ։ Ռուսաստանում ամենախոշոր հայկական գաղթավայրերից էր Նոր Նախիջևանը, որը նշանակալից դեր է կատարել հայ ժողովրդի հասարակական-քաղաքական ու մշակութային կյանքում։*

*XIX դարի արշալույսին արդեն Նոր Նախիջևանը հայ գաղթավայրերի մեջ աչքի էր ընկնում ազգային սովորությունների վրա հիմնված իր ինքնավար կառավարչությամբ և տնտեսական բարգավաճ կյանքով։*

*Եկատերինա II-ի 1779 թ. նոյեմբերի 14-ի առանձնաշնորհումների ընձեռած հնարավորությունների շրջանակներում և նրա հիման վրա ձևավորվում է նորահաստատ գաղութի ինքնավարությունը։ 1780 թ. կազմակերպվում է հայկական մագիստրատը, որն իրականացնում էր քաղաքի և գյուղերի դատաստանական, ոստիկանական և գործադիր իշխանության ֆունկցիաները։ Ժողովրդի բոլոր խավերի կողմից երեք տարի ժամանակով մագիստրատում ընտրվում էին հինգ դատավորներ, որոնք վարում էին հայ հասարակության ամբողջ գործերը։ Սակայն այլ քաղաքների օրինակով շուտով հաստատվում է քաղաքագլխի պաշտոնը։ Քաղաքագլուխը, փաստորեն, իր ձեռքում է կենտրոնացնում հայ համայնքի ողջ կառավարչությունը։*

*Մագիստրատում դատավարությունն ու գործավարությունը կատարվում էր հայերեն լեզվով՝ «Հայկական դատաստանագրքի» հիման վրա, որը 1782 թ. Հ. Արղությանը բերել էր Աստրախանից։ «Դատաստանագիրքը» ճանաչվել է պետության կողմից, օրենքի ուժ է ստացել և Նոր Նախիջևանի գաղութից բացի մինչև XIX դարի 60-ական թվականների վերջը կիրառվել է նաև Աստրախանի, Ղզլարի, Մոզդոկի գաղութներում։*

*Հայկական գյուղերը, մագիստրատի ղեկավարությանը ենթակա լինելով հանդերձ, ունեցել են իրենց կառավարման տեղական օրգանները, հանձին ավագի և 4 «ծերերի»-ի, որոնք ընտրվում էին ձայների մեծամասնությամբ՝ մեկ տարի ժամանակով։*

*1811 թ. հաստատվում է Դոնի հայկական գաղութի գերբը, ուր պատկերված էին հայերի աշխատասիրությունը խորհրդանշող մեղուներ ու փեթակներ։*

*Նախապես պատրաստված նախագծի հիման վրա սկսվում է Նոր Նախիջե-*

վանի և ապա գյուղերի կառուցումը։ Քաղաքի կենտրոնական մասում առանձնացվում է ընդարձակ հրապարակ, որի երկու կողմերում հիմնվում են առևտրական խանութաշարքեր ու արհեստավորական գործատներ։ Փողոցները գծվում են իրար խաչաձև, ուղղաձիգ դիրքով, աստիճանաբար կառուցվում են քարե և աղյուսե տներ, քաղաքը բարեկարգ տեսք է ընդունում։

Հարավային Ռուսաստան այցելած նշանավոր ճանապարհորդների վրա մեծ տպավորություն է գործել Դոնի հայության ազգագրական ինքնատիպ նկարագիրը, Նոր Նախիջևանի բարեկարգ վիճակը։ Կոմս Ի. Ա. Բեզբորոդկոն 1812 թ. ժամանում է Նոր Նախիջևան և իր օրագրում գրանցում հետևյալը. «Եղա քարավանատանը, քաղաքը բազմամարդ էր, կանոնավոր փողոցներով։ Շինությունները կառուցված էին հայկական ճաշակով։ Տները մաքուր էին, մեծ մասամբ ծածկված կղմինդրով։ Կային և լավ քարե տներ, բավական մեծ մի քանի քարաշեն եկեղեցիներ, շատ այգիներ։ Դոնի ափին, բարձունքի վրա գտնվող քաղաքի դիրքը հիանալի է»[1]։

1812 թ. Հայրենական պատերազմի հերոս Ն. Ն. Ռաևսկին 1820 թ. ամռանը Ա. Ս. Պուշկինի հետ այցելում է Նոր Նախիջևան. «Ամրոցի մյուս կողմը,— գրում է նա,— կա մեկ ուրիշ արվարձան կամ Նախիջևան անվանվող հայկական քաղաք՝ ընդարձակ, բազմամարդ և առևտրով խիստ հարուստ։ Կենցաղով, կառուցումներով, դեմքերով, հագուստով, ամեն ինչով ինքնատիպ է»[2]։ Ժամանակի անվանի մարդկանց բարձր գնահատականը սոսկ արտաքին տպավորության արդյունք չէր։ Տագանրոգի քաղաքապետի 1850 թ. տարեկան հաշվետվության մեջ Դոնի Նախիջևանը Նովոռոսիայի երկրամասի լավագույն քաղաքներից մեկն է համարվում[3]։

Հարկ է, սակայն, նշել, որ թեպետ մինչև XIX դարի 30—40-ական թթ. Նախիջևանը բնակչության քանակով ևս եղել է Նովոռոսիայի խոշոր քաղաքներից մեկը, սակայն ընդհանուր առմամբ նրա բնակչության աճը դանդաղ է կատարվել։ Այսպես, եթե 1812 թ. քաղաքի բնակչության թիվը հասնում էր 8484, իսկ շրջակայքի հայկական գյուղերինը՝ 2633 մարդու, շուրջ քառասուն տարի հետո՝ 1850 թ. Նոր Նախիջևանը ուներ ընդամենը 11295, իսկ հայկական գյուղերը՝ 5293 բնակիչ[4]։

Բնակչության դանդաղ աճը բացատրվում է, մի կողմից, մասնավորապես 1840—1850-ական թթ. մեծ չափեր ընդունած արտահոսքով, մյուս կողմից դա հետևանք էր այն բանի, որ Դոնի ինքնավար գաղութը իր արտոնությունները պահպանելու նպատակով ամեն կերպ արգելակում էր դրսի բնակչության ներհոսքը։

Նոր Նախիջևանը հայկական մյուս գաղթավայրերի համեմատությամբ այն առանձնահատկությունն ուներ, որ բաղկացած էր հայաբնակ քաղաքից ու սրա հետ կապված հայկական գյուղերից։ Հինգ հայկական գյուղերի

---

1 «Бумаги, относящиеся до Отечественной войны 1812 года», ч. IX, М., 1908, стр. 8.
2 «Архив Раевских», т. I, СПб., 1908, стр. 519—520.
3 ՍՍՀՄ ԿՊՊԱ, ֆ. 1281, ց. 5, գ. 60, թ. 70—71։
4 ՍՍՀՄ ԿՊՊԱ, ֆ. 1281, ց. 11, գ. 134, թ. 179, ֆ. 1290, ց. 1, գ. 16, թ. 7։

դոյության փաստը իր կնիքն էր դնում գաղութի սոցիալ-տնտեսական բովանդակ կյանքի վրա։

Գյուղատնտեսության ճյուղերի մեջ առաջատար տեղ ուներ դաշտավարությունը՝ հացահատիկային կուլտուրաների, մասնավորապես ցորենի մշակումը, որի համար Դոնի հարթավայրի արգավանդ հողերը լայն հնարավորություն էին ընձեռում։ Ցանքատարածությունների ու բերքատվության վերաբերյալ պահպանված փաստաթղթերից երևում է, որ Նոր Նախիջևանի օկրուգում մշակվող հացահատիկի մի փոքր մասը բավարարում էր բնակչության սպառողական պահանջները, իսկ նրա մեծագույն մասը՝ 75—80%-ը, վաճառքի էր հանվում։ Արտասահմանում հայտնի էր Նախիջևանի հայկական գյուղերի ցորենը, որը գերադասվում էր սևծովյան նավահանգստներից արտահանվող ցորենի ուրիշ տեսակներից[5]։

Նոր Նախիջևանում, ինչպես նաև նրա շրջակայքի հայաբնակ գյուղերում հաջողությամբ զբաղվում էին բանջարաբուծությամբ ու այգեգործությամբ, մասնավորապես՝ խաղողագործությամբ, որը բավական մեծ տարածում էր գտել։ Զարգանում էր շերամապահությունը, որի առաջին ձեռնարկողները հայերն էին։

Հյութալի խոտով ծածկված Դոնի լայնածավալ տափաստանները նպաստավոր պայմաններ էին ստեղծում անասնապահության զարգացման համար։ Նոր Նախիջևանում զբաղվում էին անասնապահության գրեթե բոլոր ճյուղերով։ 1810 թ. տվյալներով Դոնի հայկական գաղութում կար շուրջ 11 հազար խոշոր եղջերավոր անասուն և 4500 ձի[6]։ Հայկական գաղութում լայն տարածում գտավ մասնավորապես նոր ցեղատեսակի բրդատու ոչխարաբուծությունը։

Նոր Նախիջևանում զգալի հաջողության հասավ նաև արհեստագործությունը և արդյունաբերությունը։

Գաղութի առաջացման սկզբնական տարիներից արհեստները երևան են եկել բավականաչափ մասնագիտացված ձևով։ Դոնի ավազանի բնակչության անմիջական պահանջը և համապատասխան հումքի առկայությունը կանխորոշում էին արհեստագործության որոշակի ճյուղերի զարգացումը։

Նոր Նախիջևանի ճարպահալ գործարաններում տասնյակ հազարավոր անասուններ էին մորթվում։ Մորթիների ու կաշվի առատությունը խթանում էր կաշեգործական արհեստների՝ կոշկակարության, մաշակարության, մուշտակագործության, թամբագործության առաջացմանն ու զարգացմանը։ Կայսրության հարավի ջրային ուղիներով արտահանվող մետաղը հումք էր հանդիսանում դարբնության, պայտառության, փականագործության և այլ արհեստների համար։ Միաժամանակ զարգանում էին հայերի համար ավանդական դարձած արհեստները՝ ոսկերչությունն ու արծաթագործությունը։ Հայ ոսկերիչներն ու արծաթագործները հռչակված էին իբրև նրբաճաշակ իրեր ու զարդեր պատրաստող վարպետներ։

---

5 Նույն տեղում, ց. 5, գ. 60, թ. 57։
6 Նույն տեղում, ց. 11, գ. 134, թ. 22։

Արտաքին շուկաներում և մասնավորապես Կովկասի լեռնաբնակների մոտ լայն տարածում էին գտնում հայ վարպետների պատրաստած իրերը։ Իզուր չէ, որ Եկատերինոսլավի նահանգի պաշտոնական փաստաթղթերում ընդգծվում է ուրիշ քաղաքների համեմատությամբ Նոր Նախիջևանում արհեստների որոշակի զարգացած լինելու հանգամանքը և շեշտվում մասնավորապես կաշեգործական և մետաղյա իրերի պատրաստումը։ Տագանրոգի քաղաքապետի (որի անմիջական վարչական իրավասությանն էր ենթակա Դոնի հայաբնակ գաղութը) 1850 թ. հաշվետվության մեջ նշվում է, որ հայ վարպետների պատրաստած արծաթազարդ զենքերի, սանձերի մի քանի հիանալի նըմուշներ նախատեսված են ուղարկելու Լոնդոնի համաշխարհային ցուցահանդես[7]։

Նոր Նախիջևանի հայ արհեստավորներն ունեցել են ավանդական ուժ ձեռք բերած, ազգային սովորությունների վրա հենվող իրենց համքարությունները, որոնք ներքին կառուցվածքով, վարք ու բարքով բնականաբար նման են եղել Անդրկովկասի հայ համքարություններին։ Սակայն միաժամանակ Նոր Նախիջևանի արհեստավորական կազմակերպություններին հատուկ աշակերտների ուսուցման, նրանց նկատմամբ վարպետների իրավունքների սահմանափակման, համքարությունները քաղաքային մագիստրատներին ենթարկված լինելու և մի քանի այլ հատկանիշներ բնորոշ են եղել ռուսական համքարություններին և հանդիսացել են նրանց անմիջական ազդեցության հետևանք։

1850-ական թվականներից, արդյունաբերության զարգացումն ու ապրանքա-դրամական հարաբերությունների ծավալումը ուժեղացնում են արհեստավորության ներքին շերտավորման պրոցեսը և քայքայիչ հետևանքներ ունենում նրա համար։

Նոր Նախիջևանի գաղութի քաղաքային արտադրությունը չէր սահմանափակվում միայն արհեստագործությամբ։ Արհեստներին զուգահեռ ու նրանց կողքին հիմնվում են մանուֆակտուրային տիպի արդյունաբերական ձեռնարկություններ, որոնք քիչ էին տարբերվում արհեստավորական գործատներից։ Գաղութի հայ առևտրական բուրժուազիան (Խալիբյան, Հայրապետյան, Օղաբաշյան, Ալաջալյան, Պոպով, Հովհաննիսյան և շատ ուրիշներ) արտադրության որոշ ճյուղերի եկամտաբերությունից մղված իր կապիտալի զգալի մասը ներդնում էր արտադրության մեջ և զարկ տալիս նրա շահութաբեր ճյուղերին։ Նրանցից հիշատակության արժանի են հատկապես ձկան, ճարպի, բրդի, կաշվի, օղու, մետաքսի, ծխախոտի, աղյուսի, կղմինդրի արտադրաճյուղերը։

Ձկնորսությունն ու ձկնարդյունաբերությունը ինչպես ամբողջ երկրամասի, այնպես էլ հայկական գաղութի տնտեսության կարևոր ճյուղերից են եղել։ 1810 թ. Նոր Նախիջևանի գաղութում ձկան որսի չափը հասնում էր 510 տոննայի, իսկ ձկան յուղի արտադրությունը՝ 150 փթի[8]։

Նոր Նախիջևանում մեծ զարգացում ապրեց մանր եղջերավոր անասուն-

7 ՍՍՀՄ ԿՊՊԱ, ֆ. 1281, ց. 5, գ. 60, թ. 24։
8 ՍՍՀՄ ԿՊՊԱ, ֆ. 1281, ց. 11, գ. 134, թ. 26, 27, 113։

ներից գործարանային պայմաններում ճարպ ստանալու նկամտաբեր գործը։ Հայ արդյունաբերողները ճարպատու հատուկ ոչխարի հոտեր էին պահում։ Ուրիշ քաղաքներում նման գործարանների (սալղանների) բացակայության պատճառով Հյուսիսային Կովկասից, Դոնի տափաստաններից և այլ վայրերից ճարպատու ոչխարի հոտերը քշում էին Նախիջևան և մորթում նրա սալղաններում։ Նման ձեռնարկությունների շահութաբերությունից ելնելով, հայ վաճառական-արդյունաբերողները ճարպահալ գործարաններ հիմնեցին Ստավրոպոլում, Պյատիգորսկում և այլ վայրերում։ Գործարաններում տարեկան տասնյակ հազարներով ոչխար էին մորթում, ճարպը հալում, լցնում տակառները և գրեթե ամբողջությամբ առաքում արտասահման։

1865 թ. միայն Նոր Նախիջևանի տասնմեկ սալղաններում մորթվել է 67600 ոչխար, որից ստացվել է 240.750 ռ. արժողության ճարպ[9]։ Աչքի էր ընկնում նաև բրդի արտադրությունը։ Նոր Նախիջևանի արդյունաբերողները Դոնի ափին հիմնել էին բրդալվաց ձեռնարկություններ, որտեղ տարեկան շուրջ 150—200 հազար փութ բուրդ նախնական մշակման էր ենթարկվում և արտահանվում Արևմտյան Եվրոպա[10]։

Գաղթավայրի սկզբնավորումից մինչև XIX դարի 20-ական թվականները հայերը հռչակված էին օղու, մասամբ նաև գինու արտադրության բնագավառում։ Բավական է նշել, որ 1816 թ. արտադրվել է 38.169 դույլ օղի, որի վաճառքից ստացվել է 445.590 ռ. գումար[11]։

Նոր Նախիջևանում գերազանցապես հիմնվել են այնպիսի ձեռնարկություններ (կաշեգործական, բրդալվաց, ճարպահալ գործարաններ, ծխախոտի ֆաբրիկա և այլն), որոնք միայն նախնական մշակման են ենթարկել հումքը, որն այդ վիճակում արտահանվել է շուկա։ Եթե սկզբնական շրջանում արհեստավորական գործատներն ու արդյունաբերական ձեռնարկությունները շատ կողմերով համընկնում, նույնանում էին, ապա XIX դ. 30—40-ական թվականներից նրանց սահմանազատումը ակնբախ է դառնում։ Արդյունաբերության մեջ աստիճանաբար դրսևորվում են կապիտալիստական արտադրությանը բնորոշ հատկանիշներ։

Նոր Նախիջևանի աշխարհագրական դիրքն առևտրի զարգացման համար նպաստավոր պայմաններ էր ստեղծում։ Դոնի շրջանում հանգուցավորվում էին ցամաքային ու ջրային առևտրական ճանապարհները, որոնք ամբողջ հարավային Ռուսաստանի համար բացառիկ կարևորություն ունեին։

Ի տարբերություն Ռոստովի և երկրամասի մյուս քաղաքների, Նոր Նախիջևանը հայտնի էր իր ներքին առևտրով։ Նախիջևանցիներն իրենց ապրանքներով ողողում էին ոչ միայն Ռոստովի, Նովոչերկասկի ու Տագանրոգի շուկաները, այլև Մոսկվայի, Նիժնի Նովգորոդի և այլ տոնավաճառները։ Նովոռոսիայի առևտրական կարևոր վայրերում նրանք իրենց խանութներն ու կրպակներն ունեին, ուր մանրածախ առևտուր էին անում։ Այսպես, եթե 50-

---

9 Հայկական ՍՍՀ ԿՊՊԱ, ֆ. 139, գ. 1200, թ. 9։
10 *А. А. Скальковский*, Ростов на Дону, СПб, 1847, стр. 44.
11 ՍՍՀՄ ԿՊՊԱ, ֆ. 1281, ց. 11, գ. 135, թ. 35։

ական թվականներին Տագանրոգը ուներ 279 կրպակ, Եկատերինոսլավը՝ 216, Ռոստովը՝ 211, Բախմուտը՝ 148, ապա Նոր Նախիջևանում դրանց թիվը հասնում էր 368-ի[12]։

Ներքին առևտրի կարևոր ճյուղերից է եղել ձկնավաճառությունը։ Աղ դըրված, չորացրած ձուկը հարյուրավոր փթերով վաճառքի է հանվել երկրի տարբեր նահանգներում։ Ներքին առևտրի մեջ կարևոր էր նաև անասունների, նրանց կաշվի ու մորթու, իսկ մանրածախ առևտրում՝ կտորեղենի, չթի, արդուզարդի և այլ իրերի վաճառքը։

Նոր նախիջևանցիների առևտրական գործունեության մեջ առանձնահատուկ տեղ ուներ Հյուսիսային Կովկասը։ Ստավրոպոլում, Եկատերինոդարում (Կրասնոդար), Պյատիգորսկում, Գեորգիևսկում, Մոզդոկում, Ղզլարում և այլ վայրերում նախիջևանցիները կրպակներ էին հիմնել և մանուֆակտուրային ապրանքների աշխույժ առևտուր էին անում։ Միաժամանակ տեղի տոնավաճառներում չերքեզներից գնում էին կովի և ձիու, ոչխարի ու այծի կաշի, նապաստակի, աղվեսի մորթիներ, մեղրամոմ, յուղ և այլն։ Նոր Նախիջևանի վաճառականների կովկասյան ամբողջ առևտրի ծավալը տարեկան հասնում էր շուրջ 3 մլն. ռուբլու։

Արտաքին առևտրի կարևոր ապրանքներից էր ցորենը։ Հայ առևտրականները չէին բավարարվում հայկական գյուղերի ցորենի վաճառքով։ Նրանք Ռուսաստանի հացառատ նահանգներում՝ Ստավրոպոլում, Վորոնեժում, Օրյոլում, Տամբովում, Սարատովում, Եկատերինոսլավում և այլուր հացահատիկ էին գնում և վաճառում ցորենի արտահանությամբ զբաղվող առևտրականներին կամ ուղղակի առաքում եվրոպական երկրներ։ Հայրապետյան եղբայրները հացահատիկի հատուկ շտեմարաններ ունեին Տագանրոգի նավահանգստում։ Հայ վաճառականների շրջանում հացահատիկի վաճառքը այնքան մեծ ծավալ էր ընդունել, որ նրանք ընդգրկվել էին առևտրական ընկերությունների մեջ և հատուկ կանոններ մշակել նրա վաճառքի վերաբերյալ։

Արտաքին շուկաներում լայն սպառում էր գտնում անասունների ճարպը և յուղը։ Հայ վաճառականները Սիբիրից, Պերմի նահանգից, Կովկասի տոնավաճառներից և այլ վայրերից մեծ քանակությամբ յուղ էին գնում և առաքում արտասահմանյան շուկաները։ Միայն 1818 թ. առաջին կիսամյակում երեք հայ վաճառականներ (Ե. Ջերեպով, Ն. Պոպով, Պ. Խաթրանով) արտասահման առաքելու նպատակով Նոր Նախիջևանի նավակայան էին բերել 15000 փութ կովի յուղ։

Հայ և հույն վաճառականները Աստրախանից գնում էին սև, իսկ Ազովի ձեռնարկություններից՝ կարմիր ձկնկիթ և արտահանում Հունաստան, Իտալիա, Ֆրանսիա։ Ձկնկիթի տարեկան շրջանառությունը անցնում էր 10.000 փթից[13]։

Հայ վաճառականները, ծանոթ լինելով արևելյան ժողովուրդների լեզ-

---

12 Տե՛ս «Материалы для географии и статистики России, Екатеринославская губерния», составил В. Павлович, СПб., 1862, стр. 216.

13 Հայկական ՍՍՀ ԿՊՊԱ, ֆ. 139, գ. 708, թ. 3։

*վին ու բարքերին, առևտրական սերտ կապերի մեջ էին գտնվում ասիական երկրների հետ։ Արտասահմանից նրանք ներմուծում էին բուսական յուղ, ծխախոտ, չոր մրգեր, նարինջ, կիտրոն, ձիթապտուղ, ընկույզ, համեմունքներ, գորգեր, կտորեղեն և այլ ապրանքներ։*

*Նոր Նախիջևանի ներքին և արտաքին առևտրի տարեկան շրջանառությունը 1840 թվականին, ոչ լրիվ տվյալներով, հասնում էր շուրջ 8 միլիոն ռուբլու*[14]*։*

*Ծավալուն առևտրա-փոխանակային հարաբերությունների արդյունք հանդիսացող հայ առևտրական կապիտալն իրեն զգացնել էր տալիս ոչ միայն Նոր Նախիջևանում, այլև նրա սահմաններից դուրս։ Սակայն հայկական գաղութն իր սահմանափակ պայմաններով ազատ գործունեության հնարավորություն չէր ընձեռում տեղի հայ վաճառականներին։ Վերջիններս սկսում են իրենց կապիտալները ներդնել ավելի շահավետ վայրերում և առաջին հերթին Նախակովկասի առևտրական հանգույցներում։ Այդ պարագան, ինչպես նաև այլ հանգամանքներ, Նոր Նախիջևանի առևտրի զարգացման վրա բացասական ազդեցություն են ունենում։ Հիսունական թվականներին նա սկսում է առաջնությունը զիջել ավելի բուռն թափով աճող հարևան Ռոստովին։*

*Դոնի հայկական գաղութի տնտեսական կյանքի փոփոխություններին հետևելիս, դժվար չէ նկատել, որ այնտեղ համեմատաբար արագ ու դյուրին եղանակով ընթացավ նոր, կապիտալիստական հարաբերությունների ձևավորման պրոցեսը։ Դրա հիմնական պատճառն այն էր, որ Նոր Նախիջևանի գաղութը, ինչպես նաև Նովոռոսիայի գրեթե ամբողջ երկրամասը զերծ մնաց ճորտային կախումից, հետևաբար նաև տնտեսության տարբեր ճյուղերի զարգացմանն ու բուրժուական հարաբերությունների ձևավորմանը խոչընդոտող պայմաններից։*

*Արտադրության տարբեր ճյուղերի առաջընթացը և առանձնապես առևտրա-դրամական հարաբերությունների ծավալումը ուժեղացրին սոցիալական շերտավորումն ու դասակարգային ներհակությունները։*

*Դոնի հայերը սեփական միջոցներով հոգում էին իրենց օկրուգի փոստակայանները, կամուրջները, ճանապարհները բարվոք վիճակում պահելու ծախսերը։ Այս ծախսերը ծածկելու նպատակով հայկական մագիստրատը ամեն տարի բնակչության վրա լրացուցիչ հարկեր էր դնում, որոնք գնալով աճում էին։ Այդ հարկերից զատ, բնակչությունը «նվերների» անվան տակ հոգևոր իշխանությանը վճարում էր զգալի տուրքեր։ Ժողովրդի վրա ծանրանում էին նաև քաղաքի ու գյուղերի պաշտոնյաների ապօրինությունները։*

*Նոր Նախիջևանի գաղութի չեշտված առանձնահատկություններից մեկն էլ բավական ցայտուն դրսևորվող սոցիալական հակամարտությունն էր։ Գյուղացիությունը տևական պայքար է մղել առևտրա-կալվածատիրական վերնախավերի դեմ՝ ամենից առաջ հողային հարցի շուրջը։*

*Հողային հարցը գաղութի տնտեսական հարաբերությունների առանցքն է կազմել։ Հողային տարածությունների համար հակամարտություններն առանձ-*

14 «Новороссийский календарь 1840 г.», стр. 154.

նապես սրվեցին 1830-ական թվականներից։ Գաղութի կալվածատիրական շերտերը Արտեմ Խալիբյանի գլխավորությամբ, չբավարարվելով ժամանակին հանրային տարածություններից 5100 դես. հողամաս յուրացնելով, ձգտում էին իրենց ձեռքը գցել նաև հայկական գյուղերին պատկանող հողերի մի մասը[15]։

Գյուղացիները կալվածատերերի ապօրինությունների դեմ բողոքում էին ամենուրեք, մինչև կառավարիչ սենատ, իրենց պատվիրակներն առաքում Պետերբուրգ։ Սկսվում է փոխադարձ բողոքների, միջնորդությունների և պետական տարբեր գերատեսչություններում հարցի քննարկման մի անվերջանալի շրջան։ Այդ ընթացքում քաղաքի իշխանավորների առաջարկով մագիստրատը հրավիրում է ժանդարմական կորպուսի չինովնիկների, որոնք բանտարկում են հատկապես անհնազանդ գյուղացիներին և 160 զինվոր ուղարկում չալթրցիներին պատժելու համար[16]։

Ի վերջո, պետական խորհուրդը, տեսնելով գյուղացիների իրավացիությունը վկայող անհերքելի փաստերը, 1848 թ. հարցը վճռում է նրանց օգտին։ Սակայն հետագայում ես քաղաքի աղաները շարունակում էին տարբեր պատրվակներով օգտվել հայկական գյուղերին պատկանող հասարակական հողերից։

Նոր Նախիջևանի գաղութում հողային հարցին առընթեր ծառացած է եղել կալվածատիրական տնտեսությունները աշխատող ձեռքով ապահովելու խնդիրը։ Դրսից աշխատողների հավաքագրելը և իրենց ագարակներում հողին ամրացնելը արգելվում էր, որովհետև այն հակասում էր առանձնաշնորհումներին։

Նոր Նախիջևանի աղայական դասը դիմում է հայ գյուղացիներին ճորտացնելու փորձերի։ Մասնավորապես 1836 թ. հարկային նոր սիստեմը կիրառելու ժամանակ նրանք ձգտում էին գլխահարկ մտցնելով բնակչության ներքնախավերին դնել նյութական ծանր դրության մեջ և, տնտեսական կախման մեջ գցելով՝ ճորտացնել գյուղացիներին։

1830—40-ական թվականներին և հետագայում Նոր Նախիջևանի գաղութի երկրագործ շերտի դասակարգային պայքարը զուգադիպում էր հեղափոխական իրադրությանը նախորդող ամբողջ Ռուսաստանում ծավալված գյուղացիական շարժումներին։ Եթե ռուսական գյուղացիությունը պայքարում էր ճորտական հարաբերությունների վերացման համար, ապա Նոր Նախիջևանի գյուղացիությունը ընդվզում էր ճորտություն մտցնելու փորձերի դեմ։

Նոր Նախիջևանի գաղութի սոցիալ-տնտեսական պայմանները, այնտեղ կատարվող իրադարձությունները այն միջավայրն էին, ուր նախապես ձևավորվեց Մ. Նալբանդյանի ըմբոստ ոգին, հիմք հանդիսանալով նրա հետագա հեղափոխական-դեմոկրատական աշխարհհայացքի համար։

Նոր Նախիջևանում լայն տարածում էր գտնում «Հյուսիսափայլ» ամսա-

---

15 ՍՍՀՄ ԿՊՊԱ, ֆ. 1152, հ. III, գ. 66։

16 Տե՛ս Վ. Բարխուդարյան, Նոր Նախիջևանի հայկական գաղութի պատմություն, Երևան, 1968, էջ 356—358։

*գիրը, որի էջերում հաճախ տպագրվում էին գաղութի հասարակական հարցերը շոշափող Մ. Նալբանդյանի կրակոտ հոդվածները։ Նա մասնավորապես բարձրացնում էր հասարակական միջոցները գաղութի լուսավորությանը ծառայեցնելու խնդիրը։*

*Դոնի հայկական գաղութը իր համեստ շրջանակներում արտացոլել է հայ և ռուս ժողովուրդների բարեկամական փոխհարաբերությունները, աշխուժորեն արձագանքել ու մասնակցել ռուսական հասարակական կյանքի իրադարձություններին։*

*Դեռևս 1812 թ. Հայրենական պատերազմից առաջ, Նապոլեոնի բանակի ներխուժման վտանգի պայմաններում, սկսվում է տեղական աշխարհազոր կազմակերպելու և բանակի օգտին նվիրատվությունների լայն ալիք։ Նոր Նախիջևանի հայ հասարակությունը նվիրաբերում է 10850 ռուբլի, 243 տարբեր տեսակի զենքեր ու զգալի պարենամթերք, իսկ թշնամու ներխուժման օրերին՝ 30000 ռուբլի*[17]*։ Ավելին, մագիստրատի գլխավորությամբ քաղաքից և գյուղերից աշխարհազորայիններ են հավաքում, որոնց վարժեցումը հանձնարարվում է մայոր Նիկիտա Աբրամովին*[18]*։*

*Նոր Նախիջևանի գաղութը գործուն մասնակցություն է ունեցել նաև 1853—1856 թթ. Ղրիմի պատերազմին։ Պատերազմի տարիներին հայ համայնքը իր միջոցներից պատրաստում է 10500 փութ պաքսիմատ և նվիրում բանակին։*

*Հայ գյուղացիներն իրենց ավելի քան 400 սայլերով ձմռանը Ռոստովից և Տագանրոգից Կերչ, Պերեկոպ, Ենիկալե են տեղափոխում պարենամթերք և հասցնում գործող բանակին։ Քաղաքի և հայկական գյուղերի բնակչությունը իր տարածքով անցնող զորքերին ապահովել է սննդամթերքով, ապաստան տվել անօթևան մնացած զինվորականների ընտանիքներին, Նախիջևանի ուսումնարանի շենքը վերածել զինվորական հիվանդանոցի։ Այդ ամենի համար հայկական գաղութը բազմիցս արժանացել է շնորհակալության ու պարգևների։*

*Նոր Նախիջևանի գաղութը միաժամանակ հասարակական-քաղաքական սերտ կապերի մեջ է եղել մայր հայրենիքի հետ։ Եկեղեցու սպասավորների պարբերական փոխայցելությունները և Աստրախանի միջոցով Պարսկաստանի շրջանների հետ աշխույժ առևտուրը, ուր ակտիվ դեր էին կատարում հայ վաճառականները, մեծապես նպաստում էին Հայաստանի հետ ունեցած կապերին։ Դոնի հայերի շրջանում ընդունված էր ուխտագնացությունը դեպի Երուսաղեմ և Մշո ս. Կարապետ վանքը։ Թիֆլիս—Երևան—Էջմիածին ուղիով ամիսներ տևող ճամփորդության ընթացքում նրանք մոտիկից ծանոթանում էին Անդրկովկասի ու Հայաստանի հայության կյանքին։*

*Կենդանի կապերի և այլ ուղիներով թափանցող տեղեկությունների միջոցով ռուսահայ զանգվածները տեղյակ էին և արձագանքում էին մայր հայ-*

---

17 *Տե՛ս Հայկական ՍՍՀ ԿՊՊԱ, ֆ. 139, գ. 1999, թ. 15։*

18 *М. Нерсесян,* Отечественная война 1812 г. и народы Кавказа. Ереван, 1965 стр. 197.

ընկերում կատարվող իրադարձություններին։ Արևելյան Հայաստանը ազատագրելու և Ռուսաստանին միացնելու լուրը ջերմ արձագանք է գտնում գաղութահայության շրջանում։ Դոնի հայ հասարակության անունից քաղաքագլուխ Խաչատուր Խոմաճյանը շնորհավորական ուղերձ է հղում Ներսես Աշտարակեցուն[19]։

Նոր Նախիջևանը Ռուսաստանի հայաբնակ գաղութներից բացի, կապերի մեջ էր նաև Կ. Պոլսի և հնդկահայ գաղութների հետ։ Եթե Կ. Պոլսի հետ շփումները գալիս էին դեռևս ղրիմահայ գաղութի կազմավորման շրջանից և բավական աշխույժ բնույթ էին կրում, ապա հնդկահայերի հետ կուլտուր-կրթական կապերն ավելի նորոգվեցին 60-ական թթ. հնդկական կտակների խնդրով Մ. Նալբանդյանի ուղևորության ընթացքում։

Նոր Նախիջևանի հայաբնակ գաղութն իր հիմնադրումից սկսած ստեղծեց նաև բավական ուրույն մշակույթ։ Տակավին XVIII դարի 80-ական թվականներին Նոր Նախիջևանում բացվում են առաջին վարժարանները, դրանց թիվը գնալով աճում է։

Չբավարարվելով տեղի վարժարանների տված գիտելիքներով, նախիջևանցիներից ոմանք իրենց զավակներին ուղարկում էին Մոսկվայի, Պետերբուրգի բարձրագույն ուսումնական հաստատությունները և հատկապես Լազարյան ճեմարանում ուսանելու։ Նրանցից շատերը նշանավոր մանկավարժներ, իրավաբաններ են դառնում և վերադառնալով հայրենի քաղաք, նպաստում են նրա կուլտուրական առաջադիմությանը։

Ճեմարանավարտներ Թ. Խադամյանը, Ս. Տիգրանյանը և Մ. Քուշներյանը 1830-ական թվականների վերջերին Նախիջևանի ուսումնարանի շենքում մի քանի տարի շարունակ հայերեն լեզվով ներկայացումներ են կազմակերպում և դրանով իսկ հիմք դնում տեղական ինքնագործ թատրոնին։ XIX դարի սկզբներին գաղութի մշակութային կյանքում խոշոր հետք են թողնում Պատկանյանները։

1830-ական թվականների սկզբներին լուսավորական-մանկավարժական բեղմնավոր աշխատանք է տանում Հ. Ալամդարյանը։ Դարի կեսին հրապարակ է իջնում Մ. Նալբանդյանը։

ԱՍՏՐԱԽԱՆ։ XIX դարի առաջին կեսին Աստրախանի հայ գաղութն իր մեծությամբ և նշանակությամբ երկրորդն էր (Նոր Նախիջևանից հետո) Ռուսաստանի հայ գաղթօջախների շարքում։ Այստեղ է եղել հայկական մեծ թեմի կենտրոնը։ Քաղաքի հայ բնակչությունը խոշոր դեր էր խաղում տվյալ երկրամասի տնտեսական ու մշակութային, ինչպես նաև հասարակական կյանքում։

1815—1825 թթ. հայերի թիվը Աստրախանում հասնում էր 6.500 մարդու[20], իսկ XIX դարի կեսին՝ շուրջ 5.800-ի[21]։

---

19 Հայկական ՍՍՀ ԿՊՊԱ, ֆ. Կաթ. դիվան, թղթ. 55, վավ. 78։

20 «Государственный архив Астраханской области» —Աստրախանի մարզի պետական արխիվ (այսուհետև՝ ԱՄՊԱ), Աստրախանի քաղաքացիական նահանգապետի դիվան, ց. 10, գ. 1084, թ. 148։

21 Նույն տեղում, գ. 2392, թթ. 111—112։

Աստրախանի հայերը հիմնականում զբաղվում էին արհեստով և առևտրով։

Ակնառու էր հայերի գործուն մասնակցությունը Պարսկաստանից ու Անդրկովկասից մետաքս, բամբակ, մետաքսյա և բամբակյա գործվածքներ, գորգեր, ներկեր, ինչպես նաև ձկնեղեն, ձկնկիթ, սոսինձ, թեյ, սուրճ, չորացրած մրգեր Աստրախան ներմուծելու գործում։ Այս ապրանքների մեծ մասը Վոլգայի վրայով Աստրախանից ուղարկվում էր Նիժնի Նովգորոդի տոնավաճառը։

Աստրախանի հայ վաճառականները ցամաքով առևտուր էին անում նաև կալմիկների և ղազախների հետ։

XIX դարի առաջին քառորդից սկսած հայերի տեսակարար կշիռը Աստրախանի նավահանգստով կատարվող արտաքին առևտրում գնալով նվազում էր և գլխավոր դերը աստիճանաբար անցնում էր Պարսկաստանի վաճառականներին։ Հայերը սկսում են առավել մեծ ուշադրություն դարձնել Ռուսաստանի ներքին առևտրի՝ գլխավորապես երկրի կենտրոնական նահանգների և Հյուսիսային Կովկասի վրայով Անդրկովկասի հետ կատարվող առևտրի վրա։ Ծովային փոխադրումների ոչ հուսալիությունը մի կողմից, ռուսների ամրապընդվելը Կովկասում մյուս կողմից, հարկադրում էին հայ վաճառականներին նախընտրել Ղզլար—Վլադիկավկազ—Թիֆլիս ցամաքային առևտրական ուղին։

XIX դարի կեսին Ռուսաստանի կենտրոնական նահանգները Ասիայի հետ կապող առևտրական ուղին անցնում էր արևմտյան Կովկասով, որի հետևանքով Աստրախանի դերը ասիական երկրների հետ կատարվող Ռուսաստանի արտաքին առևտրում նվազում էր։ Կասպիական առևտրի անկմանը նըպաստում էր նաև այն, որ եվրոպական և առաջին հերթին անգլիական վաճառականները Թուրքիայի և Մերձավոր Արևելքի այլ երկրների վրայով հաջողությամբ զարգացնում էին առևտուրը Պարսկաստանի հետ։

XIX դարի սկզբին Աստրախանի նավահանգստից ծով էին դուրս գալիս տարեկան շուրջ 30 առևտրական նավ, որի կեսից ավելին պատկանում էր հայերին[22]։ Վոլգայի վրա շոգենավագնացության անցնելուց հետո, 1840-ական թվականների սկզբին, գետն ակոսում էին տասը շոգենավ. դրանցից երկուսը պատկանում էր Աստրախանի հայերից Ուզլևին և Ցարալովին։ 1859 թ. հայերին էր պատկանում Վոլգայով նավարկող 32 շոգենավերից 5-ը։ 1860-ական թվականների սկզբին Աստրախանի հայերն ունեին 11 շոգենավ Կասպից ծովում[23]։

Հայերը զգալի դեր էին խաղում Աստրախանի արդյունաբերության և արհեստագործության մեջ։

Այսպես, 1804 թ. Աստրախանի մետաքսագործական 25 ֆաբրիկաներից 23-ը, բամբակագործական 39 ֆաբրիկաներից 36-ը և կաշեգործական 15 ֆաբրիկաներից 6-ը պատկանում էին հայերին[24]։

---

22 ԱՄՊԱ, ֆ. 1, ց. 1, թղթ. 1, (87), գ. 5, թթ. 12—17։

23 «Статистический временник Российской империи», вып. II, СПб., 1872, стр. 258—274.

24 ՍՍՀՄ ԿՊՊԱ, ֆ. 17, թղթ. 1, գ. 45, թթ. 4—11։

XIX դարի 40-ական թվականներին Աստրախանի արդյունաբերական ձեռնարկությունների ընդհանուր թվի նվազման հետ միասին նվազում էր նաև հայերին պատկանող ձեռնարկությունների թիվը։

1849 թ. արդեն Աստրախանում չկար ոչ մի մետաքսագործական ֆաբրիկա։ Մնացել էր միայն վեց մանածագործական ֆաբրիկա (ընդամենը 25 բանվոր), ընդ որում դրանցից երկուսն էր պատկանում հայերին։

Բացի դրանից, հայերին էին պատկանում չորս կաշեգործական ֆաբրիկայից երեքը, աղյուսի երկու գործարան, օճառի երկու գործարան և մեկ ծխախոտի ֆաբրիկա։ 1849 թ., Աստրախանի 29 արդյունաբերական ձեռնարկություններից 13-ը հայերինն էր[25]։

Հայ ազգաբնակչության զգալի մասն էին կազմում մանածագործական ֆաբրիկաներում աշխատող վարձու բանվորները։

XIX դարի առաջին կեսին Աստրախանի հայաբնակ գաղութը դեռևս պահպանում էր իր առանձնահատուկ իրավական գոյավիճակը։ Աստրախանի հայ բնակչությունը արտոնություն ուներ առևտրական փորձունեության բնագավառում, հարկատվության և դատա-վարչական առանձին հարցերում։

Հայերի առանձնահատուկ գոյավիճակի իրավական հիմքն էր 1799 թ. հոկտեմբերի 28-ին հրապարակված Պավել I-ի հրովարտակը, որը հաստատում և ձևակերպում էր այն առանձնաշնորհումները, որ ստացել էին Ռուսաստանում բնակվող հայերը XVII—XVIII դարերում։ Հրովարտակը Աստրախանի, Ղզլարի և Մոզդոկի հայերին թույլատրում էր ժամանակավոր ռուսահպատակություն ընդունել։ Նրանց արգելվում էր հարկադրաբար ռուսական վաճառականների գիլդիաներում և քաղքենիական դասում գրանցվելը (այդ դասերին պատկանելը կապված էր բազում բնամթերային և դրամական պարտույթներ կրելու հետ)։ Հիշյալ քաղաքների հայերին թույլատրվում էր Ռուսաստանում այլևայլ ապրանքների անմաքս առևտուր, սակայն կանոնադրությամբ սահմանված մաքս վճարելով, ինչպես նաև ազատորեն զբաղվել ցանկացած արդյունագործությամբ ու արհեստով։

Հրովարտակի համաձայն Աստրախանում, Ղզլարում և Մոզդոկում վերականգնվեցին հայկական դատարանները։ Դատարանը բաղկացած էր յուրաքանչյուր տարի վերընտրվող երեք անդամներից և գրասենյակի աշխատողներից։ Դրանից զատ, հայերը ամեն տարի ընտրում էին երեք հասարակական հոգաբարձուներ, որոնք վերահսկում էին բնակչությունից հարկերի գանձումը, մի քանի ավագներ, որոնք նույնպես միջնորդի դեր էին կատարում վարչական հարցեր լուծելիս, ինչպես նաև գնահատող անձ (գույքը ցուցակագրելու համար), բնակարանային հանձնաժողովի գրագիր և պատգամավոր։

Սակայն հայերի արտոնյալ գոյավիճակը այս ամենով հանդերձ նրանց չէր ազատում մի շարք պարտույթներից։ Դրանցից առավել խոշորը զեմստվոյի պարտույթն էր, այսինքն՝ պետական հարկը, որը հավաքվում էր քաղաքի սպասարկման կարիքների համար (փոստի պարտույթներ, փողոցների մաքրում և այլն)։

---

25 Նույն տեղում, ֆ. 18, ց. 2, գ. 916, թթ. 1—8։

Աստրախանի հայերը պարտավոր էին նաև մի քանի հարյուր զինվորի համար երեք զորանոց պահել, որոնք պետք է լիովին ապահովված լինեին վառելիքով և տնտեսական զանազան պիտույքներով։

Տնատերերը կրում էին նաև հատուկ «հողային» պարտույթ, իսկ կրպակների տերերը՝ «կրպակային» պարտույթ, որը հասնում էր 25-ից մինչև 100 ռուբլու (ընդ որում այդ պարտույթը կրում էին միայն հայերը)։

Ռուսական վաճառականությունը հաճախ էր հանդես գալիս Աստրախանի հայերի և արևելյան երկրներից գաղթած այլ եկվորների արտոնյալ գոյավիճակի դեմ։ Հայերը հարկադրված էին համառ պայքար մղել իրենց իրավունքները պահպանելու համար։ XIX դարի առաջին կեսին ցարական կառավարությունը հրապարակեց հայերի արտոնությունները սահմանափակող մի շարք հրամանագրեր, որոնց հետևանքով Աստրախանի հայերի առևտրական և արդյունաբերական գործունեությունը նկատելիորեն նվազեց։ Այս հանգամանքը առաջացրեց Աստրախանի հայերի դժգոհությունը։ Աստրախանի հայերի յոթ ներկայացուցիչներ Պետերբուրգ խնդրագիր ուղարկեցին, բացատրելով, որ նոր պայմաններն իրենց համար անընդունելի են ու քայքայիչ։ Խնդրանքի հեղինակներն ընդգծում էին նաև, որ արտոնությունների վերացումը բացասաբար է անդրադառնում արտասահմանի (Պարսկաստանի) շատ հայերի Ռուսաստան տեղափոխվելու ցանկության վրա։

Տնտեսական կյանքում 1807 թ. ոչ ձեռնտու մանիֆեստի առաջ բերած դժվարությունները ընդունում էին նաև Աստրախանի նահանգական իշխանությունները։ Աստրախանի նահանգապետի կարծիքը վավերացնելու համար ներկայացվեց անձամբ ցարին, որը 1808 թ. նոյեմբերին հրաման արձակեց հայերի գրանցումը գիլդիաներում անորոշ ժամանակով հետաձգելու մասին։ Հավանաբար, Ռուսաստանի կառավարող շրջանները համոզվեցին, որ անհրաժեշտ է պահպանել հայերի արտոնությունները՝ հօգուտ Կասպիական և Աստրախանի առևտրի ու արդյունաբերության զարգացման։

Այնուամենայնիվ, կառավարող շրջանները չէին հրաժարվում հայերի արտոնյալ գոյավիճակին վերջ տալու մտադրությունից։ 1831 թ. հունիսի 2-ին ցարը վավերացրեց մինիստրների կոմիտեի որոշումը, որի համաձայն 1799 թ. հրովարտակով սահմանված արտոնությունները վերապահվում էին միայն Աստրախանի այն 390 հայերին, ովքեր հաշվի էին առնվել 1795 թ. մարդահամարով։ Արտոնություններից օգտվող հայերի քանակի նման սահմանափակում էր նախատեսված նաև Ղզլարի ու Մոզդոկի հայերի համար։ Մյուս բոլոր հայերին առաջարկվեց 6 ամսվա ընթացքում ընդհանուր հիմունքներով ընդունել մշտական հպատակություն և կամ անցնել օտարերկրյա առևտրականների գոյավիճակի։

1831 թ. հուլիսի վերջին Աստրախանի հայերը Պետերբուրգ, Խաչատուր Լազարյանին հղեցին 24 մարդու կողմից ստորագրված մի նամակ, որով խնդրում էին կառավարական շրջաններում պաշտպանել հայերի շահերը։ Երեք ամիս անց հայերը դարձյալ Աստրախանի նահանգային վարչություն հղեցին իրենց կազմած «հանրային վճիռը», որով ապացուցում էին 1831 թ. որոշման անհիմն և անարդարացի լինելը։ Համանման գանգատներ եղան նաև

Ղզլարի բնակիչներից, որոնք վկայակոչում էին այն իրողությունը, որ իրենք հաճախ վնասներ են կրում լեռնականների ասպատակություններից։

Համառուսական դասերում հայերի բռնի գրանցումը նպաստեց նաև Աստրախանի տնտեսական նշանակության հետագա թուլացմանը։

Որոշվեց 1799 թ. արտոնություններից օգտվող հայերին պետական տուրքերը վճարելու խնդրում համառուսական դասերին հավասարեցնել ոչ թե միանգամից, այլ աստիճանաբար։ 1836 թ. մայիսի 21-ի ցարական հրամանագրով նախատեսվում էր Աստրախանի, Խերսոնի, Տավրիկյան և Եկատեբրինոսլավյան նահանգների, ինչպես նաև Կովկասյան մարզի հայերից այդ տուրքերը գանձել կիսով չափ, տասը տարվա ընթացքում, սկսած 1837 թ. ապրիլի 1-ից։

1831 թ. որոշման կենսագործման ընթացքում հարց հարուցվեց նաև Աստրախանի հայկական դատարանի վերացման մասին։ Այս դատարանը Աստրախանում գոյություն ուներ 1747 թ. և զբաղվում էր հայերի միջև ծագած հայցային և դատավճռային գործերի քննությամբ՝ Աստրախանի հայերի XVIII դարի կեսերին կազմված «Դատաստանագրքում» արձանագրված կանոնների հիման վրա։ Հայկական դատարանն ուներ նաև վարչական հետևյալ պարտականությունները. զեմստվոյի պարտույթների գանձումը, ջրային և ցամաքային հաղորդակցման միջոցներից օգտվելու համար վերցվող հարկի գանձումը, հայ բնակչությանը մարդահամարի ենթարկելը, այլ քաղաքներ և արտասահման մեկնելու համար հայերին անձնագիր տալը, հայկական դատարանի գրասենյակի պահպանման գումարի (տարեկան 3.618 ռ.) բաշխումն ու գանձումը և այլն։

Աստրախանի հայերը վճռականորեն առարկում էին հայկական դատարանը վերացնելու մտադրության դեմ, պատճառաբանելով, որ հայերը չգիտեն ոչ ռուսերեն և ոչ էլ ռուսական օրենսդրություն։ Մի քանի տարի համառորեն պայքարելուց հետո հայերին հաջողվեց հիմնովին պահպանել իրենց ազգային դատավարչական մարմինը։ 1837 թ. հունվարի 26-ի Սենատի հրամանագիրը վավերացնում էր հայկական դատարանի գոյությունն իր նախկին լիազորություններով հանդերձ։

Սակայն, չնայած դրան, տեղական իշխանությունները վերստին դատարանը վերակազմելու հարց հարուցեցին, վկայակոչելով հայկական դատարանի գործունեության մեջ եղած թերությունները ու զանցառությունները։

Ի պատասխան դրան, հայերը 1837 թ. վերջին կազմեցին մի նոր «հանրային վճիռ», որով հերքում էին հայկական դատարանի գործունեության մեջ եղած թերությունները և խնդրում հայկական դատարանը թողնել անփոփոխ։ «Վճիռը» ստորագրել էր 197 մարդ։

Նահանգապետը և կառավարության անդամները, չհամաձայնելով հայերի պատճառաբանությունների հետ, պետական խորհուրդ ներկայացրին իրենց եզրահանգումը։

1840 թ. մարտի 27-ին հրապարակվեց Սենատի հրամանագիրը հայկական դատարանների գործունեությունը Աստրախանում, Ղզլարում և Մոզդոկում դադարեցնելու մասին։

*Զնայած դատարանի վերացմանը, հայերը տակավին շարունակում էին պահպանել իրենց միասնությունը, անվանելով իրենց «Աստրախանի հայ համայնք»։*

*Աստրախանի հայերը պահպանեցին իրենց համայնքի ժողովներ գումարելու իրավունքը, որտեղ լուծվում էին ներքին հարցեր, անցկացնում բանավոր դատարանի անդամների և ավագների ընտրություններ, որոնք վարչական հարցեր լուծելիս քաղաքային իշխանությունների առջև միջնորդների դեր էին կատարում։ Քննարկվում էին նաև բարեգործական հարցեր, անցկացվում հոգաբարձուների ընտրություններ, լսվում նրանց հաշվետվությունը և այլն։*

*Հայկական ինքնավարության այդ մնացուկները պահպանվեցին 1870 թ. քաղաքային ռեֆորմից հետո ևս։*

*XIX դարի առաջին կեսին նկատելիորեն աշխույժ էր Աստրախանի հայերի մշակութային կյանքը։ 1804 թ. Աստրախանի վաճառական Նիկողայոս Աղաբաբյանը հիմնադրեց, իսկ 1810 թ. պաշտոնապես բացեց հայկական եռադասյան Աղաբաբյան ուսումնարանը, որը գոյատևեց հարյուր տարուց ավելի։ Առաջին իսկ տարում ուսումնարանն ուներ 73 սան։ Աշակերտների թիվը հետագա տարիներին գրեթե անփոփոխ էր մնում։ 1851 թ. հիմնադրվեց նաև հայկական ծխական դպրոց, որն ուներ 22 սան։ XIX դարի վերջերին քաղաքում կար հայկական 7 մասնավոր դպրոց, որոնցից յուրաքանչյուրն ուներ 15—20 սան։*

*Հրամայական պահանջ դարձավ լրագրի երևան գալը։ 1813 թ. լույս տեսավ Աստրախանի առաջին լրագիրը՝ «Վոստոչնիե իզվեստիա»։ Նրա հրատարակիչ Իոսիֆ ֆոն Վեյսքհոպֆենը սկզբից ևեթ նախատեսում էր թերթը հրատարակել նաև հայերեն, ելնելով այն փաստից, որ հայերը մեծ դեր են խաղում քաղաքի տնտեսական և հասարակական կյանքում։*

*Վեյսքհոպֆենը որոշեց ունենալ հայերի օգնությամբ ստեղծել նոր հայկական տպարան։ Այդ գործում նա մեծ օգնություն ստացավ Աստրախանի հայկական կաթոլիկ ուսումնարանի տնօրեն Կղեմես Շահվերդյանից։*

*1816 թ. հունվարի 5-ին լույս տեսավ «Արևելյան ծանուցմունք» շաբաթաթերթի առաջին համարը։ Պատմության մեջ դա հայկական յոթերորդ, իսկ ռուսահայ առաջին պարբերականն էր։ Թերթը քաղվածքներ էր հրապարակում ռուսական և եվրոպական թերթերից, ասիական ժողովուրդների վիճակագրական, ազգագրական և պատմական նկարագրություններ, տեղեկություններ Աստրախանի մերձկասպյան երկրների հետ ունեցած առևտրի, Կասպից ծովի նավագնացության, դրամական արժեքների և այլ հարցերի մասին։ Լույս է տեսել շաբաթաթերթի 27 համար։ 1816 թ. հուլիսի սկզբին, հրատարակիչ Վեյսքհոպֆենի մահից հետո, «Արևելյան ծանուցմունք» թերթը դադարեց գոյություն ունենալուց[26]։*

*ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ԿՈՎԿԱՍ։ XIX դարի առաջին կեսին զգալի չափով մե-*

---

26 *В. А. Хачатурян,* Из истории армянской печати в России *(ՀՍՍՀ ԳԱ «Տեղեկագիր», 1967, № 1, էջ 105)։*

ծանում են Հյուսիսային Կովկասի հայկական գաղութները, ինչպես ընդհանուր թվով, այնպես էլ բնակչության քանակությամբ։

Երկրամասի հայ գաղթավայրերից ամենախոշորներն էին Ղզլարն ու Մոզդոկը։ 1816 թ. Ղզլարում ապրում էր 4392 հայ[27]։

Ղզլարի հայերի մետաքսագործության, խաղողագործության, գինեգործության և այգեգործության արտադրանքը հայտնի էր ինչպես Կովկասում, այնպես էլ Ռուսաստանում։ Ղզլարում կար հատուկ «Հայկական շուկա», որտեղ ապրանքներ էին բերվում Ռուսաստանի կենտրոնական նահանգներից, Իրանից, Վրաստանից, Դաղստանից, Օսեթիայից և ուրիշ շրջաններից։ Ղզլարի վաճառականները Օսեթիա և Չեչնիա էին տանում կտավ, չիթ, մետաքսյա գործվածքներ, երկաթ, աղ, պղնձյա ամաններ և այլն։ XIX դարի կեսերին Ղզլարն ուներ 11 հազար բնակիչ, որոնց կեսից ավելին հայերն էին[28]։ Սակայն XIX դարի կեսից Ղզլարի տնտեսական նշանակությունն աստիճանաբար ընկնում է։ Դա կապված էր այն բանի հետ, որ քաղաքը դուրս մնաց հաղորդակցության նոր ուղիներից (որոնք անցնում էին Կասպյան ծովով կամ Ռոստով—Վլադիկավկազ ուղղությամբ)։

Մոզդոկը XIX դարի առաջին քառորդում ապրել է տնտեսական զգալի զարգացում։ Հայ բնակչությունը խոշոր դեր էր խաղում քաղաքի տնտեսական վերելքի գործում[29]։ Անբարենպաստ պայմանների պատճառով Մոզդոկի հայերը գերազանցապես զբաղվում էին արհեստներով և առևտրով։ Հայ վաճառականները իրենց ապրանքները վաճառում էին Աստրախանում, Նիժնի Նովգորոդում, Խարկովում և Ռուսաստանի այլ քաղաքներում։ XIX դարում Կովկասում հայտնի էր Մոզդոկի տոնավաճառը։

Դերբենտում հայ գաղութի գոյությունը հայտնի է միջին դարերից։ XVIII դարի վերջին այդտեղ հաշվվում էր հարյուր հայկական ընտանիք[30]։

1796 թ. Զուբովի հրամանատարությամբ ռուս զորքերի դեպի Դերբենտ արշավանքից հետո սկսվեց հայերի նոր գաղթը Դաղստանից, Ադրբեջանից և Ղարաբաղից։ Գաղթողներին ռուսական կառավարության որոշմամբ հատկացվել է 15 հազար դեսյատին հող[31]։

Գյուղական բնակչության մեծ մասը հիմնավորվեց Թերեքի ավազանում, որտեղ ստեղծվեցին հայկական գյուղեր՝ Ղարղալա (360 մարդ), Դերբենդսկոյե (մոտ 200 մարդ), Մալախալինսկոյե (89 ընտանիք), Կասաևա Յամա (105 ընտանիք)[32]։ 1852 թ. Կասաևա Յաման, որտեղ այդ ժամանակ ապրել է արդեն 1566 բնակիչ, վերանվանվել է Էդեսիա[33]։ Հայկական գյուղերի բնակչությունը զբաղվում էր երկրագործությամբ, այգեգործությամբ, խաղողագործությամբ, մետաքսագործությամբ։

---

27 «Собрание актов...», т. I, стр. 104.

28 *Н. Г. Волкова,* О рассеянии армян на Северном Кавказе до начала XX века. ՊԲՀ, 1966, № 3, էջ 261։

29 *В. И. Ларина, И. Х. Бежанов.* Город Моздок, Орджоникидзе, 1963, стр. 9.

30 *П. Г. Бутков,* Материалы для новой истории Кавказа с 1722 по 1803 гг. ч. II, стр. 583.

31 Նույն տեղում, էջ 424—425։

32 АКАК, т. IV, ч. II, Тифлис, 1876, стр. 592, 593, 602.

33 *Н. Г. Волкова,* նշվ. աշխ., էջ 261։

*XIX դարի սկզբներից հայաբնակ գաղութներ ստեղծվում են նաև Հյուսիսային Կովկասի ռուսական վարչական նոր կենտրոններում՝ Ստավրոպոլում, Գեորգիևսկում և Եկատերինոդարում։*

*Ղզլարի և Մոզդոկի հայերը սկսած XVIII դարից ունեին իրենց սեփական դատարանները, որոնց կառուցվածքը, իրավասությունը և գործավարության սկզբունքները նույնն էին, ինչ որ Աստրախանի հայերի դատավարչական օրգաններինը։*

*Դաղստանից, Ադրբեջանից և Ղարաբաղից գաղթած և Հյուսիսային Կովկասում բնակեցված հայերին Պավել I-ի 1799 թ. հրովարտակով շնորհվեցին որոշ արտոնություններ։ Սակայն XIX դարի առաջին կեսերից սկսած ինչպես Աստրախանում և Նախիջևանում, այդպես էլ Հյուսիսային Կովկասի հայաբնակ գաղութներում տեղի էր ունենում հայերին նախկինում տրված արտոնությունների աստիճանական սահմանափակում, որը ի վերջո հանգեցրեց նրանց իրավական առանձնահատուկ գոյավիճակի վերացմանը։*

*ԳՐԻԳՈՐԻՈՊՈԼ։ Գրիգորիոպոլի հայ գաղութի հիմնադրումը կապված էր 1787—1791 թթ. ռուս-թուրքական պատերազմի հետ։ 1791 թ. Յասիի հաշտության պայմանագիրը կնքելուց հետո, թուրքական տիրապետության տակ գտնվող Մոլդավիայից ու Բեսարաբիայից գաղթած շուրջ 4000 հայեր ժամանակավորապես տեղավորվեցին Դուբասար քաղաքում, իսկ շատ չանցած Դնեստրի գետի ավազանում նրանց համար հիմնադրվեցին Գրիգորիոպոլ քաղաքը, իսկ նրա շրջակայքում՝ Իոսիֆովկա և Վասիլևկա հայաբնակ գյուղերը։ Գրիգորիոպոլի հանդիսավոր հիմնադրումը տեղի ունեցավ 1792 թ. հուլիսի 25-ին։*

*1794 թ. հոկտեմբերի 12-ին Եկատերինա II կայսրուհին հրապարակեց հատուկ հրամանագիր, որով մի շարք արտոնություններ շնորհվեցին Գրիգորիոպոլի հայաբնակ գաղութին*[34]*։ Այդ հրամանագրով Գրիգորիոպոլը մտավ Եկատերինոսլավի նահանգապետության մեջ՝ ստանալով իր տարբերանշանը՝ կնիքն ու քաղաքային մագիստրատի դասային-ներկայացուցչական հաստիքները։ Ռուսական կառավարությունը հաստատեց հայաբնակ քաղաքի վարկավորումը՝ մի շարք արտոնություններով։ 325 բնակելի տների, մագիստրատի և եկեղեցական շինությունների կառուցման համար բաց թողնվեց շուրջ 103 հազար ռուբլի։ Վարկի մնացած մասը, շուրջ 87 հազար ռուբլի, որը բաց էր թողել կառավարությունը այլ կարիքների համար, պետք է վերադարձվեր գանձարան՝ 10-ամյա արտոնությունների ժամկետի ավարտից հետո, հետագա 10 տարում։*

*Գրիգորիոպոլի մագիստրատը սկսեց գործել 1794 թ. դեկտեմբերի 18-ից։ Մագիստրատն ուներ դատական և գործադիր իշխանության իրավունքներ։ Մանր գործերի տնօրինման և լուծման համար մագիստրատին կից հիմնադրվեց դատարան։ Քաղաքի բնակիչներին տրվեց ազատ առևտրի իրավունք. նրանք ազատվեցին բոլոր տեսակի զինվորական պարտույթներից*[35]*։*

---

34 *Տե՛ս* «Собрание актов»..., ч. I, стр. 190—193.

35 *Մոլդավական ՍՍՀ ԿՊՊԱ, ֆ. 1317, ց. 1, գ. 1, թ. 24—33։*

Հայկական մագիստրատի իրավասության տակ էր նաև Գրիգորիոպոլի այլազգի բնակչությունը։ Ռուս-ուկրաինական, հետագայում նաև մոլդավական բնակչությունը քաղաքում ապրում էր պայմանագրային հիմունքներով, որ նրանք կնքում էին հայկական մագիստրատի հետ։ Այդ պայմանագրերով կարգավորվում էին հայերի և գաղութում ապրող մյուս ազգերի վարչական ու իրավական հարաբերությունները։

Գաղութի առաջին քաղաքագլուխ ընտրվեց Նոր Նախիջևանից Գրիգորիոպոլ փոխադրված կապիտան Պողոս Թումանովը։ 1795 թ. իր պարտականությունների կատարմանն անցավ նաև «Կառուցողական էքսպեդիցիան»։ Շինարարական աշխատանքները քաղաքում սկսվել էին դեռևս 1792 թ. և դրանք հիմնականում ավարտվեցին XIX դարի սկզբներին[36]։

Իր հիմնադրումից անմիջապես հետո Գրիգորիոպոլը հայտնի դարձավ իբրև առևտրական քաղաք։ Խոշոր վաճառականությունը, օգտվելով ռուսական կառավարության կողմից 1796 թ. տրամադրված դրամական փոխատվությունից, ստեղծեց 95 հոգուց բաղկացած առևտրա-վաճառականական ընկերություն, որն, ըստ էության, Ռուսաստանին նոր միացված մարզի առաջին առևտրական կազմակերպությունն էր։ Նա էլ հենց առաջիններից մեկն էր, որ Ռուսաստանի հարավում հիմք դրեց արևելյան առևտրին։

Քաղաքի ներսում առևտրի ընդլայնման նպատակով խոշոր առևտրականներն իրենց միջոցներով կառուցեցին կրպակներ և նահանգային իշխանությունների առջև հարց դրեցին Գրիգորիոպոլում տոնավաճառներ կազմակերպելու մասին։

Խոշոր վաճառականների այս գործողություններն առաջ բերեցին մանր առևտրականների և արհեստավորների դժգոհությունը, որոնք վերաբնակվելով Ռուսաստանում՝ հույս ունեին դուրս գալ տնտեսական գործունեության առավել լայն ասպարեզ։ Այդ դժգոհությունը սրեց հակասությունը մանր ու խոշոր առևտրականների միջև և 1796—1802 թթ. հայաբնակ գաղութի ներքնախավերի բացահայտ ելույթների պատճառ դարձավ։ Սոցիալական շերտավորումը, որը նշմարվում էր Գրիգորիոպոլում հաստատվելուց անմիջապես հետո, հանգեցրեց նրան, որ գաղթավայրի հիմնադրման սկզբից ևեթ սկսեց ձևավորվել առևտրա-արդյունաբերական մի խավ, որը հայ բնակչության հիմնական զանգվածներից անջրպետվում էր ինչպես իր կուտակած հարստությամբ, այնպես էլ գաղութում ունեցած դիրքով։

Գրիգորիոպոլում առևտրա-արդյունաբերական շերտերի զարգացման ու նրանց՝ իբրև որոշակիորեն առանձնացված խավի երևան գալուն նպաստեցին մի շարք գործոններ։ Ամենաէականն այն էր, որ Ռուսաստանը հայ վաճառականության առջև բացել էր ազատ ձեռներեցության ասպարեզ։ Եթե սկզբում Գրիգորիոպոլի խոշոր վաճառականությունը բավարարվում էր միայն արևելյան (թուրքական, մոլդավական, վալաքյան) շուկաներով, ապա հետագայում նա իր հայացքն ուղղեց դեպի ռուսական շուկաները։ 1839 թ. Նահանգային օրացույցում նշվում է, որ Գրիգորիոպոլի առևտրականները

36 Տե՛ս Հայկական ՍՍՀ ԿՊՊԱ, ֆ. 56, ց. 3, գ. 22, թ. 198—201։

վաճառում են «կարմիր ապրանք» (բամբակյա, բրդյա և մետաքսյա կտորեղեն), որն ստանում են Մոսկվայից և Խարկովից։

Բացի «կարմիր ապրանք»-ից, Գրիգորիոպոլի խոշոր առևտրականները վաճառում էին նաև հացահատիկ։ Սակայն հացահատիկի առևտուրը կենտրոնացած էր միայն այն սակավաթիվ առևտրականների և կալվածատերերի ձեռքում, որոնք հող ունեին կամ այն վարձակալում էին և անմիջապես իրենք էին զբաղվում հացահատիկի արտադրությամբ։ Այսպիսով, Ռուսաստանի հարավում առևտրական հողագործության զարգացման պրոցեսը իր մեջ ներգրավեց նաև Գրիգորիոպոլի հայկական գաղութը։ Գաղութի վաճառականության կորիզը ներքին առևտրով զբաղվող խոշոր առևտրականներն էին։ Մանր առևտրականների գործունեությունը գլխավորապես կապված էր Մոլդավայի և Վալաքիայի հետ։ Ապրանքների անվանացանկում մտնում էին՝ մոլդավական պատրաստի հագուստ, թուրքական ծխախոտ, գինի, ձուկ, ալյուր և այլն։

Հետագայում հայ առևտրականները սկսեցին շրջանառության մեջ դնել ինչպես զուտ ռուսական արտադրության ապրանքներ, այնպես էլ Ռուսաստանի հարավային երկրամասում թողարկվող արտադրանքներ։

Առևտրի զարգացումը և կապը ռուսական շուկաների հետ իրենց հերթին զարկ էին տալիս տեղական արտադրության զարգացմանը։ Օրինակ, գրիգորիոպոլցիների կապը Ռուսաստանի մանածագործական կենտրոնների հետ հասցրեց այն բանին, որ հայկական գաղութում հիմք դրվեց տեքստիլ արդյունաբերության։ Կամ, օգտվելով Նովոռոսիայի նահանգում սեկի (այծի բարձրորակ կաշի) արտադրության համար ստեղծված բարենպաստ պայմաններից, Գրիգորիոպոլում ընդլայնվեց սեկի արտադրությունը։ Եթե իր գոյության առաջին տարիներին Գրիգորիոպոլն ուներ սեկի ընդամենը մեկ գործարան, ապա XIX դարի 70-ական թվականներին դրանց թիվը հասնում էր վեցի[37]։

Գրիգորիոպոլի կաշեգործները արտադրանքի ծավալով Խերսոնի նահանգում գրավում էին առաջնակարգ տեղերից մեկը։

Անասնապահական ընդարձակ բազայի առկայությունը Գրիգորիոպոլի հայերին հնարավորություն ընձեռեց ոչ միայն զբաղվելու կաշվի արտադրությամբ ու վաճառքով, այլև անասունների առևտրով։

Գրիգորիոպոլի անասնավաճառները (նրանք վաճառում էին հիմնականում եզներ և ձիեր, իրենց տրամադրության տակ ունեին նույնիսկ ձիաբուծական գործարան), իրենց ապրանքն ուղարկում էին այլ շուկաներ։ Հայ վաճառականների համար խոշոր եղջերավոր անասուններ վաճառելու ամենահարմար շուկան Գալիցիան էր։

Հայ վաճառականները, որպես կանոն, իրենց ապրանքը ձեռք էին բերում վերավաճառելու համար տեղական տոնավաճառներում և շուկաներում, որտեղ խոշոր և մանր եղջերավոր անասունների լայն ընտրություն կար։ Հատկապես հռչակված էին հայաբնակ Վասիլևկա գյուղի (Արդյություն-Երկայնա-

37 Տե՛ս «Труды Херсонского губернского статистического комитета», кн. I, ч. I, էջ 22։

բաղում իշխանների կալվածը) տոնավաճառները, որոնք տեղի էին ունենում երկու շաբաթը մեկ՝ կիրակի օրը։ Վասիլևկայի շուկաներում վաճառքի հիմնական ապրանքներն էին՝ ձիեր, խոշոր եղջերավոր անասուններ և ոչխարներ։

Միաժամանակ Գրիգորիոպոլի անասնավաճառները տոնավաճառներում և շուկաներում գնում էին անասունների մեծ խմբեր՝ սպանդի համար։ Մորթված անասունը մշակվում էր Գրիգորիոպոլի ճարպագործարանում։ Բացի ճարպագործարանից, Գրիգորիոպոլում կային նաև մոմի գործարաններ։ XIX դարի կեսերին Գրիգորիոպոլում ճարպի ամենամյա վաճառքից ստացած եկամուտը կազմում էր 13.984 ռուբլի, իսկ մոմի գործարանինը՝ 7.100 ռուբլի։ Գրիգորիոպոլի գործարաններում ստացվող ճարպն ու մոմը, հարավային երկրամասի ճարպահալման գործարանների արտադրանքի հետ միասին, Օդեսայի վրայով արտահանվում էին արտասահման, մասնավորապես Անգլիա։

XIX դարի երկրորդ քառորդից Գրիգորիոպոլի տնտեսական կյանքը ըսկըսեց անկում ապրել։ Դրան նպաստեց Ռուսաստանի ֆինանսների մինիստր Կանկրինի գիլդիական ռեֆորմների կենսագործումը։ Այդ ռեֆորմը հայերին զրկեց անմաքս առևտուր անելու իրավունքից։ Գաղթավայրի տնտեսական անկման մյուս հիմնական պատճառն այն էր, որ բուռն կերպով աճող Օդեսան ու Քիշնյովը իրենց էին ձգում Գրիգորիոպոլի խոշոր առևտրականներին ու արդյունաբերողներին։ Օդեսան իր դիրքով նրանց առջև բացում էր գործունեության առավել լայն ասպարեզ, քան հայրենի քաղաքը։ Այդ է պատճառը, որ գրիգորիոպոլցի հայերից շատերը տներ էին գնում Օդեսայում և իրենց գործունեությունը շարունակում այնտեղ, թեև կոչվում էին Գրիգորիոպոլի քաղաքացիներ։

Ինչպես Ռուսաստանի քաղաքների մեծ մասում, այնպես էլ Գրիգորիոպոլում այն ժամանակ առևտրական գործունեությունը գերիշխող էր արդյունաբերականի հանդեպ։ Վերջինս գերազանցապես հանդես էր գալիս մինչկապիտալիստական շրջանի մանր ձեռնարկությունների ձևով։ Բայց եթե ռուսական քաղաքների մեծ մասում դրա հետ էր կապված հասարակական կյանքի հետամնացությունը, ապա պատկերը հայ գաղութում նկատելիորեն այլ էր։ Այստեղ հասարակական կյանքի շատ թե քիչ աշխուժություն էր նըկատվում։

Սկսած XIX դարի առաջին քառորդից նկատելիորեն աշխուժանում է Գրիգորիոպոլի հասարակական կյանքը, որի զարգացման բնորոշ առանձնահատկությունը նրա սերտ կապն էր մայր հայրենիքի՝ Հայաստանի հետ։ Այդ էր պատճառը, որ հայ ժողովրդին հուզող ու նրա ազգային խնդիրները շոշափող անց ու դարձերը լայն արձագանք էին գտնում նաև Գրիգորիոպոլի գաղութում։ XIX դարի սկզբին, ինչպես Ռուսաստանի հայկական մյուս գաղութները, այնպես էլ Գրիգորիոպոլը, ներքաշվել էր այն պայքարի ոլորտը, որ էջմիածնի աթոռի համար մղվում էր երկու հավակնորդների՝ արքեպիսկոպոսներ Դավթի և Դանիելի միջև։ Գրիգորիոպոլի հայ հասարակությունը կրքոտ հետաքրքրություն հանդես բերեց դեպի ռուս-պարսկական (1826—1828) և ռուս-թուրքական (1828—1829) պատերազմները, նրանց ելքի հետ կապելով մայր հայրենիքի ազատագրությունը թուրք-պարսկական լծից։

Գրիգորիոպոլի հայաբնակ գաղութի XIX դարի սկզբի մշակութային կյանքի նշանավոր իրադարձությունը 1806 թ. Մանվել Կյումուշխանեցու ջանքերով բացված ծխական դպրոցն էր։ Նա հայ երեխաներին տալիս էր նախնական-գիտելիքներ մայրենի լեզվից, թվաբանությունից և այլն։ Դպրոցն ավարտած առանձին աշակերտներ իրենց ուսումը շարունակում էին Լազարյան Ճեմարանում։

Ռուսաստանի հայկական իգական դպրոցներից մեկի հիմնադիրն էր հայտնի հասարակական գործիչ Դավիթ Շահինյանը, որի նախաձեռնությամբ 1868 թ. բացվեց «Սրբուհյան դպրոցը»։

XIX դարի երկրորդ քառորդից Գրիգորիոպոլի բնակչության կազմում ընկրսում է աճել մոլդավացիների և ռուսների թիվը։ Քաղաքում սկսում է գործել ռուսական դպրոց, կառուցվում է ուղղափառ եկեղեցի։

40-ական թվականներին սենատի որոշմամբ թույլ է տրվում մոլդավացիներին և ռուսներին ընտրելու իրենց ներկայացուցիչները մագիստրատում և քաղաքային դումայում։ XIX դարի 60—70-ական թվականների բուրժուական ռեֆորմներից հետո անհետացան Գրիգորիոպոլի հայկական ինքնավարության վերջին մնացորդները։ Սոցիալական խոր փոփոխությունները և հասարակության դասակարգային շերտավորումը, ինչպես նաև գաղութի հայ առևտրա-արդյունաբերական շրջանների մերձեցումը ռուս խոշոր առևտրական դասի հետ, փաստորեն նպաստեցին ցարիզմի կողմից անցկացվող այն քաղաքականությանը, որն ուղղված էր Գրիգորիոպոլի հայկական ինքնավարության վերացմանը։ Սակայն հայերին հաջողվեց քաղաքում պահպանել իրենց համայնքը, ստեղծել հոգաբարձություններ, որոնք XX դարի սկզբին, չնայած իրենց եկեղեցական բնույթին, հիմնականում ծառայում էին աշխարհիկ նպատակների։

ՂՐԻՄ։ 1778 թ. արտագաղթեցմամբ հանդչած Ղրիմի հայկական գաղութը XVIII դարի վերջին և XIX դարի առաջին տասնամյակներին հայերի՝ դեպի Ղրիմ կատարած տեղաշարժերի շնորհիվ կրկին վերակենդանանում է։ Այս ուղղությամբ առաջին խոշոր իրադարձությունը հայ կաթոլիկ համայնքի վերադարձն էր Եկատերինոսլավից Ղարասուբազար, որ տեղի ունեցավ 1790 թ.։ Վերադարձածների թիվը հասնում էր շուրջ 1000 մարդու, որոնց մեջ կային նաև լուսավորչական հայեր, ինչպես և 123 հույներ[38]։ Հայ կաթոլիկ համայնքի համար Ղրիմում վերստին պահպանվեցին 1779 թ. նոյեմբերի 14-ի հրովարտակով առանձնաշնորհված արտոնությունները. համայնքի անդամները դասվում էին պետական բնակիչների շարքը, տասը տարի ժամկետով ազատվում պետական հարկերից ու տուրքերից, կարող էին զբաղվել արհեստներով, առևտրով, գյուղատնտեսությամբ, հիմնել գործարաններ ու ֆաբրիկաներ, ներքին գործերը վարելու համար պահել դատարան[39]։

XVIII դարի 90-ական թվականներին ղրիմահայ գաղութի կազմակերպմանը սատարում է ռուսահայ թեմի առաջնորդ Հովսեփ Արղությանը, որն այդ

38 ՍՍՀՄ ԿՊՊԱ, ֆ. 1286, ց. 1, գ. 46, թ. 103—104։

39 Նույն տեղում, ֆ. 1152, գ. 129, թ. 17—18։

նպատակով 1787 թ. ձեռնարկում է ուղևորություն դեպի Ղրիմ։ Ղրիմահայ անշքացած բնակավայրերը և հուշարձանները ցնցող տպավորություն են գործում նրա վրա. «Հույժ ցավալի էր մեզ համար տեսնել մեր քաղաքների, եկեղեցիների ու վանքերի ավերակները.— գրում էր նա,— լի տրտմությամբ այնտեղից (Ղրիմից—խմբ.) վերադարձանք Նախիջևան, նոյեմբերի 14-ին»[40]։ Ռուսական կառավարության կենտրոնական ու նահանգական իշխանությունների զանազան ատյաններին Հ. Արղությանը ներկայացնում է Ղրիմի մի շարք վայրերը, մասնավորապես Թեոդոսիա և Հին Ղրիմ կիսավեր քաղաքները հայերին տրամադրելու և Թուրքիայից դեպի Ղրիմ հայերի տեղափոխությունները խրախուսելու առաջարկություններ ու ծրագրեր, որոնց մի մասը, փոքր ուշացումով, իրականացվում է[41]։

1799 թ. հոկտեմբերի 28-ին հրապարակվեց կայսերական հրովարտակ, որը առանձնաշնորհումների հարցում կրկնելով հայերին նախկինում տրված արտոնությունները, նրանց թույլ էր տալիս բնակություն հաստատել Թերակղզում։ Հրովարտակը Հին Ղրիմ քաղաքը, 12 հազար դեսյատին հողով, հատկացնում էր հայերին, նրանց արտոնում սեփական ռատուշա (քաղաքապետարան) ունենալու իրավունք, իսկ քաղաքին մերձակա սբ. Խաչ հայկական վանքին էր վերադարձնում նախկին կալվածքները։

Հին Ղրիմ (երբեմնի Սուրխաթ) քաղաքի բնակեցումը հայերով հիմնականում սկսվեց 1806—1808 թթ., երբ այդ գործը ստանձնեց այնտեղ բացված հայկական ռատուշան։ Վերջինիս տվյալներով, 1810 թ. քաղաքն արդեն ուներ 1640 բնակիչ, որոնք կառուցել էին 165 նոր տուն, 4 քարվանսարա, 95 կրպակ, 6 սրճարան և այլն[42], իսկ XIX դարի կեսերին այնտեղ ապրում էր 4000 մարդ, որոնց մեջ այլազգիները նկատելի փոքրամասնություն էին կազմում։

Գաղութի սկզբնավորողներից էին Նոր Նախիջևանից Թերակղզի վերադարձած նախկին ղրիմահայերը։ Սրանց հարցը երկար տարիներ կռվախնձոր էր դարձել Նոր Նախիջևանի մագիստրատի և նահանգական ու տեղական իշխանությունների միջև։ Խնդիրը ձգձգվեց երկու տասնամյակ, մինչև որ 1824 թ. օգոստոսի 31-ին կառավարիչ սենատը փախստականների մի մասին, 236 ընտանիքի, որոնք Նոր Նախիջևանում չունեին տուն ու տեղ և առհասարակ որևէ անշարժ գույք, թույլ տվեց մնալ Ղրիմում[43]։ Մյուս փախստականները պարտավոր էին վերադառնալ Նոր Նախիջևան։ Այսպիսով, Ղրիմում մնում էր ամենաաղքատ դասը, սակայն Նոր Նախիջևանում գույք ունեցող փախստականների հիմնական մասն էլ տարբեր պատրվակներով խուսափեց այնտեղ վերադառնալուց և հաստատվեց Ղրիմում։ Ավելին, հետագայում ևս առանձին ընտանիքներ շարունակում էին Նոր Նախիջևանից տեղափոխվել Ղրիմ։

---

40 «Դիվան հայոց պատմության», գիրք Թ, Թիֆլիս, 1911, էջ 14։

41 Հայկական ՍՍՀ ԿՊՊԱ, ֆ. 139, ց. 1, գ. 1465, տե՛ս նաև ՍՍՀՄ ԿՊՊԱ, ֆ. 1374, ց. 2, գ. 1815, թթ. 21, 22, 89։

42 Ղրիմի մարզային արխիվ, ֆ. 67, ց. 1, գ. 35, թ. 24։

43 Նույն տեղում, գ. 143, թ. 2։

*Հայության շարքերը Ղրիմում ստվարանում էին գրիգորիոպոլցիների հաշվին։ 1802 թ. հունվարի 30-ին կառավարիչ սենատին իջեցված բարձրագույն հրամանը, նկատի ունենալով Գրիգորիոպոլի անհարմար դիրքը առևտրի և արհեստագործության զարգացման համար, նրա բնակիչներին թույլ էր տալիս տեղափոխվել Ղրիմ, Նոր Նախիջևան և այլուր։ Այդ նույն թվականին նշանակալից թվով գրիգորիոպոլցիներ բնակություն հաստատեցին Հին Ղրիմում. սրանք այն աղքատ հայ ընտանիքներն էին, որոնք հեռացվել էին Գրիգորիոպոլից՝ նրանց «ազգակիցների միջև խաղաղություն հաստատելու համար»[44]։*

*Ղրիմահայության գերակշիռ մասը կազմում էին արևմտահայերը, որոնք Ղրիմ էին գաղթում՝ այնտեղ տեսնելով առևտրի, արհեստագործության ու այգեգործության զարգացման լայն հեռանկարներ և լուրջ հույսեր ակնկալելով ռուսական կառավարության հովանավորությունից ու օժանդակությունից։ 1820-ական թվականներին ռուսական իշխանությունների և արևմտահայ կաթոլիկների ներկայացուցիչների միջև նույնիսկ երկարատև պաշտոնական գրագրություն էր վարվում Թուրքիայում ապրող 15—20 հազար ընտանիք հայ կաթոլիկներին Թեոդոսիա տեղափոխելու վերաբերյալ[45]։*

*Սկսած XVIII դարի վերջերից ընդհուպ մինչև առաջին համաշխարհային պատերազմը հայերը պարբերաբար Թուրքիայից գալիս և հաստատվում էին Ղրիմում։ Նրանց մի մասը իր բնակությանը օրինական տեսք էր տալիս և, անցնելով բյուրոկրատական բոլոր ատյանները, ընդունում ռուսահպատակություն, իսկ մյուս մասը, թեև չէր դիմում այդ քայլին և ձևականորեն մնում էր թուրքահպատակ, սակայն ըստ էության Ղրիմի բնակիչ էր, և առհասարակ Թուրքիա գնալու ոչ մի մտադրություն չուներ։*

*Հայերի դեպի Ղրիմ կատարած տեղափոխումների հետևանքով հայ բընակչության թիվը թերակղզում տասնամյակ առ տասնամյակ մեծանում էր. XIX դարի 40-ական թվականների կեսերին այն հավասար էր 5400-ի[46], 60-ական թվականների վերջերին՝ 7000-ի[47]։ Այս թվաքանակի մեջ չէին մըտնում հարյուրավոր ղրիմահայ ընտանիքներ, որոնք ձևականորեն ռուսահպատակություն դեռ չէին ընդունել։ Հայ բնակչությունը հիմնականում կենտրոնացած էր Հին Ղրիմում, Ղարասուբազարում, Սիմֆերոպոլում, Եվպատորիայում, Արմյանսկի Բազարում, Թեոդոսիայում, Յալթայում, Կերչում և բազմաթիվ գյուղատիպ վայրերում։*

*Վարչա-կառավարման տեսակետից գաղութը լիովին մտնում էր նահանգական և տեղական իշխանությունների իրավասության տակ։ Դրան զուգընթաց 1779 և 1799 թվականների հրովարտակների արտոնություններից օգտվող Հին Ղրիմի և Ղարասուբազարի հայ համայնքները գտնվում էին որոշակի ինքնավար վիճակում. Հին Ղրիմում 1808—1870 թթ. գործում էր հայկական քա-*

44 *ՍՍՀՄ ԿՊՊԱ, ֆ. 383, ց. 29, գ. 188, թ. 1բ։*

45 *ՌԱՔԱ, ֆ. գլխավոր արխիվ, Պ—19, 1820, գ. 1, թ. 5բ։*

46 *ՍՍՀՄ ԿՊՊԱ, ֆ. 1281, ց. 4, գ. 49, թ. 88։*

47 *А. К. Завадский-Краснопольский,* Крым, природа, население и особенности края, СПб., 1874, стр. 6.

ղաքային ռատուշան, իսկ Ղարասուբազարում 1790—1871 թթ.՝ հայ կաթոլիկների դատարանը։

Հին Ղրիմի հայկական քաղաքային ռատուշան և Ղարասուբազարի հայ կաթոլիկների դատարանը վարում էին այդ գաղթօջախների վարչական, տնտեսական և դատական գործերը. սրանք ծառայում էին հայ առևտրա-արհեստավորական և հողատերերի ունևոր խավի շահերին և տեղում իրագործում ցարական վերադաս իշխանությունների կարգադրություններն ու որոշումները։ Այս օրգանները ընտրվում էին հայ համայնքների կողմից, գաղտնի քվեարկությամբ[48]։ Հին Ղրիմի ռատուշան կազմված էր բուրգոմիստրից և երկու ռատմաններից։ Սրանցից բացի, համայնքը ընտրում էր նաև քաղաքագլուխ և ավագ (староста)։ Ղարասուբազարի հայ կաթոլիկների դատարանի մեջ մտնում էին քաղաքագլուխը և երեք ատենակալներ, որոնցից մեկը դատարանի նախագահն էր[49]։ Բոլոր այս պաշտոնյաները, որպես կանոն, ընտրվում էին վաճառականներից, առևտրական և արհեստավորական դասի մեծահարուստ ներկայացուցիչներից։

Ռատուշան և դատարանը շաբաթական 2—3 անգամ գումարում էին նիստեր, քննարկում և վճիռներ կայացնում քաղաքացիական և քրեական հարցերի գծով։ Սակայն դրանց գործունեության հիմնական բնագավառը կազմում էին այդ երկու քաղաքների բարեկարգման, տնտեսական զարգացման, առևտրի և արհեստագործության կազմակերպման, հարկերի ու տուրքերի գանձման խնդիրները, խնամակալական և ժառանգական գործերը, որբոց դատարանը։ Սրանց նիստերը վարվում էին հայերեն, իսկ գործավարությունը՝ ռուսերեն։

Ղրիմահայ կյանքում եկեղեցին, բացի զուտ կրոնական հարցերից, միջամտում էր համայնքի աշխարհիկ խնդիրներին։ Մինչև 1803 թվականը ղրիմահայության եկեղեցական գործերը վարում էր Նոր Նախիջևանի հոգևոր վարչությունը, իսկ հետագայում՝ Ղարասուբազարի հոգևոր վարչությունը, որին զուգընթաց Ղրիմում նշանակվում էին առաջնորդական հաջորդներ։ 1842 թ. հաջորդը իր տեղը զիջում է Ղրիմի հայ եկեղեցիների և սբ. Խաչ վանքի գլխավոր հոգաբարձուին, որի իրավասության տակ էին գտնվում տնտեսական բոլոր գործերն ու դրամական հաշիվները։ Տեղերում եկեղեցիների տնտեսական գործերը վարում էին երեցփոխանները, կաթողիկոսի կամ թեմակալի կողմից նշանակված կառավարիչները։

Վերստին հաստատվելով Տավրիկիայում, հայերը սկսում են նկատելի դեր խաղալ նահանգի տնտեսական կյանքում։ Նրանց զբաղմունքների մեջ հիմնական տեղ էին բռնում առևտուրը, արհեստագործությունն ու երկրագործությունը։

Կապված լինելով ռուսական ներքին շուկայի, Արևելքի և հատկապես Կովկասի ու Թուրքիայի առևտրա-արհեստավորական շրջանների հետ, ղրիմահայերը զգալիորեն նպաստում էին տավրիկյան առևտրի զարթոնքին և ծավալմանը, հանդես գալով որպես հմուտ առևտրականներ։

---

48 Ղրիմի մարզային արխիվ, ֆ. 67, ց. 1, գ. 517, թ. 37։

49 Նույն տեղում, ֆ. 179, ց. 1, գ. 324, թ. 5։

Ղրիմահայ առևտրի ընդլայնմանը սկզբնապես նպաստում էին հրովարտակներով նրանց շնորհված արտոնությունները։ 1807 թ. սկսած, երբ ցարական մանիֆեստով ղրիմահայ առևտուրը ևս փորձեցին ներառնել գիլդիաների մեջ, հայ համայնքները բողոքի վճռական ձայն բարձրացրին։ Տարիներ տևող այդ պայքարը ավարտվեց նրանց օգտին։ 1832 թ. փետրվարի 29-ի կայսերական հրամանով նրանց նախկին իրավունքները պահպանվեցին։ Այս, իհարկե, չէր նշանակում, թե հայերը մնացել էին գիլդիաներից դուրս։ Իր կրպակում ներփակված առևտրականի ու չարչու կողքին XIX դարում Ղրիմի զանազան քաղաքների գիլդիաներում ամուր դիրքեր էին բռնել նաև հայ վաճառականները։

Տակավին XVIII դարի վերջերին և XIX դարի սկզբներին, երբ կառավարությունը փորձում էր քայլեր ձեռնարկել Թերակղզու տնտեսական վիճակը շտկելու համար, թե՛ բուն ղրիմահայերը և թե՛ Նոր Նախիջևանից ու Թուրքիայից Ղրիմի նավահանգիստները ժամանած հայ առևտրականները, հաճախ իրենց սեփական նավերով[50], աշխույժ առևտուր էին անում, նպաստելով Թուրքիայի, Կովկասի և Չերքեզիայի հետ Թերակղզու առևտրական կապերի ընդլայնմանը։ Նրանք էին նաև հիմնականում Կուբան ներմուծում ռուսական ապրանքներ[51]։ XIX դարի առաջին կեսին ղրիմահայերը աչքի էին ընկնում նաև Կոստանդնուպոլսի և Տրապիզոնի հետ կատարվող առևտրի մեջ։ Առևտրի ապրանքների շարքում հիմնական տեղը բռնում էին պարենամթերքը և հագուստեղենը։ Հայ առևտրականները այս շրջանում Ղրիմ էին բերում մետաքսյա և բրդյա գործվածքներ, պատրաստի հագուստեղեն, բրինձ, գինի, ձեթ, շաքար, սուրճ, սիսեռ, խավյար, պղինձ, ձյութ, շինափայտ[52]։ Ղրիմից նրանք տանում էին բուրդ, կաշի, մշակված կաշվեղեն, ալյուր, ցորեն, վարսակ և այլն[53]։

Ռատուշայի և դատարանի միջոցով Ղարասուբազարի ու Հին Ղրիմի և առհասարակ ղրիմահայ հարուստ առևտրականները մասնակցում էին կայսրության զանազան քաղաքներում կազմակերպված առևտրական միջոցառումներին, աճուրդներին, տոնավաճառներին։ Նրանք, մանավանդ, Խարկովի բոլոր տոնավաճառների մասնակիցներն էին, որտեղից Ղրիմ էին բերում մեծաքանակ ապրանքներ։

Ետռեֆորմյան տեղաշարժերին համեմատ ղրիմահայերի առևտրական գործունեությունը նոր լիցք ու երանգ է ստանում։ Ղրիմի պատերազմի ժամանակ հայ վաճառականությունը իր վրա էր վերցրել Սևաստոպոլի պատերազմական կարիքների մատակարարման զգալի բաժինը, իսկ 60—70-ական թվականներին ղրիմահայ առևտրական դասը, հարմարվելով կապիտալիստական զարգացման ընթացքին, չվրիպեց ներդրումներ կատարել նաև նահան-

50 ԿՊՌՊԱ, ֆ. 52, գ. 336, մաս III, թթ. 32—33, 77—78, մաս IV, թթ. 8—10, 12։
51 ՌԱՔԱ, ֆ. Գլխ. արխիվ, ու—ր 3, գ. 259, թ. 34։
52 *Сумароков*, Досуги крымского судьи, ч. I, стр. 130—131.
53 Հ. Տէր-Աբրահամյան, Պատմութիւն Խրիմու, Թեոդոսիա, 1865, էջ 119։

գում ծավալված երկաթուղային շինարարության մեջ[54]։ XIX դարի երկրորդ կեսին հայերի առևտրական գործառնությունները սկսում են կենտրոնանալ Սիմֆերոպոլում. դրանք միաժամանակ լայն չափեր են ընդունում Արմյանսկի Բազարում, Ղարասուբազարում, Եվպատորիայում, Թեոդոսիայում։

Ղրիմահայ կյանքում կարևոր տեղ էին գրավում գյուղատնտեսական զբաղմունքները՝ այգեգործությունը, ծխախոտագործությունը, բանջարաբուծությունը և դաշտավարությունը։ Սկզբնապես հողի հետ ամենից շատ կապված էր Հին Ղրիմի հայ համայնքը, որի օգտագործմանը հանձնված էին ընդարձակ հողատարածություններ՝ ջրերով ու անտառով հանդերձ։ Քաղաքում բնակություն հաստատած ռուսների, հույների և թաթարների համար համայնքը սահմանել էր հողօգտագործման հատուկ կարգ, որի համաձայն առաջին երկուսը մուծում էին քաղաքային բոլոր հարկերն ու տուրքերը, որպիսիք տալիս էին հայերը, և բացի դրանից՝ կատարում պարհակներ, իսկ թաթարներին այդ կարգը քաղաքի հայ համայնքի նկատմամբ դնում էր այն վիճակում, ինչպիսի դրության մեջ գտնվում էին կալվածատիրական հողերի վրա ապրող թաթար գյուղացիներն իրենց կալվածատերերի հանդեպ. նրանք պարտավոր էին քաղաքի հայ համայնքին վճարել տասանորդ և տարեկան 5—8 օր աշխատել նրա օգտին։ Հին Ղրիմում հաստատվել ցանկացող թաթարների նկատմամբ այդպիսի կարգ էր սահմանվել, որպեսզի նրանք շքեին իրենց թաթար հողատերերին[55]։

Ղրիմահայերի մեջ կային խոշոր հողատերեր և նրանց կողքին՝ սակավահող ու հողազուրկ գյուղաբնակ ընտանիքներ։ Խոշոր հողատերերի դասը նախկին պապենական կալվածքների ժառանգական հաջորդը չէր. նրա ներկայացուցիչները առևտրական ունևոր գործատերեր էին, որոնք քայլ առ քայլ թափանցում էին հողատիրության ոլորտը։ Ժամանակի ընթացքում խոշոր հողատերեր էին դարձել Նալբանդովների, Սեֆերովների, Թոփալովների, Սպենդիարովների, Այվազովսկիների, Օբերովների և այլ ընտանիքներ, որոնցից յուրաքանչյուրը տիրում էր 1000 դեսյատինից ավելի հողատարածություններ։

Հայ աշխատավորության այն մասը, որը կապված էր հողի հետ, զգալի դեր խաղաց Թերակղզում բանջարաբուծության և ծխախոտագործության տարածման ու զարգացման գործում։ Արևմտահայերը Ղրիմում ծխախոտի «սամսոն» և «տրապիզոն» տեսակների տարածողներից էին, նրանք մեծ համարում ունեին նաև որպես հմուտ այգեպաններ ու բանջարաբույծներ։

Խոշոր հողատեր էր ղրիմահայ եկեղեցին։ Սբ. Խաչ վանքը Հին Ղրիմից ոչ հեռու տիրում էր 1215 դեսյատին կալվածքի՝ անտառներով, վարելահողերով և այգիներով հանդերձ[56], իսկ Պերեկոպի գավառում նրա «Ադժի Ղայղաչ» անունով հողամասը հավասար էր 2767 դեսյատինի[57]։ Վանքը այգի ուներ նաև

54 Հ. Տեր-Աբրահամյան, նշվ. աշխ., էջ 120։
55 Ղրիմի մարզային արխիվ, ֆ. 67, ց. 1, գ. 359, թ. 1բ։
56 ՍՍՀՄ ԿՊՊԱ, ֆ. 821, ց. 140, գ. 73, Բ/5, թ. 31բ։
57 Նույն տեղում, թ. 31բ, և 75բ, տե՛ս նաև «Крым» (газета), Симферополь, 1892, № 37։

Սուդակում՝ 17 դեսյատին տարածությամբ[58]։ Վանքապատկան բոլոր հողերը միասին կազմում էին 4000 դեսյատին։ Փոքր ու մեծ հողեր ունեին նաև սբ. Փրկիչ վանքը, Հին Ղրիմի և Թեոդոսիայի հայկական եկեղեցիները։

Հողային այդ տիրույթները եկեղեցին մեծ մասամբ տալիս էր կապալով, բացառությամբ այգիների, որոնց մշակումը կատարում էր վանքը՝ «իրղաթներ» և «մշակներ» պահելով[59]։ 1832—1842 թթ. (չհաշված 1835—1836) սբ. Խաչ վանքի եկամուտները հողերից կազմել էին 14.170 ռուբլի[60]։

Ղրիմի հայ եկեղեցու եկամուտների մի հիմնական մասը, բացի հողերից, գումարվում էր եկեղեցական տուրքերից և գանձումներից, եկեղեցական զանազան շինություններից, առևտրական ձեռնարկներից և այլն։

Ղրիմի տնտեսության մեջ կարևոր դեր էր խաղում արհեստագործությունը։ Հայերը Ղրիմում ճանաչված արհեստավորներ էին՝ ոսկերիչներ, հյուսներ, կոշկակարներ, որմնադիրներ, քարտաշներ, դերձակներ, հացագործներ, գինեգործներ, դարբիններ և այլն։

Ղրիմի հայկական գաղութին բնորոշ էր սոցիալական ընդգծված շերտավորումը։ Այստեղ տեղափոխված հայ գաղթականների մեծամասնությունը աղքատ էր, զուրկ որևէ ունեցվածքից։ Ղրիմահայության ճնշող զանգվածը մեշչանների (քաղաքաբնակների) դասին էր պատկանում, իսկ այդ դասն էլ միատարր չէր. ժամանակի ընթացքում նրանից անջատվում է առևտրա-արհեստավորական հարուստ խավը, իսկ մյուս բևեռում իրենց գոյությունն էին քարշ տալիս աղքատ ու կիսաղքատ արհեստավորների, մանր առևտրականների և օրամշակների ընտանիքները, որոնք տարեցտարի ավելանում էին ի հաշիվ արևմտահայ պանդուխտների։ Գաղութահայ ամենահարուստ դասը վաճառականներն էին, խոշոր հողատերերն ու գործարանատերերը։

Գաղութահայ աշխատավորների ուսին ծանր լուծ էին հարկերն ու տուրքերը, որ նրանք վճարում էին պետությանն ու եկեղեցուն. հրովարտակներով շնորհված արտոնություններից օգտվում էր ղրիմահայության փոքր մասը միայն, այն էլ մինչև 1870 թ., նրա հիմնական զանգվածը վճարում էր սահմանված բոլոր հարկերը, ծանրաբեռնվում պարհակներով, ամեն տեսակի պարտույթներով՝ շնչահարկ, զորապարհակ, հարկ հողից, առևտրական բազմատեսակ մաքսեր և այլն։

Աշխատավորների դրությունը վատթարանում էր եկեղեցական տուրքերի և զանազան մուծումների հետևանքով, որ գանձվում էին քահանաների, հոգևոր կառավարության, թեմի առաջնորդի և էջմիածնի օգտին։ Այս գանձումներին ավելանում էին նվիրակությունները, որոնք պարբերաբար կազմակերպում էին հոգևոր վերադաս մարմինները։

Խաղաղ ու անվտանգ արտաքին պայմանները և տնտեսական համեմատաբար կայունացող վիճակը հնարավորություն են ստեղծում գաղութում մըշակութային կյանքի աշխուժացման համար։ Ղրիմահայերը հիմնել էին դըպրոցներ, տպարան, հրատարակում էին գրքեր և հանդեսներ։

58 ՍՍՀՄ ԿՊՊԱ, ֆ. 821, ց. 140, գ. 78, բ/5, թ. 29—31։

59 Մատենադարան, կաթ. դիվան, թղթ. 8, վ. 62։

60 Նույն տեղում, թղթ. 105, վ. 232։

Ղրիմահայ առաջին դպրոցը հիմնվեց Ղարասուբազարում, 1816 թ., Մ. Կյումուշխանեցու կողմից։ 1820 թ. դպրոցում սովորում էին 80 երեխա[61]։ Տարբեր տարիներում դպրոցներ են կազմակերպվում Հին Ղրիմում, Թեոդոսիայում, Եվպատորիայում, Սիմֆերոպոլում, Կերչում, Օրաբազարում, Սուբաշում և բոլոր այն վայրերում, որտեղ նկատելի թվով հայություն կար։ Տավրիկյան նահանգի հայկական ծխական դպրոցներում 1861 թ. սովորում էին 225 աշակերտ[62], այդ թվում՝ Սիմֆերոպոլում՝ 35, Ղարասուբազարում՝ 56, Հին Ղրիմում՝ 25, Թեոդոսիայում՝ 38, Կերչում՝ 10, Նողայսկում՝ 26, Պերեկոպում՝ 25 և Եվպատորիայում՝ 10 աշակերտ։ Ղրիմահայ ծխական դպրոցները որակյալ դասատուներով ապահովելու համար մերթ ընդ մերթ այս դպրոցներից Լազարյան ճեմարան էին ուղարկվում ընդունակ մի քանի երեխաներ, որոնք այն ավարտելուց հետո վերադառնում էին Ղրիմ՝ մանկավարժական աշխատանքի[63]։

Թեոդոսիայում բացված աղջիկների դպրոցում, բացի կրոնից, հայոց և ռուսաց լեզուներից ու թվաբանությունից, աշակերտուհիները սովորում էին նաև կար ու ձև և այլ «ազգային այժմյան վիճակին պատկանելիք հարկավոր ուսմունքներ»[64]։

Ռուսաստանում գործող հայկական ծխական դպրոցները ենթարկվում էին հայ լուսավորչական եկեղեցու և կրթական գերատեսչություններից անկախ էին։ 1861 թ. լուսավորության մինիստրությունը փորձում է Ղրիմի հայկական ծխական դպրոցները ենթարկել Տավրիկյան նահանգի ուսումնարանների դիրեկցիային, նպատակ ունենալով դպրոցները զրկել ինքնուրույնությունից և ազգային-կրթական դաստիարակման ազատությունից։ Նման փորձերը 40-ական թվականներին, լուսավորության ռեակցիոն մինիստր Ուվարովի ժամանակ, անհաջողության էին մատնվել։ Այժմ էլ Ներքին գործերի մինիստրությունը ընդառաջում է հայ հոգևորականության բողոքներին, ըզգուշացնելով այն աննպաստ քաղաքական տրամադրության մասին, որ հայերի շրջանում անպայման կստեղծվեր կառավարության նկատմամբ։ «Հայ լուսավորչական եկեղեցու իրավունքը կամ ազատությունը խախտող կառավարական ամեն մի միջոցառում,— գրում էր ներքին գործերի մինիստրը,— հակասում է Արևելքում մեր քաղաքական մտադրություններին, որը նպատակ ունի մեր կողմը տրամադրելու արտասահմանյան հայերի միտքը, որոնք մեծ քանակությամբ բնակվում են Թուրքիայի և Պարսկաստանի սահմանամերձ մարզերում, Իրանական Ադրբեջանի գլխավոր քաղաքներում և այնտեղի իրենց դրությամբ ազդում են Արևելքում վարած մեր քաղաքականության վրա»[65]։ Լուսավորության մինիստրությունը առժամանակ հրաժարվում է իր մտադրությունից, իսկ հայկական ծխական դպրոցներն էլ շարունակում են ենթարկվել հայ հոգևոր մարմիններին։ 1868 թ. Էջմիածնի ուսումնական

---

61 Նույն տեղում, թղթ. 36, վավ. 329, թ. 1բ։
62 ՍՍՀՄ ԿՊՊԱ, ֆ. 821, ց. 140, գ. 53, մաս I, թ. 5բ։
63 Մատենադարան, Լազարյան արխիվ, թղթ. 105, վ. 131, 136, 140։
64 «Մասյաց աղավնի», 1860, էջ 42։
65 ՍՍՀՄ ԿՊՊԱ, ֆ. 821, ց. 140, գ. 53, թ. 23բ։

հանձնաժողովը հայկական դպրոցների համար իջեցնում է հատուկ կանոններ։

Ղրիմահայ ուսումնական հաստատությունների շարքում ուսումնա-մանկավարժական գործի դրվածքով խիստ զատորոշվում էր Խալիբյան ուսումնարանը։

1858 թ. հունիսի 4-ին Գ. Այվազովսկու ներկայացրած նախագիծը հաստատվում է Ալեքսանդր II-ի կողմից՝ «Կանոններ հայկազյան ուսումնարանի, որը հաստատվում է Տավրիկյան նահանգի Թեոդոսիա քաղաքում» անվան տակ։ Ռուսական կառավարությունը ուսումնարանի գործունեության մեջ տեսնում էր իր ազդեցությունը Արևելքում և մանավանդ Թուրքիայի հայերի վրա տարածելու լավագույն հեռանկարներ։ Կառավարության հովանավորությունը, Խալիբյանի նյութական աջակցությունն ու եկեղեցական գումարներն օգտագործելու հնարավորությունը Գ. Այվազովսկուն թույլ են տալիս 1858 թ. հոկտեմբերի 14-ին բացել ուսումնարանը։

Առաջին ուսումնական տարում այնտեղ սովորում էին 89 աշակերտ, եղան տարիներ, որ այդ թիվը հասավ 140-ի[66]։

Ուսումնարանը պահվում էր եկեղեցական գումարների, Խալիբյանի կրտակի և սաների վճարումների միջոցով։ Միայն նոր շենքի շինարարության վրա Խալիբյանը ծախսել էր 152 հազար ռուբլի[67]։

1865 թ. ուսումնական տարվանից ուսումնարանը աստիճանաբար անկում է ապրում, հատկապես եկեղեցական գումարներից զրկվելու պատճառով։ 1870 թ. դեկտեմբերի 4-ին կայսերական վճիռ է իջեցվում Խալիբյան ուսումնարանը փակելու մասին, իսկ 1871 թ., 13-ամյա գոյատևումից հետո, այն դադարում է գործել։

Խալիբյան ուսումնարանին առընթեր մեծահասակների համար գործում էր լսարան։ Ուսումնարանն ուներ տպարան, որի անխափան և արդյունավետ աշխատանքի համար մեծ ջանքեր էր թափում Հ. Տեր-Աբրահամյանը, ժամանակի կրթված հայ մտավորականներից մեկը։ Այստեղ տպագրված գրքերը բազմաբնույթ էին. դասագրքերին զուգընթաց հայերեն և ռուսերեն լեզուներով, նշանակալից տպաքանակով, հրատարակվում էին գեղարվեստական ու պատմական գրքեր, թարգմանական և եկեղեցական գրականություն, տարեգրքեր և այլն։ Ուսումնարանի փակվելուց մի փոքր հետո տպարանը ևս դադարեց գործելուց։

Ղրիմահայ գաղութում XIX դարի երկրորդ կեսին հրատարակվում էին երկու պարբերական՝ «Մասյաց աղավնին» և «Դաստիարակը»։ «Մասյաց աղավնին» հայ ընթերցողին ծանոթ էր 1855 թվականից։ 1860 թ. Գ. Այվազովսկին հանդեսի հրատարակումը Փարիզից տեղափոխեց Թեոդոսիա։

Այսպիսով, XVIII—XIX դարերի սահմանագծերում վերստեղծված ղրիմահայ գաղթօջախները, համեմատաբար նպաստավոր պայմաններում, ապրում են տնտեսական և մշակութային նկատելի առաջընթաց և շոշափելի մասնակցություն ցուցաբերում հայ ժողովրդի մշակութային կյանքում կատարված տեղաշարժերին։

---

66 Նույն տեղում, գ. 50/3054, թ. 51։

67 Նույն տեղում, գ. 55/3166, մ. 2, թ. 5։

## 2. ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՂԹԱՎԱՅՐԵՐԸ ԱՐԵՎԵԼՅԱՆ ԵՎՐՈՊԱՅՈՒՄ

*ԲՈՒԿՈՎԻՆԱ։ Բուկովինան 1775 թ. միացվել էր Ավստրիական կայսրությանը։ Այստեղ հայերին ընձեռված արտոնությունները նպաստել էին նրանց թվի ստվարացմանը։ Պակաս նշանակություն չունեցավ նաև այն հանգամանքը, որ մոլդավահայության երբեմնի կենտրոն Սուչավան հայտարարվեց ազատ առևտրական քաղաք։ Այստեղ սկսեցին հավաքվել հատկապես Մոլդովայից և մասամբ Լեհաստանից ու Բուլղարիայից եկող հայերը։ Մոլդովայից հայերի գաղթի գլխավոր պատճառը մոլդովահայերի նկատմամբ երկրում գործադրվող ճնշումներն էին։ Բուկովինայում հայաբնակ խոշոր կենտրոն էր Սուչավան։ XIX դարի սկզբում այնտեղ ապրում էին 200 տուն հայեր։ Բացի Սուչավայից, 30 տուն հայեր ապրում էին Չերնովիցում, իսկ 10 տուն էլ Սիրետում. հայերի ընդհանուր թիվը շուրջ 1200 էր։ Իսկ 1851 թ. նրանց թիվը կրկնապատկվում է և հասնում 2400-ի, որոնցից 1765-ը լուսավորչական էին, իսկ 635-ը՝ կաթոլիկ։ 1857 թ. Սուչավայում արդեն հաշվվում էր 530 հայկական տուն։ 1864 թ. ամբողջ Բուկովինայում հայերի թիվը կազմում էր ավելի քան 1000 ընտանիք[68], մոտավորապես 5000 հոգի։*

*Հայերը Նեգուշտինա գյուղում (Սուչավայի գավառ) 1862 թ. կառուցում են ս. Նիկողայոսի անվան մի եկեղեցի։*

*Սուչավայի մոտ գտնվող Գուրա Հումորուլույ (Հումոր) քաղաքում ևս հայեր էին ապրում, նրանք 1868 թ. կառուցեցին մի եկեղեցի։ Չերնովիցում էլ հետզհետե Լեհաստանից համախմբված հայ կաթոլիկները 1870—1876 թ. բարձրացրին իրենց գեղեցիկ տաճարը։*

*Սկզբնական շրջանում հայերը կարևոր դեր էին խաղում երկրի արտաքին և ներքին առևտրի մեջ։ Նրանք ներմուծում էին զենքեր, գործվածքներ, համեմունքներ, ոսկերչական առարկաներ, արտածելով գյուղատնտեսական արտադրանքներ։ Հայերը զբաղվում էին նաև մի շարք արհեստներով, այդ թվում՝ պատրաստում էին երշիկեղենի և պանրեղենի տեսակներ, ոգելից ըմպելիքներ, զբաղվում կաշեգործությամբ, դեղագործությամբ, ոսկերչությամբ և այլն։*

*XIX դարի երկրորդ կեսին երկրում առևտրի հետզհետե անկման հետևանքով սկսում է նվազել հայերի թիվը։ 1869 թ. Բուկովինայում մնացել էր միայն 1710 հայ, որից 828-ը՝ լուսավորչական և 882-ը՝ կաթոլիկ[69]։*

*1800 թ. Սուչավայում գործում էր աշխարհիկ դպրոց, որի համար 1824 թ. կառուցվեց նոր շենք։ 1831 թ. դպրոց էին հաճախում 71, իսկ 1845 թ.՝ 65 աշակերտ։ Դպրոցն իր ծաղկումն է ապրում սուչավացի հայտնի ասպետ Աստվածատուր Խ. Ջունդի (1825—1897) տնօրինության օրոք։ 1852 թ. Սուչավայի դպրոցում գործում էր նաև դպրոցական թատրոն։*

*Բնիկ սուչավացի էր հայ բժշկության երախտավորներից մեկը՝ դոկտ. Անդրեաս Փոփովիչը (1809—1858)։ Նրա 8 տարվա աշխատանքի արդյունքն է 1850 թ. Կ. Պոլսում տպագրված «Արուեստ երկայնակեցութեան կամ առողջ*

---

68 «Մասյաց աղավնի», 1864, էջ 268։

69 Լ. Բաբայան, Հայերը Մոլդավիայում և Բուկովինայում, Թիֆլիս, 1911, էջ 146։

էրկայն ու երջանիկ ապրելու ուսումը» խորագրով գիրքը, որը 1876 թ. երկրորդ անգամ տպագրվելուց հետո, 1901 թ. թարգմանվեց և հրատարակվեց ռումիներեն։

Բուկովինայի Չեռնովից քաղաքում էր ծնվել Շոպենի աշակերտ և նրա գործերի հրատարակիչ անվանի երգահան Կարլ Միկուլին (1821—1897), որը անմոռանալի անուն է թողել ինչպես Ռումինիայի, այնպես էլ Լեհաստանի երաժշտության պատմության մեջ։ Նա երկրում կատարած բազմաթիվ շրջագայություններից հետո 1850 թ. կազմեց ռումինական ժողովրդական 48 երգերի, դոյնաների, շուրջպարերի և հայդուկային երգերի ժողովածու։ Միկուլին հորինել է նաև լեհերեն և ֆրանսերեն երգեր։

1859 թ. Չեռնովիցում կազմված երաժշտական ընկերության առաջին նախագահն է դառնում երգահան Միկուլիի եղբայր՝ հայազգի ասպետ Հակոբ դե Միկուլին։ Ընկերության նպատակն էր երաժշտությունը ծառայեցնել Բուկովինայում ապրող տարբեր հավատի և ազգության ժողովուրդների միասնությանը[70]։

ՄՈԼԴՈՎԱ։ XIX դարի սկզբին հայերի թիվը Մոլդովայում մոտավորապես 4500 էր։ Ֆոկշանում (Վալաքական մասն էլ միասին) 60 տուն հայ կար, Յասիում՝ 150, Տեկուչում՝ 200, Ռոմանում՝ 110 տուն, Բոտոշանում՝ 400, Տրգու Օկնայում՝ 60 և Գալացում՝ 30[71]։ 1890 թվականին այնտեղ արդեն 5600 հայ կար։ 1850—1860-ական թվականներին Մոլդովայի ինը քաղաքներում ապրում էր 1200 հայ գերդաստան[72], իսկ 1857 թ. հայերի ընդհանուր թիվը հասել էր արդեն 7000-ի[73]։

Առևտրի նոր «Մոլդովական ճանապարհը», որը ընթանում էր Լվով—Մոլդովա—Սիլիստրե—Կ. Պոլիս գծով, XIX դարի կեսին օգտագործվում էր նաև հայ առևտրականների կողմից։ Նրանցից Մկրտիչ Կըրըմլիոն և Հակոբ Յակուբենցն իրենց քարավաններով Դանցիգից բերած սաթը տանում էին Կ. Պոլիս։ Հայերի մի մասը զբաղվում էր կապալառությամբ, իսկ ուրիշները՝ անասնաբուծությամբ և անասնավաճառությամբ։ Վերջիններս մասնակցում էին Մոլդովայում, Տրանսիլվանիայում, Ավստրիայում և այլ երկրներում տեղի ունեցող տոնավաճառներին։ Հայերի մի զգալի մասը զբաղվում էր արհեստներով և համախմբված էր բրեսլաների (համքարությունների) մեջ։

Հատկապես Բոտոշանում հայերը մեծ թափ հաղորդեցին երշիկեղենի և ապուխտեղենի արտադրությանը։ Յասիում արհեստներից շատ հարգի էր նաև հայ ժանյակագործուհիների և դերձակուհիների աշխատանքը։ Հայերը Յասիում (Յաշում) զբաղվում էին նաև սրճագործությամբ, ծխախոտագործությամբ, դերձակությամբ, սեղանավորությամբ և այլն։

1840—1850-ական թվականներին հայերի համար առաջնահերթ խնդիր է դառնում գաղութի ներքին կյանքի կազմակերպումը։ 1840 թ. համայնքի խորհրդակցական ժողովում վավերացվեց հիմնականում Հակոբ Պըյըզլիուի և

---

70 Mihail Gr. Posluşnicu, Istoria Musicei la Români, Bucureşti, 1928, p. 495, 448.

71 Մ. Բժշկեան, Ճանապարհորդութիւն..., էջ 207—209։

72 «Արշալույս Արարատյան», 1864, № 721։

73 «Մասյաց աղավնի», 1857, էջ 99։

Նրա ավագ եղբոր՝ Մկրտիչի կողմից կազմված գաղութի նոր կանոնադրությունը։ Կանոնադրության համաձայն գաղութը ղեկավարվելու էր 5 անդամներից բաղկացած Թաղական խորհրդի կամ Հոգաբարձության միջոցով։ Նրանցից առաջինը՝ նախագահը, զբաղվելու էր եկեղեցիները բարվոքելով, երկրորդը՝ նոր դպրոցներ բացելու և նրանց պահպանության հարցերով, երրորդը՝ պետք է կարգավորեր հայերի միջև ծագած վեճերը, չորրորդը՝ զբաղվելու էր այրիների և որբերի իրավունքների պաշտպանության և այցելու հոգևորականների ընդունելության հարցերով և, վերջապես, հինգերորդը՝ գաղութի բոլոր տեսակի ունեցվածքների տնօրինությամբ։ Հիշյալ կանոնադրությունը գործադրության մեջ դնելու նպատակով Հակոբ Պըլըգլիուն մեկնեց Կ. Պոլիս, ուր և Հակոբ պատրիարքը 1840 թ. իր կոնդակով վավերացրեց այն։ Այսպիսով, գաղութը կազմակերպվում էր և ստեղծում իր աշխարհիկ ղեկավար մարմինը, յուրացնում որոշակի ինքնավարություն։ Բացի կոմիտեի 5 անդամներից, նրանց հետ, իբրև խորհրդականներ, գործում էին նաև 10 անդամներ։

Առաջին քայլը եղավ հայկական դպրոցները երբեմնի խղճուկ վիճակից հանելը։ 1841 թ. նոյեմբերի 8-ին Միհայիլ Ստուրզա իշխանի հրովարտակով վավերացվում է հայկական դպրոցների կանոնադրությունը։ Կարգադրվում է Հանրային կրթության հոգաբարձության հսկողության տակ բացել հայկական դպրոցներ, մյուս հանրային դպրոցների մակարդակով, բայց նախատեսված առարկաներից բացի, վերջիններս պետք է անցնեին նաև հայոց լեզու, կրոն և հայոց պատմություն։ Հայկական դպրոցների շրջանավարտներն այսուհետև իրավունք էին ստանում իրենց ուսումը շարունակելու Յասիի Միհաիլյան ակադեմիայում։ Իշխանական վավերացում ստացավ նաև գաղութի կանոնադրությունը։ Յասիի Թաղականությունը կամ Հոգաբարձությունը. մի տեսակ «կառավարություն» դարձավ մոլդովահայության համար։ Վերջինիս ընտրություններին մասնակցում էին նաև Մոլդովայի մյուս հայաշատ կենտրոնների հոգաբարձություններից երկուական ներկայացուցիչ։ Ընտրող էին դառնում 25 տարեկանը լրացրած ա և բ դասերին (այսինքն ունևոր և միջին) պատկանողները, իսկ ընտրելի՝ 30 տարեկանը լրացրած և միայն ա դասի պատկանող մարդիկ։ Այսպիսով, ցածր խավի պատկանողները չէին կարող ընտրող կամ ընտրվող լինել։ Տվյալ ժամանակաշրջանում բացի Հակոբ Պըլըգլյանի գլխավորած խմբի գործունեությունից, մոլդովահայերի ազգային-մշակութային և իրավական այս շարժման մեջ կար նաև մի այլ խմբակցություն՝ սերդար Եսայի Դրանխոլյանի գլխավորությամբ, որը, ըստ երևույթին, կազմված էր ժողովրդական զանգվածներից և դեմ էր հայ հոգևոր կենտրոններից ինքնուրույնություն ձեռք բերելուն։ Սակայն Հակոբ Պըլըգլյանի կատարած գործի դրական նշանակությունն այն էր, որ նա առաջին անգամ հայերին դուրս բերեց կղզիացումից և նպաստեց հայ և ռումին ժողովուրդների բարեկամությանը։

Մոլդովայի հայերը երկար պայքար մղեցին քաղաքացիական իրավունքներ ստանալու համար։ Վերջապես, 1858 թ. օգոստոսի 7 (19)-ին Փարիզի խորհրդաժողովը Մոլդովայի և Վալաքիայի միացյալ իշխանությունների կազմակերպման սկզբունքների վերաբերյալ կնքած պայմանագրի 46-րդ հոդվա-

*ծում նախատեսում էր. «Քրիստոնեական որևիցե դավանության պատկանող մոլդովացիները և վալաքացիները վայելում են քաղաքացիական իրավունքների հավասարություն»։ Այսպիսով, Մոլդովայի և Վալաքիայի հայերը իբրև «հայ կրոնի պատկանող ռումինացիներ» ընդունվեցին երկրի բնիկների մեծ ընտանիքում[74]։ Սկսած 1858 թ. Մոլդովայի գրեթե բոլոր հայաշատ կենտրոններում բազմաթիվ հայեր ստացան ազնվականական տիտղոսներ և մշտնջենական կալվածներ գնելու, ինչպես նաև քաղաքական կյանքին մասնակցելու իրավունք։*

*Մոլդովայի հայ գաղութը ոչ միայն ներքնապես ուներ իր բովանդակալից կյանքը, այլև հնարավոր չափով կարողանում էր կապեր պահպանել մայր հայրենիքի հետ։ Դեռևս 1811 թ. Բոտոշանում գործում էր «Կտրիճների եղբայրությունը»։ 1866 թ. հիմնադրվեց բարեգործական և մշակութային մի ընկերություն, որը նպաստում էր աղջիկների դպրոցին և օգնում չքավորներին։ 1868 թ. Յասիում ստեղծվեց «Ազգասիրաց» ընկերությունը, որին անդամակցում էին նաև Տըրգու Ֆրումոսի, Ռոմանի, Բակըուի, Տեքուչի, Բոտոշանի և Բեսարաբիայի հայերը, նպատակ ունենալով վառ պահել ազգային զգացումները և սատարել դպրոցին։*

*Մոլդովահայությունը տվեց նաև մի շարք գործիչներ, որոնք զգալի հետք թողեցին հայ ժողովրդի պատմության մեջ։ Նրանցից ամենանշանավորը հայրենիքում գործողականավոր մանկավարժ, պատմաբան և քերականագետ Ստեփանոս Պալասանյանն էր (1837—1889), որը ծագում էր բոտոշանցի հայտնի Պալասան ընտանիքից։*

*1821 թ., երբ տեղի ունեցավ Թուդոր Վլադիմիրեսկուի գլխավորած ազգային-ազատագրական շարժումը, հայ գործիչներից ոմանք ջերմ համակրանք ցուցաբերեցին դեպի այդ պայքարը։ Ինչպես Վալաքիայում, այնպես էլ Տրանսիլվանիայում և Մոլդովայում հայերը աջակցեցին 1848 թ. հեղափոխությանը։*

*Հեղափոխությանը մասնակից հետապնդվող օտարահպատակների թվում հիշվում են նաև երկու սուդեթ (ավստրիական հպատակ) հայեր՝ Ռոմանից՝ Անդրեյ Ջահարիան և Յոն Միսիրը[75]։*

*Հայերը ջերմ համակրություն ցույց տվին Մոլդովայի և Վալաքիայի վերամիավորման և միացյալ Ռումինիայի ստեղծման գործին։ Քաղաքական առաջավոր մեծ գործիչ, վերամիավորված Ռումինիայի առաջին իշխան Ալեքսանդրու Յոան Կուզայի անունը միշտ ջերմ սիրով հիշվեց հայերի կողմից[76]։ Ռումինացի այդ իշխանը հայասեր էր, և համակրանքով է վերաբերվել հայերին[77]։*

*Ռումինացի գիտնական և հայագետ Նիկոլա Յորգան գրել է. «Հայերը երկրին տվեցին բանաստեղծներ, որոնցից էր Պրունկուն, հավաստում են նաև Ասաքիին, իրավաբաններ, ուսուցչապետներ և քաղաքական գործիչներ՝ Պր-*

---

74 Academia Română, Grigorie M. Buluciiu, 1840—1912... Bucureşti, 1914, p. 34.

75 *«Բանբեր Հայաստանի արխիվների», Երևան, 1968, № 3, էջ 200։*

75 Հ. Ճ. Սիրունի, *Ալեքսանդրու Յոան Քուզա—Միության իշխան, «Նոր կյանք», Բուխարեստ, 1970, № 11 (1026)։*

77 *«Մասիս», Կ. Պոլիս, 1860, № 452։*

յըցկիու, Միխիր, Կոյլավ ընտանիքներից»։ Ասաքիևիչ գերդաստանից էր ծագում Մոլդովայի լուսավորության և մշակույթի մեծ ռահվիրան՝ Գեորգե Ասաքին (1788—1869)։ Նա էր, որ հրատարակեց մոլդովական առաջին թերթը, հիմնադրեց ռումիներեն լեզվով առաջին թատրոնն ու օպերան։ Նա բանաստեղծ էր և թատերագիր, անխոնջ տպագրիչ ու դպրոցների վերանորոգիչ, մի խոսքով, «նա անձնավորում է մի ամբողջ ժողովուրդ. նրա կյանքի պատմությունը Մոլդովայի XIX դարի առաջին կեսի պատմությունն է»։ Ասաքին կարևոր դեր խաղաց նաև հայկական դպրոցների ծաղկման և իր տպարանում հայկական՝ «Արամեան» բաժին ստեղծելու գործում։



Վիլմոշ Լազար

Հայ և ռումինական մշակութային կապերի սերտացման գործում մեծ դեր է խաղացել Ասաքիի աշակերտ յասեցի Թեոդոր (Աստվածատուր) Պալասանը, որը 1868—1884 թթ. Յասիում հրատարակել է «Curierul de Jassi» թերթը։ Այն մեծ տարածում է գտել և հաճախ ժողովրդի մեջ հայտնի է եղել «Պալասանի Կուրիեր» անունով։ Նրա թերթին աշխատակցել են ռումինացի հայտնի գրողներ։ Պալասանը իր թերթում հաճախ է հրատարակել հայ ժողովրդին, Հայաստանին վերաբերող նյութեր և ծանոթացրել ռումինացի ընթերցողին։ Նա իր տպարանում հրատարակել է նաև ռումիներեն բազմաթիվ գրքեր։ 1868 թ. հազիվ քսան տարեկան հասակում իր «Suspinele Primăverii» («Գարնանային հառաչանքներ») խորագրով բանաստեղծությունների առաջին ժողովածուն հրատարակեց ֆոկշանցի հայազգի բանաստեղծ Նիկոլայե Պրունկուն։ 1887 թ. նա հրատարակեց նաև իր «Poesii» (բանաստեղծություններ) հատորը։

1861 թ. Ֆոկշանում հրատարակվեց «Buchetul Milcovului» (Միլկովի ծաղկեփունջը) կամ ժողովրդական երգերի հատընտիրը, հայազգի Գրիգոր Մանեայի և Շտ. Իգնատի օժանդակությամբ, ուր երգեր են գրված նաև Գ. Մանեայի կողմից։ Ռումինական ակադեմիայի ձեռագրատանն է պահվում 1839 թ. բոտոշանցի հայազգի Ձերքեզ Գ. Ջոմակի կողմից Միլտոնի «Դրախտ կորուսյալ» գործի ռումիներեն թարգմանությունը, կատարված գրաբարից և ձոնված իր որդի Գրիգոր Մըտըսարին։ 1808 թվականին Յասիում Ներսես քհ. Հարությունյանը մոլդավերենից հայերեն է թարգմանել Նեոֆիտոսի «Գիրք

ճակատամարտութեան»-ը, որից այժմ բազմաթիվ ձեռագիր օրինակներ են պահվում Երևանի և արտասահմանյան մատենադարաններում։

Այս շրջանում հայկական դպրոցները, դուրս գալով նախկին տիրացուական վիճակից, բարձրացվեցին ժամանակի առաջավոր դպրոցների մակարդակին։ Հայ դպրոցների աշակերտներին թույլ տրվեց կրելու հատուկ համազգեստ։ Յասիի հայոց դպրոցը նախապես ուներ 4 դասարան, երկու արտակարգ դասարաններ ևս, որոնցից առաջինը կոչվում էր Հայկական և բաժանված էր երեք ճյուղի՝ ճարտասանական, շարադրական և գեղագրական, իսկ երկրորդը՝ Ֆրանսիական։ Բացի հայերենից և ֆրանսերենից անցնում էին նաև ռումիներեն, լատիներեն և գերմաներեն։ 1847 թ. հիմնվում է նաև աղջիկների դպրոց։ Յասիի դպրոցը մեծ համբավի է արժանանում. այնտեղ սովորում էին նաև ռումինացի, գերմանացի և հունգարացի աշակերտներ։ Ծաղկում են նաև Բոտոշանի, Ռոմանի և Ֆոկշանի հայկական դպրոցները։ Հայկական դպրոցներ են բացվում Բակըու, Տըրգու-Օկնա և Գալաց քաղաքներում։ Հիշյալ քաղաքների մեծ մասում գործում էին նաև աղջիկների դպրոցներ։ Ֆոկշանում գործում էին տղաների՝ ս. Ղևոնդյանց և աղջիկների՝ ս. Հռիփսիմյանց վարժարանները։ 1858 թ. Մոլդովայի հայկական վարժարաններում սովորում էր 365 աշակերտ։

Յասիում 1847 թ. հիմնվեց հայկական առաջին տպարանը, որը լույս ընծայեց հայկական դպրոցների համար անհրաժեշտ դասագրքեր, այդ թվում՝ «Այբբենարան», «Քրիստոնեական» (1847), «Աղօթագիրք» (1850), ռումիներենով մոլդովահայերի վերազարթման շարժմանը վերաբերող փաստաթղթերի մի ժողովածու (1853) և այլն։ «Այբբենարանի» առաջին էջում զետեղված էր Մեսրոպ Մաշտոցի նկարը։

ՎԱԼԱՔԻԱ, ՕԼՏԵՆԻԱ ԵՎ ԴՈԲՐՈՒՋԱ[78]։ XVIII—XIX դարերի ընթացքում բազմաթիվ հայ նոր գաղթականներ, հիմնականում Բուլղարիայի վրայով, եկան և հաստատվեցին Բուխարեստում, ինչպես նաև Պլոեշտում, Տրգովիշտեում, Պիտեշտում, Ֆոկշանում (Վալաքիայի մասում), Բրըիլայում, Կրայովայում, Կոնստանցայում և այլն։ Վալաքիայի հայերի կենտրոնը շարունակում է մնալ Բուխարեստը, ուր հայերի թիվը հետզհետե ստվարանում է։ 1810 թ. այնտեղ Ռուսչուկից գաղթած 40-ի չափ հայ ընտանիք է հիշվում։ Դարի սկզբին հիշատակվում է շուրջ 120 տուն հայ, որն ըստ 1829 թ. տվյալների, բարձրանում է 260-ի (կամ 750 անձի)։ 1837 թ. Բուխարեստում արդեն կար 400 տուն, իսկ 1853 թ. հայերի ընդհանուր թիվը հավասար էր 2000 հոգու[79]։ Պլոեշտ քաղաքում ևս XIX դարի սկզբում բավական թվով հայեր էին ապրում։ Արճեշում 1846—1848 թ. կային ունևոր հայ և ռուս առևտրականներ։ Արճեշի մոտ գտնվող Պիտեշտ քաղաքում ևս XIX դարում կար հայկական գաղութ։ Սակավաթիվ հայեր կային նաև Ջուրջու քաղաքում։ Դարի ըս-

78 Վալաքիան (Մունտենիան) կիսանկախ իշխանություն էր։ 1859 թ. այն միանալով Մոլդովայի հետ, կազմեց ապագա ռումինական պետությունը։ Փոքր Վալաքիա անունով հայտնի էր Վալաքիայից արևմուտք գտնվող Օլտենիա նահանգը։ Իսկ Վալաքիայից արևելք գտնվում էր Դոբրուջան։

79 Ղ. Ալիշան, Քաղաքական աշխարհագրութիւն, Վենետիկ, 1853, էջ 495։

կրզբին հայ առևտրականները գործում էին նաև Օլտենիայի Կրայովա և Վըլ-Օկնա (Ռըմնիկու-Վըլչեա) քաղաքներում։ Հայեր կային Դոբրուջայի Կոնստանցա և Տուլչա քաղաքներում։

Թեև Վալաքիայի և հարևան երկու մյուս նահանգների հայ ազգաբնակչության թվի մասին, բացի Բուխարեստից, ճշգրիտ տվյալներ չկան, սակայն հայերի մոտավոր թիվը այս շրջանում հասնում էր շուրջ 3000 հոգու։

Վալաքիայի և մասնավորապես Բուխարեստի հայերի սոցիալական կազմը շատ խայտաբղետ էր։ Սակավաթիվ մեծ հողատերերի և մեծաքանակ ապրանքներ վաճառողների կողքին կային միջին խավին պատկանող բազմաթիվ հայ փերեզակներ և արհեստավորներ։ Սակայն Բուխարեստի հայ ազգաբընակչության ճնշող մասը կազմում էր չքավորությունը։ Հայ առևտրականները զբաղվում էին տարբեր տեսակի ապրանքների վաճառքով։ Նրանք առևտրական կապեր ունեին Թուրքիայի, Տրանսիլվանիայի, ինչպես նաև Դանուբից այն կողմ ապրող բուլղարահայերի հետ։ Բուխարեստի հայ խոշոր առևտրականներից էր Կարապետ Անուշը, որը զբաղվում էր մետաքսեղենի և ոսկեղենի վաճառքով։

Վալաքիայի և Բուխարեստի տնտեսական կյանքում որոշակի դեր էին խաղում հայ արհեստավորները, որոնք համախմբված էին համքարությունների մեջ։

XVIII դարի վերջերից մինչև 1821 թ. Բուխարեստում հռչակված էր հայազգի հացագործ Պապիկը (ռում. Babic), որը և դարձել էր Բուխարեստի հացագործների ընդհանուր բրեսլայի նախագահը։ 1820 թ. հիշվում է «Compania Armenilor»-ը, որը 1821 թ. երկրի առևտրական և արհեստակցական խմբակցությունների շարքում գրավում էր 15-րդ տեղը։ 1821 թ. Բուխարեստի հայկական բրեսլան 37 անդամ ուներ։

Բուխարեստում հայերը ունեցել են նաև հյուրանոցներ։ 1847 թ. Բուխարեստի հայոց թաղականությունը գնել էր մի իջևանատուն, որի հասույթը հատկացվում էր հայկական դպրոցին և եկեղեցուն։

XIX դարի 30-ական թվականներից հայերը դարձյալ սկսում են կարևոր դեր խաղալ երկրի տնտեսական կյանքում։ Այդ ժամանակ հիշատակված 3269 պատենտավոր առևտրականների և արհեստավորների շարքում գործում էին նաև 111 հայեր։ Բուխարեստի հայերի գլխավոր զբաղմունքներից մեկը ծխախոտագործությունն էր։ Հայտնի հայ ծխախոտագործներից էին Գրիգոր Կարապետը, Ռահել Արմենունը (Հայը), Հաջի Կարապետ Դանդանաօղլուն, Հաջի Սամուել Արմենունը, Կարապետ Հաջի Ալթունյանը, Յոսեպ (Հովսեփ) Հովհաննեսը և ուրիշներ։ Ֆոկշանում հայերը զբաղվում էին նաև մետաքսի արդյունաբերությամբ[80]։

XIX դարի 30-ական թվականներից նկատելիորեն աշխուժանում է Բուխարեստի հայ գաղութի ներքին կյանքը։ 1833 թ. Մկրտիչ Խաչիկովի նախաձեռնությամբ հիմնադրվում է «Սէր անուն Յիսուսի» ընկերությունը։ Ընկերությունը գործում է երկար տարիներ և անդամավճարների միջոցով հաջողվում է գնել կալվածքներ, որոնց հասույթով ապահովվում են Բուխարեստի հայկա-

[80] Academia Română, *Grigorie M. Buluclіu* (1840—1912)... Bucureşti, 1914, p. 24.

կան եկեղեցին և դպրոցը։ 1838 թ. կազմվում է «Արարատյան» ընկերությունը, իսկ 1842 թ. «Պուքրեշի ուսումնասեր ընկերություն Արարատյան»-ը, որը տասնյակ տարիներ սատարում է դպրոցին և հիմնում աղջիկների առաջին հայկական դպրոցը։ Ավելի ուշ ստեղծվում է նաև «Ընթերցասեր ընկերություն»-ը, որը 1869 թ. հովանավորում էր դպրոցը։

Վալաքիայի և Բուխարեստի հայերը միշտ աշխատել են կապ պահպանել իրենց հեռավոր հայրենիքի հետ։ Նրանք ևս նվիրատվությունների միջոցով սատարել են հնադարյան հոգևոր և մշակութային կենտրոններին։

XIX դարի սկզբներին Բուխարեստի, ինչպես նաև հայ գաղութի պատմության հետ է կապված խոշոր դիվանագետ Մանուկ բեյ Միրզայանի (1769—1817) կյանքն ու գործունեությունը։ Նա սերում էր կարբեցի ծնողներից և ծնվել էր Ռուսչուկում, սակայն դեռևս 1795 թ. հաստատվել էր Բուխարեստում և բացել իր նշանավոր իջևանատունը, որը պատմության մեջ մինչև օրս հայտնի է իբրև «Hanul lui Manuc» (Մանուկի խանը) անունով։ Նա երկար ժամանակ իր ձեռքում էր պահում երկրի աղի վաճառքի մենաշնորհը։ Նրա սեփականությունն էին կազմում Բուխարեստի մոտ գտնվող շուրջ 25 տիրույթներ՝ կալվածքներ և պտղատու այգիներ, որոնցից մի քանիսը մինչև վերջերս հայտնի էին Մանուկ անունով, ինչպես, օրինակ. «Popeşti-Manuc» և «Mânucul» գյուղերը։ Ռումինացի պատմաբան Գեորգե Բեզվիկոնին հետևյալ կերպ է բնութագրում նրա կյանքի անցած ուղին։ Մանուկ բեյը եղել է «Բուլղարական քաղաքների կազմակերպիչ, Բարձրագույն դռան դրագոման (մեծ թարգման) և բեյ, Կըմըրաշ և պահարնիկ ազնվականական տիտղոսների առաջին կրող հայը և իշխանը՝ Մոլդո-Վալաքիայի, սերբերի և Բուխարեստի ազատարար, Բուխարեստի 1812 թ. ռուս-թուրքական խաղաղության դաշինքի կազմակերպիչ, հայերի իշխան Վիեննայի վեհաժողովում, նորին վսեմություն և ասպետ՝ Ռուսաստանում, պատվված Ալեքսանդր Ա կայսեր կողմից և վերջապես նախագծերի նախաձեռնող, որոնց իրագործելու դեպքում՝ մոռացումից դուրս էր գալու Բեսարաբիան»[81]։ Մեծ է նաև Մանուկ բեյի և նրա մերձավորների ցույց տված օգնությունը ռուսական բանակին 1806—1812 թթ. ռուս-թուրքական պատերազմի տարիներին։ Մանուկ Միրզայանը ռուսական կողմնորոշման մեծ ջատագով էր։ Նա թուրքերի հետ վարած բանակցություններով և նյութական օգնությամբ սատարեց ռուսներին։ Նա դիվանագիտական կարևոր գործունեություն ծավալեց 1812 թ. Բուխարեստում Ռուսաստանի համար նպաստավոր պայմանագիր կնքելու գործում։

Դանուբյան ռազմաճակատի ռուսական բանակի զորահրամանատար գեներալ Բագրատիոնը 1810 թ. մարտի 12-ին Բուխարեստում իր տված վկայագրում նշում էր, որ Մանուկ բեյը հատուկ արդյունավետությամբ և ջանասիրությամբ օգտավետ ծառայություններ է մատուցել Ռուսաստանին։

Հիշյալ պատերազմի ընթացքում նրա մատուցած ծառայությունները բարձր են գնահատել ռուս զորավարներ Կուտուզովը, Պրոզորովսկին, Միլորադովիչը, Կամենսկին և ուրիշներ։ Հակառակ Մանուկ-բեյին իրենց կողմը գրավելու Բ. Դռան և Ավստրիայի կանցլերի փորձերին, նա պատերազմից հետո

---

81 *Gheorghe Bezviconi*, Manuc bei, ediţia II, Chişinău, 1938, p. 2.

ևս շարունակեց մնալ ռուսական կողմնորոշման ջերմ պաշտպան և հաստատվելով Բեսարաբիայում, Քիշնևից ոչ հեռու Հնչեշտում կառուցեց իր ավանը, ուր և բնակեցրեց բազմաթիվ հայերի։ Նրա կյանքի հետագա շրջանը մինչև նրա խորհրդավոր վախճանը (1817) սերտորեն կապված է Բեսարաբիայի և տեղի հայ գաղութի պատմության հետ[82]։

1806—1812 թթ. ռուս-թուրքական պատերազմի ժամանակ Ռուսչուկի համար մղված մարտերին (150 մարտիկներով) մասնակցեց Մոլդո-Վալաքիայի թեմի այն ժամանակվա առաջնորդ Գրիգոր արքեպիսկոպոս Զաքարյանը։ Նա, իր ջոկատով անցնելով հայաբնակ վայրերից, ոգևորում էր բնակչությանը, կոչ անում օգնելու թուրքերի դեմ մարտնչող ռուսական զորքերին։ Այս մարտերից մեկում էլ նա վիրավորվում է։ 1810 թ. հունիսի 23-ին, երբ Ռուսչուկը հանձնվում է ռուսներին, իր մարտիկներով քաղաք է մտնում նաև Գր. Զաքարյանը և այնտեղ հանդիպում Մանուկ բեյին, որը եկել էր նախապես թուրքերի հետ բանակցելու և քաղաքը ռուսներին հանձնելու գործով։ Մանուկ բեյը և Գր. Զաքարյանը, ինչպես նաև Մոլդո-Վալաքիայի և Բուլղարիայի մի շարք հայեր արժանանում են ռուսական շքանշանների[83]։

1848 թ. Եվրոպայում ծայր առած հեղափոխությունների ալիքը տարածվեց նաև Վալաքիայում և հարևան երկրներում։ Այս պայքարում անմասն չմնացին Բուխարեստի հայերը։ Հեղափոխական իրադարձությունների մեջ ակնառու դեր է խաղում հայազգի ճարտարապետ Հակոբ Մելիքը։ Հեղափոխության պարտությունից հետո դարձյալ նրա տանը թաքնվեցին հեղափոխության պարագլուխներից Յոն Հելիադե Ռըդուլեսկուն, Գ. Ա. Ռոսետին և ուրիշներ։ 1848 թ. հեղափոխության մեջ, բացի Մելիքից, ընդգրկված էին բազմաթիվ հայ աշխատավորներ[84]։ Հեղափոխության պարագլուխներից Յոն Հելիադե Ռըդուլեսկուի պահակախումբը հիմնականում կազմված էր հայերից։ Հեղափոխության ճնշումից հետո «Հայկական փողոց»-ից ձերբակալվածների մեջ էին 28 արհեստավորներ։ Արգելափակեցին 13 երիտասարդի, 10 ծառայի, 6 դերձակի և 4 իբրիշիմչիի (մետաքսաթել վաճառող)։ Ձերբակալված հայերի թվում էին Սկարլաթ Կարապետը, որը հեղափոխության ժամանակ Պոպա Ռուսույի և Կայմատայի եկեղեցիների զանգերն էր հնչեցրել, նպատակ ունենալով ոտքի հանել ժողովրդական զանգվածներին, քանի որ հիշյալ եկեղեցիները գտնվում էին «Հայկական փողոցին» շատ մոտիկ և որը համարվում էր հեղափոխության բույն[85]։ Ձերբակալվածների թվում էր նաև հայ ծխախոտագործ Ալթըն Նազարեթը և առևտրական Սկարլաթ Պաթրովիչը, որոնք մեծ դեր էին կատարել հին իշխանության կանոնադրությունը հրապարակով այրելու գործում[86]։

---

82 *Gheorghe Bezviconi*, նշվ. աշխ.։

83 Ա. Աղամյան, Վավերագրեր ռուս-հայ բարեկամական հարաբերությունների պատմությունից (1809—1811), ԳԱ «Տեղեկագիր», 1954, № 9, էջ 98—100։

84 «Էջմիածին», 1951, № 1—3, էջ 50—53։

85 *Ioana Cristache-Panait*, Unele probleme privind situaţia din Bucureşti după 13 sept. 1848, Studii, revistă de istorie, Bucureşti, 1963, № 4, p. 887—902.

86 *Cornelia C. Bodea*, Figuri puţin cunoscute din revoluţia dela 1848, Studii, revistă de istorie, Bucureşti, 1960, № 2, p. 145.

XIX դ. ռումինահայ գաղութում աշխուժանում է մշակութային կրթական գործը։ Բարեգործական սկզբունքներով հիմնվում են դպրոցներ։ Այդպիսիներից էր 1817 թ. Մանուկ բեյ Միրզայանի միջոցներով հիմնադրված դպրոցը, որը կոչվել է «Վարժոց մանկանց»։ Այդ դպրոցն իր վերելքն է ապրում հատկապես 1840-ական թթ., երբ նրա աշակերտների թիվը հասնում է 100-ի։ Կ. Պոլսից ակնցի Վարդերես Միսաքյան ամիրայի նվիրատվությամբ Բուխարեստի հայ եկեղեցու բակում կառուցվում է «Միսաքյան» վարժարանը։ 1847 թ. գործում է նաև աղջիկների դըպրոցը՝ Ստեփան քահանայի գըլխավորությամբ, որտեղ 1849 թ դասավանդվում էր չորս լեզու, իսկ 1864 թ. աշակերտների թիվը հասնում էր 60-ի։



Էոնե Կիշ

1861 թ. հայկական դպրոցներ էին գործում նաև Դոբրուջայի Բաբադաղ և Տուլչա քաղաքներում, Բաբադաղի հայկական դպրոցում սովորում էր 25, իսկ Տուլչայի դպրոցում՝ 20 աշակերտ։

Ռումինահայ գաղութից դուրս եկան մարդիկ, որոնք աչքի ընկնող դեր խաղացին հայ գրականության զարգացման գործում։ Հիշատակության է արժանի Գրիգոր Անուշը։ Վրթանես Փափազյանը 1914 թ. հրատարակելով «Հանգանակ» խորագրով «Ի ծխավաճառ Սարգսէ ակնցւոյ ի մականուն անհաւատ կոչեցելոյ» երգիծական գրվածքը, այն համարել էր Գր. Անուշի (1768—1824) երկասիրությունը՝ հայ նոր երգիծաբանության անդրանիկ նմուշներից մեկը[87]։

Բուխարեստի հայերից գրականությամբ էին զբաղվում Պողոս և Մեսրոպ Սեբաստյան եղբայրները։ 1850 թ. Բուխարեստի հայերի նախաձեռնությամբ ռումինական բանահյուսության հայր Անտոն Պանի տպարանից ռումիներեն լեզվով լույս է տեսնում «Հայ եկեղեցու կողմից պահպանված քրիստոնեական կրոնի դավանած կանոնները» գիրքը։ Այն ռուսերենից ռումիներենի էր թարգմանվել Վ. Ի. Մուստակովի կողմից և հրատարակվել Դ. Ա. Դանիլոպոլի և վիրաբույժ Հաջի Ասատուրի միջոցներով, «Թելադրությամբ և ցանկությամբ»՝ Հայոց ավագերեց Օհան Մելիքի։

---

87 Տե՛ս Թեոդիկ, Ամենուն տարեցոյց, 1914, Կ. Պոլիս, էջ 169—171։

Ճարտարապետության ասպարեզում աչքի ընկավ Հակոբ Մելիքը, որի անունն է կրում այժմ Բուխարեստի փողոցներից մեկը։

Հայկական դպրոցի սաներից էր Միքայել Աղեքսան Քացախյանը, որը 1841 թ. նշանակվում է Բուխարեստի գլխավոր ճարտարապետի տեղակալ։

Ռումինիայում փայտյա զարդաքանդակներ պատրաստելու բնագավառում հայտնի էր բուխարեստցի Պետրե (Պետրոս) Պապիկը։

1829 թ. Բուխարեստի քաղաքային բժշկապետն է դառնում Հովհաննես Սերաֆիմը։ Նույն դարի կեսերին էր գործում նաև վիրաբույժ Հաչի Ասատուրը։

* * *

ՏՐԱՆՍԻԼՎԱՆԻԱ։ XIX դարի սկզբներին բավական թվով հայեր էին ապրում Տրանսիլվանիայի հայաբնակ քաղաքներում. Եղիսաբեթուպոլսում կար 2300 հոգի կամ 450 տուն, Գեռլայում՝ 6000 հոգի կամ 1000 տուն, Ջուրջովում՝ 140 տուն, Սեպվիզում կամ Սիպվիզում՝ 54 տուն, կամ 312 հոգի։ Հայեր կային նաև Դևայում, Այնուտում, Աբրուդում, Գեզտի Վաշարհեյում (Տըրգուլ Սըկույեսկ), Կանտայում, Օդորհեյում, Տիմիշոարայում, Սիբինում, Սաս Սեբեշում, Բրաշովում և այլն։ Հայեր էին բնակվում նաև Մարոշ Վաշարհեյում (այժմ Տըրգուլ Մուրեշ) և Օրադեայում։ Հայերի թիվը շուրջ 15000 էր, իսկ 1848 թ. հեղափոխության նախօրյակին ավելի է ստվարանում՝ հասնելով մինչև 20.000-ի։

Հունգարացի գիտնական Լ. Կեովարին 1842 թ. գրում էր, որ Տրանսիլվանիայում հազիվ թե գտնվի գյուղ և քաղաք, որտեղ հայեր չլինեն[88]։ Տրանսիլվանիայից հայերի հոսքը դեպի Բանատ և Հունգարիայի զանազան վայրերը շարունակվում էր նաև հետագայում։ Տրանսիլվանիայի հայերից ոմանք, Բանատում կալվածներ գնելով, հաստատվում էին այնտեղ, ոմանք էլ, Հունգարիայում բարձր ուսում ստանալով, այլևս չէին վերադառնում նախկին բնակավայրը, ուրիշներն էլ գնում էին այլ վայրեր՝ աշխատանք գտնելու նպատակով։ Հայ գաղութի սոցիալական կազմը շատ տարբեր էր։ Բանատ նահանգի Տորոնտալ գավառում կային հայ կալվածատերեր, որոնք ստացել էին ազնվականական տիտղոսներ։ Նրանցից Քիշ կամ Քիշյան (Պստիկյան) ընտանիքը Տիմիշոարա քաղաքի մոտերքում տեր էր 2—3 միլիոն ֆլորին արժողությամբ կալվածների։ Սրանց կողքին կային չարքաշ կյանք վարող հայ գյուղացիներ։ Սակայն հայերի մեծ մասի զբաղմունքը դարձյալ մնում էր առևտուրն ու արհեստագործությունը։

Կապիտալիստական մանուֆակտուրայի հիմնադրման գործում դեռ անցյալ դարի վերջից սկսած կարևոր դեր էին խաղում Գեռլայի, Եղիսաբեթուպոլսի, Ջուրջովի և մյուս վայրերի հայերը։ Այդ տեսակետից հիշատակության արժանի էին Գեռլայի հայ առևտրականների՝ կաշեգործության, Եղիսաբեթուպոլսի՝ մոմագործության մանուֆակտուրաները և մոմ սպիտակեցնելու արվեստը[89]։

---

88 «Հանդես ամսօրեա», Վիեննա, 1905, էջ 194։

89 Şt. Imreh, Despre începuturile industriei capitaliste în Transilvania... Bucureşti, 1955, p. 10.

Եղիսաբեթուպոլսում մեծ ծավալ ուներ մսագործությունը։ 1837 թ. հաստատվեց մսագործների ընկերության կանոնադրություն։ Քաղաքային վարչությունը վարձով համքարությանը տրամադրում էր արոտավայրեր, ինչպես նաև զանազան այլ հարմարություններ։

Այստեղ դարասկզբում մեծաքանակ առևտրով էր զբաղվում Ստեփան Ալթուն օղլուն, որը սուլթանական ֆերմանով իրավունք ուներ Կ. Պոլսից ապրանք արտահանել Արևելյան Եվրոպա։ Նա առևտուր էր անում Մոլդովայի, Վալաքիայի, Բուլղարիայի և Սերբիայի քաղաքներում։ Ստեփան Ալթուն օղլուին իրավունք էր վերապահված Ավստրիական կայսրությունից իր բերած ապրանքները վաճառելու Արևելքի մի շարք երկրներում։

Հայաբնակ քաղաքները, իբրև կայսերական ազատ քաղաքներ, մոտավորապես կես դար (1791—1837) պայքարեցին տուրքերից, զինվոր պահելուց և այլ պարտավորություններից ազատվելու համար։ Սակայն կայսերական նոր հրովարտակով սահմանափակվեցին անցյալում հայերի վայելած արտոնությունները։ Հայերի փողով գնած քաղաքային հողերը համարվեցին արքունական։ Չեղյալ համարվեցին նաև դեռևս Մարիա Թերեզա կայսրուհու օրոք ոգելից ըմպելիքներից, տներից և մսագործությունից գանձվող հարկերից ազատ լինելու իրավունքները։

Հայկական գաղութում ստվարացող չքավորության վիճակը մասամբ բարվոքելու համար հայ հարուստներից ոմանք հիմնում են աղքատանոցներ, ծերանոցներ, որբանոցներ և այլն։

Հայկական կենտրոններում զարգանում էր դեմոկրատական ուղղության գրականությունը։ Հովհաննես Գապտեպովյանի կողմից Եղիսաբեթուպոլսում XIX դարի սկզբներին գրված քարոզների և այլ բնույթի նյութերի անտիպ ժողովածուներում հեղինակը մերկացնում և անարգանքի սյունին էր գամում քաղաքի մեծահարուստներին։

Մեծ արժեք է ներկայացնում գեոլացի հայ նշանավոր գործիչ Զաքարիա Կապրուշյանի «Գանգատ» խորագրով անտիպ պարսավագիրը, գրված 1834—1835 թթ., ուր հեղինակը քննադատում էր վերնախավի չարաշահությունները, հայ մեծամեծների հարստանալու մարմաջը։

1801 թ. Գեոլայում վերջ տրվեց հայ վաճառականների կողմից իրենց ժողովները մայրենի լեզվով վարելու սովորությանը։ 1830 թ. կառավարությունը արգելեց հայ վաճառականներին հաշիվները հայերենով գրելը։ 1805 թ. Եղիսաբեթուպոլսի քաղաքային վարչությունը ևս ստիպված վերացնում է արձանագրությունները հայերենով գրելու կարգը։ 1839 թ. սկսած Գեոլա հայաքաղաքում գիշերապահի հայերեն երգը երգվում է հունգարերեն։ Եղիսաբեթուպոլսի քաղաքային դպրոցում, ինչպես նաև Ղարամյանի կտակով հիմնըված վարժարանում աշակերտները այլևս չէին սովորում հայերեն։ Հայ լեզուն սովորեցնելու իրավունքը վերապահված էր միայն քաղաքի Մխիթարյան վանքին կից գործող դպրոցին։ Անշուշտ, այս ամենին մասամբ նպաստում էր նաև հայ վերնախավի օտարամոլությունը։ Սակայն հակառակ այդ բոլորին, Տրանսիլվանիայի հայոց կենտրոնները դեռևս շարունակում էին հայախոս մնալ։ Եկեղեցիներում արարողությունը և քարոզները հայերեն էին, հայերեն էին արտասանվում նաև դամբանականները։ Հայերեն երգերը, պա-

րերը և հեքիաթները մեծ տարածում ունեին ընտանիքներում։ Հայ մտավորականները մայրենի լեզվով էին գրում իրենց ստեղծագործությունները և արտասահմանում հայերեն դասագրքեր էին տպագրում իրենց դպրոցների համար։

Միաժամանակ անհրաժեշտ է նշել, որ հեղափոխության նախօրյակին Տրանսիլվանիայում ապրող ժողովուրդների առաջավոր զավակները փորձում էին մոտենալ, ճանաչել իրար և եղբայրանալ։ Ժողովուրդների եղբայրության կոչ էին անում ռումինական շարժման պարագլուխներից բանաստեղծ և քաղաքական գործիչ Ցեզար Բոլյակը (1813—1881), հունգարացի բանաստեղծ և հրապարակագիր՝ Սենտ Իվանի Միհալին (1813—1842), սաքսոն (գերմանացի) առաջնորդները և ուրիշներ[90]։ Հայերը ևս, որ երկար տարիներ Տրանսիլվանիայի բոլոր ժողովուրդների հետ տնտեսական և մշակութային սերտ կապերի մեջ են եղել, ջերմորեն պաշտպանում էին ժողովուրդների եղբայրության գաղափարը։

1848 թ. հեղափոխության նախօրյակին երկրի կյանքում հայերի տեսակարար կշիռը բավականաչափ մեծ էր։ Ռումինական շարժման երևելի ղեկավարներից Գ. Բարիցիուի (1812—1893) «Gazeta de Transilvania» թերթում հրապարակած եղբայրության կոչը ուղղված էր ոչ միայն երկրի մեծ թիվ կազմող ազգություններ՝ ռումիններին, հունգարներին և գերմանացիներին, այլև հայերին։ Եվրոպացի Ա. Դե Ժերանդոն հայերի մասին հատկապես նշում էր. «Նրանք (իմա՝ հայերը) հասկացան, որ երկրում բնակվող ազգերի միջև միասնությունն անհրաժեշտ է»[91]։

Հունգարիայում և Տրանսիլվանիայում 1848 թ. ծավալված հեղափոխության ալիքը կայսրության կազմում դարեր շարունակ ստրկացված և իրավազուրկ ժողովուրդների կողմից ընդունվեց մեծ ցնծությամբ։ Հեղափոխության սկիզբը համարվում էր «Մեռած ժողովուրդների հարության օր»։ Հայերը ևս Տրանսիլվանիայի և Հունգարիայի մյուս ժողովուրդների հետ միասին իրենց արյան գնով փառավոր էջեր արձանագրեցին հեղափոխության պատմության մեջ։ Գեռլայի հայերը համաքաղաքային միտինգում երկու դեպուտատներ ընտրեցին Պեշտի աշխարհաժողովի համար։ Նույնպիսի ցնծության մեջ էր նաև Եղիսաբեթուպոլիսը, ուր զատկի օրը հունգարական դրոշակը ծածանվում էր եկեղեցու աշտարակների, քաղաքային վարչության և ակումբի վրա։ Ամենուրեք ուրախություն էր, լսվում էին երաժշտություն և «Կեցցե ազատությունը» բացականչություններ։ Հայերից և հունգարացիներից կազմված պահակազորը Անտոն Բոգդանֆի(յան) հայազգի հազարապետի գլխավորությամբ, հունգարական ազգային դրոշակով և երաժշտությամբ դուրս գալով քաղաքային վարչության շենքի առաջ, սկսեց զինավարժությամբ զբաղվել։ Եղիսաբեթուպոլիսը ևս ընտրեց երկու երեսփոխան՝ Պեշտի աշխարհաժողովի համար։ Ինչպես մյուս ազգությունները, այնպես էլ հայերն այդ օրերին իրենց անվերապահ նվիրվածությունը հայտնելով հեղափոխության գործին, միաժամանակ առաջ են քաշել նաև ազգային կարևոր պահանջներ։ Հայերը գեռլացի նշանավոր գործիչ Զաքարիա Կապրուշյանի առաջարկությամբ

[90] Din istoria Transilvaniei, vol. I, ediţia II—a Bucureşti, 1961, p. 342.
[91] A. De Gerando, La Transylvanie et ses habitants, Paris, 1850, p. 207.

օրակարգի հարց էին դարձրել նաև 133 տարի առաջ վերացված ազգային ինքնուրույն եպիսկոպոսությունը վերականգնելու խնդիրը։ Արտաքնապես կրոնական թվացող այդ պահանջը Տրանսիլվանիայի հայերի համար ուներ հայապահպանման կարևոր նշանակություն։ Նրանք հույսեր էին փայփայում, որ հիշյալ միջոցով ցրված հայերին դարձյալ կհամախմբեն հայաբնակ քաղաքների շուրջը և նրանց զերծ կպահեն ձուլվելու վտանգից։



Հովհաննես Ցեցյան

Հայաբնակ գաղութների պատգամավորները Պեշտի աշխարհաժողովում ելույթներ էին ունենում, իրենց հայրենակիցներին տեղյակ էին պահում անցուդարձերին, նպաստում էին հայկական կենտրոններում պաշտպան գվարդիա ստեղծելու գործին։ Հունգարական հեղափոխության անկում ղեկավար Լայոշ Կոշուտը Գեռլայի դեպուտատ Գրիգոր Սիմայանին էր վստահել Տրանսիլվանիայի ազգությունների կոմիսարի պաշտոնը, քանի որ նա քաջ գիտակ էր նահանգի տարբեր ազգությունների վիճակին ու պահանջներին։ Հետագայում ծայր առած ազգամիջյան խռովությունները թույլ չտվեցին նրան շարունակելու այդ խիստ կարևոր գործը։ Հեղափոխությանը հայերը տվեցին նշանավոր հերոսներ։

Հեղափոխության մասնակից հունգարացի գնդապետ Շանդոր Տելեկին այդ մասին գրել է. «Բոլոր ազգություններից միայն հայն է, որ ապրում է մեզ հետ միասին և մեռնում է մեզ համար... զինվոր է 1848—1849 թվականների Տրանսիլվանիայի պատերազմի ժամանակ...»[92]։

Տրանսիլվանիայի հայերը հեղափոխությանը տվել են երեք փառաբանված զորավարներ։ Դրանցից առաջինը Էռնե Կիշ(յան)ն էր (1800—1849), որի գերդաստանը նախապես կոչվել է Ազոնց։ Մեծ էր նրա դերը հատկապես Բանատում՝ սերբական հակահեղափոխական զորքերը ջախջախելու գործում։ Նա իր տաղանդով աճեց և դարձավ հեղափոխության գեներալ և ապա հունգարական բանակի հրամանատար։ Նա ծնվել էր Եղիսաբեթուպոլիս հայաքաղաքում, մեծացել օտար միջավայրում, սակայն միշտ էլ մեծ սեր էր տածում դեպի իր ազգակիցները։ Գեներալ Վիլմոշ Լազար(յան)ը (1815—1849)

---

[92] Avedik Felix, A magyar, örményseg multja és történeti jelentösege, Budapest, 1921, էջ 8։

դարձյալ ծնվել էր Եղիսաբեթուպոլսում։ Նա իր զորքով Բանատում կարողացավ կասեցնել հեղափոխությունը ճնշելու համար ուղարկված ցարական զորքերին և աչքի ընկավ իր խիզախությամբ։ Հեղափոխության պարտությունից հետո Կիշ(յան)ն ու Լազար(յան)ն այլ ղեկավար զորավարների հետ մահապատժի ենթարկվեցին։ Տրանսիլվանիայի հեղափոխության փառաբանված ընդհանուր հրամանատար զորավար Բեմի աջ բազուկը դարձավ հայազգի գեներալ Հովհաննես Ցեց(յան)ը (1822—1904), որը Գեռլայի ծնունդ էր։ Բեմը նրան դարձրեց գեներալ և ապա 1849 թ. ապրիլին վստահեց Տրանսիլվանիայի հեղափոխական բանակի ընդհանուր հրամանատարի բարձր պաշտոնը։ Բացի տաղանդավոր զորավար լինելուց, Ցեց(յան)ը հեղափոխության շրջահայաց դիվանագետներից էր։

Նա գտնում էր, որ չպետք է մեկուսացնել և թշնամացնել Տրանսիլվանիայի ժողովուրդներին, այլ պետք է համախմբել նրանց հեղափոխության շուրջը։ Նրա գրչին է պատկանում 1850 թ. Գերմանիայում հրատարակված գերմաներեն այն հատորը, ուր հմուտ կերպով Ցեցյանը նկարագրել է Բեմի հեղափոխական բանակի անցած մարտական ուղու պատմությունը։ Հեղափոխության ճնշումից հետո նա մի կերպ ազատվեց թշնամու ճիրաններից և միայն նրա նկարը կախաղան բարձրացվեց։ Անցնելով Արգենտինա, նա կազմակերպեց Արգենտինայի զինվորական ակադեմիան և դարձավ նրա առաջին տնօրենը։ Դարձյալ նա է հիմնադրել Բուենոս-Այրեսի զինվորական աշխարհագրական ինստիտուտը։ Սակայն Ցեցյանը չմոռացավ հայ ժողովրդին։ Նա սերտ կապերի մեջ էր իր ազգակիցների հետ և մինչև իր վերջին շունչն աշխատակցեց Գեռլայում լույս տեսնող հունգարերեն հայագիտական «Armenia» հանդեսին։

Հունգարական հեղափոխության թնդանոթաձիգների հազարապետն էր հայազգի հերոս Դիոնիսիոս Լուքաչ(յան)ը, որին նախ մահվան դատապարտեցին, ապա այդ պատիժը փոխարինեցին բանտարկությամբ։ Քաղաքական խոշոր գործիչ էր նաև Ստեփան Կորովե(յան)ը՝ (1819—1881)։ Նա քաղաքական մի շարք աշխատությունների հեղինակ էր և հունգարական ակադեմիայի թղթակից-անդամ։ Հեղափոխության տարիներին նա փայլեց իր կրակոտ ատենախոսություններով։ Ստեփան Կորովե(յան)ն էր, որ Կոշուտի և Սաչվարիի հետ գրեց անկախության հռչակման հայտարարությունը, որով Հաբսբուրգյան դինաստիան գահընկեց հռչակվեց։ 1861 թ. արտասահմանից վերադառնալով հայրենիք, 1867—1870 թթ. նա դարձավ Ավստրո-Հունգարիայի կառավարության առաջին հայազգի նախարարը։

Հայերը երկրին տվեցին նաև հայտնի գիտնականներ։ Դրանցից էր մեծ բուսաբան Գաբրիել Վոլֆ(յան)ը (1811—1892)։ Նա անդամ էր արտասահմանյան բազմաթիվ գիտական ընկերությունների։ Երկրի նշանավոր բուսաբաններից էր նաև հայազգի Անտոն Ցեց(յան)ը (1801—1865)։ Այս երկու գիտնականների կողմից հայտնաբերված մի շարք բույսեր կոչվում են նրանց անուններով։

Բժշկապետ Ստեփան Մալի(յան)ը հեղափոխության բոցաշունչ բանաստեղծ-հերոս Շանդոր Պետեֆիի մտերիմ բարեկամն էր և մասնակից 1848 թ համալսարանական ցույցերի։ Մալիյանը գործակցում էր «Armenia»-ին և

հայկական թանգարանին։ Դոկտ. Մարտինոս Ջաուսյանը 1848—1849 թթ. հունգարական համալսարանի ռեկտորի տեղակալն էր։ Երկրի հայտնի գրողների շարքում հիշատակվում են նաև բնիկ գեռլացի Լասլո Կորովեյ(յան)ը (1780—1839), Օգոստինոս էոտվեոշ(յան)ը (1811—1861) և ուրիշներ։ Միքայել (Մինաս) Մալի(յան)ն (1799—1858) հունգարական ճարտարապետական ակադեմիայի ականավոր դեմքերից և ամենահայտնի ռազմագետ շինարարներից մեկն էր։

Հունգարիայի և Տրանսիլվանիայի հեղափոխության պատմության մեջ հերոսական էջեր է արձանագրել Գեռլայի, Եղիսաբեթուպոլսի, Ջուրջովի, Սեպվիզի և այլ վայրերի հայ ազգաբնակչությունը։ Հայերը օգնել են ոչ միայն նյութապես, այլև կարևոր դեր են խաղացել իբրև թարգմանիչներ, բանբերներ, գթության քույրեր և այլն։

Տրանսիլվանիայի հայ գաղութը 1848—1849 թթ. հեղափոխության ճնշման հետևանքով ծանր կորուստներ կրեց։ Հատկապես մեծ հարված ստացավ նրա խոշորագույն կենտրոններից Եղիսաբեթուպոլիսը։ Բացի այն, որ կայսերական բանակները բազմիցս կողոպտեցին Եղիսաբեթուպոլսի գանձերը և ունեցվածքը, մոտակա և հեռավոր 44 քաղաքների, ավանների և գյուղերի բնակիչները ևս թալանի և հափշտակության ենթարկեցին քաղաքի բոլոր տները, շուրջ 500.000 ֆլորին վնաս պատճառելով[93]։ Շատ ավելի ուշ այդ թալանված ավարից միայն աննշան իրեր վերադարձվեցին քաղաքին։ Գեռլան ևս մեծ ռազմատուգանք վճարեց և ավարի ենթարկվեց։ Հայկական կենտրոնները մեծ վնասներ կրեցին նաև դրամական ռեֆորմի հետևանքով. միայն Գեռլան 411.000 թղթադրամ հանձնեց։ Տրանսիլվանիայի հայերից շատերը աշխատանք փնտրելու համար ստիպված եղան ցրվել երկրով մեկ, իսկ բազմաթիվ այլազգիներ էլ հաստատվեցին նրանց կենտրոններում։ Այս բոլորի հետևանքով զգալիորեն հետադիմեց հայկական կենտրոնների տնտեսական, ազգային և քաղաքական կյանքը։

1861 թ. Մանուկ Գապտեպովյանի կտակի համաձայն հիմնվեց «Գապտեպովյան հիմնարկությունը», որը սատարելու էր Եղիսաբեթուպոլսի աղքատ աշակերտների ուսմանը և ստեղծելու աղքատների հատուկ ապաստարան։

Տրանսիլվանիայի հայերի պատմության մեջ 1850—1870 թթ. լուսավոր մի շրջան էր, երբ բոլոր հայկական կենտրոնները համախմբվելով, միասնական ուժերով սկսեցին պայքար ծավալել հանուն ազգային ավանդույթների վերականգնման։ Գեռլայի, Եղիսաբեթուպոլսի, Ջուրջովի և Սեպվիզի հայերը 1868 թ. երկրի մշակույթի նախարարին գրած իրենց դիմումում հայտնում էին, որ իրենք «չեն կարող երևակայել ու ենթադրել, թե հազարամյա ծեսը փչանա... Մենք օրինավոր արդարություն կուզենք...»։

Գեռլայի ղեկավարությունը գրում էր. «Եթե հայ եպիսկոպոսության վերականգնմանը չօգնեն, ապա մեր ազգությանը և եկեղեցուն վտանգ է սպառնում»։ Շատ մեծ եղան այս շրջանում հատկապես հոգևոր հովիվ և պատ-

---

93 Գր. Գովրիկյան, Հայք յԵղիսաբեթուպոլիս, Դրանսիլուանիոյ..., հատ. Գ, Վիեննա, 1904, էջ 321—357։

մաքան Խաչիկ Լուքաչյանի ջանքերը, որն այդ նպատակի հաջողության համար 1867 թ. հրատարակեց «Տվյալներ Տրանսիլվանիայի հայերի պատմությունից» հունգարերեն գիրքը, ուր հատկապես անդրադառնում էր Տրանսիլվանիայի հայերի առաջնորդական աթոռի վերականգնման հրատապ հարցին։ Զննայած իր առաջացած տարիքին, Լուքաչյանը 1872 թ. Հռոմ գնաց և պապին ներկայացավ, սակայն ամեն մի փորձ անարդյունք մնաց, թեև իր ամբողջ ունեցվածքը նվիրաբերեց հիշյալ հարցի հաջող լուծման գործին[94]։

Տրանսիլվանիայի հայաբնակ գաղութում ամբողջ XIX դարի ընթացքում հայերը շարունակում էին ձեռագրերի ընդօրինակման գործը։ Սակայն, ի տարբերություն նախորդ դարից, այս ժամանակաշրջանում արդեն գերակշռում էին տրանսիլվանական հողում ստեղծված ինքնուրույն ստեղծագործությունների ընդօրինակման աշխատանքները։ Գեռլայում իբրև բազմարդյուն գրիչներ գործում էին Մանուկ Բաշգուլյանը, Զաքարիա Կապրուշյանը, դպրապետ Խաչատուր Հորմյանը, Եղիսաբեթուպոլսում հիշվում են Հովհաննես Գապտեպովյանը, Զաքարիա Տոնականյանը, Բրաշով քաղաքում՝ Գրիգոր Սարգսյանը և ուրիշներ։ Հայերը Եղիսաբեթուպոլսում և Գեռլայում ունեցել են մատենադարաններ, գրադարաններ ու դիվանատուն։ 1818 թ. Գեռլայի գրադարանը կարգի է բերել և ցուցակագրել Զաքարիա Կապրուշյանը։ Այդ բոլորը հետագայում կորիզը հանդիսացան Գեռլայում ստեղծված հայկական թանգարանի։ Ջուրջովն ու Սեպվիզն էլ ունեցել են իրենց համեստ գրադարանները։ Կայսրության մղած պատերազմների հետևանքով դատարկված գանձարանը մեծ գումարով համալրելու առթիվ Գեռլայի հայերը Ֆրանց II կայսրից 1806 թ. ստացան հռչակավոր նկարիչ Ռուբենսի «Քրիստոսի իջեցումը խաչից» մեծադիր նկարը։

Սկսած XVIII դարի վերջից և հատկապես XIX դարի սկզբից Տրանսիլվանիայի հայկական դպրոցները վերելք են ապրում։ Մեծ անուն վաստակեց Եղիսաբեթուպոլսի հայկական դպրոցը։ 1814 թ. այն 57 աշակերտ ուներ։ Հիմնվում է նաև աղջիկների դպրոց։ Ամուր հիմքերի վրա է դրվում տղաների քաղաքային վարժարանը։

Գեռլայի դպրոցը ևս ապրում է իր վերելքը։ Այստեղ 1818—1860 թթ. բեղմնավոր աշխատանք կատարեց Զաքարիա Կապրուշյանը։ Նրա աշակերտներից էին դոկտ. Վարդան Ըստկարյանը (1843—1886), որը հեղինակ է մի քանի գրքերի և եղել է Վիեննայի Մխիթարյան միաբանության ընդհանուր աբբահայրը, Խաչիկ Սոնկոտյանը (1843—1907), որը խմբագրեց «Armenia» հանդեսը։ Սեպվիզի հայ դպրոցը ևս իր վերելքն է ապրել 1797 թ. սկսած։ Շնորհիվ Առ. Ինճիճյանի ջանքերի, այս աղքատիկ և փոքրաթիվ հայ գաղութն իր դպրոցին տալիս է 56—60 աշակերտ։ Դպրոց կար նաև Ջուրջովում։ 1832 թ. Ղարամյանը օրիորդաց դպրոց է հաստատել Կլուժում։

Տրանսիլվանիայի հայաբնակ գաղութում հանդես է գալիս ոչ միայն թարգմանական, այլև ինքնուրույն գրականություն։ Այդ տեսակետից հիշատակության արժանի են Զաքարիա Կապրուշյանի ավելի քան 32 ձեռագիր և ցարդ անտիպ

---

94 Գր. Գովրիկյան, Դրանսիլուանիոյ հայոց մետրապոլիսը կամ նկարագիր Կերլա հայաքաղաքի, Վիեննա, 1896, էջ 143—149։

մնացած հատորները, որոնք արժեքավոր են Գեոլա հայաբնակ գաղութի մտավոր և հասարակական կյանքի պատմության ուսումնասիրման համար։ Եղիսաբեթուպոլսում դեռևս XVIII դարի վերջից դպրոցին առընթեր կազմակերպվում էին թատերական ներկայացումներ։ Գեոլայում ևս XIX դարի սկզբում գործում է դպրոցական թատրոն։

Իբրև անմիջական հետևանք ազգային ինքնուրույնության պահպանման համար մղված պայքարի, Տրանսիլվանիայի հայերի մոտ այս շրջանում ընկըրսեց զարգանալ իրենց անցյալն ուսումնասիրելու ձգտումը, երևան եկան առաջին պատմագիտական աշխատությունները։

Առաջին հայ պատմագիրը, որը միջազգային ասպարեզ դուրս բերեց ինչպես ընդհանրապես հայ ժողովրդի և ի մասնավորի հայ գաղթավայրի պատմությունը, Խաչիկ Լուքաչյանն էր (1804—1870)։ Նա 1859 թ. Վիեննայում հրատարակեց «Տրանսիլվանիայի հայերի պատմություն»[95] լատիներեն աշխատությունը, ուր խոսում է հայ ժողովրդի պատմության, Հայաստանի աշխարհագրության, հայ ծեսի և Տրանսիլվանիայի հայոց պատմության մասին։ Նա 1867 թ. հունգարերեն լույս ընծայեց նաև «Տվյալներ Տրանսիլվանիայի հայերի պատմությունից» գործը[96], որտեղ լրացումներ կատարեց հայ գաղթավայրի պատմության վերաբերյալ և հատկապես կանգ առավ հայկական առաջնորդության վերականգնման հարցի վրա։ 1870 թ. դարձյալ Լուքաչյանն էր, որ հրատարակեց հունգարերեն «Հունգարացիների նախնիները, նրանց վաղեմի անունները և բնակավայրերը ըստ հայ աղբյուրների» ծավալուն աշխատությունը, ուր զետեղել էր նաև հայ-հունգարական կապերին վերաբերող հայերեն բնագրեր[97]։

ԲՈՒԼՂԱՐԻԱ։ Դարեր գոյատևելով, բուլղարահայ գաղութը հիմնականում պահպանեց իր ազգային կերպարանքը նաև նոր ժամանակներում։ XIX դարի սկզբին Շումենում (Կոլարովգրադ), բնակվում էին շուրջ 200 տուն հայ, Վառնայում և Ռուսչուկում (Ռուսե)՝ 150-ական, Ֆիլիպոպոլսում (Պլովդիվ)՝ 100, Թաթար-Բազարջիկում (Բազարջիկ) և Հաջի-Օղլու-Բազարջիկում (Դոբրիչ, Տոլբուխին)՝ 30-ական, Բուրգասում, Ռազգրադում, Պրովադիայում և Սիլիստրայում՝ 20-ական։ Այտոսում, «սակաւ տունք Հայոց», իսկ Սոֆիայում՝ «յառաջագոյնք բազում էին..., սակայն հայ բնակիչք ցրուեալ յայլ և այլ կողմանս»[98]։

XVIII դարի վերջերին և XIX դարի սկզբներին Բուլղարիայում սաստկացան թուրքական ճնշումներն ու հալածանքները. մասսայական բնույթ ստացան բռնությունները ու կամայականությունները, ապօրինի գանձումներն ու բացարձակ կողոպուտը, որոնց հավասարապես ենթարկվում էին թե՛ բուլղարները և թե՛ հայերը։

Անընդհատ սաստկացող թուրքական ճնշումներն ու բարբարոսություն-

---

[95] *Lukaksi Chr.*, Historia Armenorum Transilvaniae, Viena, 1859.

[96] *Lukácsi Kristóf*, Adalékok az erdély örmények történetéhez, Kolozsvár, 1867.

[97] *Lukácsi Kristóf*, A magyarok őselei, hajdankori nevei és lakhelyei, Eredeti őrmény kutfők után, Kolozsvár, 1870.

[98] Մ. Բժշկեան, Ճանապարհորդութիւն ի Լեհաստան եւ այլ կողմանս բնակեալս ի Հայկազեանց..., Վենետիկ, 1830, էջ 209—215։

ները լուրջ հարված հասցրին նաև բուլղարահայ գաղութներին։ Հայ բնակչության տեղաշարժի հետևանքով մի շարք հայկական գաղութների, ինչպես Սոֆիայի, Թրնովոյի, Ֆիլիպոպոլսի և այլն, ազգային կյանքը թոշնեց, իսկ մի շարք հայկական գաղութներ էլ, ինչպես Պրովադիայի, Ռազգրադի, Այտոսի և այլն, բոլորովին դադարեցին գոյություն ունենալուց։ Այդ պրոցեսին նպաստեցին նաև պարբերաբար ծագող ռուս-թուրքական պատերազմները, որոնց ընթացքում թուրքերը բազմիցս ավերեցին Վառնան, Շումենը, Ռուսչուկը, Ֆիլիպոպոլիսը, Այտոսը, Բուրգասը, Պրովադիան, Ռազգրադը, Թրնովոն և այլ քաղաքներ, որոնք միաժամանակ հանդիսանում էին բուլղարահայության մեծ ու փոքր կենտրոններ։

Ինչպես նախորդ դարերում, այնպես էլ նոր ժամանակներում բուլղարահայությունը հիմնականում բնակվում էր քաղաքներում։ Նրա ճնշող մեծամասնությունը զբաղվում էր արհեստներով, հատկապես՝ ոսկերչությամբ, կաշեգործությամբ, կոշկակարությամբ, դերձակությամբ, ներկարարությամբ և թիթեղագործությամբ։

Բացի մանր արհեստավոր-վաճառականներից, որոնք մեծ տեսակարար կշիռ ունեին բուլղարահայության ընդհանուր զանգվածում, կային նաև խոշոր առևտրականներ, որոնք նշանակալից դեր էին խաղում Բուլղարիայի և՛ ներքին, և՛ արտաքին, և՛ տարանցիկ առևտրի ասպարեզում՝ տնտեսապես հաղորդակից դարձնելով երկիրը ինչպես Ռուսաստանի ու Ուկրաինայի, այնպես էլ Մերձավոր Արևելքի և Արևմտյան Եվրոպայի հետ[99]։

Բուլղարահայության շարքերում կային նաև գյուղացիներ, որոնք բնակվում էին մասնավորապես Աջեմլեր, Կոզլուջա, Կերմենլի, Ախի-Օրման, Ջամբազը և Միխլիմի գյուղերում։ Նրանք զբաղվում էին այգեգործությամբ, գլխավորապես՝ խաղողագործությամբ, պտղաբուծությամբ և բանջարաբուծությամբ[100]։

Զգալի տեսակարար կշիռ ունեին նաև բուլղարահայ քաղաքային և գյուղական ընչազուրկ տարրերը, որոնք հանդես էին գալիս բեռնակիրների, սևագործ բանվորների, ջրկիրների, տնային ծառայողների, բատրակների և գյուղատնտեսական բանվորների դերում[101]։

XIX դարի առաջին կեսում ազգային կյանքը բուլղարահայ գաղութներում ապրում էր գրեթե համընդհանուր անկում։ Ազգային վարժարանները, որ գոյություն ունեին Ֆիլիպոպոլսի, Վառնայի, Շումենի, Ռուսչուկի և Թաթար-Բազարջիկի հայ-լուսավորչական եկեղեցիներին առընթեր, գտնվում էին նյութական անձուկ վիճակում։

Անդրադառնալով բուլղարահայության ուսումնա-դպրոցական գործի դրվածքին, լավատեղյակ ժամանակակիցներից մեկը վկայում է. «Եվրոպական Թուրքիայում գրեթե չեն հանդիպում հայկական իգական ուսումնարաններ։ Վառնայում կա միայն մեկ՝ արական հայկական դպրոց, այն էլ շատ խղճուկ վիճակում։ Նա ունի ընդամենը երկու ուսուցիչ, տեղավորված է եկեղեցու

99 Տե՛ս Թեոդիկ, Ամենուն տարեցոյց, Վենետիկ, 1926, էջ 656—658, տե՛ս նաև ЦГИА УКР. ССР (այսուհետև ՈւԿՊՊԱ), ֆ. 59, I, գ. 95, թ. 46, գ. 122, թ. 77։

100 ԿՊՌՊԱ, ֆ. ՌՑԱ, գ. 211, թ. 57, 67, գ. 214, թ. 21, 25, 27, 227, 283։

101 Նույն տեղում, գ. 211, թ. 4, գ. 219, թ. 37։

բակում կառուցված մեկ ոչ մեծ սենյակում՝ թեպետ և դպրոց են հաճախում հարյուրից ավելի պատանիներ։ Այդ շինությունը այնքան փոքր է, որ աշակերտների 3/4 մասը նստում է հատակին՝ նստարաններ դնելու համար տեղ չլինելու հետևանքով... Ուսումնարանը կարիք ունի ամեն ինչի, անգամ անհրաժեշտագույն դասագրքերի... Վառնայի հայ բնակչությունը և նրա համայնքը աղքատ են, աղքատ՝ բուլղարականից և շատ ավելի աղքատ՝ հունականից... Նրանք միջոցների իրոք մեծ կարիք ունեն»[102]։

Քրիստոնյաների խլամացման քաղաքականությունը, որ հետևողականորեն վարվում էր Բուլղարիայում, ինչպես և այնտեղ ծվարած սակավաթիվ հայության ազգային ուսումնառության անմխիթար դրվածքը հանգեցրել էին նրան, որ XIX դարի առաջին կեսին մայրենի լեզուն բուլղարահայ գաղութներում մղվել էր հետին պլան և փոխարինվել թուրքերենով։ Անգամ Վառնայում, ուր կար նորակառույց եկեղեցի (1842 թ. սբ. Սարգիս) և ազգային դպրոց, շատ քչերն էին, ինչպես վկայում է ուղեգիրներից մեկը, որոնք խոսում էին հայերեն։

Բուլղարահայերի կացությունը էապես փոխվեց XIX դարի կեսին՝ կապված Բալկաններում շարունակվող թուրքական բռնությունների, ֆեոդալական հարաբերությունների հետագա քայքայման և կապիտալիստական հարաբերությունների ձևավորման հետ։ Հույն, բուլղար, հայ և մյուս ժողովուրդների ազգակազմավորման պրոցեսը, նրանց ազգային-ազատագրական շարժումները նպաստեցին բալկանահայության ազգային զարթոնքին։ «Ազգությունների ընդհանուր վերածնունդը ազդեցություն է գործել նաև այստեղի հայերի վրա... Նրանք արդեն թևակոխել են ազգության վերածննդի, այսպես ասած, առաջին փուլը»[103],—իրավացիորեն նկատել է ռուս բանաստեղծ-դեմոկրատ Ալեքսանդր Օլխինը, որը 1862—1865 թթ. ծառայել է որպես փոխհյուպատոս Վառնայում։

Ղրիմի պատերազմից հետո բուլղարահայ գաղթավայրերն ընդունեցին արևմտահայ նոր գաղթականներ։ Բուլղարիայում, Թրակիայում և Մակեդոնիայում բնակվող հայերի թիվը հասավ 140 հազարի[104]։ Նկատելիորեն աճեց Փիլիպպոպոլսի, Վառնայի, Շումենի և Ռուսչուկի հայության քանակը, վերակենդանացան Սոֆիայի, Թաթար-Բազարջիկի, Սիլիստրայի, Բուրգասի և մի շարք այլ քաղաքների խամրած հայկական գաղթօջախները։ Բուլղարական հողում հիմնադրվեցին հայկական նոր համայնքներ, ինչպես Վիդինում, Ցամբոլում, Սվիշտովում (Սիստովո) և այլուր։

Բալկանյան ժողովուրդների և բալկանահայության սոցիալ-տնտեսական և ազգային-քաղաքական կյանքում նկատված տեղաշարժերը խթանեցին հայ-բուլղարական առնչությունների հետագա զարգացմանը։ Գիտակցելով հայ և բուլղար ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի արմատական շահերի ընդհանրությունը, հայ հասարակական-քաղաքական գործիչները ըս-

---

102 ՌԱՔԱ, ֆ. Դեսպանությունը Կոստանդնուպոլսում, գ. 1615, թ. 87։

103 Նույն տեղում, թ. 88—89։

104 ԿՊՌՊԱ, ֆ. 430, գ. 269, թ. 1։

կըսեցին իրենց ուժերի ներածին չափով նպաստել բուլղար ժողովրդի ազգային զարթոնքին և վերածննդին։ Այդ ասպարեզում հատկապես մեծ են պոլսահայ փորագրիչներ ու տպագրիչներ Թ. Տիվիթճյանի, Հ. Մինասյանի, Ճ. Արամյանի, Հ. Պոյաճյանի, Հ. Փափազյանի, Հ. Կավաֆյանի և այլոց ծառայությունները։ Շնորհիվ նրանց ջանքերի Կոստանդնուպոլիսը դարձավ բուլղարական տպագրական գործի կենտրոններից մեկը, ուր 1840—70-ական թվականներին լույս տեսան 202 անուն բուլղարերեն գրքեր, 17 անուն լրագրեր ու ամսագրեր, 31 անուն տարեգրքեր՝ տոգորված բուլղար ժողովրդի ազգային-ազատագրական գաղափարներով։ Ընդ որում, Թադևոս Տիվիթճյանը, որը սերտ հարաբերությունների մեջ էր բուլղար լուսավորիչներ Կոնստանտին Օգնյանովիչի, Իվան Բոգորովի, Պետկո Սլավեյկովի և այլոց հետ, հանդիսացավ Կոստանդնուպոլսում առաջին բուլղարական տպարանի («Տրուդոլյուբիվա պչելա») հիմնադիրն ու տնօրենը, բուլղար առաջին գրաշարների ու տպագրիչների ուսուցիչը։ Բացի լեգալ գրքերից (74 անուն) և «Ցարգրադսկի վեստնիկ» հանրահռչակ լրագրից, նա լույս է ընծայել նաև անլեգալ գրականություն, այդ թվում մարտական կոչեր և թռուցիկներ՝ ուղղված բուլղար ժողովրդին։ Ընդսմին նա սեփական ձեռքերով իր տպագրատան արտադրանքը տարածել է Բուլղարիայում, որի համար էլ ենթարկվել է հալածանքների։

Հայ ժողովուրդը լայնորեն արձագանքեց բուլղարների ազգային-ազատագրական շարժման վերելքին, ջերմորեն ողջունեց նրանց հերոսական ելույթները, հնարավորությունների սահմանում ապստամբներին ցույց տվեց բարոյական և նյութական աջակցություն։ Նա դատապարտեց թուրքական իշխանություններին, որոնք հրի ու սրի մատնեցին բուլղարական բազմաթիվ քաղաքներ ու գյուղեր։ Բուլղարահայերը լիովին բաժանում էին բուլղար ժողովրդի բախտը և ակտիվորեն մասնակցում ապստամբական շարժումներին։ Շնորհիվ իրենց անձնուրաց գործելակերպի բուլղար ժողովրդի ազգային-ազատագրական շարժումների պատմության մեջ մտան բազմաթիվ բուլղարահայեր։ Հիշարժան են հատկապես Կավառնայի փոստ-հեռագրատան պաշտոնյա Երանոս Երանոսյանը, որը զոհվել է հանուն Բուլղարիայի ազատագրության, Հովհաննես Ալաջաջյանը, որը սերտ կապերի մեջ է եղել բուլղար հեղափոխականների հետ և փրկել է Գեորգի Ռակովսկու կյանքը, Գեորգ Ռուսչուկլյանը (Թադևոս Պողոսյան), Արթին Գեդիկովը (Հարություն Գեդիկյան), Կարապետ Թագվորյանը, Խաչեր Վարդազարյանը, Կարապետ Փափազյանը և ուրիշներ[105]։

Հայ ժողովուրդը եղբայրական օգնության ձեռք է մեկնել նաև բուլղար հեղափոխականներին, որոնք բանտարկվում և աքսորվում էին Թուրքիայի փոքրասիական նահանգները, մասնավորապես՝ Արևմտյան Հայաստան։ Իրենց անշահախնդիր աջակցությամբ և օգնությամբ նրանք նպաստեցին բուլղար աքսորականների տառապանքների թեթևացմանը և կյանքի պահպանմանը։ Դիարբեքիրը, որը հանդիսանում էր բուլղար աքսորականների կենտ-

---

105 *С. В. Овнанян*, Армяно-Болгарские исторические связи и армянские колонии в Болгарии во II половине XIX в., Ереван, 1968.

րոնատեղի, պատմության մեջ մտավ որպես հայ և բուլղար ժողովուրդների եղբայրական հարաբերությունների ամրապնդման վայր։ Բուլղար աքսորականները, որոնց թվում էին ականավոր հեղափոխականներ Անգել Օբբետենովը, Գեորգի Միրկովիչը, Աթանաս Ուզունովը, Պյոտր Բերկովսկին, Ստոյան Զաիմովը և ուրիշներ (շուրջ 200 հոգի), որոշակի հետք թողեցին արևմտահայերի հասարակական-քաղաքական կյանքում։ Թերևս նրանց ազդեցությամբ Դիարբեքիրում 1865 թ. հիմնադրվեց «Հայրենասիրաց» դեմոկրատական կազմակերպությունը։

Բալկանյան ժողովուրդները, ինչպես և բալկանաբնակ հայերը, թուրքական լծից ազատագրվելու գրավականը տեսնում էին ռուսական զենքի հաղթանակի մեջ։ Բալկանյան «բոլոր քրիստոնյաները անհամբեր սպասում են,— շեշտված է Վառնայի ռուսական փոխհյուպատոս Վ. Նյազինի 1870 թ. զեկուցագրերից մեկում,— Ռուսաստանի պատերազմին՝ ընդդեմ Թուրքիայի, որպեսզի ցույց տան ամեն տեսակի աջակցություն... Ներկայումս Ռուսաստանի Արևելյան պատերազմի դեպքում քրիստոնյա բոլոր ժողովուրդները համատարած կապստամբեն ու ռուսների հետ կշարժվեն նրանց բոլոր թշնամիների դեմ և պատրաստ են ամեն ինչ զոհաբերելու իրենց ազատագրության համար»[106]։

## 3. ՊԱՐՍԿԱՍՏԱՆԻ ԵՎ ՀՆԴԿԱՍՏԱՆԻ ՀԱՅ ԳԱՂԹԱՎԱՅՐԵՐԸ

ՊԱՐՍԿԱՍՏԱՆ։ XIX դարի առաջին կեսին Պարսկաստանը շարունակում էր մնալ որպես միջնադարյան հետամնաց ագրարային երկիր։ Կյանքի ու գույքի անապահովությունը ստիպում էր պարսկահայ բնակչությանը գաղթել դեպի ապահով վայրեր՝ Հնդկաստան, Ռուսաստան և այլ երկրներ։ «Այդ ժամանակ,— վշտով գրում է ժամանակակից պատմիչ Խաչատուր Ջուղայեցին,—ջուղայեցի հայերը ամբողջապես ցրվեցին երկրի երեսը... ոմանք գնացին Հնդկաստան, ուրիշներ՝ Ռուսաստան և կեսը՝ աշխարհի այլ երկրամասեր»[107]։ Գաղթում էր գլխավորապես պարսկահայ բնակչության ունևոր խավը։ Պարսկաստանում մնում էին առավելապես գյուղացիները և արհեստավորները, այսինքն՝ նրանք, ովքեր գաղթելու հնարավորություն չունեին։

Պարսկահայության դրությունը ավելի ծանրացավ XIX դարի հիսունական թվականներին։ Պարսկաստանի մի քանի գաղթավայրեր՝ նեղվելով պարսկական լեռնաբնակ ցեղախմբերի վայրագություններից, 1850 թ. մարտի 19-ին դիմել են Ներսես Աշտարակեցի կաթողիկոսին և խնդրել միջոցներ փնտրել իրենց հայրենիք փոխադրելու համար։ «Զարհուրելի է մեր նեղությունը,— գրել են նրանք,— անտանելի է մեր կեղեքանքը, անհանդուրժելի է մեր հալածանքը և անպատմելի են պես-պես անօրենությունները, որ չարաչար և անընդմեջ կրում ենք բախտիար փոշվող պարսկական անբարիշտ բարբարոս ցեղախմբերից»[108]։

---

106 ՌԱՔԱ, Դեսպանությունը Կոստանդնուպոլսում, գ. 162 (բ), թ. 49։

107 Տե՛ս Խաչատուր Ջուղայեցի, Պատմութիւն Պարսից, Վաղարշապատ, 1905, էջ 289։

108 Հ. Կարբեցի, Ուղեգրութիւն, Մատենադարան, ձեռ. 2821, թ. 32ա։

XIX դարում պարսկահայ բնակչության նվազման հետևանքով խամրել էին Պարսկաստանի նախկին բազմամարդ գաղութներից շատերը։ Տվյալ ժամանակաշրջանի պարսկահայ բնակչության թվի մասին մեզ որոշ պատկերացում են տալիս «Մասյաց աղավնիում» հրապարակված 1851 թ. վիճակագրական տվյալները, որոնցից երևում է, որ Հարավային Պարսկաստանի հինգ քաղաքներում և 78 գյուղերում ապրում էր ընդամենը 19 հազար հայ։ Ըստ այդ տվյալների, պարսկահայ գաղթօջախների բնակչության թիվը հետևյալ պատկերն ուներ.

| Վ ա յ ր | տ ու ն | շ ու ն չ |
|---|---|---|
| Նոր Ջուղա | 375 | 2550 |
| Թեհրան | 75 | 310 |
| Վանակ և Դեոթրիար գյուղեր (Թեհրանի մոտ) | 43 | 211 |
| Շիրազ | 7 | 34 |
| Բուշեր | 9 | 65 |
| Համադան | 40 | 234 |
| Համադանի մոտիկ գյուղերը | 76 | 316 |
| Չարմահալի գավառ | 306 | 2067 |
| Փերիայի գավառի 25 գյուղերում | 1012 | 6543 |
| Բուրվարի 16 գյուղերում | 446 | 3005 |
| Քեամարայի 5 գյուղերում | 124 | 751 |
| Ջյաքլայի 8 գյուղերում | 183 | 1112 |
| Քյազազի 7 գյուղերում | 151 | 981 |
| Մալայիրի 4 գյուղերում | 101 | 581 |
| Ղարադանի 4 գյուղերում | 102 | 773 |

Ինչ վերաբերում է Ատրպատականի թեմին, ապա 1828—1830 թթ. արտագաղթից հետո զգալի թվով հայեր դեռ շարունակում էին մնալ իրենց ապրած վայրերում։ XIX դարի կեսերին Թավրիզի և նրա շրջակա գավառներում ապրող հայ բնակչության թիվը հաշվվում էր մոտավորապես 15.000—20.000 հոգի։

Հյուսիսային Պարսկաստանում հայերը բնակվում էին Թավրիզում, Խոյում, Մակուում, Սալմաստում, Ուրմիայում, Բարանդուզում, Սուլդուզում, Միանդաբում, Մարաղայում և Ղարադաղում։

Պարսկաստանի հայ բնակչության հիմնական մասը գյուղացիությունն էր, որը XIX դարի առաջին քառորդում մեծ մասամբ գտնվում էր կիսաճորտական վիճակում։ Բացի հողային ռենտայից և պետական հարկերից, հայ գյուղացիները պարտավոր էին աշխատել նաև արքաների (կալվածատերերի) տնտեսության մեջ և կոռային բազմատեսակ աշխատանքներ կատարել։

Նոր-Ջուղայի հայկական որոշ գյուղեր պատկանել են արքունիքին և մինչև 1847 թ. վճարել են բնամթերային ռենտա, որը հետագայում փոխարինվել է դրամական ռենտայով[109]։

109 Տեր-Հովհանյանց, նշվ. աշխ., հատ. I, էջ 301։

Պարսկահայ գյուղացիությունը, պետական հարկերից բացի, պարտավոր էր պարսկա-հնդկական թեմի առաջնորդարանին վճարել նաև, այսպես կոչված, «հոգևոր» հարկ։ Այդ հարկը գանձվել է գլխավորապես բնամթերքով։

Պարսկահայ գյուղացիության, հատկապես Սպահանի շրջանում ապրող հայ գյուղացիության համար գոյություն ուներ մեկ այլ չարիք ևս. նրանց մոտիկ լեռնային մասերում ապրող լոր և բախտիար կոչվող ցեղախմբերը, օգտվելով տեղական իշխանությունների թուլությունից, պարբերաբար հարձակվում էին հայկական գյուղերի վրա, կողոպտում գյուղացիներին։ «Յափշտակութիւն հօտից և անդեաց նոցա լինի անպակաս[110]», վշտով նշում է Տեր-Հովհանյանցը։

Պարսկահայ գյուղացիությունը, գյուղատնտեսական աշխատանքից բացի, զբաղվում էր նաև գորգագործությամբ։ Պարսկաստանում հայերի գործած գորգերը հայտնի էին «Արմանիբաֆ» անունով և մեծ հռչակ ունեին միջազգային շուկաներում. նրանք ավելի թանկ էին գնահատվում, քան պարսկական սովորական գորգերը։

Պարսկահայ բնակչության սոցիալական կազմում զգալի թիվ էին կազմում արհեստավորները, որոնք կենտրոնացած էին քաղաքներում՝ Թավրիզում, Թեհրանում, Համադանում, Սպահանում, Շիրազում և այլն։

Պարսկահայերի մեջ զգալի մաս էին կազմում ջուլհակները, ոսկերիչները, դարբինները, որմնադիրները, կոշկակարները, հյուսները։ XIX դարում Պարսկաստանում ոսկերչությունը գրեթե ամբողջությամբ հայերի մենաշնորհն էր։ Հայ արհեստավորների ձեռքում էր նաև պարսկական արքունիքի ոսկերչությունը։

Պարսկահայ արհեստավորները մեծ հաջողություն ունեին նաև մուշտակագործության մեջ։ Նրանք աղվեսի, կզաքիսի, գառան և այլ կենդանիների մորթուց հրաշալի մուշտակներ էին պատրաստում։

Նոր-Ջուղայում կարևոր արհեստներից էին կտավագործությունը և գուլպայագործությունը։ Նոր-Ջուղայի ջուլհակները և գուլպա գործողները տարեկան վաճառքի էին հանում 130 հազարից մինչև 140 հազար կտոր կտավ և 25 հազարից մինչև 30 հազար զույգ գուլպա։

Մեծ թվով պարսկահայեր աշխատում էին ռազմական արդյունաբերության մեջ։ Թնդանոթ ձուլող գլխավոր վարպետների մեծ մասը հայ մասնագետներ էին, որոնք եկել էին Ռուսաստանից, Անդրկովկասից և արևմտաեվրոպական երկրներից։ Պարսկաստանում մեծ հռչակ էին վայելում նաև սուր պատրաստող և սրի վրա ոսկետառ փորագրություններ անող հայ վարպետները։

Պարսկահայ արհեստավորության շրջանում գոյություն են ունեցել համքարական (էսնաֆական) կազմակերպություններ՝ կոշկակարների, ոսկերիչների, ղոնդաղսազների, դերձակների, հյուսների և այլն։

Ապրանքներից բազմաթիվ տեղերում մեծ մաքսեր էին գանձվում։ Ռեշտից մինչև Բենդերբուշիր ապրանք տեղափոխող վաճառականը պարտավոր

---

110 Նույն տեղում, էջ 302։

էր մաքս վճարել 14 վայրում, իսկ առևտրական քարավանների կողոպուտը, սովորական երևույթ էր Պարսկաստանում։

Ատրպատականի թեմի առաջնորդ Գևորգ եպիսկոպոսը 1855 թ. հուլիսի 27-ին Նասրեդդին շահին ներկայացրել է մի խնդրագիր՝ պարսկահայ համայնքների ծանր դրության մասին։ Նա խնդրել է հետևյալը. իրավունք չտալ հավատափոխ հայերին իրենց հարազատների գույքը գրավելու, արգելել հայերի հավատափոխությունը Պարսկաստանում, ամերիկյան միսիոներներին և կրոնական գրականություն տարածողներին թույլ չտալ գործել Պարսկաստանում, արգելել կալվածատերերին՝ հայ գյուղացիներից պահանջելու խոտ և ցախ, սահմանվածից ավելի մաքս չվերցնել Ռուսաստան աշխատելու գնացող հայ մշակներից, արգելել աղջիկ փախցնելը և փախցնողներին պատժել, սանձել Ղարադաղի խաների և բեկերի անիրավությունները, օգնել Թավրիզի հայկական դպրոցին 250 թուման նպաստով, պարսկական գյուղերում ցրված հայերին հավաքել մի տեղ, սիրով վարվել հպատակ հայերի հետ, Թավրիզի ու Թեհրանի հայերին ազատել ամեն տեսակի ապօրինի հարկերից, արգելել անզավակ հայ մարդկանց գույքի գրավումը, թույլ տալ հայ եկեղեցիների զանգահարությունը, օրինականացնել հայ եկեղեցիների կալվածքային իրավունքը[111]։

Նասրեդդին շահն ընդառաջել է Գևորգ եպիսկոպոսի խնդրանքին և բավարարել նրա պահանջները։ Այդ առթիվ շահը հատուկ հրովարտակ է շընորհել Ատրպատականի թեմի առաջնորդին։

Հայ բնակչության դրությունը բարելավելու նպատակով Նասրեդդին շահին դիմել էր նաև Նոր-Ջուղայի թեմի առաջնորդ Թադևոս Բեկնազարյանը։ Նրան ևս հաջողվեց պարսկական արքունիքից մի շարք արտոնություններ ըստանալ[112]։

Ստեղծված համեմատաբար նպաստավոր պայմաններում պարսկահայ բնակչության թիվը փոքր-ինչ ավելացավ։ Այսպես, Նոր-Ջուղայի 1851 թ. 2550 հայ բնակչությունը ավելանում և 1880 թ. հասնում է 4567-ի, Փերիայի հայկական 25 գյուղերինը՝ 6543-ից հասնում է 12.123-ի, Բուրվարի հայկական 16 գյուղերի բնակչության թիվը 3005-ից հասնում է 6115-ի և այլն[113]։

Նոր ժամանակներում Պարսկաստանի հայ գաղթավայրերում աչքի էին ընկել մի շարք հայ գործիչներ, որոնք ղեկավար դիրք էին գրավում Պարսկաստանի պետական, զինվորական և տնտեսական կյանքի բնագավառներում։

Ըստ շարիաթի, այլակրոններին արգելված է եղել պատասխանատու պաշտոններ վարելը։ Չնայած այդ արգելքներին, գտնվել են առանձին մարդիկ, որոնք, շնորհիվ իրենց ունակությունների, ղեկավար դիրք են գրավել պետական ասպարեզում։

Պարսկահայ պաշտոնյաների մի այլ խումբ ավարտել էր արևմտաեվրոպական և ռուսական համալսարանները։ Դրանք այնպիսի մասնագիտության տեր

---

111 Հայկական ՍՍՀ ԿՊՊԱ, ֆ. 57, գ. 224, թ. 13—18։
112 Հ. Տեր-Հովհանյանց, նշվ. աշխ., հատ. II, էջ 83—85։
113 Հայկական ՍՍՀ ԿՊՊԱ, ֆ. 57, գ. 136, թ. 7։

մարդիկ էին, որոնց կարիքը զգացվում էր Պարսկաստանում, և որոնց, հակառակ օրենքի սահմանափակումների, հարկադրված էին արտոնյալ պայմաններով աշխատանքի հրավիրել։

Պարսկական արքունիքում աշխատող հայերի մեջ զգալի թիվ են կազմել դիվանագետները և թարգմանիչները։ 1873 թ. Լոնդոնի պարսկական դեսպանը Մելքոն խանն էր, Վիեննայինը՝ Նարիման խանը, Փարիզինը՝ Նազար խանը (Լազարյան ճեմարանի շրջանավարտ) և այլն։ Պարսկաստանի արտաքին գործոց նախարարության մեջ աշխատողների, մասնավորապես թարգմանիչների ճնշող մեծամասնությունը հայեր էին։

Պարսկահայ աչքի ընկնող դիվանագետներից էր Դավիթ Մելիք-Շահնազարյանը, որի մորը պարսիկները գերի էին բերել Ղարաբաղի Մաղրա գյուղից։ Ջուղայեցիները նրան և իր մորը գնել էին պարսիկներից և ազատել։ Դավիթը փոքր հասակից ուսումնասիրել է հայերենը, պարսկերենը և արաբերենը։ Այնուհետև նա մեկնել է Փարիզ և աշակերտել Շահան Ջրպետին։ 1811 թ. պարսկական կառավարության հրավերով նա աշխատանքի է անցնում արքունիքում և 1813—1814 թթ. Ֆրանսիայում նշանակվում պարսկական հյուպատոս։ Նա իր ծառայությունների համար Նապոլեոնի կողմից պարգևատրվում է զինվորական սրով։ 1818 թ. Փարիզում ֆրանսերեն և պարսկերեն հրատարակում է Պարսկաստանի մասին պատմական մեծ արժեք ներկայացնող «Տեղեկագրություն»։ Դավիթ Մելիք-Շահնազարյանն իր կյանքի վերջին շրջանում բնակություն հաստատեց Երևանում, ուր և մահացավ։ Պարսկական արքունիքի աչքի ընկնող դիվանագետներից էր Դավիթ խան Դավթյանը։ Փոքր հասակում նա մեծ հաջողությամբ սովորել և տիրապետել էր մի քանի լեզուների՝ հայերենի, իտալերենի, ֆրանսերենի, հունարենի, թուրքերենի և պարսկերենի։ Սկզբում աշխատանքի է անցել Ջմյուռնիայի պարսկական հյուպատոսարանում՝ թարգմանչի պաշտոնով։ 1859 թ. նշանակվել է դեսպան Վիեննայում։ Դավիթ խանը հետագայում պարսկական կառավարության կողմից նշանակվել է արտակարգ դեսպան Պետերբուրգում, ուր և ռուսական կառավարության կողմից պարգևատրվել է Ստանիսլավի երկրորդ աստիճանի շքանշանով[114]։

Արքունիքում բացառիկ հեղինակություն էր վայելում Ենիկոլոպյան ընտանիքը, որը Պարսկաստան էր տեղափոխվել Թիֆլիսից։ Մեծ համբավ ունեցող այդ ընտանիքի գրեթե բոլոր անդամները եղել են զարգացած մարդիկ, տիրապետել են մի շարք լեզուների և մեծ դեր կատարել Պարսկաստանի արտաքին քաղաքականության ասպարեզում։

Պարսկահայ գաղթավայրի աչքի ընկնող անձնավորություններից էր Սեթ Աստվածատրյանը, որը XIX դարի առաջին քառորդում աշխատելով Պարսկաստանի արտաքին գործոց նախարարությունում իբրև թարգմանիչ, խնդիր է ունեցել ուսումնասիրել երկրի հանքային հարստությունները և պաշտպանվել դրանց շահագործումը։ Նա Պարսկաստան է տեղափոխել հույն հանքա-

---

114 «Մասիս», 1859, էջ 387։

փորներ և առաջին անգամ այնտեղ սկսել շահագործել Ղարադաղի Հասան ձոր կոչված վայրի պղնձի, արծաթի և արճիճի հանքավայրերը։

Ականավոր դեմքերից էր նաև Մելքոն խանը, լիբերալ-բուրժուական գաղափարախոսության առաջին դրոշակակիրը Պարսկաստանում։ Նա ծնվել է Թեհրանում՝ 1831 թվականին, ավարտել է Փարիզի Մուրադյան վարժարանը։ Այնուհետև պարսկական արքունիքում աշխատել է թարգմանչի, իսկ հետո՝ դիվանագետի պաշտոններում։ Մելքոն խանը ճանապարհորդել է եվրոպական մի շարք երկրներում ու Ամերիկայում, հաղորդակից է դարձել առաջադեմ գաղափարներին։ Վերադառնալով Պարսկաստան, նա հանդես է եկել մի քանի բարեփոխությունների ծրագրերով՝ ինչպես պետական ապարատում, այնպես և պարսկական լեզվի ու գրականության բնագավառներում։ Իր առաջադեմ գաղափարների համար նա ենթարկվել է հալածանքների։ Հետապնդումից ազատվելու նպատակով տեղափոխվել է Լոնդոն, որտեղ 1890 թ. պարսկերեն հրատարակել է «Ղանուն» («Օրենք») անունով մի պարբերական, որն առաջին սահմանադրական գաղափարներ քարոզող ամսագիրն էր պարսկական իրականության մեջ։ Հակառակ հարուցված դժվարությունների, ամսագրի որոշ համարներ տարածվել են Պարսկաստանում։

XIX դարում պարսկահայ գաղթօջախների նվազման հետ անկում է ապրում նաև Նոր-Ջուղայի մշակութային կյանքը։ Ճեմարանը փակվում է, իսկ նրա փոխարեն հանդես են գալիս վանքերին կից դպրատներ, որոնք գործում են մեծ ընդմիջումներով։

1833 թ. մաղրասաբնակ Գրիգոր Սամյանը 20.000 ռուփի է կտակել Նոր-Ջուղայում դպրոց բացելու նպատակով։ Դպրոցը բացվել է ս. Ստեփանոս եկեղեցու գավթում, սակայն երկար կյանք չի ունեցել. նյութական միջոցների սպառման պատճառով 1837 թ. դպրոցը փակվել է։ Այս դպրոցում երկու տարի դասավանդել է Մեսրոպ Թաղիադյանը[115]։

1843 թ. կալկաթաբնակ Հարություն Աբգարյանը ս. Աստվածածին եկեղեցու բակում հիմնել է մի դպրոց՝ «Հայկական հայրենասիրական» անունով։ Դպրոցը գործել է 40 տարի և տվել է մեծ թվով շրջանավարտներ։

1853 թ. Ինդոնեզիայի Բատավիա քաղաքից երկու քույրեր՝ Մարիամ Հարությունյանը և Թագուհի Մանուկյանը Նոր-Ջուղայի Դավրեժ թաղի ս. Մինաս եկեղեցու գավթում իրենց միջոցներով բացել են հայկական մի նոր դպրոց, որը գործել է 30 տարի[116]։

1858 թ. ճավայաբնակ Մանուկ Հորդանյանը Նոր-Ջուղայում առաջին անգամ բաց է անում օրիորդաց դպրոց։

Թավրիզում եկեղեցու գավթում գործող դպրոցի մասին տեղեկություններ են պահպանվել 1600 թվականից։ 1853 թ. Ատրպատականի թեմի առաջնորդարանի այստեղ տեղափոխվելուց հետո կառուցվում է Արամյան դպրոցի շենքը։

Արամյան դպրոցը բարեկարգվում է Գևորգ արքեպ. Վեհապետյանի ջան-

115 «Պարսկահայ տարեցույց», 1929, էջ 31—34։

116 Տեր-Հովհանյանց, նշվ. աշխ., հատ. II, էջ 258—259։

քերով։ Պարսկական կառավարությունը նույնպես 1864 թ. սկսած դպրոցին տրամադրում է 250 թուման նպաստ՝ պարսկերեն դասավանդելու համար։ Դպրոցի վարչությանը հաջողվում է 300 թուման նպաստ ստանալ ցարական արքունիքից՝ ռուսաց լեզվի ուսուցման նպատակով։ Հետագայում այդ գումարը հասնում է 500 թումանի։

ՀՆԴԿԱՍՏԱՆ։ XVIII դարի վերջերին և XIX դարի սկզբներին Հնդկաստանն արդեն գաղութացված էր։ Հայ վաճառականների նախկին «դաշնակից» «Արևելա-հնդկական» ընկերությունը անցել էր նրանց տնտեսական բնագավառից դուրս վտարելու քաղաքականության։ Վերջիններս, իրենց դիմաց ունենալով եվրոպական լավ կազմակերպված առևտրական ընկերություններ, բնական է, պետք է տեղի տային, մատնվելով տնտեսական քայքայման։

XIX դարում հիմնովին փոխվել էր հնդկահայ գաղթավայրի պատկերը. հին գաղթօջախների մի մասը քայքայվել և վերացել էր։ Նախկին գաղթօջախներից իրենց գոյությունը պահպանում էին Կալկաթան, Ջիլրան, Սեյդաբադը, Սուրաթը, Դաքքան, Ագրան, Գուվալիրը, Լահորը, Մադրասը և Բոմբեյը։ Այլևս չէին հիշվում Փաթանան, Դովլաթաբադը, Լաքնահորը, Գոանը, Չիտտագոնդը, Դելին, Հայդարաբադը, Բանգալորը, Մայսուրը և շատ այլ քաղաքներ, որոնք երբեմնի աշխույժ կյանք ունեցող հայկական գաղթօջախներ էին[117]։

XIX դարի առաջին կեսի հնդկահայ գաղթօջախների իրական պատկերը տալիս է Մեսրոպ Թաղիադյանը։ Խոսելով 1840-ական թվականների հայ գաղթօջախների մասին, նա գրում էր. «... իսկ այժմ կան վայրեր, որտեղից իսպառ վերացել է ազգը, ինչպես Ակպարաբադը, Լահորը, Սուրաթը, կան վայրեր, որտեղ մի քանի անձ ճրագի պես առկայծելով ցույց են տալիս, որ երբեմնի այստեղ ազգի հարստություն է եղել, ինչպիսիք են Ջիլրան, Հայդարաբադը, Փաթանան, Գուլաերը...»[118]։

Մադրասը, որ հնդկահայ համայնքների ամենից խոշոր գաղթօջախն էր, XVIII դարի վերջերին և XIX դարի սկզբներին գրեթե դուրս էր եկել շարքից։ Այնտեղ մնացել էին մի քանի ընտանիքներ միայն։ 1860-ական թվականներին մադրասահայ բնակչության հիմնական մասը արհեստավորներ էին, փորձավարներ և այլն։

XIX դարի կեսերից սկսած Բոմբեյի հայկական կյանքը, մյուս օջախների նման սկսել էր անկում ապրել։ Բոմբեյում, որը ոչ հեռու անցյալում «հայոց որդոց համար», ինչպես սովոր էին ասել, բնակչաշատ «համալսարան» էր, XIX դարի կեսին հաշվվում էր ընդամենը 30—40 ընտանիք։

XVIII դարի վերջին մի քանի հարյուր տուն ունեցող սուրաթահայ գաղթօջախը XIX դարի կեսին իսպառ քայքայված էր։ Եթե Բոմբեյի և Մադրասի գաղթօջախները նվազեցին, ապա Սուրաթը գրեթե ամայացավ։ 1825 թ. Սուրաթի հայ գաղթավայրը հասել էր այնպիսի վիճակի, որ չէր կարող իր միջոցներով վճարել հայկական եկեղեցու քահանայի ռոճիկը։ 1861 թ. Սուրաթի հայոց եկեղեցու ունեցվածքը փոխադրվեց Բոմբեյ և եկեղեցին փակվեց։

---

117 «Ազգասեր Արարատյան», 1851, № 72, էջ 569։

118 «Ազգասեր», 1845, հատ. Ա., էջ 137։

XIX դարի երկրորդ կեսին հնդկական մյուս գաղթավայրերի վիճակը նույն պատկերն էր ներկայացնում։ Միակ գաղթօջախը հնդկական հողի վրա, որ կարողացավ տոկալ և հաղթահարել դժվարությունները, Կալկաթան էր։ Սկսած XIX դարի երկրորդ կեսից Կալկաթայի հետ է կապված Հնդկաստանում հայկական տպարանների, ընկերությունների, դպրոցների, մշակութային կյանքի ամբողջ պատմությունը։

Ճիշտ է, Կալկաթայի հայ համայնքը, որոշ տատանումներով, պահեց իր թվաքանակը, բայց նրա դեմքն էլ փոխվեց։ Նախկին առևտրական խոշոր տներից շատ քչերն էին մնացել, նորերն էլ գրեթե չկային։ XIX դարում ասպարեզի վրա երևում են մի քանի առևտրական ընկերություններ և վաճառականներ միայն։ XIX դարի հնդկական առևտրում ամենից խոշոր դեմքը համարվում է Գրիգոր Արզարը, որը սեփական առևտրանավեր ուներ և կապված էր միջազգային կարևոր շուկաների հետ։

Դյուլորիեն Հնդկաստանում և հարևան կղզիներում ապրող հայերի թիվը XIX դարի կեսերին հաշվում է 25.000, Հ. Ջագրյանը՝ 20.000։ Ոմանք, հավանաբար, հաշվի առնելով հնդկահայության հարուստ շրջանների նվիրատվությունների մեծ չափերը, նրանց թիվը հասցրել են նույնիսկ 50.000-ի։

Պարսկաստանից XIX դարի առաջին քառորդում զգալի թվով գաղթականներ եկան Հնդկաստան։ Դրանք ընչազուրկ մարդիկ էին, որոնք գաղթում էին Հնդկաստան իրենց ֆիզիկական գոյությունը պահպանելու համար։ Նոր գաղթականության գալու հետևանքով ավելի ևս փոխվեց հնդկահայ գաղթավայրի սոցիալական պատկերը։

Հնդկահայ համայնքները իրենց աղքատ հայրենակիցներին չթողեցին անօգնական վիճակում։ Համայնքի հանգանակած գումարներով և բարերարների կտակած դրամով Կալկաթայում 1820 թ. հիմնվեց աղքատանոց՝ «Խայաթ խանե»[119]։ Աղքատանոցի միջոցները հետագայում հայթայթում էին զանազան հանգանակություններից, նվիրատվություններից, կտակներից գոյացած գումարներից։

XIX դարում հնդկահայ բնակչության սոցիալական կազմում մեծ էր ծառայողների՝ պետական պաշտոնյաների, զինվորականների, թարգմանիչների, ընկերությունների գրասենյակային աշխատողների թիվը։ Հնդկաստանում կային ոչ քիչ թվով հայ իրավաբաններ, որոնք ծառայում էին դատարաններում ու քննչական մարմիններում։

Միայն Կալկաթայի բարձրագույն դատարաններում XIX դարի երկրորդ կեսին հայ իրավաբանները քսանից ավելի են եղել։ Նրանց մեջ գտնվել են իրավաբանության և արվեստի մագիստրոսներ և բակալավրներ։ Հնդկահայ իրավաբանների ամենից փայլուն դեմքը Գրիգոր Ջարլզ Պոլն է։ Նա պաշտոններ է վարել Կալկաթայի բարձրագույն դատարանում։ Ի միջի այլոց, Պոլն է պաշտպանել 1860 թ. Միքայել Նալբանդյանի՝ Մասեհ Բաբաջանյանի կտակի առթիվ հարուցած գործը և շահել այն[120]։

---

119 Ա. Ալպոյաճյան, Պատմություն հայ գաղթականության, III, էջ 344։

120 Մատենադարան, Անհատական արխիվ, թղթ. 232, վավ. 256։

Ի դեպ, Միքայել Նալբանդյանը մի քանի ամիս մնաց Կալկաթայում և կուսակի գործը հաջող ավարտելուց հետո վերադարձավ Ռուսաստան։ Նալբանդյանի մի քանի ամսվա կյանքը Հնդկաստանում, շփումը և զրույցները տեղի հայ ազգաբնակչության հետ մեծ տպավորություն թողեցին հնդկահայ առաջավոր մտածողների շրջանում։ Հայտնի է, որ հնդկահայերը մեծագույն ցավով ընդունեցին Նալբանդյանի ձերբակալման լուրը։ Միքայել Նալբանդյանը, ըստ նրանց բնորոշումների, «ազատության ջահակիր է հանդիսացել» և «մեծ հայրենասեր»[121]։ Նալբանդյանի ջերմ պաշտպան «Եղբայրասեր»-ի խմբագիր Տեր-Հարությունյանը, ընդառաջելով իր ընթերցողների խնդրանքին, նրանց ծանոթացնում է Նալբանդյանի աշխատություններին։ «Եղբայրասերը» հրատարակում է նաև «Ազատություն» հռչակավոր բանաստեղծությունը։

XIX դարում, հատկապես երկրորդ կեսին, կալկաթահայ համայնքը տրվել է մեծանուն մի շարք բժիշկներ, որոնք աչքի ընկնող գործունեություն էին ծավալում բանակում։ Հայ բժիշկների նախասիրած ճյուղը եղել է վիրաբուժությունը։

Հնդկահայերի մեջ մեծ թիվ են կազմել նաև հայ զինվորականները, որոնք պատկանել են միջին հրամանատարական կազմին։ Եղել են նաև մի քանի բարձրաստիճան զինվորականներ, որոնցից նշանավորը հայ զորավար Հակոբ Պետրոսյանն էր։ Աչքի ընկնող հայ զինվորականներից էր Մովսես Մանուկյանը, որը պաշտոնավարել է Հայդարաբադում 1837—1851 թվականներին։ Հնդկաստանում աչքի ընկնող դիրք են ունեցել հայ ծովայինները։ Դեռևս հնուց նրանք քաջ հայտնի էին Հնդկաստանի նավահանգիստներում որպես հմուտ լոցմաններ, որոնք բենգալական ծոցը ժամանած նավերը հասցնում էին Կալկաթա[122]։

Մեծ էր հնդկահայ մասնագետների և արհեստավորների թիվը։ Նախկինում առևտրական հայկական ընկերություններում ծառայող շատ հնդկահայեր, բնականաբար, աշխատանքի էին անցնում արդյունաբերական ընկերություններում, այս անգամ արդեն ոչ իբրև մանր գործավարներ, այլ մասնագետներ։

Հնդկահայության մեջ ամենից տարածված արհեստներից մեկը ոսկերչությունն էր։ Հայ արհեստավորներն այստեղ գործում էին առանձին-առանձին և կամ մեկ-երկու հոգի միանում և կազմում էին փոքրիկ համքարություն։ Հայ ոսկերիչները Կալկաթայում այնքան մեծ հռչակ ու համարում ունեին, որ նրանց շատ հաճախ պատվերներ էին տալիս ոչ միայն Հնդկաստանից, այլև Եվրոպայի և Ասիայի զանազան երկրներից։ Կալկաթայի հայ վարպետների ձեռքով պատրաստած իրերն աչքի են ընկել գեղարվեստական ճաշակով, կատարման նրբությամբ։

Հայ արհեստավորներից մեծ հռչակ են ունեցել նաև ներկեր պատրաստողները, որոնց նուսխով շինված ներկերը մրցում էին հռչակավոր «մարտին» կոչվող ներկերի հետ[123]։

---

121 «Եղբայրասեր», 1863, № 33, էջ 266։

122 Ղ. Ինճիճեան, Դարապատում, Վենետիկ, 1824, էջ 246։

123 «Ազգասեր Արարատյան», 1848, հատ. Ա, էջ 98։

XIX դարի կեսերին հայ վաճառականների կողքին Հնդկաստանում բուկրսում են երևան գալ հայ առևտրա-արդյունաբերողների զանազան ընկերություններ՝ «Արևելյան ապահովչաց ընկերությունը», որը հիմնվել է 1839 թ., «Ծովային ապահովության գործարանը»՝ հիմնված 1844 թ., «Բարեկամության ապահովագրության գործարանը», որն իր բաժանմունքներն ուներ Լոնդոնում, Սինգապուրում, Մադրասում, Բոմբեյում, Չինաստանում, «Միացյալ շոգենավաձիգ ընկերությունը», «Բասարաթ լեղակի ընկերությունը», «Հուգլիի գետանավային ընկերությունը» և այլն։

Արդյունաբերության ոլորտում գործող հնդկահայերից ոմանց զբաղեցնում էր մի միտք ևս՝ արդյունաբերական ձեռնարկություններ հիմնել հայրենի երկրում։ Նրանք նախագծեր են մշակել արդյունաբերությունը զարգացնելու, կատարելագործելու եղած արհեստները և տնային արդյունագործությունը։

XIX դարի 50—60-ական թվականներին արդյունաբերության բնագավառը չտեղափոխված հայ վաճառականները Հնդկաստանում կանգնած էին բավական ծանր կացության առջև։ Այդ վիճակից դուրս գալու համար նրանք ձգտում էին դրամագլուխները ի մի բերել և միություններ կազմակերպել։

Այս տարիներին էր, որ Ավստրալիայում հայտնաբերվեցին ոսկու հանքեր։ Դեպի նոր սատանայի տենդով բռնվեցին նաև շատ հնդկահայ վաճառականներ։ Անկումից խուսափելու համար նրանք իրենց փրկությունը «ավետյաց երկիր» գնալու մեջ էին տեսնում։ Սակայն առաջին իսկ գնացողները կարճ ժամանակում կորցնում են ունեցածն էլ և հուսախաբ ետ դառնում[124]։

Հանգիստ չի եղել նաև Մադրասի համայնքի ներքին կյանքը։ Մեծահարուստների և աշխատավորության մեջ ծայր առած բախումները այստեղ ևս սուր բնույթ են ընդունել համայնքի վարչական մարմնի կամ հասարակական կազմակերպությունների ընտրությունների ժամանակ։ Կալկաթայի հայկական համայնքը տրոհված է եղել երկու հիմնական մասի՝ մեծահարուստների և աշխատավորների։ Վերջին խմբին պատկանել են արհեստավորները, նորեկ աղքատ պարսկահայերը և մանր առևտրականները։

Այս երկու խմբավորման մեջ մշտապես տեղի է ունեցել պայքար համայնքի ներքին խնդիրների շուրջը։ Այն սուր բնույթ է ստացել հատկապես վարչական մարմինների ընտրության ժամանակ։

Համայնքի աշխատավորությունը բողոքում էր, որ մեծահարուստները բռնանում են իրենց վրա. «Հազար կամ երկու հազար ռուփոց կարողության տերը,— գրում են նրանք,— մեծ համարում ունենալով բռնամանա ի վերա չքավորաց և աղքատանաց...»[125]։

Մադրասահայերն իրենց կապը չէին կտրել մայր հայրենիքից և հետևվում էին միջազգային իրադարձություններին, հուսալով, որ մի օր դրանք կարող են նպաստավոր լինել հայության համար։

Ինչպես հնդկահայերից շատ շատերին, այնպես էլ Թաղիադյանին համակել էր հայրենիք վերադառնալու գաղափարը։ «Մենք տեղս արմատական ծա-

124 «Եղբայրասեր», 1862, № 2, էջ 224։
125 Նույն տեղում, 1863, № 18, էջ 144։

ներ չենք,— գրում էր Թաղիադյանը,— մեր արմատն մեր Հայրենիքն ա և եթե չգնանք... մեր հայրենյաց երջանկությունս կարելի չէ, որ մենք երջանիկ ապրենք»[126]։

XIX դարի 30—40-ական թվականներին հնդկահայության շրջանում մըշակվեց այն համոզումը, որ հայ ժողովրդի կենտրոնավայրը պիտի դառնա Արևելյան Հայաստանը կամ այլ խոսքով՝ Ռուսաստանի շնորհիվ ազատագրըված հայ բնաշխարհը՝ Արարատի շուրջը սփռված հայաբնակ վայրերի հետ միասին։

XIX դարում հնդկահայ մշակույթում աչքի ընկնող երևույթները կապված են հայկական տպագրության հետ։ Ազգային-ազատագրական գաղափարների տարածման, մշակութային կյանքի վերելքի, հայ ժողովրդի լուսավորության հիմնական միջոցներից էր տպագրության ստեղծումը հնդկահայ գաղթօջախներում։ Հեռու հեռաստաններում հայության պահպանման միակ ելքը մնում էր ազգային լեզվով դպրոցներ բացելը, ազգային մշակույթի պահպանումը։ Ազգապահպանման նպատակով կրթական շարժումը, որը սկիզբ էր առել XVIII դարի վերջին, ավելի մեծ թափով առաջ գնաց XIX դարի սկզբներին։ Հնդկահայ մշակութային կյանքի ամենից խոշոր երևույթը 1821 թ. Կալկաթայի Հայկական մարդասիրական ճեմարանի բացումն էր։

Դպրոցն ուներ երթևեկ և գիշերօթիկ բաժիններ։ Գիշերօթիկում մեծ մասամբ սովորում էին Պարսկաստանի, Հնդկաստանի և հարևան երկրների հայ գաղթավայրերից եկած երեխաները։ Ուսումը չքավոր երեխաների համար ձրի էր։

Ճեմարանը ղեկավարում էր համայնքի կողմից ընտրված չորս անձից բաղկացած հոգաբարձությունը։ Առաջին դեմքը «գլխավոր վարժապետն» էր։ Անդրանիկ ուսուցիչներն են եղել հայ մշակույթի աչքի ընկնող այնպիսի դեմքեր, ինչպիսիք են Մարտիրոս Մկրտիչ Դավթյանը, Մեսրոպ Թաղիադյանը, Հովհաննես Ավդալը և ուրիշներ։ Դպրոցի գործանվեր ուսուցիչները դաստիարակել են բազմաթիվ մանուկներ, որոնցից շատ շատերը հետագայում դարձել են հայ մշակույթի ճանաչված մշակներ։

1828 թ. սկզբներին Կալկաթայի Մարդասիրական ճեմարանին կից Հովհաննես Ավդալի ջանքերով բացվում է «Արարատյան գրադարանը»[127]։ Գրադարանը հիմնականում հավաքում է հայագիտական գրքեր։ Կարճ ժամանակ անց այնտեղ հավաքված գրականության թիվը անցնում է մի քանի հազար հատորից։ «Արարատյան գրադարանը», բացի գրքերից, հավաքում է նաև պարբերական հրատարակություններ։ Գրադարանում պարտադիր կերպով տեղ էին գտնում Հնդկաստանում հրատարակված հայերեն գրքերը։ Նրա հիմնադրման առաջին իսկ օրից այնտեղ սկսեցին հավաքվել նաև հայերեն ձեռագրեր, ինչպես նաև անգլերեն, ֆրանսերեն, հոմարեն, չինարեն, պարսկերեն և այլ լեզուներով ձեռագրեր ու գրքեր։

Հնդկահայերն արդեն ունեին տպագրության բավական մեծ փորձ։ Դա-

126 Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 53, վավ. 303։
127 «Բազմավեպ», 1924, էջ 166։

րի սկզբին իրար հաջորդեցին սկզբում Մադրասում՝ 1809 թ. Շիրաղեցու, 1818 թ. Սարգիս Ծատուր Աղավելյանցի, ապա Ջենթլում Ավետումյանի տպարանները, որոնք տասնյակ բազմաբովանդակ, հիմնականում հայրենասիրական հայագիտական բնույթի գրքեր հրատարակեցին։ Հայկական տպագրության բաժիններ են ունեցել կաթոլիկ և մկրտական կոչված քարոզչական տպարանները Սրնքուրում և ապա՝ Կալկաթայում։ Մարդասիրական ճեմարանի հիմնադրումից հետո Հովհաննես Ավդալի ջանքերով ստեղծվել է «Մարդասիրական տպարանը», որը կեսդարյա կյանք է ունեցել։

Հայկական տպագրական գործը իր զարգացման բարձրությանը հասավ 1845 թ., երբ Կալկաթայում ստեղծվեց «Արարատյան ընկերությունը», որի հիմնական նպատակներից էր Հնդկաստանում հայերեն գրքեր և պարբերականներ հրատարակելը։ Տպարանի գործերը տնօրինում էր Թաղիադյանը։ Բացի «Ազգասերից» և «Ազգասեր Արարատյանից», այստեղ հրատարակվել են բազմաթիվ դասագրքեր, բարոյախոսական գործեր և այլն։

1846 թ. ստեղծված Պողոս Վիջենյանի «Արծիվ» տպարանը կարողացավ միայն մի քանի աղոթագրքեր հրատարակել։ Համեմատաբար ավելի երկար կյանք և հարուստ հրատարակություններ ունեցավ Հովհաննես Խաչիկյանի 1869 թ. հիմնադրած տպարանը։

1822 թ. Կալկաթայում տպագրվում է «Շտեմարան» պարբերականը։ «Շտեմարանի» խմբագիր-հրատարակիչն էր Մարտիրոս Շիրաղեցի Մկրտչյանը, որը Կալկաթայի հայկական համայնքի ականավոր դեմքերից էր։ Պարբերականը հրատարակվել է առանձին «տետրակներով»[128]։ Դա առաջին աշխարհաբար հայ պարբերականներից էր։

Հայ պարբերական մամուլի պատմության մեջ առանձնահատուկ տեղ են գրավում «Ազգասեր» և «Ազգասեր Արարատյան» պարբերականները։ Նրանց խմբագիր-հրատարակիչն է եղել ականավոր մանկավարժ, գրող, լուսավորիչ Մեսրոպ Թաղիադյանը։

Այնուհետև սրանց հաջորդեց Կալկաթայի «Եղբայրասեր»-ը (1862—1863 թթ.)։ Նրա խմբագիրն էր Եղիազար Տեր-Հարությունյանը։ Թերթի հիմնական նպատակն էր՝ պայքարել համաձուլման դեմ, պահպանել ազգային մշակույթը և զարգացնել այն։

Բացի այս պարբերականներից, հնդկահայ գաղթօջախներում հրատարակվել են նաև այլ պարբերականներ. 1820 թ. տպագրվել է «Հայելի կալկաթյան» շաբաթաթերթը՝ Պողոս Հորդանանյանի խմբագրությամբ։ Այնուհետև 1822 թ. Բոմբեյում վիմատիպ լույս է տեսել «Ծաղկաստան»-ը, որի խմբագրի անունը հայտնի չէ։ 1844 թ. Բոմբեյում տպագրվել է «Բոմբեյի հայոց լրաթուղթը», ապա «Ազդարար» երկշաբաթաթերթը՝ քաղաքական և բանասիրական բովանդակությամբ։ Մադրասի «Բանասերից» լույս է տեսել ընդամենը 39 համար։ Երկու տարի գոյատևելուց հետո, 1865 թ. Կալկաթայում փակվում է «Արևելյան հնդկաց» լրագիրը։

---

128 Ա. Բ. Կարինյան, Ակնարկներ հայ պարբերական մամուլի պատմության, հատ. 1, էջ 228—267։

1892 թ. Հովսեփ Բեգլարյանի խմբագրությամբ անգլերեն հրատարակվել է «Արա» ամսագիրը։ Հայրենասիրական ուղղություն ունեցող այս ամսագրի նպատակն էր քաղաքակիրթ մարդկության ուշադրությունը հրավիրել հայկական հարցի վրա[129]։

Հնդկահայ գաղթօջախներում մշակութային և հասարակական կազմակերպություններ, Ինդոնեզիայի, Բիրմայի և մյուսների համեմատ, քիչ են եղել։ 1815 թ. Բոմբեյում հիմնվեց «Օճանսփյուռյան ընկերությունը»[130]։ Նրա հիմնական նպատակն էր հայերեն ձեռագրեր հավաքել ու հրատարակել, օտար լեզուներից թարգմանություններ կատարել, զարգացնել հայկական մշակույթը և նպաստել հայ ժողովրդի լուսավորությանը։

«Օճանսփյուռյան» ընկերությունը հատկապես մտահոգված էր հայ մանուկներին մայրենի լեզվով դաստիարակելու գործով։ Բոմբեյում նա հիմնեց հայկական դպրոց։ Բոմբեյաբնակ Պողոս Հորդանանյանը, իր հայրենակիցներին օգնելու համար, «Օճանսփյուռին» նվիրեց հայկական տպարան։ Գրեթե նույն նպատակներով և ծրագրով, բնաբան ունենալով՝ «Ուսումնասիրություն, ընթերցասիրություն, բարեսիրություն», 1818 թ. Կալկաթայում հիմնվում է «Իմաստաքննադատության միությունը»։ Կարճ ժամանակ անց, այս երկու ընկերությունները միացյալ ուժերով սկսեցին հրատարակել «Հայելի կալկաթյան», ապա՝ «Շտեմարան» պարբերականները և մի շարք արժեքավոր գրքեր։

## 4. ՀԱՅԵՐԸ ՄԵՐՁԱՎՈՐ ԱՐԵՎԵԼՔՈՒՄ ԵՎ ԱՖՐԻԿԱՅՈՒՄ

XIX դարի առաջին կեսին սուլթանական Թուրքիայում հարատևող կյանքի ու գույքի անապահովությունը, քրիստոնյա ազգերի կրած սոցիալ-քաղաքական անտանելի ճնշումները պատճառ էին դառնում արևմտահայ զանգվածների գաղթականության ու պանդխտության հոսքին։ Ժողովրդի զգալի մասը հեռանում էր Արևմտյան Հայաստանից և ապրելու ու գոյատևելու քիչ թե շատ հարմարավետ վայրեր էր փնտրում Օսմանյան կայսրության ափնյա քաղաքներում, Եգիպտոսում և այլուր։ Ստվարանում էին Կոստանդնուպոլսի, Զմյուռնիայի, Դամասկոսի, Հալեպի, Անտիոքի հայկական համայնքները, առաջանում էին նոր գաղթավայրեր, որտեղ և կենտրոնանում էին ոչ միայն գյուղացիները, այլև արհեստավորները, առևտրականները, պանդուխտ օրամշակները, ծնունդ տալով հայրենիքի ճակատագրով հետաքրքրվող մտավորականությանը, որն օգնության ձեռք էր մեկնում Արևմտյան Հայաստանի ազգաբնակչությանը։

Օսմանյան կայսրության հայկական գաղթավայրերից ամենախոշորը Կոստանդնուպոլիսն էր (այդ մասին խոսվում է նախորդ գլուխներում), որն ուներ շուրջ 250 հազար հայ բնակչություն։ Չնայած իր փոքրաթվությանը, մայրաքաղաքից ետ չէր մնում Զմյուռնիայի հայ գաղթօջախը։

ԶՄՅՈՒՌՆԻԱ։ Թուրքիայի զարգացած ու նավահանգստային երկրորդ

129 Վերոհիշյալ փաստերը վերցված են «Նոր ազդարարի» 1951 թվականի № 3-ից։
130 «Օրացույց» Կալկաթայի, 1899։

*քաղաքը Զմյուռնիան էր, թե՛ իբրև առևտրա-արդյունագործական կենտրոն և թե՛ որպես հայաշատ ու կազմակերպված գաղթավայր։*

*1605 թ. շուրջ 1000 ընտանիք արևելահայեր՝ երևանցիներ, նախիջևանցիներ ու ղարաբաղցիներ, գաղթեցին իրենց բնօրրաններից և խարիսխ գցեցին Զմյուռնիայում։ XVIII դարի վերջերին, մասնավորապես Աղա-Մահմեդ խանի արշավանքից հետո, կարբեցի, օշականցի և աշտարակցի հայերի մի մասը ևս հարկադրված գաղթեց Զմյուռնիա, գաղթօջախի հայկական ազգաբնակչության թիվը հասցնելով 12 հազարի։ Ակնհայտ է, որ այս գաղթօջախը հիմնականում ձևավորվում էր արևելահայերից։*



Զմյուռնիայի ծովախորշը

*1800 թ. 104 հազար[131] զմյուռնացիներից 12 հազարը հայեր էին, 1812 թ. 106 հազարից՝ 10 հազարը, 1868 թ. 187 հազարից՝ 12 հազարը։ 1876—1877 թթ. Զմյուռնիայի հայ գաղութն ուներ 2680 ընտանիք՝ 12008 շնչով[132]։*

*1850-ական թթ. Զմյուռնիան հանդիսանում էր Այդընի վիլայեթի կենտրոնը։ Զմյուռնիայից բացի, Արարատյան դաշտից և Ղարաբաղից գաղթած սովար հայ բնակչություն էր ապրում վիլայեթի մյուս քաղաքներում և գյուղերում։ Կարշիյակայում բնակվում էին 150 տուն հայ լուսավորչականներ, 10 տուն կաթոլիկներ, իսկ Կարաթաղում՝ 320 ընտանիք, Այդընում՝ 100, Դենիզլիում՝ 82, Օդեմիշում՝ 177, Մանիսայում՝ 390, Կրկաղաչում՝ 159, Գասապայում՝ 105, Բունաբաղում՝ 15, Գյուզթափայում՝ 30 ընտանիք[133]։ Այսպիսով, շուրջ 10 հազար հայեր էին սփռված Այդընի վիլայեթի մյուս քաղաքներում ու գյուղերում։ Քաղաքամերձ հայերը համախմբված էին Զմյուռնիայի հայկական առաջնորդության շուրջը։ 1820-ական թվականներից այս-*

131 *Հայկական ՍՍՀ ԿՊՊԱ, ֆ. 57, գ. 9, թ. 113—114։*

132 *ԳԱԹ, Թ. Ազատյանի արխիվ, բաժին 3, վավ. 43։*

133 *Հ. Վ. Քոսյան, Հայք ի Զմյուռնիա և ի շրջակայս, հ. Բ, Վիեննա, 1899, էջ 35—90։*

տեղ են երևում են կաթոլիկ ու բողոքական քարոզիչներ։ Այլադավան հայերի թիվը գնալով մեծանում է, կազմվում են հոգևոր համայնքներ, իսկ շատերն էլ, թուրքական վայրագություններից ազատվելու պատրանքով, ապավինում են օտարերկրյա հյուպատոսներին, ովանք ընդունում նրանց քաղաքացիությունը։

Հնուց ի վեր Զմյուռնիան ենթակա էր հունական քաղաքակրթությանը. թուրքերի գրավումից հետո էլ քաղաքի բազմազգ ազգաբնակչության հաղորդակցության լեզուն հունարենն էր։

Զմյուռնիայի ազգաբնակչությունը, Թուրքիայի հպատակ մյուս քաղաքների բնակչության համեմատությամբ, մասամբ էր ենթարկվում քաղաքական ու ազգային խստաշունչ հալածանքների։ Դրա պատճառը գաղթավայրում թուրքերի փոքրաթիվ լինելն էր և արևմտաեվրոպական ու ասիական պետությունների, ինչպես նաև ռուսական ու ամերիկյան հյուպատոսարանների առկայությունը քաղաքում։

Զմյուռնիայի ազգաբնակչությունը հիմնականում տեղակայված էր առանձին թաղամասերում՝ ըստ ազգությունների։ Հայերը սկզբից հիմնել էին Հայնոց թաղամասը, որը փայտաշեն էր և հրո ճարակ դարձավ 1845 թվականին։ Նույն տեղում, լայն փողոցներով, գեղեցիկ տեսքով վերակառուցվեց հայկական թաղամասը, ուր բնակվեց հայերի մի մասը։ Հայերի մյուս մասն էլ տեղափոխվեց Քարափ կոչվող վայրը, հիմնեց նոր թաղամաս, իսկ արհեստավորները հաստատվեցին Գետեզերքում։ Այսպիսով, Զմյուռնիայի հայերը ապրում էին երեք թաղամասերում, ըստ զբաղմունքի և ունեցվածքային շերտավորման։

Գաղթօջախի հայերն ունեին տարբեր զբաղմունքներ և ենթարկված էին դասային ու դասակարգային շերտավորման։ Ճիշտ է, Զմյուռնիայում չստեղծվեց ամիրաների ու սեղանավորների դաս, սակայն այստեղ էլ կային հայ ամիրաներ, խոշոր վաճառականներ, բազմաթիվ խանութատերեր։ Ողջ Թուրքիայով մեկ հայտնի էին Յուսուֆյան Հովսեփ Չելեբին, Գրիգոր Գույումճյանը, Սպարթալյան եղբայրները, Ավետիքյան եղբայրները, Զարեհ Թագթագյանը, Թովմաս Թովմասյանը, Կարապետ Ամիրյանը, Ղուկաս Եսայանը և ուրիշներ։ Սրանց մի մասը պետական պաշտոնյաներ էին, ունեին քաղաքական դիրք, «անբավ հարստություն», ընդարձակ պարտեզներ, այգիներ և հողեր։

Գաղթօջախի մյուս դասը արհեստավորությունն էր, որը հիմնականում համախմբված էր էսնաֆություններում մեջ և միաժամանակ էր գործում թե՛ արտադրության և թե՛ ազգային, հասարակական-քաղաքական կյանքում։ Հայ արհեստավորներից հանրահայտ էին ոսկերիչները, գորգագործները, երկաթագործները, չթագործները, կատարելագործված դազգահներով բանող մետաքսագործները։

Զմյուռնիայում մեծ թիվ էին կազմում չթագործական արհեստանոցները։ Նրանց արտադրանքը ներկվում էր և գունազարդվում տեղի ներկատներում և դուրս տարվում օտար շուկաներ։ Հայերն ունեին տասից ավելի տպածոյի արհեստանոցներ, ուր պատրաստում էին ծաղկանկար վերնաշապիկներ, վարագույրներ, սեղանի սփռոցներ։ Այստեղ 1790 թ. հիմնվեց բասմայի մեծ գործարան։

Գործարանում 1850 թ. աշխատում էին 300-ից ավելի հայ բանվորներ, որոնք զբաղված էին կտավի ներկման ու ձևավորման աշխատանքով։ Ընդարձակվել էր հասարակ անոթներ պատրաստող բրուտանոցը[134]։ «Նշանավոր են ի գործարանսն՝ ծաղկենկար կտավոցն և թղթարանն հաստատեալ ի ձեռն ճարտարաց հայոց,— գրում էր Ղ. Ալիշանը։— Են եւրոպացւոց պանդոկք բազում, և անկելանոցք նոցա և հայոց և յունաց»[135]։

Արհեստագործությունը Զմյուռնիայում ժառանգական բնույթի էր և արհեստանոցներում ընդգրկված էին ողջ գերդաստանի արու անդամները։ Արհեստը փոխանցվում էր սերնդե սերունդ, նույնիսկ դրոշմվում արհեստավորի ազգանվանը՝ չիլինկիր, դեմիրջի, եազմաճի և այլն։ XIX դարի երկրորդ կեսին քաղաքում գործում էին ոսկերչական 30 արհեստանոցներ, վերմակագործների՝ 10, ժամագործների՝ 12, դերձակների՝ 20, երկաթագործների՝ 12, վարսավիրական՝ 15, կոշկակարների՝ 16, ատաղձագործների 17 արհեստանոցներ։ Զմյուռնիայում արհեստավոր էին հաշվվում դեղագործները, բժիշկները, փաստաբանները, որոնք գերազանցապես հայեր լինելով, սպասարկում էին քաղաքի ազգաբնակչության մեծ մասին։

XIX դարի երկրորդ կեսին Զմյուռնիայի հայ տպարանատերերը հայերեն էին թարգմանում, հրատարակում և վաճառում եվրոպական հեղինակների գործերը։ Տետեյան եղբայրները 1850-ական թվականներին թարգմանեցին ֆրանսիական ու անգլիական արկածային վեպեր, տպագրեցին սեփական տպարանում, վաճառեցին Զմյուռնիայում և Փոքր Ասիայի այլ գավառներում։

Զմյուռնիայում կային շուրջ 5 հազարի հասնող հայ պանդուխտներ, ոչ մեծ թվով տեղացի օրամշակ բանվորներ։ Սակայն, այդ բոլորով հանդերձ, քաղաքը XIX դարում էլ մնում էր իբրև հայ վաճառականական կապիտալի նշանավոր կենտրոններից մեկը։

Քաղաքի վաճառականական կապիտալի ծաղկմանը աջակցում էր նրա նպաստավոր դիրքը։ Զմյուռնիան այս դարաշրջանում մնաց որպես արտահանության հանրաճանաչ կենտրոն։ Ասիայի խորքերից եկած քարավանները անցնում էին Հայաստանով, դրա համար էլ առաջնորդվում էին հայերի կողմից։ Արաքսի հովիտը հնդկական ապրանքների և պարսկական արտադրանքի փոխադրության ճանապարհն էր։ Զմյուռնիայի հայերը, եկած լինելով Արարատյան դաշտից, այժմ իրենց ձեռքում էին կենտրոնացնում այդ առևտուրն ու փոխանակությունը։

XIX դարի առաջին կեսին քաղաքի վաճառականների գերակշռող մասը հայերն ու հույներն էին։ «Զմյուռնիայի հայերը ընդհանրապես հակված էին դեպի վաճառականությունը։ Նրանք ուղղակի առևտրական հարաբերությունների մեջ էին մտնում Եվրոպայի, մասնավորապես Մանչեստրի և Լոնդոնի հետ, որտեղ հիմնել էին մի շարք առևտրական տներ։ Անգլիական մանուֆակտուրային արտադրությունը հանդիսանում էր նրանց առևտրի գլխավոր ճյուղը։ Հայերը վաճառականի իրենց ավանդական ընդունակություններով այն-

134 Ներսես Սարգիսյան, *Տեղագրութիւնք ի Փոքր և ի Մեծ հայս*, Վենետիկ, 1864, էջ 10։
135 Ղևոնդ Ալիշան, *Քաղաքական աշխարհագրութիւն*, Վենետիկ, ս. Ղազար, 1853, էջ 544։

պիսի մրցության մեջ են մտել անգլիական և հունական վաճառականների հետ, որ այս վերջիններս ստիպված են եղել իրենց գործը դադարեցնել»[136]։

Ասիական Արևելքի ու եվրոպական Արևմուտքի մեջ հայ վաճառականները զորեղ միջնորդներ էին։ XIX դարի սկզբներին նրանք կապված էին Իտալիայի ու Հոլանդիայի հետ և ոչ միայն ապրանքներ էին ներմուծում, այլև արտահանում էին։ Տրիեստ, Վենետիկ, Վիեննա, Մանչեստր էին արտահանում նրանք բամբակ, մրգեր, ձիթապտուղ, ծխախոտ, մորթիներ։ Տակավին հաջողությամբ վաճառվում էին հայ արհեստավորների արտադրած գորգերը, վարագույրները, կտավյա հագուստեղենը։ Գորգի հանրաճանաչ վաճառականներն էին Իսպենճյանները, Սիլիկճյանը, Քեհյանը, Նիքոթյանը, Պաքրիճյանը, Տոնելյանը, որոնք ոչ միայն տեղի գորգերն էին արտահանում, այլ անցնում էին ողջ Առաջավոր Ասիայի քաղաքները, գնում հայկական գորգեր, տեղափոխում եվրոպական ամենատարբեր շուկաներ և «հաջողակ առևտուր անում»։

Պղնձեղենի առևտրով զբաղվող տեղական արտադրանքի վաճառականներն ապրանքները գնում էին Եվդոկիայից, Սեբաստիայից, Կարինից, Մալաթիայից, վաճառում էին դրսում, սակայն իրենք Եվրոպայից, մասամբ էլ Կիլիկիայից, ներմուծում էին կիսամշակ պղնձե ձողեր, երկաթե ձուլածո զանգվածներ։

Բազմատեսակ մրգերի, քաղցրահամ պտուղների արտահանության մեջ առաջին տեղը բռնում էր Թուզը։ Այդ բնագավառի խոշոր առևտրականներից էր Արամ Համբարձումյանը, որն ստացել էր «Թուզի Թագավոր» մականունը։

Հայ վաճառականները առևտրական տներ են հաստատում Եվրոպայում. Պետրոս Յուսուֆյանը Տրիեստում հիմնեց մի քանի առևտրական տներ, կազմակերպեց զմյուռնացիների առևտրական ընկերություն և տասնամյակներ շարունակ «բարգավաճ առևտուր» էր անում քաղաքում։ Կարապետ Էքիզյանը 1855—1860 թթ. Մանչեստրում բացեց «Պապո» վաճառատունը։ Նրան հետևեցին Հովհաննես Սպարթալյանը և ուրիշներ։ Զմյուռնիացի վաճառականները առևտրական տներ հաստատեցին Հնդկաստանում, Եգիպտոսում, Դամասկոսում, Հալեպում։

Զմյուռնիայի հայ վաճառականներն այս տասնամյակներին ևս Անգլիայից ներմուծում էին բամբակյա գործվածքներ, Ֆրանսիայից՝ մետաքսյա կտորներ, Գերմանիայից՝ պատրաստի հագուստներ, Ավստրիայից՝ ապակի, ապակեղեն, շաքար, բրինձ, Ռուսաստանից՝ կարագ և նավթ։ Ինչպես տեսնում ենք, քաղաքի հայ առևտրականները գործում էին համաեվրոպական առևտրական հրապարակներում և ունեին փարթամ տնտեսություն, ապրանքներով լեցուն բազմաթիվ խանութներ։

Զմյուռնիայի, առավել ևս Այդընի վիլայեթում, հայ բնակչության մի մասը զբաղվում էր երկրագործությամբ, այգեգործությամբ և առավել էր ենթարկվում սոցիալական հարստահարության։

Զմյուռնիայի հայ ազգաբնակչությունը տնքում էր ծանր հարկերի տակ։ Արհեստի, արդյունագործության, գյուղատնտեսության և ոչ մի բնագավառ

---

136 Bonaventure F. Slaars, Etude sur Smyrne, 1868, էջ 51։

չէր վրիպում Թուրք հարկահանների տեսադաշտից։ Առևտրականները ապրանքներ ներմուծելիս ու արտահանելիս վճարում էին մեծագումար մաքս, եկամուտներից՝ եկամտահարկ։ Բոլոր քրիստոնյաների համար պարտադիր էր զինվորական հարկը, որը տարեկան կազմում էր 110—120 հազար դահեկան՝ ողջ վիլայեթի հայ համայնքից։ Հարկը 1850-ական Թվականներից սկսած հավաքվում էր գավառական ժողովի երեսփոխանների կողմից և միանգամից մուտք արվում պետական գանձարան։ Չքավորները եթե չէին կարողանում վճարել հարկը, համայնքի մյուս անդամները երբեմն փոխհատուցում էին և բազմաթիվ Թշվառ ընտանիքների փրկում կործանումից։

Զմյուռնիայի հայերը քաղաքում չորս եկեղեցի ունեին. ս. Ստեփանոս, ս. Լուսավորիչ և կաթոլիկների ու բողոքականների եկեղեցիները[137]։ Հասարակական շենքերի մեջ իբրև ճարտարապետական կոթողներ աչքի էին ընկնում Մեսրոպյան վարժարանը՝ կառուցված 1825 թ., Վեզիր խանը, գեղեցկատեսք շուկաները, հայկական բաղնիքը։

Զմյուռնիայում նստում էր Թեմի հոգևոր առաջնորդը։ Առաջնորդարանն ուներ անշարժ կալվածքներ, խաներ, տներ, խանութներ։ Սրանցից ստացված տարեկան եկամուտը կազմում էր 3000 օսմանյան ոսկի, այսինքն 69—70 հազար ոսկյա ռուբլու դրամագումար[138]։ Վարձու մշակության տրվող այգիներից, հանգանակությունից առաջնորդարանն ստանում էր շուրջ 200 հազար ռուբլու եկամուտ՝ ոսկով։ Այդ գումարից ազգային երկսեռ վարժարանների վրա ծախսվում էր 1100 Թուրքական ոսկի, Ազգային հիվանդանոցին հատկացվում էր 450 Թուրքական ոսկի, առաջնորդարանի ծախսը կազմում էր 400 ոսկի, աղքատներին և անտերունչներին բաժանվում էր 200 ոսկի։

Զմյուռնիան արևմտահայ հոգևոր մշակույթի երկրորդ կարևոր կենտրոնն էր Թուրքիայում։ Այստեղ կային բազմաթիվ տպարաններ, որոնցից աչքի ընկնողներն էին՝ միսիոներականը՝ հիմնված 1833 Թ., Մեսրոպյան վարժարանի տպարանը՝ 1840 Թ., «Արշալույս Արարատյանինը»՝ 1840 Թ., Տետեյանը՝ 1850 Թ., Մամուրյան տպարանը՝ 1883 Թ.։ Զմյուռնիայում էին հրատարակվում տարբեր ուղղությունների պատկանող «Արշալույս Արարատյան», «Արփի Արարատյան», «Ծաղիկ», «Միություն», «Դիմակ», «Գարուն Հայաստանի», «Իրավունք», «Արևելյան մամուլ», «Մեղեբրա» և այլ պարբերականներ։

Քաղաքը հայտնի էր իր կրԹական հաստատություններով (Մեսրոպյան վարժարանը հիմնվեց դեռևս 1799 Թ.), Մ. Մամուրյանի, Գր. Չիլինկիրյանի, Ստ. Ոսկանյանի, Մ. Նուպարյանի, Գ. Կոստանդյանի և այլոց նման հասարակական-քաղաքական առաջավոր գործիչներով, գրողներով ու հրապարակախոսներով։

1801 Թ. հիմնադրվեց և հետագայում Սպարթալյան եղբայրների միջոցներով ընդարձակվեց ս. Լուսավորչյան Ազգային հիվանդանոցը։ Հիվանդանոցն ուներ ծերանոց, հոգեբուժարան, որտեղ տարվա ընԹացքում բուժվում էին շուրջ 800 հիվանդներ։

---

137 Ս. Մ. Ծոցիկյան, Արևմտահայ աշխարհ, Նյու-Յորք, 1947, էջ 211։

138 «Հանդէս ամսօրեայ», 1890, մայիս, էջ 106—107։

Զմյուռնիայի հայ ազգաբնակչության կրթական գործով մտահոգվում էին մշակութային ընկերությունները, որոնք գնալով բազմանում էին։

Այդ ընկերություններից էին «Սյունյաց ընկերությունը» (1841—1860), «Արագածունյաց ընկերությունը» (1843—1846), «Հաշտենից միությունը» (1861—1862), «Աղքատասիրաց ընկերությունը» (1861—1894) և ուրիշներ։ Սրանք բոլորն էլ մշակութային բնույթի լուսավորական հաստատություններ էին, որոնցում ընդգրկված էին նաև այնպիսի դեմոկրատ գործիչներ, որոնք երկնում էին ազատագրական պայքարի ծրագրեր։

Մ. Նալբանդյանի այցը Զմյուռնիա (1861) նոր մղում տվեց այդ շարժմանը։ «Հաշտենից» ապա «Վասպուրական ընկերությունը», ֆրանկ-մասոնական թեկնոց առած «Տիգրան» ժողովարանը, ինչպես և այլ ընկերություններ ընդհատակյա մղումներ ունեցան։ «Զմյուռնահայք ունեցած են նաև Ազատ որմնադրական Ակումբ մը, Տիգրան անվամբ, հիմնված 1860 թվականներուն,— գրում է Ս. Մ. Սոցիկյանը,— որուն գոյության ու գործունեության վավերաթուղթերը ցարդ պահված կմնան Լոնտոնի Ազատ որմնադիրներու Մեծ օթեակի Մատենադարանին մեջ»[139]։

Այսպիսով, Զմյուռնիայի հայ գաղթօջախը բազմաթիվ թելերով կապված էր հայ իրականության, իր առաջավոր զավակների բերանով արձագանքում էր ազատագրական շարժմանը։

Զմյուռնիայի տնտեսական կյանքի, առավել ևս հասարակական մտքի, գրական ու հրապարակախոսական շարժման մեծ վերելքը վերապահված էր 1860-ական թվականներին, որն համընկնում էր Զեյթունի ապստամբության, արևմտահայերի Ազգային սահմանադրության համար ծավալված շարժմանը։

ՆԻԿՈՄԻԴԻԱ։ XIX դարի առաջին կեսին Նիկոմիդիայի գավառի ընդհանուր ազգաբնակչությունը 310 հազար էր[140], որից շուրջ 65 հազարը հայեր էին։ Բեռլինի կոնգրեսի նախօրեին գավառի հայերի թիվը անցել էր 70 հազարից[141]։

Նիկոմիդիայի հայերը տեղաբաշխված էին գավառի քաղաքներում և բազմաթիվ գյուղերում։ Հայաբնակ քաղաքներն էին Իզմիտը, Ադաբազարը, Պարտիզակը, Օվաճըկը։

Գավառական կենտրոնը Իզմիտն էր, որտեղ 1840-ական թվականներին ապրում էր 12 հազար բնակիչ, այդ թվում՝ 6000 թուրք, 4500 հայ, 1250 հույն, 200 հրեա[142]։ Դարի երկրորդ կեսին հայերի թիվը հասել էր 8 հազարի[143]։

Քաղաքի հայ համայնքը հիմնականում զբաղվում էր առևտրով, արհեստագործությամբ, մասամբ էլ երկրագործությամբ, հատկապես այգեգործությամբ։ Առևտուրը իզմիտցու հիմնական զբաղմունքն էր։ Թուրքիայով մեկ հայտնի առևտրական գերդաստաններն էին Պուլությանները, Մոսկոֆյանները, Պանիրճյանները, Նազարեթյանները։ Սրանք գավառի արտադրանքը տե-

---

139 Ս. Մ. Սոցիկյան, նշվ. աշխ., էջ 212։

140 Մինաս Գասապյան (Ֆարհատ), Հայերը Նիկոմիդիո գավառին մեջ, Պարտիզակ, 1913, էջ 24։

141 Նույն տեղում, էջ 239։ Տե՛ս Ս. Մ. Սոցիկյան, նշվ. աշխ., էջ 477։

142 Մ. Գասապյան, նշվ. աշխ., էջ 24։

143 Ս. Մ. Սոցիկյան, նշվ. աշխ., էջ 468։

ղափոխում ու վաճառում էին Կ. Պոլսում, Կիլիկիայում, Մարմարայով կապվում ծովային մայրուղիներին, Եվրոպայից ներմուծում էին արդյունաբերական ապրանքներ և վաճառական-գործակատարների միջոցով տարածում Ասիական Թուրքիայում, Արևմտյան Հայաստանում։ Քաղաքի կենտրոնական քարակերտ երկու շուկաների տերն ու տնօրենը հայերն էին։

Իզմիտի հայերի 20 տոկոսն արհեստով էր զբաղվում[144]։ Նրանք ոսկերիչներ էին, գինեգործներ, երկաթագործներ, պայտառներ, ժամագործներ, ոսկերիչներ։ Սուլթանական կառավարությունը հայ ամիրաների միջոցներով այստեղ կառուցել տվեց կայսերական գործարաններ, որոնք առաջիններից էին ողջ Թուրքիայում։ 1836 թ. Իզմիտում կառուցվեց կայսերական մահուդի գործարանը։ Դրան հետևեց Հրեքեյի չուխայի խոշոր գործարանի հիմնադրումը 1844 թ.։ Այն, հումքն ստանալով առաջինից, թուրքական բանակի համար ըզգեստներ էր կարում[145]։ Գործարանները շուտով վերակառուցվեցին և ընդարձակվեցին, այնտեղ տեղադրելով անգլիական մեքենաներ և Մեծ Բրիտանիայից հրավիրելով գործարկող ինժեներներ։ Չուխայի գործարանը փակվեց 1853 թ., իսկ մահուդի գործարանն իր գոյությունը շարունակեց շուրջ կես դար։ Մեծ համբավ ուներ Նիկոմիդիայի ֆեսխանեն[146]։

Նիկոմիդիան ուներ հայկական ութ դպրոց, որոնցից Ազգային մեծ վարժարանը միջնակարգ կրթություն էր տալիս։ Քաղաքում հիմնված էր «Ասքանազյան ընկերությունը»։ Մշակութային այդ հիմնարկությունը պահվում էր «երևելի հայերի» նպաստավորությամբ, բացել էր ճոխ գրադարան և դրան կից նաև ընթերցասրահ, ուր կիրակնօրյա հավաքույթներ էին լինում, ինչպես նաև թուրքախոս մեծահասակները հայերեն էին սովորում։ Իզմիտում տարբեր ժամանակներում հրատարակվել են «Սուրհանդակ», «Հայրենասեր», «Բյութանիա», «Երկիր» պարբերականները, ընդմիջումներով իրար հերթափոխել են երկու տպարան։ Այստեղ տպագրվում էին քաղաքին ու գավառին անհրաժեշտ դասագրքեր, եվրոպական գրողների գործերի թարգմանություններ։

Նիկոմիդիայի երկրորդ խոշոր հայաքաղաքը Պարտիզակն էր (Բախչեջիկը)։ Այն հիմնվել է դեռևս XVI դարում, Սեբաստիայի գավառի Պարտիզակ գյուղից եկած հայ գաղթականների ջանքերով։ XIX դարի կեսերին քաղաքն ուներ 16—17 հազար բնակիչ՝ բոլորն էլ բացառապես հայեր։ Մինչև XX դարասկիզբը Պարտիզակը ոչ միայն պահեց իր հայկական դիմապատկերը, այլև չընդունեց թուրք պաշտոնյաներ[147]։ Վախենալով հայերի ըմբոստ բնավորությունից, թուրքերը չպնդեցին քաղաքում պաշտոնավարելու խնդրում։ Նրանք բավարարվեցին միայն պետական հարկերի գանձումով։

Տակավին 1840-ական թվականներին Պարտիզակում գործում էին վաճառականական ընկերություններ, մետաքսի և չթի գործարաններ։ Այստեղ

144 Մ. Գասապյան, նշվ. աշխ., էջ 178։

145 «Հայաստան», Կ. Պոլիս, 1847, սեպտեմբեր 13։

146 Ներսես Սարգիսյան, նշվ. աշխ., էջ 36։

147 Ս. Մ. Տոցիկյան, նշվ. աշխ., էջ 467—470։

կար հայկական չորս դպրոց։ Սրանցից ամերիկյան միսիոներների հիմնած վարժարանը միջնակարգ կրթական հաստատություն էր։ Պարտիզակցի հայտնի մտավորականներն էին Հովհաննես Մկրյանը, Գևորգ Մեսրոպը, Թորգոմ Գուշակյանը, Մինաս Գասապյանը, Մ. Պոտուրյանը և այլք։ Քաղաքը մեծ համբավ էր վայելում իր գեղեցիկ դիրքով։ Դրա համար այն մի տեսակ ստեղծագործելու հանգստավայր էր ծառայում և՛ Կ. Պոլսի, և՛ Զմյուռնիայի հայ մտավորականության համար։

Սաքարիա գետի ափին փռված էր գավառի քաղաքներից մեկը՝ Ադաբազարը[148]։ Քաղաքը հիմնադրել են Ակնից գաղթած հայերը XVI դարի սկզբներին, ապա այնտեղ էին եկել ատրպատականցի և սյունեցի գաղթականներ։ XIX դարի կեսին Ադաբազարն ուներ 25 հազար բնակիչ, որից 10256 հայ էին[149]։ Քաղաքում գործել են 5 դպրոց, իսկ ամերիկյան բողոքականների հիմնած Հայուհյաց դպրոցը միջնակարգ կրթություն էր տալիս գավառից հավաքված հայ օրիորդներին և նշանավոր էր ողջ Թուրքիայում։ Հակոբ Սարգսյանի խմբագրությամբ Ադաբազարում հրատարակվում էր Նիկոմիդիայից տեղափոխված «Բյութանիա» տասնօրյա հանդեսը։

Ադաբազարցիները, երկրագործությունից բացի, զբաղվում էին արհեստագործությամբ և առևտրով։ Քաղաքի առևտուրն ու արհեստագործությունը ամբողջովին հայերին էր պատկանում։ Այնտեղ զարգացած էր մետաքսագործությունը, տարեկան արտահանվում էր «28 հազար օգգա մետաքս»[150]։

Օվաճըկ ավանը փռված էր. ս. Եղիա լեռան ստորոտում, Քելեզ գետահովտում, զուտ հայաբնակ էր, ուներ 4000 բնակչություն։ Այս գեղեցիկ ավանը հիմնել էին ակնցի հայերը, համալրվելով Կարինից ու Սեբաստիայից եկած գաղթականներով։ Քաղաքն ուներ Վարդուհյան ազգային վարժարան, երեք եկեղեցի, որոնցից ճարտարապետական հոյակապ կոթող սբ. Գրիգոր Լուսավորիչը կառուցվել է 1851 թ.՝ Աղավնի Զաքարյան արքեպիսկոպոսի ջանքերով։

Օվաճըկում լույս է տեսել «Քնարիկ» անունով թերթը։ Այն ազատագրական պայքարի կոչեր է արել։ Քաղաքն իր ըմբոստ քաջերով մասնակցել է շրջապատի քուրդ և թուրք հրոսակների դեմ մղվող հայապաշտպան կռիվներին և կոչվել Նիկոմիդիայի Զեյթուն։

Նիկոմիդիայի մշակութային կարևոր կենտրոններից էր հայկական Արմաշ գյուղը։ Գյուղը հնում հունաբնակ էր, հրդեհի պատճառով լրիվ ավերված և վերաշինված XVI դարում մարաշցի և սեբաստացի հայերի ջանքերով։ Գյուղի անունը սկզբում Մարաշ էր, ապա դարձավ Արմաշ և նույն անունը տրվեց նաև Չարխափան ս. Աստվածածնա վանքին, որտեղ և հետագայում հիմնադրվեց Դպրեվանքը։ Չարխափանը եթե սկզբում սոսկ ուխտատեղի էր հիվանդ և հավատացյալ այցելուների համար, ապա նոր պատմաշրջանում դառնում է տոնավաճառների կենտրոն, ուր Կ. Պոլսից և Թուրքիայի շատ գավառներից գալիս էին առևտրականներ, արհեստագործ նորարարներ՝ իրենց ստեղծած արհեստի նմուշները ցուցադրելու, առևտրական գործարքներ կնքելու։

---

148 Ս. Մ. Տոցիկյան, նշվ. աշխ., էջ 82—85։
149 Մինաս Գասապյան, նշվ. աշխ., էջ 25։
150 Ներսես Սարգիսյան, նշվ. աշխ., էջ 38։

Արմաշի վանքը հիմնադրվել է 1610 թվականին։ 1687 թվականին Արմաշը դառնում է առաջնորդանիստ, իսկ 1797 թվականին վանքը վերակառուցվում է։ 1804 թվականին Ջաբըր Հասան բռնապետն այրում է վանքը, իսկ վանականներին հալածելով քշում է Արմաշից։ 1825 թվականին Արմաշը վերակառուցվում է, ապա հիմնադրվում է Դպրեվանքը, որը ուներ տպարան, դպրոց և հրատարակում էր բազմաթիվ գրքեր։ 1864—1878 թթ. Արմաշում լույս էր տեսնում ազգային, կրոնական, բարոյական և իմաստասիրական «Հույս» հանդեսը՝ սկզբնական շրջանում Խորեն Աշըգյանի խմբագրությամբ։ Արմաշը դարձավ հայ մշակույթի կարևոր կենտրոններից մեկը՝ տալով եկեղեցական ու քաղաքական գործիչներ, կաթողիկոսներ ու պատրիարքներ, հրապարակախոսներ և գրողներ։

Նիկոմիդիայի գավառում կային նաև հայաշատ գյուղեր։ Քուրդբելենում ապրում էին 8 հազար հայեր, որոնք շատ ըմբոստ էին, բռնավոր թուրքերի հետ միշտ կռիվներ էին մղում։ Ունեին երկու դպրոց։ Օրթագյուղը (Միջագյուղն) ուներ 1500 հայեր, մի եկեղեցի, Սահակ-Մեսրոպ անվամբ դպրոց, իսկ հայկական Ասլանբեկ գյուղը՝ 4000 հայ բնակիչ, որոնք գաղթել էին Պարսկաստանից։ Գեյվե գավառակում ապրում էին 15000 հայեր, համանուն գյուղում՝ 1500 հայ։ Խասկալը 1000 բնակիչ ունեցող հայկական գյուղ էր։ Արմաշ գյուղն ուներ 1500 հայ բնակիչ։ Այսպիսով, քաղաքներից բացի, Նիկոմիդիայում ապրում էին գյուղաբնակ հայեր, որոնք ենթարկվում էին սոցիալ-քաղաքական այն անտանելի ճնշմանը, ինչը բաժին էր ընկնում արևմտահայ մյուս գավառներին։

ՏՐԱՊԻԶՈՆ։ Պատմական Պոնտոսի տարածքում գտնվող՝ Հայաստանի մի շարք գավառներն ընդգրկող Տրապիզոնի վիլայեթում շատ վաղուց էին բնակություն հաստատել հայերը։ Նահանգը բաժանված էր Տրապիզոնի, Լազիստանի, Ջանիկի, Գյումուշխանեի և Շապին-Կարահիսարի սանջակների[151]։ Տրապիզոնի մեջ էին մտնում Համշենը, Սև Գետի հովտաշեն գյուղերը, որոնց բնակչության մեծ մասը մինչև XVIII դարի կեսերը կազմում էին հայերը։ XVIII դ. վերջին և XIX դ. սկզբներին մահմեդական կրոնավորները, «մոլեռանդ ամբոխի» բռնադատությամբ, այդ գյուղերի և Ծոմուրայի գավառի հազարավոր հայ բնակիչների[152] թուրքացրին, դրանով իսկ փոխելով նահանգի բնակչության ազգային պատկերը։

XIX դարի երրորդ քառորդին Տրապիզոնի ամբողջ վիլայեթում բնակվում էին շուրջ 50 հազար հայ տեղաբնիկներ[153] և 10 հազարի հասնող պանդուխտներ։ Սրանք գալիս էին ծովամերձ քաղաքներում աշխատելու, ոմանք տարիներ հետո վերադառնում էին Հայաստան, ոմանք էլ մեկընդմիշտ մնում պանդխտավայրերում։

Տրապիզոնի նահանգի հայաշատ և գլխավոր քաղաքներն էին Տրապիզոնը, Սամսոնը, Օրդուն, Գյումուշխանեն։ Տրապիզոն քաղաքում ապրում էին շուրջ 15 հազար հայեր, որոնց թիվը գնալով մեծացավ 60-ական թվականնե-

151 ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. 1300, ց. 18, գ. 63, թ. 84—85։

152 Հակոբոս Տաշյան, Հայ բնակչությունը Սև ծովեն մինչև Կարին, Վիեննա, 1921, էջ 30—35։

153 «Ջիթենի», գրական ժողովածու, Թիֆլիս, 1915, էջ 300։

*րին՝ Կարինից, Կեսարիայից, Կյուրինից գաղթողների հաշվին։ Նավահանգըստային այդ քաղաքը տարանցիկ առևտրի կենտրոն էր, որն իր շուրջն էր համախմբել Արևմտյան Հայաստանից Ռուսաստանի և Արևմտյան Եվրոպայի հետ առևտրական կապեր ունեցող հայ վաճառականներին։*

*Աչքի ընկնող վաճառականներն էին Արապյան Պողոսը, Մառանյանները, Թահմազյանը, Մինասյանը, Աղնավուրյան եղբայրները և ուրիշներ*[154]*։*

*Տրապիզոնի արհեստավորական դասը կազմում էին հայերը, հույները և լազերը։ Նրանք ունեին միություններ, որոնց մեջ համախմբված էին նաև առևտրականները։ 1835—1836 թթ. Մահմուդ II-ը հրապարակում է Տրապիզոնի էսնաֆությունների կանոնադրությունը և սահմանում նրանց արտադրանքի ու վաճառելիք ապրանքների սակագինը*[155]*։ XIX դարի երկրորդ կեսից հայ արհեստավորները գնալով տնտեսապես քայքայվում են և վերածվում օրավարձու բանվորների աշխատելով նավահանգստներում և ծխախոտի պլանտացիաներում։*

*Ծանր էր Տրապիզոնի բանվորի և պանդուխտ օրամշակի վիճակը։ Նրանք աշխատում էին 14—16 ժամ, օրական ստանալով 20—30 փարա, գիշերում էին բաց երկնքի տակ*[156]*։*

*Տրապիզոնում գործում էր մի տպարան, ուր տարբեր տարիների, իրար հաջորդելով կամ զուգահեռաբար տպագրվում էին «Խարիսխ», «Գեղջուկ», «Մոծակ», «Պոնտոս» և «Բժիշկ» պարբերականները։ Հայկական հինգ եկեղեցիներին կից գործում էին դպրոցներ, որոնք պահվում էին վանքապատկան կալվածքներից ստացված եկամուտների հաշվին։ Քաղաքի հայերը կազմակերպել էին «Թատերական ընկերություն» և հայերենով բեմադրում էին հույն ողբերգակների, ինչպես նաև Շեքսպիրի, Մոլիերի գործերը։*

*Սամսոնի բնակիչները 40 հազար էին, այդ թվում թուրքեր, հույներ, լազեր և մոտ 10 հազար հայեր*[157]*։ Քաղաքի հարստությունը Պաֆրայից ստացված բարձրորակ, բազմատեսակ և Արևելքում ու Արևմտյան Եվրոպայում հայտնի ծխախոտն էր*[158]*, փայտից պատրաստված նուրբ կահ-կարասիները։*

*Հայերը զբաղվում էին նաև երկրագործությամբ։ Ծխախոտի արտադրության և արտահանման մենաշնորհը մինչև Ղրիմի պատերազմն ու Թուրքիայի կիսագաղութացումը գտնվում էր հայերի ձեռքում։ Քաղաքամերձ Չարշամբա ավանում ապրում էին 3 հազար հայեր, որոնք տնտեսապես կապված էին Սամսոնի հետ, նրան մատակարարում էին մրգեր և բանջարեղեն։*

*Գյումուշխանեն փոքրիկ, գեղեցիկ քաղաք էր՝ 8 հազար բնակիչներով, որոնց մեծ մասը աշխատում էր հանքախորշերում։ Հայերի թիվը 2500-ից չէր անցնում։ Նրանք զբաղվում էին երկրագործությամբ, ունեին մեկ եկեղեցի և Մեսրոպյան տարրական դպրոց*[159]*։*

---

154 Ս. Ծոցիկյան, *նշվ. աշխ., էջ 775—776։*

155 *ՀՍՍՀ ԿՊՊԱ, Թուրքական ֆերմանների ֆոնդ, վավ. 94։*

156 *«Մշակ», 1872, № 14։*

157 Ս. Ծոցիկյան, *նշվ. աշխ., էջ 623—624։*

158 Բարունակ պէյի Ֆերուխեան, *Ճանապարհորդութիւն ի Բաբելոն ընդ Հայաստան յամի տեառն 1847, Արմաշ, 1876, էջ 3։*

159 Ս. Ծոցիկյան, *նշվ. աշխ., էջ 346—347։*

Շապին-Կարահիսարը կամ Նիկոպոլիսն այս տասնամյակներին մերթ մտցվում էր Սեբաստիայի, մերթ Տրապիզոնի վիլայեթի մեջ։ 20 հազար բնակչությունից 13 հազարը հայեր էին, իսկ ընդհանուր սանջակի 80 հազար բնակիչներից 25 հազարը՝ հայ տեղաբնիկներ։ Երկրագործ, արհեստավոր ու առևտրական կարահիսարցին նաև լավ կռվող էր, ըմբոստ, ուղղամիտ ու անզիջում բնավորությամբ։ Այստեղ էր ապրում Օզանյան արհեստավորական գերդաստանը, որտեղ և 1865 թ. ծնվեց ապագա զորավար Անդրանիկը։

Թրիեբոլու քաղաքի 9200 թուրքերի, հույների, լազերի կողքին առանձին թաղամասում ապրում էին 800 հայեր, որոնք ունեին իրենց դպրոցը, եկեղեցին։

Սև ծովի հարավային ափին փռված էր նավահանգստային Օրդուն, նախկինում Քոթիյորան քաղաքը։ Օրդուն ուներ 20 հազար բնակչություն. հայերը կազմում էին մոտ 5 հազար[160]։ Նրանք զբաղվում էին առևտրով, արհեստագործությամբ և ունեին սեղանավորներ, որոնց մեջ ամենահարուստը Երանոս աղան էր։ Վերջինս կապալով էր վերցնում կազմստանի հարկահավաքման իրավունքը։ Հայերը քաղաքում ունեին երկու եկեղեցի, Մովսիսյան վարժարանը՝ 600 սաներով և Ազգային դպրոցը՝ 150 աշակերտներով։

Թուրքերենով հրատարակվում էր «Գյուզել Օրդու» պարբերականը։ Քաղաքի շրջակայքում՝ նույնանուն կազայի մեջ էին մտնում 48 գյուղեր, մասամբ հայկական, հիմնականում թուրք և հույն բնակչությամբ։

Անկյուրիա (Էնկյուրի—Գաղատիա, այժմ Անկարա) քաղաքը XIX դարի կեսերին ուներ 30 հազար բնակիչ։ Պարսկաստանից գաղթած և հետագայում այլևայլ տեղերից այստեղ հավաքված հայկական համայնքի թիվը հասնում էր 3 հազարի, որոնք պահում էին անգորական երկարամազ այծեր. այդ ցեղատեսակը Ֆրանսիայում տարածողներից առաջիններից եղան հայերը[161]։ Անկարան հայկական համանուն առաջնորդության կենտրոնն էր։ Այստեղ գործում էին հայկական երեք դպրոց, մշակութային ընկերությունը։ Այդ քաղաքը տվել է այնպիսի խոշոր դեմքեր, ինչպիսիք էին Աբրահամ Անկյուրացին, Պետրոս Ադամյանը, Մաղաքիա Օրմանյանը և ուրիշներ։

Շուրջ 60 հազարանոց Ադրիանապոլիս (Էդիրնե) քաղաքում Պարսկաստանից, Կեսարիայից և Հայաստանից գաղթած հայերը XIX դարում կազմեցին 5 հազարի հասնող հայկական համայնք, հիմնեցին Թորգոմյան, Արշակունյան և Հռիփսիմյան վարժարանները, «Ի սերն Հիսուսի աղքատացելոյն» բարեգործական ընկերությունը։ Ադրիանապոլսից են Հակոբ Պարոնյանը, Սարգիս և Պողոս Ադրիանապոլսեցի պատրիարքները։

Ռոդոստո-Թեքիրդաղ քաղաքը գտնվում էր Մարմարա ծովի եվրոպական ափին, բնակչությունը հասնում էր 25 հազարի։ Հայերն այստեղ հաստատվել են դեռևս 1606—1607 թթ., գաղթելով Ակնից, Կամախից, Երիզայից։ 1828—1829 թթ. ռուս-թուրքական պատերազմի ժամանակ ռոդոստցի հայերը մեծ օգնություն ցույց տվեցին ռուսական բանակին, և երբ Ռոդոստոն Ադրիանապոլսի պայմանագրով վերադարձվեց Օսմանյան կայսրությանը, այնտեղ ապ-

160 Ս. Մ. Տոցիկյան, նշվ. աշխ., էջ 811—812։

161 Նույն տեղում, էջ 219—221։

րող հայերի մեծ մասը գաղթեց Արևելյան Հայաստան։ Դարի երկրորդ կեսին 30 հազար բնակիչ ունեցող քաղաքում 10 հազարը հայերն էին[162]։ Նրանք Ռոդոստոյում ունեին երեք թաղամաս, երեք եկեղեցի, երեք դպրոց։ Երկրագործությունից՝ հատկապես հանրահայտ ռոդոստոյան ձմերուկ աճեցնելուց զատ, նրանք լավ վաճառականներ էին, հմուտ արհեստագործներ[163]։

Այսպիսով, Կ. Պոլսից ու Զմյուռնիայից բացի Թուրքիայի մյուս քաղաքներում ու գյուղերում ապրում էին հայեր, որոնց ընդհանուր թիվը XIX դարի կեսերին անցնում էր 100 հազարից։ Անակնկալներն անպակաս էին հայկական գերդաստանների ոչնչացման, հարուստների ունեզրկման, արտաքսման համար։ Կոտորածների ու բռնագաղթերի հետ միասին Թուրքիայում անխնայորեն տարվում էր նաև հայ բնակչության մահմեդականացում, որը և պատճառներից մեկն էր նրա թվի նվազեցման։

ԵՐՈՒՍԱՂԵՄ։ Օսմանյան թուրքերը 1517 թ. նվաճեցին Երուսաղեմը։ 1799 թ. Նապոլեոն Բոնապարտը ջարդեց թուրքական բանակը և տիրեց Երուսաղեմին։ Սակայն այդ երկար չտևեց։ Քիչ անց կրկին Երուսաղեմը վերադարձվեց Թուրքիային և թուրք-եգիպտական պատերազմների կռվախնձոր դարձած «սրբազան քաղաքը» մնաց սուլթաններին մինչև առաջին աշխարհամարտը։

Երուսաղեմ քաղաքի ազգաբնակչության թիվը հասնում էր 50—55 հազարի։ Այնտեղ ապրում էին թուրքեր, հրեաներ, արաբներ, հույներ, ասորիներ, հայեր, ռուսներ։ Հայերը, հետագայում պակասելով, կորցնելով շրջակայքում ու դրսում ունեցած վանքապատկան կալվածքների մեծ մասը, XIX դարի կեսերին փոքր թիվ էին կազմում։ Կ. Մարքսը 1854 թ. Երուսաղեմի հայերի թիվը[164] հաշվում է 350, որոնք կամ միաբանության անդամներն էին, կամ նրան սպասարկող անձնակազմը։

Հայկական թաղամասում ապրող տեղացի աշխարհական հայերը, գերազանցապես թուրքախոս և արաբախոս լինելով, պարապում էին առևտրով[165] և պաշտոնավարությամբ, ոմանք էլ տիրապետելով մի քանի լեզվի, ուղեկցի և բացատրողի դեր էին կատարում աշխարհի տարբեր մասերից քաղաք ժամանող ուխտավորների համար։ Այնտեղ հավաքված հիվանդները, ծերերն ու հաշմանդամները ապրում էին միաբանության հաշվին։

Երուսաղեմը, սակայն, արևմտահայ կյանքում հայտնի էր հայկական հոգևոր միաբանությամբ՝ կենտրոն ունենալով Սիոն լեռան վրա կառուցված Սրբոց Հակոբյանց վանքը։ Միաբանությունն ուներ հոգևոր պետ՝ պատրիարք, որն ընտրովի էր և ընտրությանը մասնակցում էին միաբանության անդամ բարձրաստիճան հոգևորականները՝ նրան օժտելով գործելու լայն հնարավորություններով։

Ս. Հակոբյանց վանքը վաղուց տեր էր դարձել քաղաքում և շրջակայքում եղած հողային կալվածքների, որոնցից և գոյանում էր միաբանության եկամտի մի մասը։ Սակայն դրամ հավաքելու և հարստանալու ամենադյուրին միջոցը «Քրիստոսի գերեզմանին» տիրելու իրավունքն էր, քանի որ

162 Ս. Տոցիկյան, նշվ. աշխ., էջ 618։

163 Նույն տեղում, էջ 619։

164 К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 10, стр. 171.

165 Ս. Տոցիկյան, նշվ. աշխ., էջ 176—177։

ուխտավորների մեծ մասը գալիս էր այնտեղ և նվիրատվություններ անում։ Կ. Մարքսը գրում է, որ «...սուրբ վայրերին և տիրոջ գերեզմանին տիրելու համար մղվող պայքարին մասնակցում են լատինները, հայերը, հույները, հաբեշները, ասորիները, ղպտիները։ Այդ բոլոր տարբեր հավակնորդների միջև բախում առաջացավ։ Եվրոպական միապետները կրոնական այդ գժտություններ մեջ տեսնում էին Արևելքում իրենց ունենալիք ազդեցության հարցը»[166]։

Երուսաղեմի շուրջը սրված հակասություններից ճարպկորեն օգտվում էր սուլթանական կառավարությունը, որը փոխեփոխ իրավացի էր ճանաչում լատիններին, հույներին, հայերին և բոլորից էլ փող էր վերցնում։ Թուրքերը լատիններին հազիվ էին հանձնում վիճելի վայրերին տիրելու ֆերման, երբ հանդես էին գալիս հայերն ավելի լիքը քսակներով և ձեռք բերում հակառակ ֆերման։ Նույն ձևով էին վարվում նաև հույների նկատմամբ[167]։ Այդ էր պատճառը, որ Երուսաղեմի հայկական միաբանությանը պատկանող 100 հազար ոսկու արժողությամբ կալվածքները մերթ ընդ մերթ տրվում էին հույներին. լատիններին, արաբներին, Թուրքական կառավարությունը դրանով ստիպում էր հայկական միաբանությանը մեծ գումարներ վճարել։

Երուսաղեմի Ս. Հակոբյանց վանքը ծանր օրեր ապրեց Դամասկոսի արաբ կառավարիչների վարած հարկային կողոպտչական քաղաքականության հետևանքով։ Դեռևս 1778 թ. Դամասկոսի Մեհմեդ փաշան, լսելով, որ Հովակիմ պատրիարքն իր դեմ բողոք է ուղարկել Կ. Պոլիս, զորքով մտնում է հայկական միաբանություն և 6 հազար դահեկան տուգանք վերցնելուց հետո միայն հեռանում,

Սակայն դրանով և սանջակիյե ու ավայիտ կոչվող պարտադիր հարկերի գանձումով չբավարարվելով, Մեհմեդ փաշան մեկ տարում Երուսաղեմի հայ համայնքից կորզում է 39525 դահեկան և մնում դժգոհ[168]։ Սկսած 1800 թ. Պետրոս պատրիարքը տարեկան 4195,5 րուպիե ոսկի էր վճարում Դամասկոսի փաշային, իսկ Մուհամեդ Ալիի կառավարության տասնամյակին անկանոն հարկատվության պատճառով Ս. Հակոբյանց վանքը տնտեսապես լրիվ քայքայվել էր, ընկել պարտքերի տակ։ Միաբանության նյութական սուղ վիճակը շարունակվում էր 1850-ական թթ. վերջերին, ուստի Կ. Պոլսի Ազգային ժողովը 1860—1861 թթ. որոշում է մայրաքաղաքի յուրաքանչյուր հայից 5 ղուրուշ հարկ գանձել և տրամադրել Երուսաղեմին՝ նրան այդ վիճակից հանելու համար։

Երուսաղեմը հայ մշակույթի ականավոր կենտրոններից էր։ Ս. Հակոբյանց վանքն ուներ հարուստ թանգարան, մատենադարան, ուր մինչև օրս էլ պահպանվում են հազարավոր թանկարժեք ու հազվագյուտ ձեռագրեր, արխիվային փաստաթղթեր, թագավորական ու կաթողիկոսական գավազաններ, հայ ու օտար նկարիչների կտավների հավաքածուներ։ Տեղի վանական-գիտնականները սրբությամբ պահպանում էին պատմական այդ անգնահատելի գանձերը, մի մասն էլ հետազոտում և հրատարակում։ Վենետիկի և Վիեննայի Մխիթարյան-

---

166 К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 10, стр. 170.

167 Տե՛ս նույն տեղում։

168 Տիգրան Սավալանեանց, Պատմություն Երուսաղեմի, Երուսաղեմ, 1931, հ. 2, էջ 802։

ներից հետո Երուսաղեմը դառնում է հայագիտական կարևոր կենտրոններից մեկը։

Երուսաղեմն ուներ ժառանգավորաց վարժարան։ Այնտեղ սովորելու էին գալիս հայ պատանիները, հմտանում գրաբարի և արևելյան ու եվրոպական լեզվագիտության մեջ, դառնում կամ քարոզիչ միաբաններ, կամ զբաղվում հայագիտությամբ։ 1833 թ. մշեցի Զաքարիա պատրիարքը հիմնեց Ս. Հակոբյանց վանքի տպարանը, ուր հրատարակվում էին հայագիտական հետազոտություններ, դասագրքեր, կրոնական քարոզգրքեր։ 1866 թ. Երուսաղեմում լույս է տեսնում ազգային, բանասիրական, պատրիարքության պաշտոնական հանդեսը՝ «Սիոն» ամսագիրը, որն ընդմիջումներով հարատևում է մինչև մեր օրերը։

ԵԳԻՊՏՈՍ։ Թուրքական տիրապետության տարիներին (1517—1801) Եգիպտոսն ապրեց իր պատմության ամենամռայլ ժամանակաշրջանը։ Թուրք տիրակալների կեղեքումները մի կողմից, մամլյուկների շրջանում ծայր առած ավատական երկպառակությունները մյուս կողմից, երկիրը հասցրին քայքայման եզրին։

Այդ ժամանակամիջոցում ծանր վիճակում էր նաև Եգիպտոսի հայ գաղթավայրը։ Երկրի քայքայված կացությունը, քրիստոնյաների նկատմամբ գոյություն ունեցող անհանդուրժողականությունն իրենց բացասական ազդեցությունը գործեցին։ Թե ինչքան անմխիթար վիճակում էր գտնվում եգիպտահայությունը, կարելի է եզրակացնել հետևյալից. եթե 1615 թ., Սիմեոն Լեհացու Եգիպտոս այցելած ժամանակ, Կահիրեում եղել է 200 տուն հայ բնակչություն, ապա XIX դարի սկզբներին Ստեփանոս Գուվեր Ագոնցը Կահիրեում տեսել է ընդամենը 50—60 հայ ընտանիք[169]։

Եգիպտոսում քաղաքական և տնտեսական նշանակալից վերափոխությունները կատարվեցին Մուհամեդ Ալիի կառավարության շրջանում (1805—1849)։ Ալբանացի այս ականավոր զինվորականի նպատակն էր թոթափել թուրքական լուծը, ստեղծել կենտրոնացված ուժեղ պետականություն և Եգիպտոսին միացնել հարևան արաբական երկրները։ Նրա այս ձգտումները լիովին համապատասխանում էին Եգիպտոսի կալվածատիրական ազնվականության և կոմպրադորական բուրժուազիայի շահերին[170]։

Մուհամեդ Ալին, իշխանության գլուխ անցնելուց հետո, լայն ասպարեզ տվեց հայ արդյունաբերողներին, առևտրականներին և արհեստավորությանը։ Եգիպտական իշխանություններն ավելի վստահությամբ էին վերաբերվում հայ գաղթականներին, որովհետև նրանք քաղաքականապես ավելի հավատարիմ էին Եգիպտոսին, լավ գիտեին արևելյան լեզուները և ծանոթ էին տեղական սովորույթներին։

XIX դարի երեսնական թվականներին Եգիպտոսում ապրող հայերի թիվը շատ փոքր էր, ընդամենը երկու հազար հոգի[171]։ Սակայն ստեղծված նպաս-

---

169 Ս. Գ. Ագոնց, Աշխարհագրութիւն չորից մասանց աշխարհի, հատ. Գ, Աֆրիկե, 1802, էջ 54։

170 «Новая история стран зарубежного Востока», т. I, М., 1952, стр. 338—339.

171 A. B. Clot, Aperçu général sur l'Egypte, Fr [illegible]

տավոր պայմաններում եգիպտահայության թիվը գնալով մեծանում է։ Մինչև ութսունական թվականներն այն ավելանում է երեք անգամ՝ հասնելով շուրջ վեց հազարի[172]։

Հայերը Եգիպտոս էին գաղթում գլխավորապես Կ. Պոլսից, Զմյուռնիայից, Տիգրանակերտից, Արաբկիրից, Կեսարիայից և Արևմտյան Հայաստանի զանազան գավառներից։

Մինչև XIX դարի սկզբները եգիպտահայերը հիմնականում կենտրոնացած էին Կահիրեում և Ալեքսանդրիայում։ Մուհամեդ Ալիի գահակալության շրջանում, երբ մեծանում է գաղթավայրը, հայերն սկսում են բնակություն հաստատել Եգիպտոսի այլ քաղաքներում և ավաններում՝ Զակազիկում, Թանտայում, Բենի-Ադիում, Քաֆր-Զիարեթում և Սուեզում։

Եգիպտահայ բնակչության սոցիալական կազմը XIX դարում, նախորդ դարերի համեմատությամբ, առանձնապես մեծ փոփոխությունների չէր ենթարկվում։ Եգիպտահայ բնակչության կազմում մենք տեսնում ենք դարձյալ հայ մեծահարուստների՝ պետական բարձր պաշտոններ ստանձնած աղաների, առևտրական խոշոր գործարքներ կատարող խոջաների, հասարակական նոր ասպարեզ մտած արդյունաբերողների, իսկ մյուս կողմում՝ իրենց գոյությունը չարքաշ աշխատանքով պահպանող արհեստավորների։ Կային նաև արդյունագործական ձեռնարկություններում աշխատող ոչ քիչ թվով բանվորներ։

Եգիպտոսի հայ բնակչության սոցիալական կազմի վերաբերյալ ուշագրավ տեղեկություն է հաղորդում եվրոպացի ճանապարհորդ Ժորժ Սանդիսը. «Կահիրեում ապրող հայերը,— գրում է նա,— ամենից աղքատներն են և ամենից պատվավորները. նրանք չարքաշ աշխատում են և համեստ ապրում»[173]։

Եգիպտոսի հայ գաղթավայրի ամենից արտոնյալ խավը վաճառականներն էին։ Նրանց մեծ մասը կապված էր ասիական և եվրոպական շուկաների հետ։ Մի շարք հայ վաճառականներ առաջ էին քաշվել բարձր պաշտոնների Ներքին և արտաքին առևտրի բնագավառներում՝ կատարելով պետության հատուկ հանձնարարությունները։ Նրանցից ոմանք դարձել էին Մուհամեդ Ալիի խորհրդատուները և գործակիցները առևտրի ասպարեզում։ Եգիպտոսի արտաքին առևտրի մեջ սկսում են ներգրավվել ոչ միայն եգիպտահայ վաճառականները, այլև Թուրքիայի և եվրոպական երկրների աչքի ընկնող հայ առևտրականներն ու արդյունաբերողները։ «Հայերը,—գրում է ժամանակակից պատմաբան Ջաբարտին,— Մուհամեդ Ալիի մոտիկ կանգնած մարդիկ են, նրա շահընկերները առևտրի բոլոր բնագավառներում, նրանք ամենահեղինակավոր մարդիկն են և նրա խորհրդականները»[174]։

Եգիպտահայ վաճառականներն աշխույժ գործունեություն էին ծավալել ոչ միայն առևտրի ասպարեզում, այլև արդյունաբերական ձեռնարկություններ հիմնելու ուղղությամբ։ XIX դարի առաջին կեսում Վերին և Ներքին Եգիպտո-

---

172 «Արմենիա», 1886, № 63։

173 *George Sandys*, Relation of Journey..., հ. II, էջ 122։

174 *Абд ар-Рахман ал-Джабарти*, Египет под властью Мухаммеда Али, М., 1962, стр. 610.

սում հիմնվում են ավելի քան երեսուն արդյունաբերական ձեռնարկություններ (մետաղամշակման, հյուսվածքեղենի, լաքի և այլն), որոնց գործուն մասնակցություն են ունեցել եգիպտահայ մեծահարուստ վաճառականները։

Եգիպտահայ համայնքների մյուս ստվար խավը արհեստավորությունն էր։ Մեծ հռչակ են ունեցել առանձնապես հայ ոսկերիչները, որոնք գալիս էին Պոլսից և հաստատվում Կահիրեում ու Ալեքսանդրիայում։ Պալատական գրեթե բոլոր ոսկերչապետերը հայեր են եղել։ «Հայերը,— գրում է Գարամաճյանը,— իբրև արհեստավոր, Եգիպտոսի մեջ առաջին տեղը կբռնեն ոսկերչության մեջ, արդարև, հայ ոսկերիչները մասնավոր գաղութ մը ձևացուցած են խան խալիլի համբավավոր կեդրոնի մեջ և իրենց ճարտարվեստի ընտիր արտադրությունները իրավամբ գնահատված են ճաշակի բոլոր սիրահարներեն»[175]։

Ոսկերիչներից հետո, հայ արհեստավորության մեջ ստվար թիվ են կազմել յաղմայի մասնագետները՝ գլխաշորի վրա ասեղնագործողները։ XIX դարի 20—30-ական թվականներին միայն Կահիրեում հայկական տասը արհեստանոց է եղել, ուր աշխատել են հայ մասնագետ յաղմաչիները։

Եգիպտոսի հայ աշխատավորության մեջ զգալի թիվ են կազմել կոշկակարները։ XIX դարում Եգիպտոսի գրեթե բոլոր կոշկակարները հայեր են եղել։

Մեծ համարում ստեղծած մյուս արհեստները, որոնք դարձյալ հայ արհեստավորության մենաշնորհն են եղել Եգիպտոսում, հանդիսացել են ասեղնագործությունը և դերձակությունը։ XIX դարում Կ. Պոլսի հայկական ասեղնագործական վարժարանն ավարտած շատ կանայք տեղափոխվել են Եգիպտոս և այնտեղ հիմք դրել ասեղնագործությանը։

Եգիպտահայ բնակչության սոցիալական կազմում զգալի տեղ էր գրավում բանվորությունը։ Նրանք աշխատում էին արդյունաբերական ձեռնարկություններում, շինարարության մեջ և ագարակներում։ Հայ բանվորությունը գտնվել է ընչազուրկ վիճակում և մեծ դժվարություններով է հայթայթել օրվա հացը, պահպանել իր ֆիզիկական գոյությունը։

Եգիպտոսի հայ գաղթավայրը հնուց ի վեր տեղական իշխանությունների կողմից ճանաչվել է իբրև հոգևոր համայնք և օգտվել է մի շարք արտոնություններից։ Թուրքական տիրապետության շրջանում գաղթավայրը ենթարկվել է Երուսաղեմի պատրիարքությանը և նրա կողմից նշանակված հոգևոր պետին։ Աշխատավոր զանգվածները իրավասու չեն եղել մասնակցելու գաղթավայրի ներքին գործերի տնօրինմանը։ Երուսաղեմից ուղարկված հոգևոր առաջնորդին շրջապատել են տեղի ունևորները, որոնք և ուղղություն են տվել նրա գործունեությանը[176]։

1860 թ., երբ ընդունվեց Ազգային սահմանադրությունը, Եգիպտոսի թե-

---

175 Ս. Գաքամաճյան, *Հայ տարրը Եգիպտոսի պետական, տնտեսական և առևտրական ասպարեզներու մեջ* (Ս. Պարթևյանի «Եգիպտահայ տարեցույց», 1913, էջ 221—222)։

176 Ա. Տեր-Հովհաննիսյանց, *Ժամանակագրական պատմություն Երուսաղեմի*, հատ. Բ, 1890, էջ 503—507։

մում, ինչպես և Պոլսի պատրիարքության մյուս թեմերում, պետք է անցկացվեին ընտրություններ։ Սակայն այդ թույլ չտվին եգիպտահայ մեծահարուստները։ Սկսած այդ թվականից եգիպտահայ համայնքներում ծավալվել է անհաշտ պայքար տեղի հայ վերնախավի և աշխատավորության միջև՝ թեմական և հոգաբարձուական իշխանությունների շուրջ։ Տեղի վերնախավը, հենվելով եգիպտական կառավարության հովանավորության վրա, աշխատել է զրկել և սահմանափակել եգիպտահայ աշխատավորության իրավասությունը գաղթավայրի վարչական մարմիններում և հասարակական կազմակերպություններում։ Այդ իսկ պատճառով էլ աշխատավորությունը համառ պայքար է տարել իր իրավունքները պաշտպանելու համար[177]։ Պայքարի արդյունքն եղել է այն, որ գաղթավայրի աշխատավորությանը հաջողվել է 1866 թ. հարկադրել կառավարությանը ընտրությունները անցկացնել Ազգային սահմանադրության համաձայն։

XVIII—XIX դարերում Եգիպտոսի հասարակական-քաղաքական և զինվորական ասպարեզներում հայտնի են մի շարք ականավոր գործիչներ, մամլյուկների մի շարք աչքի ընկնող անուններ։ Մամլյուկների զորամասերը, ինչպես հայտնի է, կազմվում էին կռիվների ժամանակ գերի վերցված և կամ արևելյան շուկաներում գնված մանկահասակ երեխաներից, որոնց բերում էին Եգիպտոս, հատուկ զորանոցներում զինավարժություն էին սովորեցնում և նրանցով համալրում մամլյուկական զորամասերը։ Նրանց մեջ քիչ թիվ չէին կազմում և հայերը։

XVIII դարի վերջերում Եգիպտոսի հայ աչքի ընկնող գործիչներից է եղել ծովակալ Նիկողայոսը, որն իր շուրջն է հավաքել եգիպտացի, հույն, ասորի ու հայ ծովայինների և զորավիգ հանդիսացել Եգիպտոսի պաշտպանությանը։ Նիկողայոսը կազմակերպել է բավական ուժեղ նավատորմիղ՝ զինելով այն ժամանակի լավագույն հրանոթներով։ Եգիպտական այս նավատորմիղն էր, որ 1799 թվականին քաջաբար կռվեց Նապոլեոնի զորաբանակի դեմ։ Հետագայում, երբ ֆրանսիացիներին հաջողվեց գրավել Եգիպտոսը, Նիկողայոսը բանտարկվեց Կահիրեի միջնաբերդում[178]։

Հայ մամլյուկներից ուշագրավ դեմք է Մելքոմ Ռուստամը։ Սա ղարաբաղցի առևտրականի զավակ էր, փոքր հասակում հափշտակվել էր և բերվել Եգիպտոս։ Այստեղ Մելքոմը դառնում է աչքի ընկնող զինվորական գործիչ։ 1798—1799 թթ. Նապոլեոնը, Եգիպտոսում գտնված ժամանակ, Մելքոմին վերցնում է իր շքախումբը՝ թույլ տալով կրել մամլյուկական հագուստ։ Հետագայում, Նապոլեոնի ասպարեզից հեռանալուց հետո, Մելքոմը բնակություն է հաստատել Ֆրանսիայի Տուրտան քաղաքում և ֆրանսերեն հրատարակել իր հիշողությունները։ Ի դեպ, Մելքոմը եգիպտական բանակի աչքի ընկնող մամլյուկ հայերից հականե-հանվանե հիշատակում է 17 բարձրաստիճան զինվորականների՝ նշելով նրանցից յուրաքանչյուրի ծննդավայրը և ծննդյան թվականը։

---

177 «Արևելյան մամուլ», 1872, էջ 409։

178 Գ. Մըսըրլյան, Հայազգի երևելիներ Ճաբարթիի պատմագրքին մեջ («Սիոն», 1938, № 1. էջ 22—30)։

XIX դարի առաջին կեսին Եգիպտոսում բարձր դիրքի հասած անձնավորություններից էր Պողոս Յուսուֆյանը։ Մոտիկ փոխհարաբերությունների մեջ գտնվելով Մուհամեդ Ալիի հետ և լինելով նրա խորհրդականը առևտրի ասպարեզում, նա սկզբում նշանակվել է արքունի թարգմանիչ, հետագայում մեծ վստահություն ձեռք բերելով, առաջ է քաշվել արտաքին գործերի և առևտրի տնօրենի պաշտոնին։ Շուտով նա դառնում է Մուհամեդ Ալիի անձնական խորհրդականը և իրավունք ստանում վարելու պետության բոլոր գործերը՝ փաստորեն դառնալով Եգիպտոսի վարչապետը։

Յուսուֆյանը մոտիկ փոխհարաբերությունների մեջ է գտնվել տեղի հայ համայնքի հետ։ Նրա շնորհիվ եգիպտահայ առաջնորդարանին շնորհվել են որոշ արտոնություններ։

Եգիպտոսի կառավարության գլուխ անցնելուց հետո, Յուսուֆյանը հովանավորել է բազմաթիվ հայ գործիչների։

Նա դրական դեր է կատարել նաև հայ երիտասարդներին եվրոպական բարձրագույն ուսումնական հաստատությունները կրթության ուղարկելու գործում։ Հայ երիտասարդները, Եվրոպայում կրթություն ստանալուց հետո, վերադառնում էին Եգիպտոս և մասնակցում հասարակական ու քաղաքական կյանքին։

Պողոս Յուսուֆյանից հետո նրա պաշտոնում նշանակվել է Արթին Չրաքյանը։ Նա Եգիպտոսից Եվրոպա սովորելու ուղարկված ուսանողների խմբից էր և մասնագիտացել էր տնտեսագիտության ու միջազգային իրավագիտության մեջ։ Վերադառնալով Եգիպտոս, 1844 թ. նա նշանակվում է միաժամանակ արտաքին գործերի և առևտրի տնօրեն, այդ պաշտոնում մնալով մինչև 1850 թվականը։ Արթին Չրաքյանի իրավասության սահմանները հետագայում ավելի են ընդարձակվում։ Նա ես փաստորեն վարել է վարչապետի պաշտոնը և ունեցել գրեթե այն բոլոր իրավունքները, ինչ նրանից առաջ ուներ Պողոս Յուսուֆյանը։ Նրա անվան հետ է կապված Եգիպտոսում առևտրի մենաշնորհի վերացումը, որով ստեղծվեց երկրի արտադրողական ուժերի զարգացման հնարավորություն։ Նա է կարգ ու կանոն ստեղծել պետական գանձարանում, կարգավորել մաքսային անցագրերի վարչությունը և այլն։

Պողոս Յուսուֆյանի առաջ քաշած հայ երիտասարդներից է եղել նրա քեռորդիներից մեկը՝ Նուբարը, նախկին ղարաբաղցի ծնողների զավակ, որը բնակություն էր հաստատել Զմյուռնիայում։ Նուբարը գտնվել է Եվրոպա ուսանելու ուղարկված երիտասարդների խմբի մեջ և, վերադառնալուց հետո, արքունի դիվանատանը գրագիր է նշանակվել։ Մոտիկ փոխհարաբերությունների մեջ լինելով գահաժառանգ Իսմայիլի հետ, վերջինիս Եգիպտոսի փաշա դառնալուց հետո, նշանակվել է Եգիպտոսի արտաքին գործոց նախարար։ Այնուհետև նա վարել է այդ պաշտոնը մինչև 1878 թ., երբ նշանակվեց Եգիպտոսի վարչապետ։

Նուբարի առաջին գործերից մեկն է եղել Եգիպտոսի արդարադատության սիստեմում բարեփոխություններ մտցնելը։ Նա ստեղծեց խառը դատարաններ՝ աշխատելով չարաշահումների առաջն առնել։ Եգիպտոսի գլխավոր դատախազը, խոսելով Նուբար փաշայի կատարած բարեփոխությունների մասին,

հետևյալն է գրել. «Ոչ ոք չէ մոռացած և երբեք չպիտի մոռանա, որ ինքը եղավ Եգիպտոսի մեջ դատական բարենորոգման գլխավոր հիմնադիրը»[179]։

Մեծ աշխատանք է տարել Նուբարը Եգիպտոսում ջրանցքներ անցկացնելու և ոռոգվող հողերն ընդարձակելու ուղղությամբ։ Եգիպտոսի հանրօգուտ շինարարության պաշտոնյա եղած ժամանակ նա մշակել է հողերի ոռոգման ընդարձակ մի ծրագիր և ձեռնարկել դրա իրականացումը։ Նրա ջանքերով անց են կացվել մի քանի ջրանցքներ։ Բեհերա նահանգի նշանավոր ջրանցքը, որ կառուցվել է Նուբարի նախաձեռնությամբ, կառավարության հատուկ հրամանով կոչվել է Նուբարի անունով։ Մեծ է Նուբարի ծառայությունը նաև Եգիպտոսի քաղաքական անկախությունը պահպանելու և այն ամրացնելու ուղղությամբ։

Նուբարը կատարել է մի շարք բարեփոխություններ արաբ գյուղացու (ֆելլահի) դրության բարելավման ուղղությամբ։ Այս գործում նա հանդիպել է տեղի ավատական շրջանների ուժեղ դիմադրությանը, սակայն արել է ամեն հնարավոր բան՝ սահմանափակելու նրանց կեղեքումները[180]։

Նուբարին զբաղեցրել է նաև հայ ժողովրդի քաղաքական ճակատագիրը, հասարակական կյանքը, մշակույթի զարգացման խնդիրը, հայ երիտասարդությանը կրթություն տալու անհրաժեշտությունը և այլն։ Մի առիթով խոսելով ազգային ծագման մասին, նա հետևյալն է ասել. «Ես կյանքս նվիրեցի Եգիպտոսին, որովհետև բախտը իմ առջև այս գործս հանեց, հրապուրվեցա անկից և կապվեցա։ Բայց օտար երկրի մեջ այդ գործունեությունս երբեք ինծի չմոռցուց, որ հայ մըն եմ»[181]։

Նուբարից բացի, արտաքին գործերի, առևտրի, լուսավորության և այլ նախարարությունները գլխավորել են Ստեփան Դեմիրչյանը, Տիգրան Ապրոն, Առաքել Նուբարը և ուրիշներ։ XIX դարի Եգիպտոսի արտաքին գործերի նախարարների ցանկից երևում է, որ հարյուր տարվա ընթացքում հայ պաշտոնյաներն այդ նախարարության գլուխն են կանգնած եղել 64 տարի։

Եգիպտահայ մշակութային կյանքում ամենանշանակալից երևույթը հայկական դպրոցներն են, որոնք զգալի դեր են խաղացել գաղթավայրի երեխաների դաստիարակության գործում։ Առաջին հայկական դպրոցը հիմնվել է Կահիրեում, 1828 թվականին՝ ակնցի բարերար Եղիազար Ամիրյանի կտակով։ Այդ դպրոցը ի վիճակի չի եղել ընդգրկել գաղթօջախի բոլոր հայ երեխաներին։ 1854 թ. բացվել է երկրորդ դպրոցը՝ վանեցի բարերար Կարապետ Գալստյանի նվիրատվությամբ։ Այս դպրոցը կրել է Մովսես Խորենացու անունը։

Կահիրեի հայ համայնքի օրինակին է հետևել Ալեքսանդրիայի գաղթօջախը, որը 1851 թ.[182] հիմնել է իր դպրոցը։

---

179 Վ. Զարդարյան, *Հիշատակարան*, հատ. 1, էջ 268—298։

180 Ա. Ալպոյաճյան, *ԱՄՀ Եգիպտոսի նահանգը և հայերը*, էջ 83—95։

181 Ե. Աճեմյան, *Հայազգի արտաքին գործոց նախարարները Եգիպտոսի մեջ* (Աճեմյան, Եգիպտահայ տարեցույց, 1924, էջ 61—62)։

182 Եգիպտահայ դպրոցների մասին տե՛ս Մ. Պետրոսյանի հոդվածը՝ «Հարյուրամյակ մը ազգային կրթությունը Գահիրեի մեջ» (Տարեգիրք «Արմավենի», 1937—1938, էջ 11—24)։

Եգիպտոսում շատ քիչ էր այն մտավորականների թիվը, որոնք տեղի հայկական դպրոցների սաներից չէին։ Եգիպտոսի հայկական դպրոցները խոշոր դեր են կատարել հայոց լեզվի պահպանման, հայ բնակչությանը համաձուլման վտանգից փրկելու գործում։

Հայկական առաջին տպարանը բացվել է 1865 թ. Կահիրեում՝ Աբրահամ Մուրադյանի ջանքերով, որը հրատարարակել է «Արմավենի» կիսամսյա լրագիրը։ Եգիպտահայ այս առաջին լրագիրը երկար կյանք չի ունեցել. լույս է տեսել միայն երեք համար[183]։

Եգիպտոսի հայ գաղթավայրում հրատարակվող հայկական հաջորդ թերթը «Նեղոս»-ն է, որը լույս է տեսել Ղ. ք. Փափազյանի խմբագրությամբ։ Այն նույնպես երկար կյանք չի ունեցել. մեղադրվելով Թուրքական կառավարության դեմ հոդվածներ տպագրելու մեջ, թերթը փակվել է, իսկ խմբագիրն աքսորվել։

Եգիպտահայերից ոմանք գործուն մասնակցություն են ունեցել Եգիպտոսում տպագրության և պարբերական մամուլի հրատարակման գործի կազմակերպմանը։ Հայ խմբագիրների ձեռքով են հրատարակվել «Մըըր», «էլթիճարեթ», «էլ զաման», «էլ-Ֆելահ» և այլ անուններով մի շարք թերթեր, արաբերեն, անգլերեն ու ֆրանսերեն ամսագրեր։

Հայերն իրենց ներդրումն ունեն նաև Եգիպտոսի ճարտարապետության բնագավառում։ Մուհամեդ Ալիի և նրա հաջորդի գահակալության տարիներին Կահիրեում կառուցված աչքի ընկնող շենքերի նախագծողների և կառուցողների մեծ մասը եղել են հայ ճարտարապետներ (Գևորգ Ռաֆայելյան, Ջենոբ Միրամեթճյան և ուրիշներ)[184]։

Եգիպտոսի կրթության, արվեստի և գիտության բնագավառներում մեծ հեղինակություն է համարվել Եագոպ Արթինը։ Նրա նախաձեռնությամբ է Կահիրեում հիմնվել արաբական արվեստի թանգարանը։

Եգիպտահայ արվեստագետների մեջ աչքի ընկնող տեղ են գրավել նաև նկարիչները։ Առանձին հայ նկարիչներ ժամանակին թողել են իրենց ստեղծագործություններից որոշ նմուշներ[185]։

ԵԹՈՎՊԻԱ։ Եթովպիայի հայ գաղթավայրի պատմությունը փաստորեն սկսվում է XIX դարից, իսկ մինչ այդ բնակչությունն այնքան փոքրաքանակ է եղել և ցրված, որ հնարավոր չի եղել երկրում հայ հավաքական կյանք ստեղծել։ XIX դարի երկրորդ կեսին Եթովպիա են գալիս հայ գաղթականական նոր հոսանքներ, որոնք ստվարացնում են բնակչության թիվը և կազմակերպում գաղթավայրի հասարակական կյանքը։ Հայ գաղթականությունը Եթովպիա է գալիս հիմնականում Թուրքիայից և բնակություն հաստատում

183 Վ. Զարդարյան, *Եգիպտահայ լրագրության վաթսունամյակը* (տե՛ս Ս. Պարքեյան, *Եգիպտահայ տարեցույց*, 1913, էջ 73—77)։

184 Կ. Պալյան, *Ճարտարապետությունը Եգիպտոսի մեջ և հայ ճարտարապետների դերը* (տե՛ս Ս. Պարքեյան, *Եգիպտահայ տարեցույց*, 1913, էջ 112)։

185 Տ. Տեմիրճյան, *Հայ գեղարվեստն ու արվեստագետները Եգիպտոսի մեջ* (տե՛ս Ս. Պարքեյան, *Եգիպտահայ տարեցույց*, 1913, էջ 246—261)։

Ադիս-Աբեբայում ու նրա մերձակա շրջաններում։ Եթովպիայի մայրաքաղաքը՝ Ադիս-Աբեբան դառնում է եթովպահայ գաղթօջախներից մեկը[186]։

Եթովպացիներն արտակարգ սիրալիր ընդունելություն են ցույց տալիս հայ գաղթականությանը։ Այն ժամանակ, երբ եվրոպացիների մուտքն արգելված էր Եթովպիա, հայերն ազատ ելմուտ ունեին այնտեղ։ Պատահել են դեպքեր, երբ եվրոպացիները Եթովպիա մտնելու թույլտվություն ստանալու համար հայ են ձևացել, փոխել են իրենց անունը և հագուստը։ Հայերի նկատմամբ ցուցաբերվող այս սիրալիրությունը պետք է բացատրել նրանով, որ նրանք քաղաքական նպատակներ չեն ունեցել հյուրընկալվող երկրում, որպես դավանակից ժողովուրդներ եթովպացին ու հայը վաղուց են ճանաչել իրար և բարեկամական սերտ հարաբերությունների մեջ գտնվել դարեր շարունակ։

Ադիս-Աբեբայի ռուսական դեսպանատան բժիշկը ցարական արքունիք ուղարկված մի զեկուցագրում հետևյալ ուշագրավ տեղեկությունն է հաղորդել հայ գաղթականների Եթովպիա գնալու մասին. «Երբ մի նոր գաղթական է գալիս, նրա առաջին գործը լինում է իր համար ապրուստի հարմարություններ գտնել. վերցնում է մի կտոր ամայի հող, որի վրա նա մի համեստ, բայց մաքուր բնակարան է կառուցում, հետո սկսում է, շուրջը ցանկապատելով, ծառեր տնկել կամ բանջարանոց մշակել, այնպես որ մի քանի ժամանակից հետո կտեսնեք, որ ամայի հողը դարձել է մի գեղեցիկ տեսարան ներկայացնող վայր»[187]։

Գաղթականության մեծ մասը եղել են արհեստավորներ և գյուղացիներ, որոնց ժամանումից հետո հիմնովին փոխվել է հայաբնակ գաղութի սոցիալական պատկերը։ Եթե առաջ գաղթավայրի բնակչության հիմնական մասը կազմել են առևտրականները և պետական պաշտոնյաները, ապա այժմ դառնում են արհեստավորները և գյուղացիները։

Հայ արհեստավորներն աշխատել են արհեստի 28 զանազան ճյուղերում։ Առանձնապես մեծ թիվ են կազմել ոսկերիչները, զինագործները և երկաթագործները։ Երկար ժամանակ որոշ արհեստների մենաշնորհը գտնվել է նրանց ձեռքում։

«Արհեստների մեջ ավելի նշանակալից են հայերի մատուցած ծառայությունները։ Նրանք եղել են Մենելիք թագավորի մոտ առաջին կատարելագործված արհեստների մասին գաղափար տվողները։ Շատ անգամ նյութական վնաս կրելով, նրանք աշխատում են ցույց տալ իրենց ընդունակությունները»[188]։

Հայ արհեստավորները շատ հաճախ վերցրել են եթովպացի աշակերտներ և սիրով սովորեցրել իրենց արհեստը։ Բաթաբան Հայկը այդ մասին հետևյալն է գրում. «Հայն ըլլալով մեծի մասամբ արհեստավոր և անմիջական շփման մեջ գտնվելով բնիկ տարրին հետ, անոր սովորեցուցած է իր արհես-

186 Հ. Բաքաբան, *Արդի Եթովպիան և հայ գաղութը*, Վենետիկ, 1930, էջ 165։

187 Գ. Արարյան, *Աբեսենիայի հայ գաղթականությունը* (տե՛ս «Մուրճ», 1904, № 7, էջ 65)։

188 Նույն տեղում։

տը, հաստուցած է շատ մը արհեստավորներ և օգտակար հանդիսացած եթովպացիներուն ոսկերչութեան, թիթեղագործութեան, կահույքագործութեան, գորգագործութեան և այլնի մեջ»[189]։

Ծավալուն է եղել հատկապես հայ ոսկերիչների գործունեությունը, նրանց ջանքերով տասնյակ եթովպացիներ սովորել են ոսկերչություն և երկրով մեկ տարածել այդ արհեստը։

Եթովպահայ գաղթավայրի սոցիալական կազմում զգալի թիվ են կազմել հայ գյուղացիները։ Նրանք հաստատվել են գլխավորապես քաղաքամերձ վայրերում և գյուղատնտեսական նոր գործիքների ու արհեստական պարարտացման կիրառումով օրինակ ծառայել տեղացիներին։

Եթովպիա են եկել նաև ճարտարապետներ, բժիշկներ, դեղագործներ, ատամնաբույժներ և այլ մասնագետներ։ Քսան տարուց ավելի երկրի գլխավոր ճարտարապետն է եղել Գրիգոր Հովյանը՝ Ֆրանսիայում, Բրազիլիայում և այլուր հայտնի մի մասնագետ։ Նրա կառուցած բազմաթիվ շենքերը, հատկապես առողջապահական հիմնարկները, մինչև այժմ էլ աչքի են ընկնում Եթովպիայի զանազան քաղաքներում։ Ավելի ուշ շրջանում ճանաչված ճարտարապետներից է եղել Մինաս Խերպիկյանը։ Նրա նախագծերով Եթովպիայի զանազան վայրերում կառուցվել են բազմաթիվ ճանապարհներ, կամուրջներ և այլ շինություններ։

Կարելի է նշել ոչ միայն հայ գյուղացիների, արհեստավորների և մասնագետների կարևոր գործունեությունը Եթովպիայի տնտեսական կյանքում, այլև կուլտուրական այն խոշոր դերը, որ կատարել են նրանք այդ երկրում։

Օգտվելով պետության առանձնաշնորհումից, հայ վաճառականներն իրենց ձեռքն են վերցրել երկրի ներքին և արտաքին առևտուրը։ Քիչ չեն եղել նաև այնպիսի եթովպահայեր, որոնք մեծ ձեռներեցություն ցուցաբերելով, առաջ են քաշվել պետական պատասխանատու պաշտոնների։ Բավական է ասել, որ այնպիսի մի կարևոր պաշտոն, ինչպիսին արքունի գանձարանի վարչությունն է, գտնվել է հայերի ձեռքում։ Գանձապետերի պաշտոնում իրար են հաջորդել Սելիֆ Ուստան, Հովհաննես Թովմաճյանը, Պողոս Թովմաճյանը և ուրիշներ։ XIX դարում եթովպական արքունիքում մեծ հեղինակություն և իրավունք ունեցող պաշտոնյաներից են եղել Եղիա Ենովքը՝ արքունիքի թարգմանիչը և կայսեր խորհրդականը, Պետրոսը՝ եթովպական դեսպանը մի շարք երկրներում և ուրիշներ։ XIX դարի կեսերին Եթովպիայում գործել են նաև հայկական առևտրական տներ, որոնք իրենց մասնաճյուղերն են ունեցել ասիական և եվրոպական մի շարք քաղաքներում (Փարիզում, Լոնդոնում, Պոլսում և այլն)։

Հայ առևտրականները ներմուծում էին երկաթեղեն, զենք, զինամթերք, մետաքս, կապար, բամբակեղեն, ապակեղեն, ներկեր, զանազան մեքենաներ, գործիքներ և այլն։ Արտահանում էին կաշի, մորթեղեն, սուրճ և այլ ապրանքներ։

Հատկապես մեծ էր հայ առևտրականների դերը զենքի և ռազմամթերքի

---

189 Հ. Բաքաքաճ, նշվ. աշխ., էջ 268—269։

մատակարարման ասպարեզում։ Տարիներ շարունակ հայերի ձեռքում էր գտնվում եթովպական բանակին զենքեր մատակարարելու գործը։ Սկզբնական շրջանում հայ վաճառականները ներմուծված զենքը, ռազմամթերքը և մյուս ապրանքները փոխանակում էին փղոսկրի, մեղրամոմի և տեղական այլ ապրանքների հետ։

Երբ որոշ դժվարություններ առաջացան Ադիս-Աբեբայի հաղորդակցության և մատակարարման գործում, հայ վաճառականներն առաջիններից եղան, որ կարողացան հմտորեն կազմակերպել ապրանքների փոխադրումը Ադիս-Աբեբա-Դերեդավա-Ջիբութի գծով՝ անխափան կապ ստեղծելով երկրի կենտրոնի, Կարմիր ծովի և Ադենի ծոցի միջև։ Այս ձեռներեցությունն է՛լ ավելի բարձրացրեց նրանց հեղինակությունը տեղացիների և կառավարության աչքում։

Անձնվեր և հավատարիմ ծառայության համար բազմաթիվ հայեր արժանացել են կառավարական բարձր շքանշանների և պարգևների։ Եղել են հայեր, որոնք անգամ պարգևատրվել են «Սողոմոնյան շքանշանով», մի պարգև, որը թագավորական տան անդամներին էին միայն շնորհում[190]։

ՍԻՐԻԱ ԵՎ ԼԻԲԱՆԱՆ։ Սիրիայի և Լիբանանի գաղթավայրերը XIX դարում զգալիորեն նվազեցին։ Այդ բացատրվում է հպատակ ժողովուրդների նկատմամբ Թուրքական կառավարության վարած կեղեքիչ քաղաքականությամբ։ Բացի այդ, Սիրիայի և Լիբանանի վրայով երբեմնի անցնող առևտրական ցամաքային ուղին զիջում էր իր տեղը օվկիանոսային ուղուն, որը բացասաբար էր անդրադարձել Սիրիայի և Լիբանանի տնտեսական կյանքի վրա։ Ստեղծված այս պայմաններում սիրիահայության և լիբանանահայության որոշ մասը, գլխավորապես առևտրականներ, գործունեության նպաստավոր ասպարեզ փնտրելու համար, տեղափոխվում են Արևմտյան Եվրոպայի, Ռուսաստանի, Հնդկաստանի և այլ երկրների արդյունաբերական կենտրոնները։ Սիրիայի և Լիբանանի հայկական գաղթօջախներից ամենախոշորը շարունակում էր մնալ Հալեպը, թեև այնտեղ երբեմնի գոյություն ունեցող ստվարաթիվ համայնքից ապրում էր ընդամենը 500 ընտանիք՝ 2000—3000 բնակչությամբ։

XIX դարում Հալեպի հայ բնակչության սոցիալական պատկերը զգալի չափով փոխվել էր։ Այնտեղ այլևս չկային նախկին մեծահարուստ խոջաներ, որոնք իշխում էին Միջին Արևելքի տարանցիկ ուղում, այլ մնացել էին տեղական շուկայի հետ կապված մանր առևտրականներ։ Աստվածատուր Տեր-Հովհաննիսյանը, որը 1869 թ. եղել է Հալեպում, իր ուղեգրության մեջ ցավով նշում է, որ հայ առևտրականների գործունեության շրջանակները բավականաչափ սահմանափակված են[191]։

Հալեպի հայ բնակչության սոցիալական կազմում մեծ էր արհեստավորների, մասնավորապես ջուլհակների թիվը, որոնք ունեին իրենց դազգահները, մետաքսից գործում էին հրաշալի կտորներ և վաճառքի հանում։

---

190 Հ. Բաքաքան, նշվ. աշխ., էջ 215։

191 Ա. Վ. Տէր-Յովհաննիսեան, Կարճ ճանապարհորդութիւն յԱսիա, Թի՛ս «Միոն», 1868, էջ 212։

Ջուլհակության հետ սերտորեն կապված էր ներկարարությունը։ Հալեպում այդ արհեստի լավագույն վարպետները Այնթափի և Մարաշի հայ ներկարարներն էին։ Նրանք բուսական ներկերով էին ներկում մանվածքիղենն ու կտորները. «Հինեն ի վեր,— գրում է Սյուրմեյանը,— Հալեպ հաստատված Այնթափի և Մարաշի հայերուն ընթացիկ արհեստը մնաց մանած ներկելը և կտոր գործելը»[192]։

Հալեպի հայ արհեստավորության մեջ մեծ թիվ էին կազմում նաև դերձակները, կոշկակարները, որմնադիրները և ոսկերիչները։ Տեղական իշխանությունների կողմից հայ դերձակներին էր հանձնարարված բանակի համար հանդերձներ պատրաստելու գործը։ Հայ կոշկակարները ոչխարի, այծի և ուղտի մորթիներից պատրաստում էին դեղին և կարմիր գույնի կիսակոշիկներ, որոնք լայն սպառում ունեին։ Հայ վարպետ-որմնադիրների ձեռքով են պատրաստված ոչ միայն Հալեպի, այլև Բեյրութի և Դամասկոսի աչքի ընկնող կառույցներից շատերը։

Հալեպում ոսկերչությունը, փաստորեն, գտնվել է հայերի ձեռքին. «Հալեպի ամեն ազգի բարձր ընտանիքներու քով,— գրում է Սյուրմեյանը,— տակավին կտեսնվեր հայկական հին ոսկերչության լավագույն նմուշները, ամեն տեսակի զարդեղեններ, մարգարտահուռ և ադամանդակուռ»[193]։

Անտիոքում և նրա մոտիկ գյուղերում ապրում էին շուրջ 5 հազար հայեր։ Հայ գաղթօջախներ են եղել Փայասում, Ալեքսանդրետում, Սուետիայում և Բեյլանում։ Մուսադաղում ապրող հայերը կենտրոնացած էին վեց գյուղերում։ Բացի այդ, հայերը մի շարք գյուղերում ապրել են արաբների և ալաուտների հետ։ Ջեբել Արայում մեծ թվով հայեր ապրել են Քեսաբում և մոտակա հայկական գյուղերում[194]։

Այս վայրերի քաղաքների հայ բնակչության հիմնական զբաղմունքն է եղել արհեստագործությունը և մանր առևտուրը, իսկ գյուղացիները զբաղվել են այգեգործությամբ, շերամապահությամբ և ծխախոտագործությամբ։

Սիրիայի հայկական հնագույն գաղթօջախներից է եղել Լաթաքիան (նախկին Լավոդիկիան)։ Անցյալում այս գաղթօջախը այնքան մեծ էր, որ եպիսկոպոսական թեմ է կազմել, իսկ նոր ժամանակներում փոքր թվով բնակչություն է ունեցել։

Լաթաքիայի մոտակա լեռներում գտնվող մի շարք հայկական գյուղերի բնակչության վիճակը XIX դարի կեսերին անչափ ծանր է եղել։ «Սիրտս ի խոր խոցվեցավ,— գրել է ականատեսներից մեկը,— երբ տեսա զիրենք լեռներու գլուխները ամենախեղճ խրճիթներու ու ծերպերու մեջ պատսպարված՝ հետին աղքատությամբ»[195]։

Լեռնային այս բնակավայրերից ամենամեծը՝ Արամո գյուղը, հանդիսացել է Մուգամիններ կոչվող ֆեոդալական տան կալվածքը։ Հայ գյուղացիները առանց կալվածատիրոջ թույլտվության իրավունք չեն ունեցել տղա կամ

192 Ա. Սյուրմեյան, *Պատմություն Հալեպի հայոց*, հատ. III, էջ 975։

193 *Նույն տեղում*, էջ 975։

194 *A. K. Sanjian*. The Armenian Communities in Syria under Ottoman Dominion Cambridge, 1865, p. 53—56.

195 «Սիոն», 1866, էջ 100։

աղջիկ ամուսնացնել։ Հետագայում Արամո գյուղի մի մասը վաճառվել է ֆրանսիական և ռուսական հյուպատոսներին։ «Ասոնց ամենքն ալ,— գրում է ականատես ճանապարհորդը,— թե քրիստոնյա թե անքրիստոնյա գյուղատերեր, ըստ առաջին սովորության, խեղճ գյուղացու ոսկորները կծծեն և բուրդին հետ մորթին ալ վիրավորելով կխուզեն»[196]։

Խիստ անմխիթար վիճակում էր գտնվում Դամասկոսի հայ գաղթօջախը, որտեղ ապրում էին 3 հազար հայեր։ Այն առանձնապես ծանր հարված ըստացավ 1859 թ., երբ մյուս քրիստոնյաների հետ միասին հայերն էլ ենթարկվեցին կոտորածի։ Հայ բնակչության թիվը գնալով այնքան է նվազել, որ 1866 թ. հասել է 120 հոգու։

Շատ փոքր է եղել հայ բնակչության թիվը Լիբանանում։ Տեղի հայ գաղթավայրին ծանոթ ժամանակակից մի հեղինակ հիշատակում է XIX դարում այս գաղթավայրի մի քանի խղճուկ մնացորդներ՝ ցրված Զմմառի շուրջը (Լիբանանի լեռներում), Ղազիրում, Ջյունիում և Դեյր-էլ-Քամարում[197]։

Հիշատակագիրը, բացի իրենց ազգային ինքնությունը պահպանող հայ ընտանիքներից, թվում է նաև մի շարք ընտանիքներ, որոնք արդեն ձուլվել են մարոնիտների հետ։ Նման հայ ընտանիքներ նա մատնացույց է անում Բեյթ Բիթարում, Բեյթ Զուվեյնում, Բեյթ Մուրադում, Բեյթ Մըրիտում, Բեյթ Գեորգիում և այլ վայրերում։ Հարսուն գյուղում, նշում է հիշատակագիրը, կա հարյուր տնից բաղկացած մի տոհմ, որը հայկական ծագում ունի և կոչվում է «Բեյթ Արմենի»։ Նա Ճյուբեթ Բիշարիում մատնացույց է անում 13—15 հուշարձաններ՝ հայկական արձանագրություններով։

XVIII—XIX դարերում Արևմտյան Հայաստանից և Թուրքիայի հայաշատ կենտրոններից, ճիշտ է, փոքրաթիվ գաղթականներ եկան Սիրիա և Լիբանան, սակայն նրանք ի վիճակի չեղան փոխելու գաղթավայրի պատկերը։ Եկողները Թուրքիայում հալածանքի ենթարկվող հայ կաթոլիկներն էին, որոնք ապաստանելով իրենց դավանակից արաբ կաթոլիկների մոտ, հավաքական ինքնուրույն կյանք չստեղծեցին և, շատ ժամանակ չանցած, կորցրին իրենց ազգային դեմքը։ Հայ կաթոլիկներն ունեին իրենց հոգևոր կենտրոնը։ Դեռևս 1720 թ. Հալեպից չորս վաճառական եղբայրներ՝ Մուրադյան ազգանունով, դիմել էին Լիբանանի մարոնիտների իշխանին և թույլտվություն ստացել Ղոստա գյուղի մոտ կառուցել Քրեյմի Ամենափրկիչ վանքը։ Այստեղ էլ Լիբանանի և Սիրիայի հայ կաթոլիկները հիմնեցին Անտոնյան կոչվող կաթոլիկ միաբանությունը։ Հետագայում, երբ կաթոլիկ բնակչությունը գնալով բազմացավ, հիմնվեց հայ կաթոլիկ կաթողիկոսությունը, որն առանձին կոնդակով հաստատվեց պապի կողմից։ 1749 թ. կառուցվեց Զմմառի նշանավոր վանքը, որը հայ մշակույթի օջախներից մեկը դարձավ։

Սիրիայի և Լիբանանի հայկական գաղթավայրերում բնակչության թիվըն ավելացավ Հայրապետ Տավության կառավարչության շրջանում։ Տավությանը կառավարիչ նշանակվեց հետևյալ իրադրության մեջ. 1860 թ. ֆրանսիական գործակալների հրահրումով արյունոտ ընդհարում եղավ արաբ

196 Նույն տեղում, էջ 101։
197 Ս. Վարդապետյան, Հայերը Լիբանանի մեջ, Բեյրութ, 1951, էջ 258։

մահմեդական դրուզների և արաբ քրիստոնյաների (մարոնիտների) միջև, իսկ Դամասկոսում տեղի ունեցավ քրիստոնյաների ջարդ։ Ֆրանսիական կառավարությունը, քրիստոնյաներին պաշտպանելու պատրվակով, զորք մտցրեց Լիբանան և իր ներկայացուցիչը նշանակեց այնտեղ։ 1861 թ. Ռուսաստանը, Ֆրանսիան, Անգլիան, Ավստրիան, Պրուսիան և Թուրքիան համաձայնություն եկան Լիբանանի նոր ստատուտի վերաբերյալ։ Լիբանանը հայտարարվեց ինքնավար մարզ և որոշվեց քրիստոնյա կառավարիչ նշանակել այնտեղ։ Հարմար թեկնածու համարվեց Տավությանը, որը և կառավարեց մինչև 1868 թվականը[198]։

Տավությանի կառավարչության շրջանում մեղմացան ազգակից, բայց այլակրոն արաբների եղբայրասպան ընդհարումները, տիրեց տևական խաղաղություն, որը նպաստեց Սիրիայի և Լիբանանի տնտեսական կյանքի աշխուժացմանը։ Թուրքիայից որոշ թվով հայ ընտանիքներ եկան և բնակություն հաստատեցին Սիրիայում ու Լիբանանում։

Սիրիայի հայ գաղթավայրում մտավոր նոր շարժման նախակարապետը Հովհաննես Քյուրքչյանն էր։ Նա կազմել է ծրագիր, գրել է հոդվածներ և նպաստել այդ գաղթավայրի հայկական համայնքներում լուսավորության տարածմանը։ Նա իր միջոցներով 1860 թ. Հալեպում բաց է արել մասնավոր վարժարան՝ հայ աղջիկների համար։ Քյուրքչյանը դպրոցների նյութական միջոցներ ստեղծելու համար առաջարկել է Հալեպ քաղաքում կազմակերպել հայկական «Արամյան առևտրական ընկերություն»։ Այդ ընկերությունը պետք է ունենար կես միլիոն ֆրանկ դրամագլուխ՝ կազմված 500-ական բաժնեվճարներից։ Դրամագլուխը պետք է տրվեր գործունյա առևտրականներին՝ շահեցման, իսկ ստացած շահույթը տրամադրել հայ երեխաների դաստիարակությանը։ Նրա ծրագրով անհրաժեշտ էր միջնակարգ դպրոց բացել Կիլիկիայում, որն ավարտած հայ պատանիները պետք է ուղարկվեին Արևմտյան Եվրոպայի բարձրագույն դպրոցներում մասնագիտական կրթություն ստանալու։ Բարձրագույն կրթություն ստացած երիտասարդները պետք է վերադառնային հայրենի երկիր և աշխատեին արհեստագործական դպրոցներում։

Սիրիայի և Լիբանանի հայազգի արաբական գրողներն ու գիտնականները նշանակալից դեր են կատարել արաբական գրականության և գիտության զարգացման բնագավառում։ Արաբ ժողովրդից հարգված և մեծարված հայ գործիչներից է եղել Բեյրութի բժշկական կոլեջի հիմնադիր Հովհաննես Բժիշկը[199] (1826—1908), որը երկար տարիներ զբաղվել է երիտասարդ կադրերի դաստիարակությամբ։ Հովհաննեսը գրել է բժշկական հանրամատչելի բազմաթիվ աշխատություններ։ Նրա «Տան բժիշկ» աշխատությունը շատ ընտանիքների սեղանի գիրքն է եղել։ Արաբ ժողովուրդը Հովհաննես Բժշկի հիշատակը մեծարելու նպատակով Բեյրութի փողոցներից մեկը կոչել է նրա

198 Հ. Ե. Պողոսյան, Կարապետ Արթին փաշա Տավության կուսակալ և ընդհանուր կառավարիչ Լիբանանի (տե՛ս «Հանդէս ամսօրեայ», 1949, էջ 75)։

199 Այս և մյուս հեղինակների մասին տե՛ս Ս. Վարժապետյանի «Հայերը Լիբանանի մեջ» աշխատությունը։

անունով, Նրա արձանը կանգնեցված է այն քոլեջում, ուր նա երկար տարիներ աշխատել է։

XIX դարի հեղինակավոր հրապարակախոսներից է Հովհաննեսի որդի Գրիգորը։ Նա իր՝ 1856 թ. անգլերեն հրատարակած «Սիրիան և սիրիացիները» աշխատության մեջ գովերգել է Լիբանանի վաղեմի փառքը և կոչ արել թոթափելու Թուրքական լուծը։

Լիբանանի աչքի ընկնող պատմաբան-հրապարակախոսներից է Իսկանդար Աբգարիոսը։ Արաբական մատենագրության մեջ նա հայտնի է Իսկենդեր աղա Աբգարիոս բին- Եաղուպ աղա-բին-Աբգար էլ Էրմենի անունով։ Իսկանդարն ավելի քան երեսուն տարի ծառայել է արաբական գրականությանը և հրապարակել բազմաթիվ աշխատություններ։ Արաբական գրականության պատմության մեջ մեծ տեղ և բարձր գնահատական է տրվում Աբգարիոսի ստեղծագործություններին։ Նրա աշխատություններից «Սարսափների գիրք»-ը թարգմանվել է հայերեն։

Արաբական հայտնի բանասեր-լեզվաբան գիտնականներից է Յոհաննա Աբգարիոսը (1832—1886)։ Նա ունի բազմաթիվ աշխատություններ, որոնց գլուխգործոցը՝ ընդարձակ անգլերեն-արաբերեն բառարանն է՝ հրատարակված 1887 թվականին։ Աբգարիոսի բառարանը Մերձավոր Արևելքում իր տեսակի մեջ համարվում է առաջինը։

Աչքի ընկնող բանաստեղծներից է հայազգի Էդիբ Իսհակը (1856—1885), որը արաբ նոր գրականության ստեղծողներից մեկն է։ Փոքր հասակից նա սկսել է գրել բանաստեղծություններ և այնուհետև լայն ճանաչում է գտել արաբ գրականության մեջ։ Ընտրվել է «Ջահրեթ էլ էդեպ» («Գրականության ծաղիկը») ընկերության անդամ, որի մեջ մտնելու իրավունք են ունեցել միայն արաբական բանաստեղծության մեջ մեծ հռչակի արժանացած գրողները։ Որոշ ժամանակ նա եղել է այդ միության ատենապետը։ Էդիբը հեղինակ է բազմաթիվ արձակ և չափածո երկերի։ Նա արդի աշխարհաբար արաբերենի հիմնադիրներից մեկն է։ Տաղանդավոր բանաստեղծի հիշատակը հավերժացնելու համար Բեյրութի փողոցներից մեկը անվանվել է նրա անունով։

Լիբանանի աչքի ընկնող հայ ճարտարապետներից է Բիշարա Միհինդեզը (1841—1925), որի անվան հետ է կապված Բեյրութ-Դամասկոս խճուղու կառուցումը։ Նրա նախագծով է կառուցված Բեյրութի արվեստների և արհեստների վարժարանը, Բուրջի հրապարակի վրա գտնվող Փոքր Սերայը և այլ շենքեր։

Այսպիսով, հայկական գաղթօջախները կարևոր դեր են խաղացել աշխարհի տարբեր ժողովուրդների հետ մշակութային և տնտեսական կապերի ամրապնդման, ինչպես նաև Հայաստանում լուսավորություն տարածելու, ժողովրդին ազատագրական պայքարի նախապատրաստելու գործում։

ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

# ԼՈՒՍԱՎՈՐՈՒԹՅՈՒՆ, ԳԻՏՈՒԹՅՈՒՆ, ՄԱՄՈՒԼ

## 1. ԸՆԴՀԱՆՈՒՐ ԱԿՆԱՐԿ ՀԱՅ ՄՇԱԿՈՒՅԹԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ

Թուրք-պարսկական տիրապետության ժամանակաշրջանում Հայաստանի ազգաբնակչությունը զրկված էր տնտեսական ու քաղաքական այն պայմաններից, որոնք անհրաժեշտ էին մշակույթի զարգացման համար։ Այդ իսկ առումով էլ պատահական չէ ամենևին, որ XVIII դարի վերջին տասնամյակներին և XIX դարի արշալույսին մտավոր աշխուժացում է նկատվում Մայր հայրենիքից հեռու հայ գաղութներում, ինչպես նաև Ռուսաստանի և Անդրկովկասի հայաբնակ վայրերում։

Պատմության նոր ժամանակաշրջանի հովերով տոգորված հայ մտավորականության նախաձեռնած շարժումն ուներ քաղաքական բովանդակություն և լուսավորության գործը հռչակում էր իբրև ժողովրդի քաղաքական ինքնագիտակցության ձևավորման լավագույն միջոց։ Մշակութային այդ զարթոնքը նպատակ էր հետապնդում մշակել համազգային իդեալներ և դրանք ծառայեցնել տարբեր երկրներում ապրող հայկական բեկորների մտավոր ու քաղաքական մերձեցմանը, ազգի առաջավոր ուժերի համախմբմանը։

Լուսավորության տարածումը, օտարերկրյա տիրապետողների լծի տակ դարեր շարունակ ճնշված ժողովրդին գրին ու գրականությանը հաղորդակից անելը դառնում էր հայ գործիչների առաջնահերթ խնդիրներից մեկը։ Սրանք նպատակներ էին, որոնք XIX դարի առաջին յոթ տասնամյակների ընթացքում ուղղություն էին տալիս հայ ժողովրդի հոգսերով ապրող և նրա ազգային շահերին հետամուտ մտավորականներին։

Տարբեր գաղթավայրերի փոխադարձ կապերի գործում խոշոր դեր էր կատարում տպագիր խոսքը։ XIX դարի առաջին քառորդում հայկական տպարաններ են բացվում Մադրասում, Թիֆլիսում, Կ. Պոլսում, Զմյուռնիայում, Մոսկվայում։ Տպագրվում են հարյուրավոր գրքեր, տասնյակ պարբերականներ։ Տպագիր այս հարուստ գրականության առկայությամբ էլ պայմանավորվում էր գրավաճառանոցների ստեղծումը։ Կ. Պոլսում հիմնվում է Քիթապճի Մարգարի հայտնի գրատունը, Կալկաթայում՝ Մարդասիրաց ճեմարանի գրադարանը, Թիֆլիսում՝ էնֆիաճյանների տպարան-գրավաճառանոցը։ Գրադարաններ են ստեղծվում Մոսկվայի Լազարյան ճեմարանին, Թիֆլիսի Ներսիսյան դպրոցին,

Աստրախանի Աղաբաբյան դպրոցին, Ջմյուռնիայի Մեսրոպյան վարժարանին, Պոլսի Սկյուտարի ճեմարանին կից։ Այնտեղ կենտրոնանում են մինչ այդ Ամստերդամում, Վենետիկում, Պոլսում, Կալկաթայում, Մադրասում և այլ վայրերում տպագրված հայերեն գրքեր, ձեռագիր մատյաններ, օտար լեզուներով գեղարվեստական, պատմագրական և գիտական երկեր։ Օրեցօր բազմացող հայկական դպրոցներում, լիներ դա հեռավոր Հնդկաստանում թե Ջմյուռնիայում, Թիֆլիսում թե Մոսկվայում, աշակերտները մայրենի լեզվին զուգահեռ սովորում էին օտար լեզուներ։

Անդրկովկասի միացումը Ռուսաստանին բարերար ազդեցություն ունեցավ հայ ժողովրդի մտավոր կյանքի վրա։ Եթե մինչ այդ իշխողը կղերական գաղափարախոսությունն էր, ապա Ռուսաստանին միանալուց հետո այս երկրամասում ապրող ժողովուրդների մտավոր զարգացման անհամեմատ լայն հեռանկարներ ստեղծվեցին։ Ռուսաստանից Կովկաս էին թափանցում առաջավոր գաղափարներ։

Դրանով պետք է բացատրել տեղացիների բուռն հետաքրքրությունը դեպի ռուսաց լեզուն ու գրականությունը։ 1820—1830-ական թվականներին կատարվում են առաջին թարգմանությունները Պուշկինից, Լերմոնտովից, Կռիլովից։ 1843 թ. Լազարյան ճեմարանի տպարանում լույս է տեսնում Ժուկովսկու, Պուշկինի, Լերմոնտովի, Բարյատինսկու և Գնեդիչի երկերի հայերեն թարգմանությունների ժողովածուն։

Տպագրվում են ռուս-հայ բառարաններ, լեզվական ձեռնարկներ, որոնք հեշտացնում են հաղորդակցությունը ռուսական գրականության հետ։ Դարաշրջանի սոցիալ-տնտեսական ու քաղաքական պայմանները, ռուսական առաջավոր մտքի ներթափանցումը հայ իրականություն՝ թուլացնում էին կղերական ազդեցությունը։

Նոր դարի առաջին տասնամյակներից Թիֆլիսը դառնում է ինչպես հայ մշակույթի այլ ճյուղերի, այնպես էլ տպագրական արվեստի կենտրոն։ 1823 թ. գործում էր Ներսիսյան դպրոցի տպարանը, որտեղ տպագրվեցին մի քանի գրքեր, այդ թվում նույն դպրոցի աշակերտների գրական ստեղծագործությունների «Երախայրիք» ժողովածուն։ Հետագայում, 1858 թ., այնտեղ տըպվեց Խ. Աբովյանի «Վերք Հայաստանի» վեպը։

Իր վայելուչ տառերով, մաքուր տպագրությամբ ավելի մեծ համբավ է ձեռք բերում Համբարձում Էնֆիաճյանցի տպարանը, որտեղ տպագրվում են Խ. Աբովյանի «Նախաշավիղը», «Պարապ վախտի խաղալիքը», Գ. Սունդուկյանի, Ղ. Աղայանի, Միք. Պատկանյանի մի շարք գրքերը և բազմաթիվ պարբերականներ («Կռունկ Հայոց աշխարհին», «Վաճառական», «Հայկական աշխարհ» և այլն)[1]։

XIX դարի սկզբներին հայ մշակույթի կարևոր օջախներից մի քանիսը գտնվում էին հնդկական գաղութում, հատկապես Մադրաս, Կալկաթա և մի շարք այլ քաղաքներում, որտեղ լույս էին տեսնում պարբերականներ, հիմնըվում տպարաններ, կրթական, մշակույթի կազմակերպություններ։ Ի տարբերություն արևելահայ իրականության, որտեղ հայ մշակույթը զարգանում էր

---

1 Մանրամասն թվարկումը տե՛ս Թեոդիկ, Տիպ ու տառ, Կ. Պոլիս, 1912, էջ 181։

ռուսական առաջավոր գրականության ու մտքի ազդեցությամբ, հնդկահայ գաղութում, որտեղ տիրապետողը անգլիական կապիտալն էր, նկատելի էր արևմտաեվրոպական մտքի ազդեցությունը։ Գաղութում առաջանում են եվրոպական լեզուներին, մասնավորապես անգլերենին հմուտ գործիչներ, որոնք իրենց ձեռքն են վերցնում լուսավորական կրթական աշխատանքը, գրում են ինքնուրույն երկեր և կատարում թարգմանություններ։

Հնդկահայ գործիչները թարգմանություններ կատարում էին որոշակի ծրագրով։ Թարգմանվում էին այնպիսի երկեր, որոնք կարող էին արձագանքել ազատագրական պայքարին։ Այսպիսին էր Վոլտերի «Հուլիոս Կեսարի» հայերեն թարգմանությունը, որը լույս տեսավ 1818 թ. Մադրասում։

Գրական այս շարժման մեջ որոշակի դեր էր կատարում բազմակողմանի զարգացած մի գործիչ՝ Մարտիրոս Մկրտչյանը։ Բացի խմբագրական-հրապարակախոսական գործունեությունից, նա հանդես է եկել որպես բանաստեղծ, դրամատուրգ։ Եվրոպական գրականությանը, առանձնապես Շեքսպիրի երկերին քաջածանոթ այս անձնավորությանն է վերագրվում հայ առաջին կենցաղային թեմայով կատակերգությունը՝ «Խտրադիմա դժրողությանը», գրված Նոր Ջուղայի բարբառով, տպագրված Կալկաթայում 1821 թվականին։ Այն արտացոլում է անգլիական գաղութարարների կենցաղի ու սովորությունների ներթափանցումը հնդկահայ քաղքենիական միջավայրը և դրանով էլ ճանաչողական մեծ արժեք ունի։ Կատակերգության վրա նկատելի է ինչպես շեքսպիրյան, այնպես էլ մոլիերյան դրամատուրգիայի ազդեցությունը։

Դարասկզբին բուռն ծաղկում ապրող հնդկահայ մշակույթը քսանական թվականների սկզբներից թուլանում է։ 1821—1845 թթ. չենք նկատում կրթական, լուսավորական այն թափը, որ առկա էր նախորդ շրջանում։ Չի հրատարակվում և ոչ մի պարբերական։ Քառասնական թվականների կեսերից Կալկաթայում նորից է աշխուժանում մշակույթի զարգացումը, շարունակվում մոտ մեկ տասնամյակ։ Մտավոր այս շարժման ոգեշնչողն ու ընթացք տվողը Մ. Թաղիադյանն էր։ Նրա եռանդուն մասնակցությամբ Կալկաթայում ստեղծվում է «Արարատյան ընկերությունը», որը հիմնադրում է Ս. Սանդըխտյան իգական դպրոցը, հիմնում տպարան և հրատարակում «Ազգասեր» շաբաթաթերթը՝ Մ. Թաղիադյանի խմբագրությամբ։

«Արարատյան» ընկերության տպարանում լույս են տեսնում մի շարք գրքեր, մեծ մասամբ Թաղիադյանի ստեղծագործությունները, ինչպես՝ «Վէպ Վարդգէսի» (1846), «Վէպ Վարսենկան» (1847), «Սոս և Սոնդիպի» (1847), «Ճանապարհորդութիւն ի Հայս», «Թուղթ Թաղիադեանց» (1847) և այլն։

Հայ մշակույթի խոշորագույն կենտրոններից մեկը շարունակում էր մնալ Վենետիկի Մխիթարյանների ս. Ղազար վանքը։ Թեև այն գտնվում էր երկրից դուրս, կտրված էր հայրենի հողից, բայց գործունեության ասպարեզը հայ կյանքն էր։ Նրանք իրենց հրատարակություններով թափանցում էին հայ իրականության բազմաթիվ խորշերը՝ հեռավոր Հնդկաստանից մինչև Թուրքիա, Կովկասից մինչև Պարսկաստան։

Նա մեծապես նպաստել է հայ մշակույթի զարգացմանը։ Մխիթարյան միաբանությունը դարասկիզբը նշանավորում է «Աշխարհագրութիւն չորից

մասանց աշխարհի» իրկասիրության հրատարակությամբ, բաղկացած 11 հատորներից, բոլորն էլ շքեղ, ոսկեզօծ ու կաշեկազմ, ստեղծված միաբանության անդամներ Ստեփանոս Գյուվեր Ագոնցի և Ղուկաս Ինճիճյանի ջանքերով։ Մոտ 8000 էջից բաղկացած այդ աշխատության մեջ մանրամասն նկարագրվում են Ասիայի, Եվրոպայի, Աֆրիկայի և Ամերիկայի բոլոր երկրները, նրանց աշխարհագրական դիրքը, բուսականությունը, վաճառականությունը, տեղագրությունը...

Հիշյալ երկասիրությունը հարուստ տվյալներ է պարունակում Հայաստանի և բազմաթիվ հայկական գաղթավայրերի վերաբերյալ։ Նա կարևոր աղբյուրներից մեկն է եղել եվրոպական հայագետների համար։

Մխիթարյանների գործունեության հետ են կապված բազմաթիվ հայ պատմիչների երկերի հրատարակությունները (Ագաթանգեղոս, Եղիշե, Եզնիկ, Փավստոս Բուզանդ, Մովսես Խորենացի, Ղազար Փարպեցի և ուրիշներ), ինչպես և հունա-հռոմեական մատենագրության լավագույն նմուշների թարգմանությունները, այդ թվում Պլուտարքոսի «Զուգակշիռների» վեց հատորները, Քսենոֆոնի «Կյուրոսի խրատու պատմութիւնքը», Մարկոս Ավրելիոսի ճառերը, Հոմերոսի «Իլիականն» ու «Ոդիսականը» և այլն։

Այդ տարիներին էլ, անշուշտ, Մխիթարյանները հրատարակել են «վարք սրբոցներ» ու «մեկնաբանական» գրքեր, նաև՝ Աստվածաշունչը, բայց գրական, բանասիրական, գիտական արժեք ներկայացնող գրքերի ծավալը համեմատել անգամ դժվար է նախընթաց հարյուրամյակում կատարվածի հետ[2]։

Մխիթարյան միաբանությունը Վենետիկի ս. Ղազար կղզուց բացի ուներ մի այլ ճյուղավորում, որը գործում էր նախ Տրիեստ քաղաքում, ապա Վիեննայում։ Տրիեստյան շրջանը (1775—1810) բնորոշ է բացառապես կրոնաբարոյական, դավանաբանական գրքերի հրատարակությամբ (մեծ մասամբ հայատառ թուրքերեն)։ 1811 թվականին Տրիեստի Մխիթարյանները տեղափոխվում են Վիեննա, ստեղծում Վիեննայի Մխիթարյան միաբանությունը, որն ահա ավելի քան 150 տարի գործում է անխափան, զարկ տալով հատկապես հայագիտությանը։ 1847—63 թթ. այդ միաբանությունը հրատարակել է մշակված հայերենով «Եվրոպա» շաբաթաթերթը։

Հայ իրականության մեջ մշակութային կարևորագույն կենտրոն էր Էջմիածնի վանքը, որտեղ հավաքվում էին հին ձեռագրեր, գործում էր ժառանգավորաց դպրոցը։ Վանքը հաճախ է ենթարկվել ասպատակությունների, թալանի ու ավերի։ Նապոլեոնի դեսպան գեներալ Գարդանը վկայում է, որ 1805 թ. ռուս-պարսկական պատերազմի ժամանակ վանքի մատենադարանը թալանի է ենթարկվել, իսկ տպարանի տառերից գնդակներ են ձուլվել[3]։ Անգլիացի Ջեյմս Մորիերի ուղեգրություններում կա ակնարկ, թե Էջմիածնի վանքի գրքերով տաքացվել են բաղնիքներ։ Չնայած ներքին և արտաքին այս աննպաստ պայմաններին, Էջմիածնում կենտրոնանում են մեծ քանակությամբ ձեռագրեր, ա-

---

2 Մխիթարյան Միաբանության մշակութային գործունեության մասին մանրամասն տե՛ս Հ. Բ. Սարգսյան, Երկհարյուրամյա գրական գործունեություն և նշանավոր գործիչներ Մխիթարյան միաբանության, Վենետիկ, 1905։

3 Հ. Հակոբյան, Ուղեգրություններ, հատ. Ձ, էջ 101։

տիճանաբար ցուցակագրվում են, ուսումնասիրվում։ 1837 թ. Հովհ. վարդապետ Շահխաթունյանը կազմում է 312 կարևոր ձեռագրերի առաջին ցուցակը, որը հայագետ Բրոսեի կողմից թարգմանվում է ու հրատարակվում ֆրանսերեն և ռուսերեն լեզուներով (1840)։ Նույն թվականին Դանիել վարդապետ Շահնազարյանը և Անդրեաս վարդապետ Կոստանդնուպոլսեցին կազմում են ավելի ընդարձակ մի ցուցակ (2340 ձեռագրերի), որը հետագայում, 1863 թ. հրատարակվում է Հակոբ Կարենյանի կողմից և հրատարակչի անունով կոչվում Կարենյան ցուցակ։

Էջմիածնի տպարանում գրքեր էին տպագրվում դեռևս XVIII դարի վերջերից։ Որոշ ընդմիջումներով տպարանը շարունակել է իր գոյությունը և ավելի աշխուժություն ապրել 1860-ական թվականների կեսերից, երբ Գևորգ Դ կաթողիկոսը վերակազմում է այն, ստեղծում ձուլարան և 1868 թ. մայիսամսից հրատարակում «Արարատ» պաշտոնաթերթը՝ Աբել եպիսկոպոս Մխիթարյանի խմբագրությամբ։

Արևմտյան Հայաստանում գործում էին Վարագա վանքը, Մուշի սուրբ Կարապետ վանքը և այլն, որոնք նույնպես հավաքում էին ձեռագրեր, կատարում մտավոր աշխատանք։

Հայկական վանքերից հնագույններից և մեծերից էր Երուսաղեմի ս. Հակոբյանց վանքը, որտեղ դարերի ընթացքում կուտակվել էր ձեռագրական հարուստ ֆոնդ։ Վանքն ուներ բավականաչափ մեծ միաբանություն, բայց կատարում էր մտավոր աննշան դեր։ Այդ վանքում նույնպես տպարան է բացվում 1830-ական թվականներին։ Առաջին երկու տասնամյակներում տպագրվում են բացառապես կրոնական գրքեր։ Միայն 1850-ական թվականների կեսերից են երևում պատմա-բանասիրական, մատենագրական երկեր՝ «Ստորագրություն Երուսաղեմի», «Գրիգոր Նարեկացի», «Միխայիլ Ասորի», «Մատթեոս Ուռհայեցի» և այլն։

Տնտեսական, քաղաքական ուրույն պայմանների մեջ էին գտնվում Արևմտյան Հայաստանի գավառները, ուր իշխողը անգիր բանահյուսությունն էր, ժողովրդական երգն ու նվագը, հեքիաթն ու խաղը, որոնք կազմում էին ճնշվող ու կեղեքվող ժողովրդի հոգեկան սփոփանքը, զվարճության միջոցը։

Դարասկզբից Կ. Պոլսում լայն գործունեություն է ծավալում Արապյան եղբայրների տպարանը։ Արապյան եղբայրներից Պողոսը Կ. Պոլսում աշխատում է տպագրիչ հոր մոտ և, աստիճանաբար հմտանալով տպագրական գործում, հիմնում է ժամանակի առաջնակարգ տպարաններից մեկը, կատարելագործում թե՛ հայերեն և թե՛ թուրքերեն տպագրական տառերը, անգամ հրավիրվում է վրաց Հերակլ թագավորի կողմից՝ Թիֆլիսում նման մի տպարան ստեղծելու առաջարկությամբ։ Արապյանների Կ. Պոլսի տպարանում տպագրվում են հայ հին մատենագրության մի շարք նմուշներ։ «Նարեկը» այդ տպարանում 1807—1852 թթ. լույս է տեսել յոթ անգամ։ Այստեղ են տպագրվել Ագաթանգեղոսի, Թովմա Արծրունու երկերը, Վարդան Այգեկցու առակները, մի շարք տաղարաններ, լեզվաբանական գրքեր, բառարաններ, բժշկարաններ, այդ թվում Միքայել Ռեստենի «Բժշկարանը», Հովհաննես Վանանդեցու «Արփիական Հայաստան» չափածո ստեղծագործությունը, Գր. Փեշտիմալճյանի

«Բառգիրք հայկազեան լեզուի» բառարանը, ինչպես և պոլսահայ մի շարք պարբերականներ («Ազդարար Բյուզանդյան», «Սուրհանդակ Բյուզանդյան», «Մեղու», «Ջվարճախոս» և այլն)[4]։

1830-ական թվականների վերջերից ասպարեզ է գալիս հայտնի տպարանատեր, հայերեն և թուրքերեն տառատեսակների ստեղծող Հովհաննես Մյուհենտիսյանը։ Մյուհենտիսյանի «գործարանը», ինչպես անվանում էին այն ժամանակ, եղել է ժամանակի ամենակատարելագործված տպարանը ամբողջ Մերձավոր Արևելքում։ Նա է պատրաստել թուրքական թղթադրամների բազմաթիվ տեսակների կաղապարները։ Մյուհենտիսյանն ու Ճ. Արամյանը խոշոր դեր են կատարել տպագրական արվեստի զարգացման, տառատեսակների ստեղծման ու բարեփոխման գործում։ Արամյան տպագրական տառերը օգտագործվում են մինչև այժմ և հայտնի են ստեղծողի անունով։

1812 թվականից մինչև 1860-ական թվականների կեսերը Պոլսում ստեղծվում են հարյուրից ավելի ընկերություններ[5]։ 1812 թ. ստեղծված Արշարունյաց ընկերությունը հոգացել է «Եղանակ Բյուզանդյանի» և «Դիտակ Բյուզանդյանի» ծախքերը։ Ընկերությունների ճնշող մեծամասնությունը ստեղծվել է երիտասարդության ջանքերով։ Այդպիսիք էին, օրինակ, «Ուսումնական ընկերությունը», «Հայկական թանգարանը», «Նարեկյան ընկերությունը», «Վերածնություն ընկերությունը» և այլն։ Սրանք բոլորն էլ նպատակ են ունեցել օժանդակել մատաղ սերնդի դաստիարակությանը, գրենական պիտույքներ, դասագրքեր հայթայթել դպրոցներին։ Շոշափելի դեր են կատարել առանձին դպրոցներին կից ստեղծված ընկերությունները, ինչպես Սամաթիա թաղամասի Սահակյան դպրոցն ավարտած երիտասարդներից կազմված «Սահակյան սանուց միությունը», որ տասնամյակներ շարունակ պահպանել է թաղամասի հայկական վարժարանի ծախսի մի մասը։ 1851—53 թթ. հրատարակվել է «Բուրաստան Սահակյան վարժարանի» աշխարհաբար հանդեսը. հետագայում միությունը ունեցել է իր թատերախումբը, տվել ներկայացումներ։ Նույնպիսի դեր է կատարել, բայց ավելի կարճ կյանք ունեցել Սկյուտարի ճեմարանին օժանդակող ընկերությունը, հիմնադրված 1846 թվականին, իսկ Պալաթ թաղամասում հիմնված Խորենյան ընկերությունը իր գոյությունը պահպանել է մոտ հիսուն տարի, մինչև 1890-ական թվականների սկզբները և օգնել ոչ միայն թաղի դպրոցին՝ 1866 թ. կառուցելով հատուկ շենք, այլև ծավալել է լուսավորական գործունեություն, կազմակերպել դասախոսություններ, զեկուցումներ[6]։

Աստիճանաբար հիմնադրվում են այնպիսի ընկերություններ, որոնք նպատակ են դնում օժանդակել գավառահայերի լուսավորությանը։ Դրանցից էր 1851 թ. ստեղծված Սենեքերիմյան ընկերությունը։ Այն գործել է կես դար, նպատակ ունենալով դպրոցներ բաց անել Սեբաստիա քաղաքում և նրա շըր-

---

4 Թեոդիկ, Տիպ ու տառ, էջ 65—71։

5 Հ. Եփրեմ Պողոսյան, Պատմություն հայ մշակութային ընկերություններու, «Հանդես ամսօրյա», 1951—1952 և հետ.։ Տե՛ս նաև Ա. Ալպոյաճյան, Պոլսո հայ ընկերությունները, «Գաղութահայ տարեգիրք», Ա, Բ և Գ տարիներ, Պուքրեշ, 1939—1941։

6 Մանրամասն տե՛ս Ե. Պողոսյան, նշվ. աշխ.։

ջակա գյուղերում։ 1880 թ. նրա հսկողության և հովանավորության տակ գըտնըվել է 13 դպրոց։ Ընկերություններ են հիմնում նաև գավառից Պոլիս եկած պանդուխտները, ցանկանալով զարկ տալ իրենց գավառի կրթական գործին։ Դրանցից հիշատակենք «Ուսումնատենչը», որի նպատակն էր Զմշկածագի մեջ դպրոցներ բաց անել, Արամյան ընկերությունը, որն աշխատում էր «Կեսարիո մեջ, աղջըկանց վարժարան մը բանալ» և այլն։

Կրթական-լուսավորական տասնյակ ընկերությունների մեջ խոշոր դեր է կատարել Նիկողայոս Զորայանի, Մատթեոս Այվատյանի և ուրիշների ջանքերով 1852 թ. ստեղծված «Ընթերցասիրացը»։ Այն գործել է մոտ մեկ տասնամյակ և ձգտել «հասարակության մեջ ընթերցման ախորժակ մը տարածելով՝ անոր մտավոր մշակությունը զարգացնել»։ Այս ընկերությունը հիմնել է հատուկ թանգարան, հավաքել պատմական անցյալին վերաբերող հընագիտական բեկորներ, հազվագյուտ գրքեր և այլն, ունեցել է և իր ընթերցարանը, դարձել հավաքույթների կենտրոն։

1859 թ. հիմնված Հայկազյան ընկերության նպատակն է եղել «Նախակրթական գրքեր տպել և աժան ծախել» ժողովրդին[7], իսկ Աշոտյան ընկերությունը ցանկացել է «աղջիկներու դաստիարակության նպաստել»[8]։

Մի շարք միություններ բացառապես ստեղծվել են հայ արվեստի տարբեր ճյուղերին զարկ տալու ձգտումով։ Դրանցից էր 1846 թ. Հովհ. Գասպարյանի կողմից հիմնված Արամյան ընկերությունը, որն ունեցել է կանոնավոր թատերախումբ և գործել քսան տարի՝ ներկայացումներ տալով Թուրքիայում և Կովկասում։ 1857 թ. Արմենակ Հայկունու ջանքերով կազմակերպվում է «Թատերական ընկերությունը», տալիս հայերեն ներկայացումներ, հրատարակում առաջին թատերական հայ պարբերականը՝ «Մուսայք Մասյացը»։ Նույն թվականներին Օրթագյուղում հիմնվում է «Հայկազունյան թատերական ընկերությունը», Գում Գաբուում՝ մի այլ թատերական ընկերություն, իսկ Բերայում՝ հայտնի «Արևելյան թատրոնը»[9]։ 1862 թ. ստեղծվում է «Երաժըշտական ընկերությունը»՝ երաժշտական ճաշակը հայոց մեջ տարածելու և ազգային երգեր հրատարակելու, «նվագածուներ առաջ բերելու» նպատակով[10]։ Այս ընկերության մեջ գործոն դեր են կատարել Տիգրան Չուխաճյանը, Գաբրիել Երանյանը, Նիկողոս Թաշճյանը։ Նրանց ջանքերով հրատարակվել է հայ առաջին երաժշտական հանդեսը՝ «Քնար հայկականը»։ Նույն տասնամյակում Օրթագյուղ թաղամասում հիմնվում է «Բարեսեր ընկերությունը»՝ իր շուրջը համախմբելով ժամանակի արվեստասեր երիտասարդներին։

Հիշյալ բոլոր ընկերություններն ունեցել են լուսավորական, կրթական նպատակ և նպաստել են արևմտահայության ազգային ինքնագիտակցության զարթոնքին, բայց ստեղծվել են նաև այնպիսի կազմակերպություններ, որոնք լուսավորական աշխատանքին զուգընթաց ունեցել են քաղաքական ո-

---

7 Ա. Ալպոյաճյան, նշվ. հոդվածը, «Գաղութահայ տարեգիրք», 1940, էջ 80։
8 Նույն տեղում, էջ 81։
9 Գ. Ստեփանյան, Ուրվագիծ արևմտահայ թատրոնի պատմության, հատ. Ա, էջ 213, 68։
10 Ա. Ալպոյաճյան, նշվ. հոդվածը, «Գաղութահայ տարեգիրք», 1940, էջ 84։

րոշակի ծրագիր։ Դրանցից էր 1846 թ. ստեղծված «Համազգյաց ընկերությունը»։ Նրա նպատակն էր զարկ տալ հայ ժողովրդի քաղաքական համախմբմանը և միասնությանը։ 1860 թ. հիմնվում է «Բարեգործական» ընկերությունը, որի մեջ ընդգրկվում են Մկրտիչ Աղաթոնը, Գրիգոր Օտյանը, Սերովբե Թագվորյանը, Մկրտիչ Պեշիկթաշլյանը և ուրիշներ։ Հետագայում ընկերության ձախ թևին պատկանող անդամները, որոնց հաջողվել էր «Բարեգործականի» պատվավոր նախագահ ընտրել Միքայել Նալբանդյանին, խանդավառված վերջինիս հեղափոխական գաղափարներով, նրա խորհրդով ծրագրում են ստեղծել մի գաղտնի կազմակերպություն[11]։

Կ. Պոլսից հետո արևմտահայ մշակույթի խոշոր կենտրոններից էր Զմյուռնիա քաղաքը։

Արևմտյան գաղութարարները ծրագրված աշխատանք էին կատարում Թուրքիա ներթափանցելու համար։ Նրանք քայլ առ քայլ մոտենում էին մայրաքաղաքին։ Իրենց առաջին հենարանը դարձնում են Մալթա կղզին, հիմնում տպարան, հրապարակում հայերեն գրքեր, ապա այնտեղից անցնում Զմյուռնիա, որտեղ նրանց գործակալ Գուլիելմոս Կրիֆտը հայկական տպարան է բաց անում 1830 թ. և լույս ընծայում աշխարհաբար գրքեր, բացառապես կրոնական բնույթի, այդ թվում և Աստվածաշունչը[12]։ Սկսվում է բուռն պայքարը օտար ներթափանցման դեմ։ Հակազդեցությունը շոշափելի արդյունքի է հասնում, երբ 1850-ական թվականների սկզբներին Հարություն և Սարգիս Տետեյան եղբայրները բաց են անում իրենց հայտնի տպարանը։

Տետեյան տպարանի հրատարակությունների ազգային դրոշմը թույլ էր, դրանք մեծ մասամբ թարգմանական վեպեր էին, սակայն այդ գրքերը հայ իրականություն էին բերում կյանքի թարմ շունչը։ Հիշենք Վիկտոր Հյուգոյի «Թշվառների» հինգ հատորների լիակատար և դասական թարգմանությունը Գրիգոր Չիլինկիրյանի կողմից, նույն հեղինակի «Փարիզի աստվածամոր տաճարը» վեպի թարգմանությունը՝ Մեսրոպ Նուպարյանի կողմից, Հյուգոյի մի շարք պիեսների («Լուկրեցիա Բորջիա», «Անջելո» և այլն) թարգմանությունը Ա. Կ. Տետեյանի կողմից, Վալտեր Սկոտի, Վոլտերի, Ա. Դյումայի և Ժյուլ Վեռնի վեպերի թարգմանությունը Մատթեոս Մամուրյանի կողմից և այլն[13]։

Վերոհիշյալ գրքերը առաջավոր մտքեր ու գրականության ճաշակ էին պատվաստում ընթերցող երիտասարդության մեջ։ Շատ վեպեր, ինչպես «Թշվառները», Վոլտերի երկերը («Զադիկ», «Միկրոմեգաս» և այլն), հակադրվում էին միսիոներական հրատարակություններին։

Մշակույթի այս օջախներում է, որ XIX դարի սկզբներից աշխուժացում ապրեց հայ միտքը։

## 2. ԴՊՐՈՑ, ԼՈՒՍԱՎՈՐՈՒԹՅՈՒՆ

Դարասկզբին և՛ արևելահայ, և՛ արևմտահայ իրականության մեջ շարունակում էր տիրապետող մնալ ուսուցման ավանդական խալֆայական ձևը։

---

11 Նույն տեղում, էջ 81։

12 Նույն տեղում։

13 Թեոդիկ, Տիպ ու տառ, էջ 135—137։

Դասավանդման հիմնական առարկաները կապված էին կրոնի հետ և ամենևին չէին նպաստում աշակերտության մտավոր ունակությունների զարգացմանը։ Աշակերտները հարկադրված էին սաղմոս ու ժամագիրք անգիր անել։

Սակայն, թևակոխելով XIX դարը, հայկական դպրոցը կանգնեց այնպիսի խնդիրների առջև, որոնք պետք է անհրաժեշտաբար հեղաբեկում մտցնեին նրա կյանքում։ Դա ժամանակի հրամայական պահանջն էր, որովհետև խորտակվում էին իրենց դարն ապրած ֆեոդալական հարաբերությունները, հայ ժողովուրդը ներքաշվում էր կապիտալիզմի ոլորտը և արդեն իսկ զգում ազգային համախմբման անհրաժեշտությունը։ Նոր ժամանակը հրամայաբար թելադրում էր, որպեսզի մատաղ սերնդի կրթության գործը համապատասխանեցվի իր պահանջներին, այն է՝ դպրոցի աշխարհականացմանն ու ժողովրդականացմանը, մանկավարժական առաջավոր մեթոդների և կրթական միասնական սիստեմի կիրառմանը։ Դժվարին խնդիրներ էին դրանք և հասարակական ուժերի մեծ լարում էին պահանջում, որքանով որ հայկական դպրոցները զուրկ էին պետական աջակցությունից և հովանավորությունից, սակավ էին կարող դպրոցական գործիչները։ Նոր դարի առաջին տասնամյակներից պոլսահայերը սկսում են եկեղեցու գերիշխանությունից համեմատաբար ազատ դպրոցներ հիմնել, որոնց նյութական հոգսը ընկնում էր արհեստավորական կազմակերպությունների վրա։

Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միացվելուց անմիջապես հետո կովկասահայ վաճառականներն ու մի շարք առաջավոր գործիչներ մտածում են Թիֆլիսում լայն ծրագրով գործող մի դպրոց հիմնելու մասին։

Նոր դպրոցի կողմնակիցները, մասնավորապես Ռուսաստանի կենտրոնական քաղաքներում և եվրոպական համալսարաններում սովորած երիտասարդները, վերադառնալով հայ իրականություն, առաջին հերթին բախվում էին ծխական դպրոցի դիմադրությանը։ Եկեղեցին իր գերիշխանությունը հեշտությամբ չէր զիջում։

Համատարած խավարի մեջ փայլատակում են մի քանի կրթական օջախներ, որոնց թիվն, անշուշտ, չէր անցնում տասից, բայց մեծ էր նրանց մատուցած ծառայությունը։ Կրթական այդ կարևոր օջախներից էին Մոսկվայի Լազարյան ճեմարանը, Թիֆլիսի Ներսիսյան դպրոցը՝ արևելահայ իրականության մեջ, Պոլսի Խասգյուղ թաղամասի Ներսիսյան դպրոցը, Սկյուտարի ճեմարանը, Վենետիկի Մուրադյան վարժարանը, Զմյուռնիայի Մեսրոպյան վարժարանը և մի քանի այլ դպրոցներ՝ արևմտահայ իրականության մեջ։

1815 թ. Մոսկվայում հիմնադրվում է Լազարյան ճեմարանը՝ Ռուսաստանի խոշոր կալվածատեր և արդյունաբերող Լազարյան տոհմի նյութական միջոցներով։ Այն դառնում է ժամանակի արևելագիտական միակ կենտրոնը ամբողջ Ռուսաստանում, պատրաստում է արևելյան լեզուների (պարսկերեն, թուրքերեն, արաբերեն) հմուտ մասնագետներ, որոնք ոչ միայն օգտակար կարող էին լինել Արևելքի ժողովուրդների մշակույթի ուսումնասիրման, այլև այդ ժողովուրդների հետ հաղորդակցության գործում։

Այդ ճեմարանում են ստացել իրենց կրթությունը հայտնի ռուս արևելագետները։ Բայց ճեմարանը ամենից առաջ հայոց դպրոց էր և նրա սկզբնական

նպատակն էր դաստիարակել այնպիսի սանհր, որոնք օգտակար լինեին հայ իրականությանը։ Ճեմարանում պաշտոնավարել են Հ. Ալամդարյանը, Մ. Սալլանթյանը, Մ. Էմինը, Մսեր Մսերյանցը, Ստ. Նազարյանցը, Միք. Նալբանդյանը և ուրիշներ։ Այնտեղ սովորել են հայ մշակույթի ականավոր ներկայացուցիչներ Գ. Ախվերդյանը, Քերովբե և Ռափայել Պատկանյանները, Պ. Շանշյանը, Պ. Սիմեոնյանը, Ս. Շահազիզը, Գ. Դոդոխյանը, Գր. Խալաթյանը, Հովհ. Հովհաննիսյանը և շատ ուրիշներ։

Թե՛ Լազարյանները և թե՛ այլ մեծահարուստներ հատկացումներ են կատարել Ռուսաստանի տարբեր վայրերից հավաքված որբ ու աղքատ երեխաների ուսուցման համար։ Ճեմարանում լայն տեղ է տրվել հանրակրթական առարկաներին ու լեզուներին։ Առաջին անգամ արևելահայ իրականության մեջ ստեղծվել են հայերեն դասագրքեր, քերականության, վայելչագրության, հայ ժողովրդի պատմության, կրոնի, ճարտասանության ձեռնարկներ, որոնցից շատերն ունենալով մի քանի տպագրություն, օգտագործվել են երկար տասնամյակներ։

Լազարյան ճեմարանը կրթական առաջին կենտրոնն էր հայ իրականության մեջ, որտեղ հավաքվում էին ոչ միայն Կովկասից ու Թուրքիայից, այլև հեռավոր Հնդկաստանից ու Պարսկաստանից եկած աշակերտներ։ Գալիս էին տարբեր գավառներից, տարբեր բարբառներով խոսող երեխաներ, իրենց հետ բերելով բնաշխարհի վարքն ու բարքը, հոգեկան նկարագիրը, նաև անգիր բանահյուսությունը։ Դասավանդման հիմնական լեզուն առաջին տարիներին գրաբարն էր, սակայն աստիճանաբար գերիշխող է դառնում արարատյան բարբառը։

Ճեմարանն ուներ իր տպարանը, որտեղ բացի դասագրքերից, տպագրվել են պատմա-բանասիրական, թարգմանական և այլ գրքեր, այդ թվում ճեմարանի աշակերտների ստեղծագործությունները՝ «Մուզայք Արարատյան» վերնագրով։ Այնտեղ է տպագրվել նաև Ս. Շահազիզի «Լևոնի վիշտը»։

Ցրվելով Ռուսաստանի հայաբնակ վայրերը, Լազարյան ճեմարանն ավարտած աշակերտները աշխատում էին հայկական դպրոցներում, թերթերի ու ամսագրերի խմբագրություններում, մոտիկից մասնակցելով մտավորական, կրթական աշխատանքին, լուսավորական կյանքին։ Նրանցից շատերն իրենց կրթությունը շարունակում էին Մոսկվայի, Պետերբուրգի կամ Դորպատի համալսարաններում։ Նկատելի է, որ բանասիրությունը, գրականությունը քիչ է գրավել հայ ուսանողներին, նրանք մեծ մասամբ հետևել են բժշկությանը։ Ժամանակի առաջավոր բնագիտությունը, որ խարխլում էր ավանդական ըմբռնումները մարդու և երկրագնդի առաջացման, տիեզերքի ստեղծման և այլ հարցերի վերաբերյալ, իրեն էր քաշում գիտության ծարավի երիտասարդներին։ Հայ համալսարանավարտներից ոմանք ճշգրիտ գիտությունների ճանապարհով եկան դեպի հումանիտար գիտությունները, հագեցնելով դրանք առաջավոր գաղափարախոսությամբ։ Մոսկվայի համալսարանի բժշկական ֆակուլտետում էին սովորել Գևորգ Ախվերդյանը, Միքայել Նալբանդյանը, նրա գաղափարակիցներ Անանիա Սուլթանշահը, Հովհաննես Բերբերյանը, դրամատուրգ Միքայել Պատկանյանը և շատ ուրիշներ։

Նշանավո՞ր այս կրթարանն իր բոլոր առավելություններով հանդերձ չէր կարող կատարել այն դերը, ինչ պիտի կատարեր հայ իրականության ծոցում հիմնադրված լուսավորության կարևոր օջախը։ Այդպիսին էր 1824 թ. Թիֆլիսում հիմնադրված Ներսիսյան դպրոցը։ Մի քանի հարյուրի է հասնում այն մարդկանց թիվը, որոնք սովորել են Ներսիսյան դպրոցում և նպաստել հայ գրականության, հրապարակախոսության, թատրոնի, նկարչության, երաժշտության զարգացմանը։

Ներսիսյան դպրոցի գործունեության մասին խոսելիս ամենից առաջ պետք է հիշել առաջին շրջանը (1825—1830), երբ նրա տեսուչն էր Հարություն Ալամդարյանը, հայ մշակույթի խոշոր երախտավորներից մեկը։ Նա Մոսկվայից հայ իրականություն էր վերադառնում մեր մատենագրությանը, լեզվին ու պատմությանը հիմնովին տիրացած, ռուս գրականությանը քաջատեղյակ և, որ ամենից կարևորն է, այդ բոլորը մատաղ սերնդին տալու անսահման նվիրվածությամբ տոգորված։



Լազարյան ճեմարանը (XIX դարի լիտոգրաֆիա)

Ներսես Աշտարակեցու քաջալերանքով Ալամդարյանը ձեռնարկում է միջոցառումներ՝ դպրոցը ուսուցման մի դարբնոց դարձնելու ազնիվ նպատակով։ Որոշում է ստեղծել պարբերական՝ «Տարեգրություն հայոց դրագիտական»[14] վերտառությամբ։ Այս ծրագրի մի մասը նա հնարավորություն չի ունենում կենսագործել քաղաքական աննպաստ պայմանների հետևանքով։ «Տարեգրության» մտահղացումն առհասարակ մնում է թղթի վրա, իսկ 1823 թ. բացված տպարանը ունենում է ոչ արդյունավետ գործունեություն։ Դրա փոխա-

14 Աղ. Երիցյան, Պատմություն 75-ամյա գոյության Ներսիսյան հայոց հոգևոր դպրոցի, հատ. Ա, Թիֆլիս, 1898, էջ 138։

րին Ներսիսյան դպրոցը կրթության բնագավառում կատարեց ավելին, քան ժամանակի որևէ հայ դպրոց։

Այդ դպրոցի առաջին հունձքը հանդիսացան Խաչատուր Աբովյանը, Ստեփանոս Նազարյանը, Գալուստ Շիրմազանյանը և ուրիշներ։ Նրանցից շատերն իրենց կրթությունը շարունակեցին Ռուսաստանի կենտրոնական քաղաքներում, մասնավորապես Մոսկվայում, Պետերբուրգում և Դորպատում, այդ վայրերում ստեղծելով հայկական ուրույն միջավայր, փոխադարձաբար ռուս և այլ ազգության պատկանող մտավորական շրջաններին հաղորդակից դարձնելով հայ կյանքին։

Ինչպես Լազարյան ճեմարանը, Ներսիսյան դպրոցն էլ, ընդունելով աշակերտներ տարբեր գավառներից, հանդիսացավ հայ աշխարհիկ գրական լեզվի ստեղծման հիմնական օջախներից մեկը, չնայած առաջին տարիներին դասավանդման հիմնական լեզուն գրաբարն էր։ Այն հանգամանքը, որ հայ նոր գրականության սկզբնավորողի՝ Աբովյանի անունը կապված է Ներսիսյան դպրոցի հետ, ինքնին վկայում է, թե որքան արգասավոր եղավ ազգային այդ կրթարանը։

Ներսիսյան դպրոցը հանդիսացավ նաև արևելահայ թատրոնի և հայ երաժշտության զարգացմանը նպաստող մի կենտրոն։ Դեռևս իր առաջին տեսչի՝ Հարություն Ալամդարյանի օրոք, 1820-ական թվականների վերջերից, այնտեղ կազմակերպվում են հայերեն ներկայացումներ, աշակերտներին հաղորդակից դարձնելով թատերական արվեստին։ Հետագայում դպրոցի ուսուցիչներ Հ. Կարենյանի և Մ. Պատկանյանի ջանքերով տրվում են ավելի կանոնավոր ներկայացումներ։

Իր աշակերտներին տալով երաժշտական և նկարչական դաստիարակություն, դպրոցը խոստումնալից շատ աշակերտների մղում էր դեպի արվեստի այդ բնագավառները։ Այս տեսակետից խոշոր ծառայություն է մատուցել Պետերբուրգի Գեղարվեստների ակադեմիայի սան նկարիչ Ստեփան Ներսիսյանը։

1837 թ. բացվում է Երևանի թեմական դպրոցը։ Սկզբում այնտեղ ընդունվում էին միայն հոգևորականների որդիները, աշխարհականները կարող էին սովորել գավառական դպրոցում։ Բայց կարճ ժամանակ անց վերացվում է այս սահմանափակումը, ընդունվում են նաև աշխարհականների երեխաներ[15]։ Թիֆլիսի Ներսիսյան դպրոցին գումարներ էին հատկացնում հարուստ հայերից ոմանք։ Երևանը չուներ այդ հնարավորությունը։ Եվ ահա դպրոցին օգնում են Սուրմալուի, Ալեքսանդրապոլի բնակիչները՝ բամբակով, ցորենով։ Չնայած ցարական կառավարության համաձուլողական քաղաքականությանը, որի հետևանքով միայն հայոց լեզուն ու կրոնն էր թույլատրված ավանդել մայրենի լեզվով, դպրոցը դառնում էր ազգային ուրույն դեմք ունեցող կրթական մի օջախ, որտեղ աշակերտները ծանոթանում էին հայ ժողովրդի պատմության ու մշակույթին։ Դպրոցն ուներ ուսման կայուն ծրագիր, մանկավարժական խորհուրդ, կազմակերպում էր երեկույթներ, տարեվերջի հանդեսներ, ան-

15 Տես. Պատմություն Երևանի հայոց թեմական հոգևոր դպրոցի, Թիֆլիս, 1914, էջ 137—138։

գամ թատերական ներկայացումներ։ Հետագայում, 1865 թ., երբ Չմշկյան-Ամերիկյան թատերախումբը եկավ Երևան, ներկայացումներ տվեց ս. Սարգիս եկեղեցու բակում գտնվող թեմական դպրոցի դահլիճում՝ տեսուչ Նահապետ Աթանասյանի օժանդակությամբ։

Երևանի թեմական դպրոցն իր երկարամյա գոյության ընթացքում մեծ դեր է կատարել Արարատյան դաշտի հայ բնակչության մտավոր զարգացման գործում։ Հայ մշակույթի բազմաթիվ ներկայացուցիչներ սովորել են այնտեղ։ Այդ դպրոցի հասարակական կշիռը շատ ավելի բարձրացավ 1870-ական թվականներից հետո։



Թիֆլիսի Ներսիսյան դպրոցը

Երևանի կրթական կյանքում խոշոր դեր է կատարել հայ մեծ լուսավորիչ Խաչատուր Աբովյանը, տեղի գավառական դպրոցի տեսչության հինգ տարիների ընթացքում (1843—1848)։

Աբովյանի անվան հետ է կապվում Հայաստանում առաջին թանգարանի ստեղծման փորձը, նրա տեսչության շրջանում (1846)։ Դպրոցում ստեղծվել է թանգարան, որտեղ հավաքվել են Արարատյան դաշտի բուսական աշխարհից նմուշներ, հանքային բեկորներ, նաև հնագիտական իրեր, որոնք, ինչպես «Կովկաս» թերթն է գրել, «անտերունչ տարածեալ կան յաւերակս քաղաքաց, վանօրեից և շէնից, ամենևին անտես ի մերոց համազգեաց»։ Այդ իրերի մեջ են եղել Գառնիի սյունաբեկորներից երկուսը։

Ըստ երևույթին Աբովյանը մտադրություն է ունեցել Երևանում բաց անել նաև իգական դպրոց, սակայն վրա է հասել իր խորհրդավոր անհայտացումը։ Դրանից երկու տարի հետո միայն, 1850 թ., բացվել է Երևանի առաջին իգական Հռիփսիմյանց դպրոցը։ Այնտեղ սովորել են 28 աշակերտուհիներ, որոնցից 11-ը՝ հայեր, 10-ը՝ ռուսներ և 7-ը՝ ադրբեջանուհիներ։ Չորս տարի առաջ Թիֆլիսում ստեղծվել էր ս. Նունեի (Նինայի) իգական դպրոցը և Աբովյանն էլ հրավիրվել էր պաշտոնավարելու այնտեղ։

Կրթական նույնպիսի դեր է կատարել Շուշու թեմական դպրոցը, որը բացվել է 1838 թվականին։ Ղարաբաղում մինչ այդ որևէ հիմնավոր դպրոց չի եղել։ Եղել են մի քանի գործիչներ (Պողոս Ղարաբաղցին, Հովսեփ Արցախեցին և այլք), որոնք իրենց մասնավոր դպրոցներում գիր ու դպրություն են սովորեցրել սահմանափակ թվով երեխաների։ 1820-ական թվականների կեսերից Շուշում գործում էր Բազելի Ավետարանական միսիոներների ընկերությունը, որը բաց է անում դպրոց, տպարան, զարկ տալիս մշակութային կյանքին։ Ճիշտ է, Ավետարանական այդ ընկերությունը հետապնդում էր դավանաբանական, քաղաքական որոշակի նպատակներ, բայց ակնհայտ էր նրա կատարած աշխատանքը ժողովրդի լուսավորության ուղղությամբ։ Ընկերությունը Շուշում և Մոսկվայում տպագրում է 11679 օրինակ հայերեն, 728 օրինակ պարսկերեն, 147 օրինակ թուրքերեն և 100 օրինակ եբրայերեն գրքեր[16], որ ուշագրավ երևույթ էր այդ տասնամյակներում։ Միսիոներներն իրենց կրոնական գրքերը տպագրում էին աշխարհաբար լեզվով։



Մուրադ-Ռափայելյան վարժարանի նախկին շենքը, Վենետիկ (1836—1850)

Ցարական կառավարության միջամտությամբ 1837 թ. դադարեցվում է Ավետարանական ընկերության գործունեությունը։

Սկսած 1830-ական թվականների վերջերից հայ լուսավորչական եկեղեցու թեմակալի իրավասությանն է անցնում կրթական հրատարակչական գործը։ Շուշին իր թեմական դպրոցով դառնում է հոգևոր կենտրոն Ղարաբաղի հայերի համար։ Գործում է նաև տպարանը, առաջին շրջանում տպագրելով

16 Տես, Պատմություն Ղարաբաղի հայոց թեմական հոգևոր դպրոցի, Թիֆլիս, 1914, էջ 93։

բացառապես հոգևոր բնույթի գրքեր, սակայն աստիճանաբար հրատարակում է նաև աշխարհիկ բովանդակությամբ գործեր, դասական երկերի թարգմանություններ, ինչպես «Շիլլոնյան կալանավորը»։

Շուշու թեմական դպրոցի շրջանավարտները շարունակում էին լուսավորություն տարածել տարբեր վայրերում, միաժամանակ սերտ կապ պահպանել իրենց մնող հաստատության հետ։ 1858 թ. ստեղծվում է մի ընկերություն, որի նպատակն էր գրադարան ստեղծել դպրոցի համար։

1860-ական թվականների սկզբներից ուժեղացող պայքարը, որի նպատակն էր թուլացնել դպրոցի վրա եկեղեցու միահեծան ղեկավարությունը և ժողովրդին մասնակից դարձնել կրթական աշխատանքի կազմակերպմանը, հանգեցրեց հոգաբարձության ստեղծմանը։

Հոգաբարձությունն իր ձեռքն է վերցնում դպրոցի ղեկավարությունը։ Գումարվում են ժողովներ, ծավալվում վիճաբանություններ։ Աշխուժանում է հասարակական միտքը։ Ժամանակի առաջավոր մտածողները հասարակական ընթերցարանում գումարված նիստերում «ամենայն հարազատությամբ քարոզում էին այն ժամանակվա մեր առաջավոր գործիչներ Նազարյանի, Նալբանդյանի, Շանշյանի գաղափարները»[17]։

Թեմական դպրոցի բարձր դասարաններում նկատելի տեղ էր տրվում հանրակրթական առարկաներին. հայոց լեզվի, հայոց պատմության հետ մեկտեղ ուսուցվում էր աշխարհագրություն, թվաբանություն, ռուսերեն, ադրբեջաներեն, ֆրանսերեն լեզուներ, վայելչագրություն, նկարչություն և այլն։

XIX դարում կրթական կյանքի աշխուժացում է նկատվում Ղրիմի Թեոդոսիա, Ղարասուբազար, Սիմֆերոպոլ, Բեսարաբիայի Քիշնյով, ինչպես և Հարավային Ռուսաստանի Մոզդոկ, Ղզլար, Աստրախան, մանավանդ Նոր Նախիջևանի հայաբնակ գաղութներում։

Լուսավորական շարժումը իր ոլորտի մեջ էր առել նաև այս հայաբնակ գաղութները, որոնք ապրում էին նույն մտորումներով, ինչ Թիֆլիսի, Մոսկվայի, Պոլսի ուսումնատենչ հայերը։ Դրան նպաստում էին մի կողմից հայ գրքի ու մամուլի թափանցումը հայաբնակ վայրերը, որը մտքեր էր հուզում, ապագայի ծրագրեր հուշում, մյուս կողմից՝ Լազարյան ճեմարանի, Մոսկվայի համալսարանի, Ներսիսյան դպրոցի շրջանավարտների գործունեությունը հայ իրականության մեջ։

Կրթական աշխատանքի աստիճանական փոխանցումը հոգևորականներից աշխարհիկ մարդկանց՝ մեծապես նպաստում է ժողովրդի ինքնագիտակցության բարձրացմանը, մտավոր զարթոնքին։ Այդ երիտասարդները, վերադառնալով հայրենիք, իրենց հետ բերում էին ռուսական և արևմտաեվրոպական առաջավոր գաղափարներ։ Նրանք, միաժամանակ, հայ մատաղ սերնդի մեջ պատվաստում էին սեր դեպի մայրենի լեզուն, հետաքրքրություն դեպի պատմական անցյալը, սեփական արժեքները։

Դպրոցի աշխարհականացումը դյուրին չէր. հայ եկեղեցին, տեսնելով իր ավանդական գերիշխանության թուլացումը, XIX դարի ամբողջ ըն-

17 Նույն տեղում, էջ 94։

թացքում մոլեգին պայքար է մղել նոր գաղափարներ քարոզող մանկավարժների դեմ, նրանց ենթարկելով ամեն կարգի հալածանքների։ Այդ ճակատագրին են արժանացել Խ. Աբովյանը, Գ. Պատկանյանը, Մ. Թաղիադյանը, Պետրոս Շանշյանը և ուրիշներ։ Տևական ու համառ պայքարի այս պայմաններում է, որ հիշատակված քաղաքներում ստեղծվում են կրթական նոր կենտրոններ, արական և իգական դպրոցներ։ Նոր դպրոցը, անշուշտ, դեռ երկար ժամանակ պիտի գտնվեր հայոց եկեղեցու գաղափարական ազդեցության տակ, ենթակա դասավանդման ավանդական մեթոդներին, սակայն լուսավորական նոր հայացքների տարածումը անժխտելի էր։

1806 թ. բացվում է Աստրախանի Աղաբաբյան դպրոցը, մեծ հետաքրքրություն ստեղծելով իր շուրջը։ Աստրախանում XVIII դարի վերջերից գործում էին ծխական դպրոցներ, տպարան, հավաքվել էին հին ձեռագրեր։ XIX դարի առաջին տասնամյակում արդեն փակվել էր նախկին տպարանը, բայց բացվել էր երկրորդը և լույս էր ընծայել մի քանի գրքեր, այդ թվում Ալեքսանդր Մակեդոնացու պատմությունը, ռուսերենից կատարված թարգմանություններ, ուսումնական ձեռնարկներ և այլն։ Աստրախանում ստացվում էին Կալկաթայում, Վենետիկում, Պոլսում հրատարակված գրքեր, պարբերականներ։

Այս պայմաններում հիմնադրված Աղաբաբյան վարժարանն ունեցավ գործունեության պարարտ հող և նկատելի դեր է կատարել կենսունակ այդ գաղութի կյանքում, մասնավորապես Սերովբե Պատկանյանի տեսչության տարիներին՝ 1819—1827 թվականներին։ Այս դպրոցում է սովորել Գաբրիել Պատկանյանը, որը հետագայում դարձավ ժամանակի ականավոր մանկավարժներից մեկը։

XIX դարի առաջին կեսին Քիշնյովի հայկական գաղութում կրթական նկատելի աշխատանք է ծավալում Մսեր Մսերյանցը։ Անկախ այն փաստից, որ Մսերյանցը հետագայում դարձավ արևելահայ կղերա-աղայական հոսանքի ներկայացուցիչներից մեկը, «Ճռաքաղ» հետադիմական հանդեսի խմբագիրը, դարասկզբի նրա գործունեությունը արժանի է ուշադրության։ Նա 1836—1848 թթ. աշխատել է Մանուկ-բեյ Միրզայանի որդի Հովհաննես Մուրադի՝ Քիշնյովի մոտակայքում գտնվող ագարակում (Հնչեշտում) որպես տնային դաստիարակ, նաև քարտուղար, գրել է Միրզայանի քաղաքական գործունեության արկածալից պատմությունը։ Մսերյանցը միաժամանակ ունեցել է իր մասնավոր դպրոցը։ Նա նամակագրական կապ է պահպանել Խաչատուր Աբովյանի և առաջավոր այլ մտածողների հետ, գրել է հայատառ թուրքերեն աշխատություններ, որոնցից մեկում («Երկու Կիրակոս») քննադատում է եկեղեցական դոգմաները, դասավանդման հին, սխոլաստիկ մեթոդները, կոչ անում երեխաներին տալ օգտակար գիտելիքներ՝ անգիր արված կրոնական բանաձևումների փոխարեն։

XIX դարի կեսերին մտավորական կենտրոն է դառնում նաև Թեոդոսիան։ Այնտեղ 1858 թ. հիմնադրվում են տպարան և Խալիբյան վարժարանը։

Հայկական կրթական խոշոր կենտրոն էր Նոր Նախիջևանը։ Այնտեղ կար դպրոց, հիմնադրվել էր տպարան։

XVIII դարի վերջերին Լազարյանների նյութական միջոցներով դպրոց է բացվում այս քաղաքում։ Հայաբնակ այդ գաղութի տեսակարար կշռի մեծու-

թյամբ պետք է բացատրել այն, որ Լազարյանները սկզբում նպատակ են ունեցել իրենց ճեմարանը հիմնել Նոր Նախիջևանում և հետո միայն Մոսկվայում։

Այսպես, 1830-ական թթ. սկզբներից այնտեղ դպրոց է բաց արել ճեմարանի շրջանավարտներից Թեոդորոս Խադամյանը։ Նա եղել է բանաստեղծ, դրամատուրգ. նրա անվան հետ է կապված այդ քաղաքում թատերական ներկայացումներ տալու փաստը. հավանաբար բեմադրել է նաև իր պատմական ողբերգությունները, որոնցից մեկի ժամանակ երգվել է նրա «Ցնծա այսօր Հայաստան» երգը, ինչպես վկայում է Միքայել Նալբանդյանը։

Նոր Նախիջևանի կրթական կյանքում զգալի դեր են կատարել Պատկանյան ընտանիքի անդամները։ 1806 թ. տեղի դպրոցական գործիչների հրավերով Աստրախանից այստեղ է գալիս Սերովբե Պատկանյանը և պաշտոնավարում մինչև 1809 թվականը, ապա վերադառնում Աստրախան։ Մի նոր հրավերով, 1827 թ. Պատկանյանների ամբողջ ընտանիքը տեղափոխվում է Նոր Նախիջևան, ծավալում կրթական լայն աշխատանք։ Ս. Պատկանյանի մահից հետո նրա գործը շարունակում է որդին՝ Գաբրիել Պատկանյանը։ Նրա ղեկավարած քաղաքային դպրոցում են սովորել բանաստեղծ Ռափայել Պատկանյանը, Միքայել Նալբանդյանը և ուրիշներ։ Զինված հոգևորական կոչմանը, Գ. Պատկանյանը եղել է լուսավոր դեմք, որի համար ենթարկվել է խավարամոլների հալածանքին։

Հակառակ այս բոլոր փորձերին, մինչև դարի կեսերը Նոր Նախիջևանը չի ունեցել կայուն ծրագրով գործող գավառական դպրոց։

Կրթական բարձր մակարդակի վրա կանգնած ուսումնարանի ստեղծման ուղղությամբ նվազ դեր չի կատարել Միքայել Նալբանդյանը թե՛ «Հյուսիսափայլում» տպագրված հոդվածներով և թե՛ գործնական աշխատանքով։ Այդ նպատակով նա ճանապարհորդել է մինչև Հնդկաստան, որպեսզի հաջողեցնի Մասեհ Բաբաջանյանի կտակը։ Նալբանդյանը 1858 թ. «Հյուսիսափայլում» տպագրած իր «Հիշատակարանում» գծել էր այն ծրագիրը, որ ունենալու էր Նոր Նախիջևանում հիմնադրվելիք դպրոցը, որտեղ բազմաթիվ լեզուներից, պատմությունից, աշխարհագրությունից, հնախոսությունից բացի ավանդվելու էին վաճառականության ուսմունք, վիճակագրություն, մաթեմատիկա, ֆիզիկա, քիմիա, բնագիտություն, գյուղատնտեսություն, մեքենագիտություն, նկարչություն և այլն։

Այս բոլոր ծրագրերը, սակայն, մնում են թղթի վրա, ժամանակի հետամնաց պայմանների հետևանքով։

Մեծ է Դորպատի դերը արևելահայ մտավորականության զարգացման գործում։ Դարասկզբից գործող Դորպատի համալսարանը եղել է կարևոր կրթական կենտրոն հայերի համար։ Այնտեղ սովորել են քառասունից ավելի հայ ուսանողներ, որոնց զգալի մասը նշանակալից դեր են կատարել հայ կյանքում, ինչպես Խաչատուր Աբովյանը, Ստ. Նազարյանցը, Գևորգ Աքիմյանը, Պետրոս Սիմեոնյանը, Քերովբե Պատկանյանը, Գևորգ Դոդոխյանը և ուրիշներ։

Մոսկվայում սովորող ուսանողության այն հատվածը, որ ամուր թելերով կապված էր հայ կյանքի հետ, ակտիվ մասնակցում էր այդ շարժումներին,

տոգորված էր նույն առաջադեմ տրամադրություններով։ Հայ ուսանողները մասնակից էին Մոսկվայում գործող գաղտնի կազմակերպությունների, խմբակների աշխատանքներին։

Մոսկվայի համալսարանում են սովորել այն երիտասարդները, որոնք Ռ. Պատկանյանի ղեկավարությամբ 1850-ական թվականների կեսերին Պետերբուրգում հրատարակում էին «Գամառ-Քաթիպա» հայտնի տետրակները։ Մոսկվայի համալսարանի ուսանողների շնորհիվ սկիզբ առավ արևելահայ թատրոնը և կենցաղային դրամատուրգիան՝ Ն. Ալադաթյանի, Ն. Փուղինյանի, Մ. Տեր-Գրիգորյանի և ուրիշների ջանքերով։ Եվ, վերջապես, այդ ուսանողները զարկ տվին հայ առաջավոր հրապարակախոսական մտքին «Հյուսիսափայլ»-ում և հայերեն այլ պարբերականներում։ Ճիշտ է, արևելահայ լիբերալ բուրժուազիան զգույշ էր քաղաքական հարցերում, դեմ էր Ռուսաստանի հեղափոխական շարժմանը, այնուամենայնիվ, դեմոկրատական գաղափարների տեր մտավորականները անտարբեր չէին Արևմտյան Հայաստանում տիրող վիճակի նկատմամբ, պաշտպանում էին արևմտահայ ազատագրական շարժման քաղաքական ձգտումները։ Այդ նկատում ենք և՛ Ռ. Պատկանյանի, և՛ Ս. Շահազիզի և՛ շատ ուրիշների, առավել ևս հեղափոխական-դեմոկրատ Միքայել Նալբանդյանի մոտ, որի «Ազատությունը» երկար ժամանակ մնաց հայ երիտասարդության շուրթերին։

Մինչև դարասկիզբը Կ. Պոլսում գերազանցապես գործել են տարրական դպրոցներ և, այսպես կոչված, «դպրաց դասեր»՝ տարբեր եկեղեցիներին կից, որոնք նախնական գիտելիքներ են տվել հոգևորական կոչման պատրաստվող երիտասարդներին։

Կրթական շարժումը նոր աստիճանի է բարձրանում XIX դարի առաջին քառորդում։ 1813 թ. Թուղլաջի Մարտիրոս աղան դպրոց է հիմնում Պեյքող թաղում[18]։ Մի քանի տարի անց Գրիգոր ամիրա Ջերքեզյանը դպրոց է հիմնում Բերա կենտրոնական թաղամասում։ Հարություն Պեզճյանը 1826 թ. բաց է անում ասեղնագործական դպրոց՝ աղջիկների համար, որը, փաստորեն, իգական առաջին վարժարանն էր պոլսահայերի մոտ։ Նույն ամիրայի ջանքերով 1828 թ. Գում Գաբուի մայր եկեղեցու մոտ կառուցվում է մի դպրոց, որտեղ դասավանդում էր հայտնի հայկաբան Գրիգոր Փեշտիմալճյանը[19]։

Պեզճյանի օրինակին հետևում է Ճանիկ ամիրան։ Նրա օժանդակությամբ իգական դպրոցներ են բացվում Կոնովլույա և Սկորդելա թաղամասերում՝ Հռիփսիմյանց և Գայանյաց անուններով[20]։ 1832 թ. հիմնվում է էյուպ թաղամասի Պեզճյան վարժարանը։

1836 թ. բուռն զարգացում է ապրում Խասգյուղի Ներսիսյան դպրոցը, որը ժամանակի խոշոր և արդիական ծրագրով գործող ուսումնական հաստատություններից մեկն էր։ Այդ դպրոցը, որտեղ սովորում էին մոտ 600 աշակերտներ, ուներ բնագիտության սենյակ։ Ուսումնական ծրագրում, բացի մայրենի լեզվից կային ֆրանսերեն և իտալերեն[21]։

---

18 «Ընդարձակ օրացույց ս. փրկչյան Ազգ. հիվանդանոցի հայոց», Կ. Պոլիս, 1901, էջ 176։

19 Նույն տեղում, էջ 191—195։

20 Նույն տեղում։

21 Նույն տեղում, էջ 202։

Դեռևս 1832 թվականին հայ գինեգործների կազմակերպությունը դպրոց է բաց անում Գանըր Քիլիսե թաղամասում։ Հետագայում Լանգայի մայր վարժարանի հոգսը վերցնում են ոսկերիչները, Թոփ Գաբուի վարժարանինը՝ թյուլպենտճիները, Սամաթիայի Ենի-Մահալեի դպրոցը ղեկավարում են արհեստավորական ուրիշ կազմակերպություններ և այլն[22]։

Այլ հեռանկարներ ուներ Եվրոպայում ուսած մի քանի երիտասարդների ջանքերով 1838 թ. բացված Սկյուտարի ճեմարանը, առաջին միջնակարգ դըպրոցը արևմտահայ կյանքում։ Նրա ծրագիրը կազմված էր եվրոպական համապատասխան դպրոցների ծրագրերի ոգով, լայն տեղ տալով օգտակար գիտելիքներին և լեզուներին։

Զմյուռնիայում կային եվրոպական ծրագրով գործող երկու դպրոցներ՝ Մեսրոպյան-արական, և Հռիփսիմյան-իգական վարժարանները։

Մեսրոպյանը, որտեղ յուրաքանչյուր տարի սովորում էին 300—400 աշակերտներ, հիմնվել է 1799 թ. և ունեցել է տասնամյակների բեղուն գործունեություն։ Այս դպրոցը նկատելի ծաղկման է հասնում Անդրեաս Փափազյանի տեսչության շրջանում (1832—1845), երբ ուսումնական ծրագիրը վերակառուցվում է այնպես, որ լայն տեղ է տրվում ֆրանսերեն, իտալերեն և անգլերեն լեզուներին։ Այդ միջոցառումը մեծ աղմուկ է բարձրացնում կղեր-ամիրայական դասի մեջ և բուռն պայքարի տեղիք տալիս[23]։ Ուշագրավ է հետադիմականների այն փաստարկը, թե «Գաղիերեն անհավատություն, Վոլտեր ըսել է»[24]։ Հետադիմականները ոչ թե սարսափում էին ֆրանսերեն լեզվից, այլ նկատում էին, որ այդ լեզվի միջոցով Զմյուռնիա են թափանցում ֆրանսիական հեղափոխության գաղափարները։

Մեսրոպյան վարժարանում Անդրեաս Փափազյանի ջանքերով կազմակերպվել են աշակերտական թատերական ներկայացումներ, ցուցադրվել են աշխարհիկ բովանդակություն ունեցող կատակերգություններ, ինչպես Գոլդոնիի «Հյուրանոցի տիրուհին», որը բեմադրվել է 1836 թ. և կրկնվել մի քանի անգամ։

Հռիփսիմյանց իգական վարժարանը հիմնադրվել է 1840 թ և, որոշ ընդմիջումներով (արդյունք՝ հրդեհի և նոր շենքի կառուցման), գործել է մինչև դարավերջը։ Այնտեղ նույնպես դասավանդվել են օտար լեզուներ։ Դրանով պետք է բացատրել XIX դարի երկրորդ կեսին զմյուռնահայ շատ ընտանիքներում գրասեր ու երաժշտասեր կանանց առկայությունը։

Արևմտահայ իրականության մեջ խոշոր դեր է խաղացել Վենետիկի Մխիթարյանների Մուրադ-Ռաֆայելյան վարժարանը։ Ձևայած Մուրադ-Ռաֆայելյան վարժարանը ենթակա էր Մխիթարյան վանքի հսկողությանը և ծրագրում լայն տեղ էր հատկացրել կրոնական առարկաներին, այնուամենայնիվ, գըտնըվելով Վենետիկ քաղաքում, մասամբ հաղորդակից էր ժամանակի գիտու-

---

22 Ա. Ալպոյաճյան, Ազգային Սահմանադրությունը (Ընդարձակ օրացույց Ազգ. հիվանդանոցի, 1910, էջ 157)։

23 Ստ. Փափազյան, Կենսագրություն Ռուբեն Անդրեաս Հ. Փափազյանի, Կ. Պոլիս, 1859, էջ 13—14։

24 Հ. Հակոբ վ. Քոսյան, Հայք ի Զմյուռնիա և ի շրջակայս, հատ. Ա, Վիեննա, 1899, էջ 128։ 37—41

թյան նվաճումներին, դպրոցական մի շարք առարկաներ կապված էին դրական գիտությունների հետ։ Արևմտահայ գրականության ականավոր դեմքերից շատերը սովորել են այդ վարժարանում, ինչպես Մ. Մամուրյանը, Մկ. Պեշիկթաշլյանը, Ս. Հեքիմյանը, Թ. Թերզյանը և ուրիշներ։

Ֆրանսիական համալսարաններում սովորող ուսանողներից մի քանիսը, որոնք մասնակցել էին հեղափոխական խմորումներին, ծառացել են հայ եկեղեցու ավանդական պատգամների դեմ։ Դրանցից էին Նիկ. Զորայանը, Նահապետ Ռուսինյանը։ Սրանցից Զորայանը սովորել է Փարիզում, հետևել տնտեսագիտության, խորապես ուսումնասիրել ուտոպիստ սոցիալիստներին՝ Սեն-Սիմոնին, Ռոբերտ Օուենին, Ֆուրյեին։

Հաջորդ տասնամյակի խոշորագույն դեմքերից են, դարձյալ Փարիզում կրթություն ստացած, 1861—1862 թթ. Միքայել Նալբանդյանի հետ քաղաքական սերտ կապեր պահպանող բժիշկ Հ. Քյաթիպյանը և Տիգրան Փեշտիմալճյանը։ Առաջինը գրավոր ժառանգություն չի թողել, բայց եղել է ժամանակի ամենալուսավոր և մատերիալիստ մտածողներից մեկը։ Ժամանակակիցների վկայությամբ, նա մերժում էր քրիստոնեական դոգմաները, աստծո և հանդերձյալ կյանքի գոյությունը։

1860-ական թվականների արևմտահայ մտավորական սերնդի ամենափայլուն ներկայացուցիչներից է բնագետ-փիլիսոփա, մատերիալիստ աթեիստ Գալուստ Կոստանդյանը, որն իր աշխատություններով, հատկապես «Մեթոդի վրա» փիլիսոփայական երկով, մերժեց մարդու առաջացման կրոնական ըմբռնումները։ Կոստանդյանը եղել է Զմյուռնիայի «Հաշտենից և Վասպուրական» ընկերության հիմնադիրներից, որը 1860-ական թվականների սկզբներին առաջադիմական խոշոր դեր է կատարել՝ արժանանալով Միքայել Նալբանդյանի ու Հ. Սվաճյանի պաշտպանությանը։

Հնդկահայ գաղութում կրթական աչքի ընկնող աշխատանք էր կատարում 1821 թ. Կալկաթայում հիմնված Մարդասիրաց ճեմարանը, որը գտնվում էր ժամանակի լուսավորական շարժման ոլորտում և սովորող երկսեռ աշակերտությանը գերազանցապես տալիս էր աշխարհիկ դաստիարակություն, ուսուցանում հայոց լեզու, մատենագրություն, պատմություն և այլն։ Ճեմարանն ուներ բազմակողմանի զարգացած ուսուցիչներ, ինչպիսիք էին Հովհ. Ավդալլյանը, Թադ. Ավետումյանը, Մ. Թաղիադյանը և ուրիշներ։

Մարդասիրաց ճեմարանն էլ, ինչպես Թիֆլիսի Ներսիսյան դպրոցը, գրեթե նույն ժամանակամիջոցում, այսինքն՝ 1822—1823 թթ., ունենում է իր սեփական տպարանը, զարկ տալիս հրատարակչական գործին։ Այդ տպարանում տպագրված գրքերի նկատելի մասը մտավոր զարգացման նպաստող երկեր էին, ինչպես «Համառօտ մեկնութիւն տրամաբանութեան, որ ըստ հունաց ասի տիալէքթիկես» (1822), բառարան անգլերեն լեզվի և այլն։

Ճեմարանն ստեղծում է ճոխ գրադարան, որտեղ կենտրոնացվում են հայերեն, անգլերեն և այլ լեզուներով գրքեր։

Այսպիսով, XIX դարի 50—60-ական թվականներին դպրոցական գործը հայ իրականության մեջ լուրջ առաջընթաց է ապրում։

## 3. ՊԱՐԲԵՐԱԿԱՆ ՄԱՄՈՒԼ

*Հայ մամուլի սկզբնավորումը կապված է հնդկահայ գաղութի ծոցում XVIII դարի վերջերին սկիզբ առած տնտեսական, քաղաքական տեղաշարժերի հետ։ Առաջին հայ պարբերականը՝ «Ազդարարը» լույս է տեսնում Մադրասում ֆրանսիական հեղափոխության փոթորկոտ տարիներին՝ 1794 թվականին։ Որքան էլ որ նրա քահանա խմբագիրը՝ Հ. Շմավոնյանը նպատակ ուներ խոհեմություն քարոզել, հեռու պահել իր ընթերցողներին Եվրոպայում տարածված հեղափոխական տրամադրություններից, այնուամենայնիվ թերթը չէր կարող չարձագանքել դարաշրջանի լուսավորական գաղափարներին։*

*Շմավոնյանի դիրքորոշումը տարբեր էր Մ. Բաղրամյանի, Շ. Շահամիրյանի քաղաքական ձգտումներից, տարբեր էր նրա տեսակետը ապագա Հայաստանի ղեկավարման սոցիալ-քաղաքական ուղղության մասին։ Դրանով հանդերձ, «Ազդարարը» առաջին հերթին ազդարարում էր ազգային ինքնագիտակցության, լուսավորության տարածման անհրաժեշտությունը։*

*«Ազդարարի» էջերում տպագրվել են հրապարակախոսական հոդվածներ, պատմական ուսումնասիրություններ, ինչպես Խաչատուր Ջուղայեցու «Պատմություն պարսից» գիրքը, Հնդկաստանի պատմությունը վերաբերող դրվագներ, ֆրանսիական հեղափոխության հետ կապված լուրեր, հնդկահայ գաղութի տնտեսական-քաղաքական կյանքը արտացոլող շատ նյութեր, որոնք այժմ ճանաչողական նշանակություն ունեն, բայց իր ժամանակին կարող էին ընթերցվել հետաքրքրությամբ և խթանել մտավոր զարգացման*[25]*։*

*Չնայած այդ բոլորին, ընդամենը մի քանի տասնյակ բաժանորդ ունեցող գրաբար պարբերականը չէր կարող մեծ ազդեցություն ունենալ հայ հասարակական մտքի զարգացման վրա։*

*Նույնը չենք կարող ասել Շիրազեցի Մարտիրոս Մկրտչյանի ջանքերով դրանից քառորդ դար հետո Կալկաթայում լույս տեսած «Շտեմարան» պարբերականի մասին։ Նրա խմբագիրն ունեցել է ավելի լայնախոհ հայացքներ, հմուտ է եղել եվրոպական լեզուներին ու մշակույթին։ «Շտեմարանը» հնդկահայ գաղութի առօրյայի հետ կապված հարցերը առավել մեծ չափով էր լուսաբանում, զետեղում ինքնուրույն և թարգմանական երկեր, հայ աշուղների ստեղծագործություններից նմուշներ և այլն։*

*«Շտեմարանի» էջերում տպագրված թարգմանական երկերի մեջ ուշադրություն են գրավում Շեքսպիրի «Համլետի» ու «Երկու վերոնացիների» մի քանի հատվածները, թարգմանչի՝ Մարտիրոս Մկրտչյանի արժեքավոր դիտողություններով, որոնք փաստորեն հանդիսանում են Շեքսպիրի հայկական առաջին գնահատումները։*

*Հնդկահայ գաղութը ունեցել է նաև այլ պարբերականներ («Օճանասփյուռ», «Եղբայրասեր», «Ազգասեր», «Ազգասեր Արարատյան»)։ Սրանցից հայ հասարակական մտքի վրա անհամեմատ մեծ ազդեցություն ունեցավ Թաղիադյանի խմբագրությամբ լույս տեսնող «Ազգասեր» պարբերականը, որ 1845—1848 թթ.*

---

25 Ա. Կարինյան, *Ակնարկներ հայ պարբերական մամուլի պատմության*, հատ. 1, Երևան, 1956, էջ 192—227։

հրատարակվում էր Արարատյան ընկերության ջանքերով, իսկ երբ 1848 թ. ընկերությունը կազմալուծվեց, խմբագիրը շարունակեց այն հրատարակել իր նյութական սուղ միջոցներով, վերանվանելով «Ազգասեր Արարատյան», և բաժանորդների թվի աստիճանական նվազման պատճառով 1852 թվականին հարկադրված եղավ վերջնականապես դադարեցնել[26]։ «Ազգասեր Արարատյանը», լայն տեղ տալով հանդերձ հնդկահայ կյանքին, համազգային ճանաչում գտավ, հրատարակում էր գրական, բանասիրական, գիտական երկեր, նշանաբան ունենալով ժողովրդի լուսավորությունը։ Դրանով պետք է բացատրել «Ազգասերի» շեշտված դեմոկրատիզմը, անզիջում պայքարը, որ մղում էր կղերա-ավատական գաղափարախոսության, հարուստ դասակարգի դեմ՝ ի պաշտպանություն աշխատավորական խավերի։ Իր պարբերականի էջերում լայն տեղ տալով արևմտաեվրոպական առաջավոր մտքին ու մասնավորապես գրականությանը, Թաղիադյանը ցույց էր տալիս ֆրանսիական գաղութարարների վայրագությունները Ալժիրում, անգլիացիների անխիղճ թալանը Հնդկաստանում, այն անգլիացիների, որոնք քաղաքակրթությունից էին խոսում, բայց բարբարոսական եղանակներով շահագործում էին հնդիկ ժողովրդին։ «Ազգասերը» զգույշ, բայց որոշակի կոչ էր անում զենքով պաշտպանել Հնդկաստանը անգլիական գաղութարարներից։

1848 թ. ֆրանսիական հեղափոխության ըմբոստ գաղափարների պաշտպանությամբ հանդես է գալիս նույն այդ տարիներին (1848—1849) Մադրասում լույս տեսած «Բանասեր» պարբերականը, որի կարճատև, բայց հախուռն դիրքորոշումը Մխիթարյանները գնահատել են որպես «հայ լրագրության հեղափոխության» շրջան[27]։ Պատահական չպիտի համարել, որ այն խափանվում է հնդկահայ վաճառականության տենդոտ պայքարի հետեվանքով։

Վենետիկի Մխիթարյանները դարասկիզբը նշանավորեցին մի ուշագրավ պարբերականով։ 1799 թ. նրանք սկսեցին հրատարակել «Տարեգրություն» փոքրիկ տետրակները։ 1803 թ. դադարում է «Տարեգրությունը» և նրա փոխարեն լույս է տեսնում «Եղանակ Բյուզանդյան» տարեգիրքը և շարունակվում մինչև 1820 թվականը։ 1812—1826 թթ. Վենետիկում լույս է տեսնում «Դիտակ Բյուզանդյանը»։

Դրանից հետո, ավելի քան երկու տասնամյակ Մխիթարյանները պարբերական չեն ունեցել։ Այդ շրջանում լույս են ընծայվել «Դարապատում» ժողովածուները, որոնց յուրաքանչյուր հատորում ամփոփված էին մեկ դարի քաղաքական դեպքերը։ Այս բոլոր հրատարակությունների խմբագիրը եղել է Մխիթարյան հմուտ բանասերներից հ. Ղուկաս Ինճիճյանը։

Մխիթարյանների գրական-բանասիրական հրատարակությունների և պարբերական մամուլի առաջին բնորոշ առանձնահատկությունը լեզուն է։ Զգտելով ստեղծել ընթերցող լայն զանգվածներին հասկանալի գրաբարագերծ մի լեզու, կաթոլիկ վարդապետները հասել են նույնիսկ ծայրահեղու-

26 Ա. Կարինյան, Ակնարկներ հայ պարբերական մամուլի պատմության, հատ. 1, էջ 266—372։

27 Հ. Գրիգորիս Վ. Գալեմքերյան, Պատմություն հայ լրագրության, Վիեննա, 1893, էջ 107։

թյան։ Օրինակ, ակնոց բառի փոխարեն գործածել են աչքնոց, քանի որ ժողովուրդը գործածում էր աչք և ոչ ակն:

Իր այս պարզունակ կերպարանքով հանդերձ, Մխիթարյանների լեզուն ուշագրավ փորձ էր մամուլը դեպի ժողովուրդ տանելու ուղղությամբ։ Այն հետագայում մշակվելով, հղկվելով, քերականական նորմերի մեջ մտնելով՝ դարձավ արևմտահայ մամուլի և գրականության լեզուն՝ աստիճանաբար հարստանալով, առնականանալով ժողովրդական բառ ու բանով և ասույթներով։

«Եղանակ Բյուզանդյանի» նման մի հրատարակության բաժանորդը կամ ընթերցողը առաջին հերթին եվրոպական քաղաքների հետ սերտ հարաբերություն ունեցող հայ վաճառականն էր։ Ուստի պետք էր տալ նրան հետաքրքրող նյութեր՝ աշխարհագրական տեղեկություններ, նավահանգստային քաղաքների գործարքները, տարբեր պետությունների տնտեսական, քաղաքական կառուցվածքին վերաբերող տվյալներ և այլն, նաև ժամանցային այնպիսի նյութեր, որոնք հաճույքով ընթերցվեին աշխարհիկ կյանքով ապրող այդ մարդկանց կողմից։ Այդ բանը հասկանում էր Ղ. Ինճիճյանը և իր հրատարակությունները հետաքրքիր դարձնելու համար չէր խնայում ոչ մի ջանք։

«Եղանակ Բյուզանդյանը» լայն տեղ էր հատկացնում աշխարհագրական, տեղագրական գիտելիքներին, տարբեր երկրներում կատարված գյուտերին, տպագրում զանազան ժողովուրդների կենցաղը, առևտուրը լուսաբանող նյութեր, մեծ պետությունների պետական ու նավագնացային դրոշակները, նախորդ տարում միջազգային կյանքում կատարված քաղաքական դեպքերի սեղմ լրատոմ և այլն։

«Եղանակ Բյուզանդյանի» հրատարակման տարիներին Մխիթարյանները լույս են ընծայել «Դիտակ Բյուզանդյան» պարբերականը՝ Գրիգոր Գափամաճյանի խմբագրությամբ։ Այս վարդապետը չի/ունեցել ո՛չ Ինճիճյանի լայն գիտելիքները, և ո՛չ էլ իրազեկությունը հայ և ընդհանուր պատմության։ Այնուամենայնիվ, 1812—1816 թթ. լույս տեսած վերոհիշյալ հրատարակությունը նույնպես բնութագրական է ժամանակի հասարակական-քաղաքական դեպքերի ընդգրկմամբ և առաջավոր որոշ գաղափարների ընկալմամբ։

Սակայն ո՛չ «Տարեգրությունը», ո՛չ «Եղանակ Բյուզանդյանը» և ո՛չ էլ «Դիտակ Բյուզանդյանը» հայ հասարակական-մշակութային կյանքում չեն կատարել այն դերը, ինչ 1843 թ. լույս տեսնող «Բազմավեպը», որին աշխատակցել են այնպիսի նշանավոր դեմքեր, ինչպես Ղ. Ալիշանը, Գ. Զարպհանալյանը, Հ. Ջոհրապյանը և ուրիշներ։ «Բազմավեպի» առաջին խմբագիրը եղել է Գաբրիել Այվազովսկին։ Նա փաստորեն հետևել է «Եղանակ Բյուզանդյանի» օրինակին, լայն տեղ տալով ոչ այնքան կրոնա-բարոյախոսական քարոզներին, որքան իրական կյանքի թելադրանք հանդիսացող նյութերին՝ պատմություն, աշխարհագրություն, բնագիտություն, հնագիտություն, տեղագրություն, առևտուր, գյուտեր և այլն։

«Բազմավեպը» իր գոյության առաջին երկու տասնամյակում ավելի աշխարհիկ հակում է ունեցել և հայ իրականությանը մոտ կանգնած՝ ավելի է արձագանքել նրա առաջավոր գաղափարներին, քան 1860—1870-ական թը-

վականներին, երբ հասունյանների նենգ մատնությունները մղում են Վատիկանին՝ ավելի աչալրջությամբ հետևելու ս. Ղազար կղզում կատարվող գրական-բանասիրական աշխատանքներին։

«Բազմավեպի» էջերում լույս են ընծայվել բանասիրական և գիտական խոշոր արժեք ներկայացնող բազմաթիվ հոդվածներ, որով և այդ նշանավոր ամսագիրը մնայուն տեղ գրավեց հայագիտության անդաստանում։

Ժամանակագրական կարգով արևելահայ առաջին պարբերականը 1816 թ. Աստրախանում հրատարակված «Արևելյան ծանուցմունք» թերթն է, որը եղել է «Վոստոչնիե իզվեստիա» ռուսերեն պաշտոնաթերթի հայերեն թարգմանությունը։ Այդ թերթի հայերենի խմբագիրն էր տեղի եզվիտյան ուսումնարանի վերատեսուչ Կ. Շահվերդյանը։ Լեզուն գրաբար էր, տպագրել է հիմնականում տեղագրական, վիճակագրական, առևտրական բնույթի հոդվածներ, լուրեր, մանրապատումներ։

Արևելահայ առաջին պարբերականը, 1846—1849 թթ. Թիֆլիսում Հ. Կարինյանի և Միք. Պատկանյանի խմբագրությամբ լույս տեսած «Կովկաս» շաբաթաթերթն է։ Ճիշտ է, այն փաստորեն հանդիսացել է «Кавказ»-ի հայերեն տարբերակը, լույս է տեսել գրաբար, սակայն տպագրել է ոչ միայն քաղաքական լուրեր, պաշտոնական հաղորդագրություններ, կարգադրություններ, այլև ինքնուրույն ու թարգմանական երկեր, փոքրիկ պատմվածքներ։ «Կովկասը» ընթերցվել է Հնդկաստանում, Պոլսում, Զմյուռնիայում։ Հեռավոր այդ վայրերում ապրող հայերը նրա էջերից տեղեկություններ են ստացել արևելահայ կյանքի մասին, ափսոսանքով նշել նրա փակվելը 1849 թվականին[28]։

«Կովկասի» դադարից կարճ ժամանակ անց, 1850 թ. սկսում է լույս տեսնել «Արարատ» պարբերականը՝ Գաբրիել քահանա Պատկանյանի խմբագրությամբ, աշխարհաբար։ Չնայած խմբագրի նկատելի զգուշությանը քաղաքական կյանքի նկատմամբ, «Արարատը» անհամեմատ ավելի լայնորեն է արտացոլել իրական կյանքը, զետեղել ժամանակի առաջավոր մտայնությունը լուսաբանող նյութեր, քան «Կովկասը»։ Նրա էջերում իրենց գրական առաջին փորձերն են արել Միք. Նալբանդյանը, Ռափայել Պատկանյանը։ «Արարատը» առաջինն է հետաքրքրություն ստեղծել հայ աշուղական գրականության նկատմամբ, գնահատել Սայաթ-Նովայի արվեստը, տպագրել երգեր աշուղ Շիրինից, Թուրինջից և ուրիշներից։ Տպագրել է առակներ, պատմվածքներ, նկատելի դեր կատարելով արևելահայ նոր գրականության զարգացման նախաշրջանում։

50-ական թվականների կեսերից Թիֆլիսում լույս է տեսնում «Մեղու Հայաստանի» շաբաթաթերթը, որը գաղափարախոսական ուշագրավ շրջադարձ է կատարում։ Առաջին տարիներին, երբ նրա խմբագիրն էր քահանա Մանդինյանը, հիմնականում արտահայտում էր կղերա-ավատական գաղափարախոսությունը. հետագայում, Պետրոս Սիմեոնյանցի խմբագրության շըր-

---

28 Գ. Ստեփանյան, Խաչատուր Աբովյանը և արևմտահայ գրականությունը, «Գրական-բանասիրական հետազոտություններ», III գիրք, էջ 132—142։

ջանում, հանդիսանալով հանդերձ արևելահայ ազգային-պահպանողական մըտավորականության ձայնափողը, տպագրում էր նաև առաջադիմական մի շարք հոդվածներ, ինչպես Միքայել Պատկանյանի արժեքավոր հոդվածները ընդդեմ Հ. Կարենյանի հետադեմ գաղափարախոսության և նրա ազգայնամոլ պատմական ողբերգությունների։ Այդ հոդվածների տպագրությամբ առաջին անգամ հայ իրականություն մուտք գործեցին Բելինսկու գաղափարները։

1858 թ. Մոսկվայում Ստ. Նազարյանցի խմբագրությամբ լույս է տեսնում «Հյուսիսափայլը» և հրատարակման առաջին ամիսներից դառնում լուսավորական շարժման կենտրոնը արևելահայ կյանքում։ Այդ պարբերականը առաջինը հայ իրականության մեջ ծրագրված պայքար սկսեց կղերա-ավատական գաղափարախոսության դեմ։ Որոշ հարցերում համատեղ հանդես էին գալիս պարբերականի խմբագիր Ստեփանոս Նազարյանցը և գլխավոր աշխատակից Միքայել Նալբանդյանը։ «Հյուսիսափայլը» առաջինն էր հայ իրականության մեջ, որ հիմք դրեց միասնական մշակված լեզվի, ստեղծեց հյուսիսափայլյան դպրոցի գրական լեզու, որով գրում էին ժամանակի ականավոր արևելահայ գրողները՝ Նազարյանցը, Նալբանդյանը, Սմբատ Շահազիզը և ուրիշներ։

«Հյուսիսափայլի» դեմ դուրս եկավ «Մեղու Հայաստանի» լրագիրը՝ Մանդինյան քահանայի խմբագրությամբ։ Մոսկվայում 1859 թ. երևաց Մսերյանցի «Ճռաքաղը», որը նույնպես մոլեգին պայքար սկսեց «Հյուսիսափայլի» դեմ։ Հեռավոր Պոլսում Նազարյանցի ու Նալբանդյանի դեմ պայքարի ճակատ բռնեցին «Երևակը» և «Արևելյան դարը»։ «Ճռաքաղը» սարսափով էր արձանագրում այն փաստը, որ Ստեփանոս Նազարյանցը իր գրքերից մեկում կարծիք էր հայտնում Մարս մոլորակի վրա կյանքի առկայության մասին։ Նա գտնում էր, որ նման բան «երբեք չի ընդունած առաքելական սուրբ եկեղեցին Հայաստանյայց»[29]։ Իսկ «Երևակը», որսալով Նազարյանցի «նյութը զորություն է և զորությունը կյանք» նախադասությունը, գրում էր, թե դա հակասում է քրիստոնեական վարդապետությանը, քանի որ «քրիստոնյայք կը հավատան թե բոլոր տիեզերաց շահողն աստված է, ուստի այս երկու բառերը իրարու հետ փոխանակելով «Հյուսիսափայլին» նախադասությունը այսպես կգտնենք. աստված նյութ է, կամ նյութը աստված է. ահա քեզ մեկ եպիկուրյան հեթանոս մը»[30]։

Պահպանողական բանակի մոլեռանդ քարոզիչներից Հ. Ջերքեզյանը «Մեղու Հայաստանի» պարբերականում հարձակվում էր Ստ. Նազարյանցի վրա այն բանի համար, որ վերջինս համարձակվել էր գրել, թե հայերը Ադամի և Եվայի անմիջական հաջորդները չեն, այլ պատկանում են հնդեվրոպական ցեղախմբին, մինչդեռ, ասում էր Ջերքեզյանը, Մովսես մարգարեն նախաստեղծ մարդու բնակության տեղը որոշել է Եփրատի և Տիգրիսի մոտերքը, ուստի դրախտը եղել է Հայաստանում և հայերն էլ նրա առաջին ժողովուրդը երկրագնդի վրա[31]։

---

29 «Ճռաքաղ», 1850, տետրակ Ե, էջ 178։
30 «Երևակ», 1859, № 94։
31 «Մեղու Հայաստանի», 1860, № 31։

1860 թ. Թիֆլիսում լույս է տեսնում «Կռունկ Հայոց աշխարհին» ամսագիրը։ Ինչպես «Հյուսիսափայլում», «Կռունկում» էլ նկատելի է տարբեր գաղափարների տեր մարդկանց համատեղ գործակցությունը։ Մնալով հանդերձ ազգային-պահպանողական հոսանքի գաղափարախոսը, այն իր էջերում լայն տեղ էր տալիս դեմոկրատական խավերի տրամադրություններն արտահայտող գրողներին, հրապարակախոսներին։ Այստեղ են տպագրվել Պերճ Պռոշյանի «Սոս և Վարդիթեր» վեպը, Գ. Տեր-Ալեքսանդրյանցի կենցաղագրական երկերը Թիֆլիսի բարքաով։ «Կռունկը» տպագրում էր թարգմանություններ արևմտաեվրոպական, ռուսական, վրացական, պարսկական գրականությունից։ Այդ ամսագիրը խոշոր դեր է կատարել արևելահայ նոր գրականության զարգացման գործում և նկատելի ազդեցություն է թողել հասարակական մտքի վրա։ Նրա խմբագիրը՝ Մ. Աղաբեկյանը մոտիկից կապված էր նաև արևմտահայ իրականության հետ, պարբերականում տեղ էր տալիս արևմտահայության հուզող հարցերին, տպագրում Ազգային սահմանադրության տեքստը, «Բարեգործական ընկերության» կանոնադրությունը, նյութեր Զեյթունի դեպքերի մասին։ Ամսագրին աշխատակցում էին նաև արևմտահայ գործիչներ Մ. Մամուրյանը և ուրիշներ։

1866—1867 թթ. Թիֆլիսում լույս է տեսնում «Վաճառական» պարբերականը՝ Գ. Տեր-Ալեքսանդրյանցի խմբագրությամբ և պատմաբան Ալ. Երիցյանի աշխատակցությամբ։ «Վաճառականը» նույնպես արտահայտում էր հայ ազգային-պահպանողական հոսանքի գաղափարախոսությունը և նպատակ ուներ պաշտպանել կովկասահայ առևտրական կապիտալի շահերը։ Ագրարային և այլ հարցերում այն կանգնած էր ցարիզմի ներքին քաղաքականության արդարացման դիրքերում, սակայն այդ բոլորով հանդերձ, նրա ասպարեզ գալը հետաքրքիր երևույթ էր արևելահայ հասարակական կյանքում։ Պարբերականի էջերում տպագրվում էին ոչ միայն տնտեսական, վիճակագրական կարևոր նյութեր, այլև բարձրացվում էին քաղաքատնտեսության հետ կապված մի շարք հարցեր, խոսվում էր աշխատավորական խավերի ընչազրկության և այլ խնդիրների մասին։

Հայ նոր գրականության սկզբնավորման և զարգացման գործում կարևոր դեր խաղաց մամուլը։ Հազվադեպ էին տպագրվում երկեր՝ առանձին գրքերով։ Գրական այնպիսի մի կոթող, ինչպիսին էր «Վերքը», գրվելուց տարիներ հետո միայն արժանացավ տպագրության։ Հայ գրականության, քննադատական մտքի զարգացման գործում խոշոր դեր կատարեց «Հյուսիսափայլը»։ Այդ պարբերականի էջերում լույս տեսան Միքայել Նալբանդյանի «Մեռելահարցուկը», «Հիշատակարանները», չափածո երկերի զգալի մասը, Գ. Տեր-Հովհաննիսյանի «Տեր-Սարգիսը», որը այն վեպերից է, որոնք «հիմք դրին արդյան ազգային վիպասանության», ինչպես ասում էր Միքայել Նալբանդյանը։

Ուշագրավ եզրակացությունների առիթ է տալիս «Հյուսիսափայլի» թարգմանական գրականությունը։ Նազարյանցը գերազանցապես հակված էր թարգմանելու այնպիսի երկեր, որոնք չունեին քաղաքական սրություն։ Դրանցից էին Մարկոս Տուլլիոս Կիկերոնի ատենական ճառերը, ավելի նոր ժա-

մանակներից՝ Բերնարդեն դը Սեն Պիերի «Պավլոս և Վիրգինեն», որի հիմքում ընկած է փախուստը քաղաքային ժխորից, ապավինումը գյուղական իդիլիային, բախտի ու ճակատագրի քմահաճույքին։

Նալբանդյանը «Հյուսիսափայլի» հենց առաջին համարում հայտարարում էր. «Այն մատենագրությունը, որի մեջ իբրև հայելու մեջ չի երևում ազգի կյանքը, նորա և ամենանուրբ գծագրությունքը, այդպիսի մի մատենագրություն, թող ներեն մեզ այսպես ասել ճշմարտությունը, նման է ճիզվիտների կրոնավորությանը»[32]։ Գրականության հասարակական դերը շատ ավելի պարզ Նալբանդյանը ձևակերպել է իր «Մեռելահարցուկ» վեպում, տալով նրան ոչ միայն կյանքը արտացոլելու դեր, այլև այդ կյանքի վերափոխմանը նպաստելու կոչում։ Նալբանդյանի գրականագիտական ըմբռնումները, որոնք սերտորեն կապված էին ռուս վաթսունականների, հատկապես Բելինսկու և Չերնիշևսկու էսթետիկական հայացքների հետ, ի հայտ են եկել թե՛ վերոհիշյալ ինքնուրույն ստեղծագործություններում և թե՛ թարգմանական երկերում։ Պատահական չպետք է համարել նրա թարգմանությունները Պուշկինից, Լերմոնտովից, նաև Հայնեից ու Բերանժեից։

«Հյուսիսափայլի» էջերում Մովսես Բուդաղյանը հանդես եկավ հունգար հեղափոխական բանաստեղծ Պետեֆիից կատարած թարգմանություններով, առ ի զգուշություն չհիշատակելով հեղինակի անունը, իսկ տաղանդավոր մի երիտասարդ՝ Մ. Սադաթյանն, այնտեղ հրատարակեց Լերմոնտովի «Դևի» դասական թարգմանությունը, որը մինչև այսօր էլ մնում է հայ թարգմանական գրականության լավագույն նմուշներից մեկը։

Նույն 40-ական թվականներին է զուգադիպում արևմտահայ իրականությունում մամուլի հանդես գալը։ 1838 թ. Կ. Պոլսում սկսում է լույս տեսնել «Լրո գիր մեծի տերության Օսմանյան» շաբաթաթերթը, որը հետագայում կոչվեց «Հայտարար գիր լրո մեծի տերության Օսմանյան» և շարունակվեց մոտ մեկ տասնամյակ։ Այդ պարբերականը չէր արտացոլում հայ կյանքը, այլ պարզապես թարգմանություն էր թուրքերեն «Թագվիմի վագաի» պաշտոնաթերթի։ Տպագրում էր պաշտոնական գրություններ, հայտարարություններ, պալատական պաշտոնների նշանակումներ, Թուրքիայի ներքին ու արտաքին կյանքին վերաբերող նյութեր։

1840 թ. Խաչատուր Ոսկանյանը՝ Ամերիկայում կրթություն ստացած, զարգացած մի անձնավորություն, փորձում է Պոլսում հիմնել աշխարհաբար մի թերթ, հրատարակում է «Ազդարար Բյուզանդյան» շաբաթաթերթը, սակայն այն կարճ կյանք է ունենում։ Մի քանի համար հրատարակվելուց հետո բաժանորդի պակասի պատճառով վերածվում է գրաբարի և հաջորդ տարում դադարում։

Այն, ինչ չկարողացավ անել Խաչատուր Ոսկանյանը Կոստանդնուպոլսում, արեց Ղուկաս Պալթազարյանը Զմյուռնիայում՝ 1840 թ. աշխարհաբար հրատարակելով «Արշալույս Արարատյան» շաբաթաթերթը։

«Արշալույս Արարատյանը» լույս է տեսել «Թանզիմաթի» հռչակման հաջորդ տարվանից և շարունակվել է մինչև 1886 թ., ապրելով գաղափարական

32 Մ. Նալբանդյան, Երկերի լիակատար ժողովածու, հատ. Շ, էջ 146։

նկատելի տարուբերում։ Հրապարակ գալու առաջին տասնամյակում, հիմնականում արձագանքելով 1848 թ. ֆրանսիական և իտալական հեղափոխություններին և անդրադառնալով հայ ժողովրդի առաջավոր ձգտումները, այդ թերթը նկատելի ծառայություն է մատուցել արևելահայ և արևմտահայ հատվածների փոխադարձ մշակութային կապի ուժեղացման ուղղությամբ։ Հիշարժան փաստ է Խաչատուր Աբովյանի գրական մի պատառիկի առաջին անգամ նրա էջերում երևալը։ Պետք է ենթադրել, որ հայ մեծ լուսավորիչը ծանոթ էր «Արշալույս Արարատյանին», գուցե և եղել է նրա բաժանորդ ընթերցողներից մեկը և ինքն էլ նյութեր է ուղարկել Զմյուռնիա։ Շաբաթաթերթում լայնորեն լուսաբանվել են հայ բանասիրության, գրականության, պատմագրության, արվեստի հետ կապված բազմապիսի հարցեր, ընդարձակ գրախոսականներ են լույս տեսել Զմյուռնիայում տպագրված գրքերի, այդ թվում «Թըշվառներ» վեպի մասին, Վասպուրականի թատրոնի քառամյա գործունեության ընթացքում ծավալուն թատերախոսականներ են երևացել ներկայացվող պիեսների վերաբերյալ։

Պ. Պալթազարյանը, ինչպես շատ այլ լիբերալ մտածողներ, 60-ական թվականների սկզբներից աստիճանաբար թեքվել է դեպի պահպանողականությունը, պայքար սկսելով օրեցօր աշխուժացող դեմոկրատական հոսանքի դեմ։ Նալբանդյանի համախոհների ու տխրահռչակ «Երևակի» միջև մղված պայքարի ընթացքում Պալթազարյանն անցավ հակառակորդ բանակի կողմը, հետզհետե սահելով դեպի հետադիմական ճահիճը։ Սակայն նույնիսկ այս շրջանում նրա թերթի էջերում լույս են տեսել հայ կյանքն արտացոլող շատ թղթակցություններ, ինքնուրույն և թարգմանական առեղծագործություններ։

1846 թ. իր շաբաթաթերթն ուներ նաև Կոստանդնուպոլիսը։ Պատրիարքարանը հրատարակում է «Հայաստան» պարբերականը, խմբագրությունը հանձնելով արևմտահայ «խավարյալների» պարագլուխ Հովհաննես Տերոյենց Չամուռճյանին։ «Հայաստանի» էջերում տպագրվում են պատրիարքարանի որոշումները, կարգադրությունները, կրոնադավանաբանական նյութեր, նաև ինքնուրույն և թարգմանական գրական երկեր, պատմա-բանասիրական նյութեր, ինչպես Անիի հնություններին վերաբերող ընդարձակ մի հոդվածաշար, որտեղ առաջին անգամ փորձ էր արվում վերծանել ավերակների արձանագրությունները։ Թերթը հրատարակել է հայերեն հին ձեռագրերի հիշատակարաններ, Թիֆլիսում գործող Էնֆիաճյան գրատան ձեռագրերի ցուցակը և այլն։

1851 թ. Պոլսում լույս են տեսնում երկու նոր պարբերականներ, դարձյալ աշխարհաբար։ Դրանցից մեկը Հովհ. Հիսարյանի «Բանասեր» ամսագիրն էր, մյուսը՝ Սամաթիա թաղամասի Սահակյան վարժարանի աշակերտների օրգան «Բուրաստանը»։ Սրանք թե՛ իրենց արծարծած հարցերով և թե՛ նյութերի ընտրության ու մատուցման եղանակով շատ նման են միմյանց։ «Բանասերում» տպագրվել է Հ. Հիսարյանի «Խոսրով և Մաքրուհի» աշխարհաբար վեպը։ Երկու պարբերականներն էլ լույս էին տեսնում բավականաչափ հղկված աշխարհաբարով։

1852 թ. «Հայաստան» թերթը վերանվանվում է «Մասիս» և խմբագրությունը հանձնվում Կ. Ութուճյանին՝ լիբերալ մի հրապարակախոսի, որն ու-

նեցել է քառամյա խմբագրական գործունեություն։ «Մասիսը» իր շուրջը համախմբել է աշխատակիցների մեծ բազմություն, թղթակիցներ է ունեցել հայաբնակ գրեթե բոլոր գավառներում։

Արևմտահայ մամուլը բուռն զարգացում ապրեց Ղրիմի պատերազմից հետո,- երբ 1858 թ., ներքին և արտաքին իրադարձությունների ճնշման ներքո, սուլթանը նոր ռեֆորմներ հրապարակեց։ Նույն այդ թվականից Պոլսում ըսկըսեցին լույս տեսնել «Մեղու» պարբերականը՝ Հարություն Սվաճյանի խըմբագրությամբ և «Ջվարճախոս» երգիծաթերթը։ Հրատարակվեցին «Մուսայք Մասյաց» թատերական և «Քնար արևելյան» երաժշտական հանդեսները։



Նմուշներ հայ պարբերական մամուլից (XIX դ. I կես)

Արևմտահայ հասարակական կյանքում խոշոր դեր կատարեց «Մեղուն», որի շուրջը կարճ ժամանակում համախմբվեցին ժամանակի առաջավոր մըտածողները, բուռն պայքար մղելով կղերա-ավատական գաղափարախոսության դեմ։ «Մեղուն» ձեռք մեկնեց արևելահայ առաջավոր մտածողներին, իր էջերում տպագրելով Միքայել Նալբանդյանի ազատասիրական բանաստեղծությունները։ Նա կրքոտ հոդվածներով պայքարում էր ինչպես «Երևակի», հայ կաթոլիկների օրգան «Մեճմուաի հավատիս» (Ծաղկաքաղ լուրերի) հայատառ թուրքերեն թերթի, այնպես էլ «Մասիսի» դեմ։

«Մեղուն» իր թիկունքում ուներ ոչ միայն Պոլսի արհեստավորական էսնաֆ դասին, այլև գյուղական հոծ բազմություն, թղթակցություններ էր տըպագրում գավառներից։ Այդ պարբերականը խոշոր դեր է կատարել լուսա-

վորական-կրթական շարժման ծավալման և հայ ժողովրդի քաղաքական զարթոնքի գործում, դառնալով այդ զարթոնքի ամենակենսունակ շեփորահարը։

1859—62 թթ. «Մեղվի» հետ միասին ռեակցիայի դեմ ուժեղ ծառացումներ է ունենում Կ. Փանոսյանի «Մյունատիի էրճիաս» (Շեփոր այգաբացի) հայատառ թուրքերեն թերթը, որը 1862 թ. փակվում է Զեյթունի դեպքերի առիթով տպագրված ըմբոստ մի հոդվածի համար։ Հետագայում Փանոսյանը հրատարակում է «Մանզումեի էֆքյար» (Մտածումների շարք) հայատառ թուրքերեն ավելի չափավոր թերթը, որը «Մասիսի» հետ միասին իր գոյությունը շարունակում է երկար տասնամյակներ, XX դարասկզբից վերածվելով հայալեզու թերթի։

Զմյուռնիայում լույս են տեսել բազմաթիվ թերթեր ու հանդեսներ, որոնցից ուշագրավ էր դեմոկրատական «Ծաղիկ» պարբերականը։ Եթե «Արշալույս Արարատյանը» այդ թվականներին արդեն արտահայտում էր Զմյուռնիայի աղայական վերնաշերտերի տրամադրությունները, ապա Գր. Չիլինկիրյանի և Ա. Հայկունու կողմից խմբագրվող «Ծաղիկը» հանդիսանում էր դեմոկրատական հոսանքի գաղափարախոսը, լայնորեն արձագանքում էր հայ ժողովրդի տնտեսական ու քաղաքական պայքարին։ «Ծաղկի» էջերում տպագրվել են արձակ, չափածո և հրապարակախոսական բազմաթիվ երկեր, որոնք քաղաքական շեշտված բովանդակություն ունեին և ուղղված էին մի կողմից՝ սուլթանական կառավարության կամակատար հայ էֆենդիների, մյուս կողմից՝ օտարերկրյա ներթափանցման, հատկապես Վատիկանի գործակալների ու անգլո-ամերիկյան միսիոներների դեմ։

Արևմտահայ հասարակական մտքի վրա նկատելի ազդեցություն է ունեցել Ստ. Ոսկանյանը իր «Արևելք» (1856) և «Արևմուտք» (1859—1865) պարբերականներով։ Նա տպագրել է կղերա-ամիրայական գաղափարախոսության դեմ ուղղված կրքոտ հոդվածներ։ «Արևմուտքը» առաջինն էր գաղութահայ պարբերականներից, որ լայն տեղ էր տալիս հայ ժողովրդի արևելահայ և արևմտահայ հատվածների մերձեցման հարցին։ Սուր քննադատության ենթարկելով այդ հատվածներում գործող հետադեմ տարրերին, նա իր պաշտպանության տակ է առնում առաջավոր գործիչներին։ Ստ. Ոսկանյանը եղել է Խ. Աբովյանի «Վերք Հայաստանի» վեպի առաջին ողջունողներից մեկը, գնահատելով առանձնապես նրա աշխարհաբար լեզուն։

Ոսկանյանի դեմ կանգնեց հայ հետադիմական հոսանքը, մի կողմից՝ կաթոլիկական պրոպագանդան, մյուս կողմից՝ «Մասյաց աղավնին», որի խմբագիրն էր Գաբրիել Այվազովսկին։

Փարիզում հրատարակվող պարբերականներից հիշատակության արժանի է «Փարիզ» շաբաթաթերթը, որը խմբագրվում էր Ա. Մուրադյանի կողմից։

Արևմտահայ հասարակական, մտավորական կյանքում խոշոր իրադարձություն էր գավառական մամուլի ստեղծումը 1850-ական թվականների վերջերին, Մկրտիչ Խրիմյանի ջանքերով։ Նա 1855 թ. Կ. Պոլսում հրատարակում է «Արծվի Վասպուրական» պարբերականը, նպատակ ունենալով հիմնականում արտացոլել գավառական կյանքը։ 1858 թ. նա այդ պարբերականը հրատարակում է Վանի Վարագա վանքում (փակվել է 1864 թ.), տեղի ժա-

ռանգավորաց վարժարանի բարձր դասարանների աշակերտների ու շրջանավարտների ջանքերով։

Գ. Սրվանձտյանցը 1863—1865 թթ. Տարոնում (Մուշ) լույս է ընծայում «Արտոսր արծվիկ Տարոնո» պարբերականը, որի ազդեցության շրջանակն անհամեմատ փոքր էր։

Հայ պարբերական հրատարակությունները, որոնց թիվը 60-ական թվականների վերջերից անցնում էր հարյուրից, մասնավորապես դարի կեսերին հանդիսանում էին տարբեր հոսանքների գաղափարախոսներ, ունեին շեշտված դիրքորոշում հասարակական-քաղաքական հրատապ հարցերի նկատմամբ, ինչպիսիք էին ագրարային հարցը, հայ ժողովրդի ազգային-ազատագրական պայքարի, ազգային մշակույթի ստեղծման, աշխարհաբար գրական լեզվի մշակման հարցերը և այլն։

## 4. ՀԱՅԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ

XVIII դարի վերջին տասնամյակներին և XIX դարի կեսերին հայագիտությունը բուռն զարգացում ապրեց։ Մինչև 1870-ական թվականները անմիջան աշխատանք էր կատարված հայ հին մատենագրության, լեզվի, պատմության ուսումնասիրման բնագավառում։ Հրատարակվել էին հայ պատմագիրներից մի քանիսի երկերը ու Մխիթար Աբբայի «Բառգիրք Հայկազեան լեզուի» աշխատությունը (1749), «Քերականութիւնը» (1730) և այլն։

1784—1786 թթ. Վենետիկում լույս է տեսնում Մխիթարյան միաբանության բազմարդյուն գիտնականներից Միքայել Չամչյանի եռահատոր «Հայոց պատմությունը», որն իր ծավալով, նյութի ընդգրկմամբ, հայ և օտար սկզբնաղբյուրների լայն օգտագործմամբ աննախընթաց գործ էր։

Ժամանակագրական կարգով Չամչյանից հետո խոշորագույն հայագետը Հ. Ղ. Ինճիճյանն է։ Նա դարասկզբին (1806) հրատարակում է Հայաստանի մանրամասն աշխարհագրությունը մի հատորում, որը կազմում է Ստ. Գյուվեր Ագոնցի «Աշխարհագրութիւն չորից մասանց աշխարհի» բազմահատոր գործի՝ Ասիային նվիրված բաժնի Ա հատորը։ Այն պարունակում է Հայաստանի մանրամասն տեղագրությունն ըստ ճշգրտված վայրերի, որոշելով հազարավոր տեղանուններ՝ քաղաքներ, գյուղեր, գետեր, բերդեր, հնություններ և այլն։ Մինչև այսօր էլ այն չի կորցրել արժեքը և հարուստ նյութ կարող է տալ Հայաստանի արևելյան և արևմտյան հատվածների աշխարհագրությունը ուսումնասիրողներին։

1822 թ. դարձյալ Վենետիկում լույս է տեսնում նույն հեղինակի «Ստորագրութիւն Հին Հայաստանեայց» ստվարածավալ աշխատությունը, որտեղ առաջին անգամ փորձ է արվում ներկայացնել պատմական Հայաստանի 15 նահանգների վիճակը, ճշտելով այդ նահանգների տեղը, փոխհարաբերությունը, իսկ 1835 թ. լույս է տեսնում նրա «Հնախօսութիւն աշխարհագրական Հայաստանեայց աշխարհի» եռահատոր հետազոտությունը։

Հայագիտական մտքի զարգացմանը, մասնավորապես հայոց լեզվի ուսումնասիրմանը մեծապես նպաստել է Հարություն Ավգերյանը։ Նա հայ հին

մատենագրության, գրաբար և աշխարհաբար լեզուների խոր իմացությանը միացնում էր մի շարք լեզուների և արևմտաեվրոպական գրականության ու մշակույթին քաջատեղյակ լինելու կարողությունը։ Հեղինակել է լեզվաբանական, բառարանագրական արժեքավոր մի քանի երկեր։ Դրանցից կարևորն է 1821 թ. լույս տեսած «Բացատրութիւն չափուց և կշռոց նախնեաց» հետազոտությունը, ուր հեղինակը քննության է առնում Անանիա Շիրակացու «Յաղագս կշռոց և չափուց» աշխատության մեջ օգտագործված և չափ ու կշիռ ցույց տվող բազմաթիվ բառեր, փորձում ստուգաբանել դրանք, համեմատելով հունարենի, եբրայերենի, պարսկերենի և այլ լեզուների հետ։

1836—1837 թթ. Վենետիկում լույս է տեսնում «Նոր բառգիրք Հայկազեան լեզուի» մեծադիր երկհատոր բառարանը (հեղինակներ՝ Գ. Ավետիքյան, Մ. Ավգերյան և Խ. Սյուրմելյան), որը իրավամբ համարվում է հայ բառարանագրության թագն ու պսակը և այսօր էլ չի կորցրել իր գիտական արժեքն ու գործնական նշանակությունը։ Պարունակում է մինչ այդ թվականները գիտությանը հայտնի մեր հին մատենագրության բոլոր նմուշների գրաբար բառերի բացատրությունը, ստուգաբանությունը՝ անհրաժեշտ վկայություններով։ Առաջին անգամ այստեղ ստուգաբանված ենք գտնում հազարավոր բառեր, համեմատված հունարեն, լատիներեն, պարսկերեն, ասորերեն և այլ լեզուների համապատասխան բառերի հետ։ Երեք հեղինակներից Մկրտիչ Ավգերյանը, որի մասնակցությունը ավելի մեծ է եղել, քան մյուս երկուսինը, 1846 թ. հրատարակում է նույն բառարանի համառոտ խմբագրությունը մեկ հատորով, կոչելով այն «Առձեռն բառարան հայկազեան լեզուի», որը պարունակում էր նաև նախորդից դուրս մնացած 5000 լրացուցիչ բառեր։ Մխիթարյանների «Նոր բառգիրք Հայկազեան լեզուի» գործը մեծապես նպաստել է հայ բանասիրական մտքի զարգացմանը։

Բառարանագրությանը զուգընթաց հրապարակ են գալիս հայոց լեզվի քերականությանը նվիրված աշխատություններ։ 1779 թ. լույս է տեսնում Մ. Չամչյանի «Քերականութիւն Հայկազեան լեզուի» աշխատությունը, որը հետագայում հրատարակվում է նաև համառոտ խմբագրությամբ և արժանանում մի շարք տպագրությունների (Վենետիկ, Թիֆլիս, Մոսկվա, Շուշի և այլուր)։ Ինչպես Չամչյանի «Հայոց պատմությունը» երկար ժամանակ եղել է միակ ձեռնարկը հայ ժողովրդի պատմությունը սովորողների և ուսումնասիրողների համար, նրա քերականությունն էլ հայ կյանքում կատարել է նույն դերը, ավելի քան մեկ դար մնալով գրաբարի ուսուցման լավագույն ձեռնարկը, նույնիսկ այն տարիներին, երբ հրապարակի վրա կային Արսեն Բագրատունու և այլոց ավելի մշակված քերականությունները։

Հայագիտության զարգացմանը նպաստեցին օտար լեզուներից հայերեն բառարանների ասպարեզ գալը։ Բառարանագրության զարգացումը առաջին հերթին պետք է բացատրել հայ ժողովրդի ճակատագրով, տարբեր երկրների հետ ունեցած առնչություններով։

1788 թ. Պետերբուրգում լույս է տեսնում Գր. Խալդարյանի կազմած առաջին «Հայ-ռուս բառարանը»։ Դրան հաջորդում են ռուսերենի նոր բառարաններ ու ձեռնարկներ, որոնցից հիշատակության արժանի են Հար. Ալամ-

———

գարյանի «Ռուս-հայ բառարանը» (Մոսկվա, 1821), Աղ. Խուդաբաշյանի երկհատոր «Հայ-ռուս բառարանը» (Մոսկվա, 1838)։

1840-ական թվականներին Խաչատուր Աբովյանը կազմում է «Նոր տեսական և գործնական քերականություն ռուսաց վասն հայոց» ձեռնարկը ըստ Վիրոբդի գիմնազիայի ռուսաց լեզվի ուսուցիչ Ավգուստ Վիլհելմ Տապպեի մի աշխատության։ Աբովյանի այս գործը մնացել է անտիպ, լույս է տեսել միայն մեր օրերում, սակայն տարակույսից վեր է, որ մեծ լուսավորիչն այն օգտագործել է իր մանկավարժական գործունեության ընթացքում։

Մխիթարյանները դարասկզբից սկսեցին հրատարակել մի շարք բառարաններ ու օժանդակ ձեռնարկներ՝ «առաջնորդ»-ներ, ինչպես կոչում էին իրենք, եվրոպական լեզուների վերաբերյալ։ 1804 թ. նրանք հրատարակում են Մ. Ջախջախյանի «Բառարան յիտալական լեզուէ ի հայ և ի տաճիկ բարբառ» աշխատությունը, կազմված «ի պէտս զարգացելոց», այսինքն՝ ուսումնականների, բանասերների համար։ Հետագայում, 1837 թ. այն արժանանում է երկրորդ տպագրության, ավելի ճոխացված բովանդակությամբ։ Դրանից քառորդ դար անց լույս է տեսնում նույն բառարանի գործնական նպատակներ հետապնդող համառոտ խմբագրությունը։

Լույս են տեսնում ֆրանս-հայ և անգլո-հայ բառարաններ, կազմված Մխիթարյան միաբանության անդամ Հարություն Ավգերյանի կողմից։ Նա 1812 թ. հրատարակում է «Բառարան համառօտ ի գաղղիականէ ի հայ» աշխատությունը, որի երկրորդ տպագրությունը կատարվում է 1840 թվականին։ Հետագայում լույս են տեսնում ֆրանսերեն-հայերեն այլ բառարաններ։ 1820-ական թվականների սկզբներից Հար. Ավգերյանը հրատարակում է անգլո-հայ բառարաններ ու քերականություններ (կազմված 1816 թվականին, ս. Ղազար կղզում հայերեն սովորող Ջորջ Գորդոն Բայրոնի օժանդակությամբ)։ Ճիշտ է, դրանից առաջ մի փոքրիկ, գրպանի բառարան երևացել էր Հնդկաստանում, սակայն նման գիտական բառարանների ու ձեռնարկների հիմքը դրվում է 1812 թ. հրատարակված «Բառարան համառօտ ի գաղղիականէ ի հայ», 1825 թ. լույս տեսած «Բառարան անգղիերէն և հայերէն» աշխատություններով, որոնք հետագայում նույնությամբ կամ համառոտ խմբագրությամբ արժանացել են նոր տպագրությունների։

1840-ական թվականներից երևում են բառարաններ և ձեռնարկներ հին հունարենի հետ կապված, որոնցից հիշատակենք Արիստակես և Ստեփանոս Ազարյանների «Բառարան հելլենական և հայ լեզվացը»։ Հետագայում այս ուղղությամբ նկատելի դեր է կատարում հայազգի մի հույն բանասեր՝ Դմիտրի Ջոլագիտիսը, որը հաճախ ստորագրել է նաև Ջոլագյան, ինչպես «Բառարան Նոր հայերենե ի հունարեն» գրքի վրա (Կ. Պոլիս, 1870)։

Տպագրվում են քերականության, ընթերցանության ձեռնարկներ, զանազան լեզուների հետ կապված, ինչպես «Առաջնորդ անգլիերեն և հայերեն զրուցատրության» (Փարիզ, 1855), «Առաջնորդ գաղղիերեն և հայերեն զրուցատրության» (Փարիզ, 1855), «Առաջնորդ հայերեն և հունարեն զրուցատրության» (Կ. Պոլիս, 1869) և այլն։

Հայագիտության զարգացման կարևոր արտահայտություններից մեկն էր հայ հին մատենագրության հետազոտումն ու թարգմանությունը օտար լե-

զուներով, ինչպես և հայոց լեզվի ուսումնասիրումը օտար համալսարաններում և օտար արևելագետների կողմից։ Մինչև 1860-ական թթ. տարբեր լեզուներով թարգմանվել են հայ հին գրականության ու պատմագրության կարևոր գրեթե բոլոր նմուշները։ Խորենացու «Հայոց պատմությունը» համառոտաբար լատիներեն էր թարգմանվել դեռևս 1723 թ. և տպագրվել Ստոկհոլմում՝ Հ. Բրենների կողմից։ Վիստոն եղբայրները լատիներեն մի անկատար թարգմանություն հրատարակեցին Լոնդոնում՝ 1736 թվականին։ Ապա այն լույս է տեսել ռուսերեն, Հովսեփ Հովհաննիսյանի թարգմանությամբ (1809), ֆրանսերեն (Փարիզ, 1836, Վենետիկ, 1841, դարձյալ Փարիզ, 1855), իտալերեն (Վենետիկ, 1841, 1851) և այլն։ Եղիշեի «Վարդանանց պատերազմը» թարգմանվել է անգլերեն (Լոնդոն, 1830), իտալերեն (Վենետիկ, 1840), ֆրանսերեն (Փարիզ, 1844), ռուսերեն (1853 և այլն)։ Եզնիկի «Եղծ աղանդոցից» հատվածներ էին թարգմանվել ֆրանսերեն, գերմաներեն, ռուսերեն, անգլերեն և այլ լեզուներով։

Մի քանի լեզուներով թարգմանվել էին Ղազար Փարպեցին, Փավստոս Բուզանդը, Կորյունը, Ագաթանգեղոսը, Սեբեոսը և այլ պատմագիրներ[33]։

Այս բոլորը լայն հետաքրքրություն էր ստեղծել հայ հին մատենագրության շուրջը Եվրոպայում և Ռուսաստանում, բազմաթիվ գիտնականներ հետևվում էին արևելագիտությանը, մասնավորապես հայագիտությանը։

Նոր դարաշրջանի առաջին տասնամյակներից հայագիտությանը զարկ է տրվում նաև եվրոպական համալսարաններում։ XVIII դարի վերջերից Փարիզի Արևելյան կենդանի լեզուների դպրոցում հայոց լեզու է դասավանդում Շահան-Ջրպետյանը։ Մի քանի տարվա ընդմիջումից հետո, նա 1811 թ. նորից է ստանձնում այդ պաշտոնը, շարունակում երկար տարիներ, պատրաստելով մի շարք օտարազգի հայագետներ, որոնք նվիրվում են հայոց լեզվի ու մատենագրության ուսումնասիրմանը։ Նույն դպրոցի հրատարակությամբ 1823 թ. լույս է տեսնում Շահան-Ջրպետյանի «Քերականութիւն արամեան լեզուի» ֆրանսերեն ստվարածավալ աշխատությունը։ Այն օգտակար դեր է կատարել հայոց լեզուն օտարներին ծանոթացնելու գործում։ Շահան-Ջրպետյանի սաներից էր ականավոր արևելագետ Սեն-Մարտենը, որը մեծ գործ է կատարել հայ լեզվի հետազոտման բնագավառում, հատկապես 1818—1819 թթ. Փարիզում հրատարակած «Հիշատակագիրք Հայաստանի մասին» և այլ ֆրանսերեն աշխատություններով։ Վերջինս 1822 թ. Փարիզում հիմնադրում է «Journal Asiatique» արևելագիտական հանդեսը, որն իր էջերում պարբերաբար տպագրել է հոդվածներ հայ ժողովրդի պատմության, գրականության, լեզվի և հնությունների մասին։

1840—1850-ական թթ. հայագիտությունն ավելի լայն զարգացում է ապրում Ֆրանսիայում։ Արևելագիտական մասնագիտական հանդեսներն ավելի հաճախ են անդրադառնում հին Հայաստանի պատմությանն ու հոգևոր կյանքին, միաժամանակ մեծանում է հետաքրքրությունը դեպի հայկական ըսկզբնաղբյուրները, որոնք օժանդակում էին ոչ միայն հայ, այլև բազմաթիվ ուրիշ ժողովուրդների պատմության հանգուցային հարցերի ուսումնասիրմա-

33 Գ. Զարպհանալյան, Հայկական հին դպրության պատմություն, Վենետիկ, 1866։

նը, ինչպես վրաց, հույն, արաբ, պարսիկ և այլ ժողովուրդների։ Ասպարեզ են գալիս մարդիկ, որոնք ամբողջովին նվիրվում են հայագիտությանը։ Դրանցից առավել բեղմնավոր գործունեություն են ունեցել է. Դյուլորիեն, Մ. Բրոսեն, Վ. Լանգլուան և ուրիշներ։ Սրանք հիմնովին սովորում են գրաբար լեզուն, ուսումնասիրում հայ հին մատենագրությունը, մեր ժողովրդի պատմությունը, հաճախ ճանապարհորդում են Հայաստանում ու Վրաստանում, տեղում հավաքում նյութեր, ծանոթանում հին ձեռագրերին ու իրենց եզրակացությունները հրատարակում «Journal Asiatique», «Revue de deux mondes» և այլ պարբերականներում, գիտական աշխարհում մեծ հետաքրքրություն ստեղծելով դեպի Արևելքի ժողովուրդները, մասնավորապես դեպի հայերն ու նրանց դարավոր մշակույթը։ Այս հայագետները ծրագրված աշխատանք են կատարում հայկական սկզբնաղբյուրների թարգմանության ու գիտական հրատարակության ուղղությամբ, կցելով հմտալից ծանոթագրություններ, դարաշրջանը, մտավոր միջավայրը ներկայացնող հետազոտություններ։ Այսպես, Ֆլորիվալը թարգմանում և հրատարակում է Մովսես Խորենացու «Հայոց պատմությունը», Եղնիկ Կողբացու «Եղծ աղանդոցը»՝ այդ երկու մատենագիրներին հատկացնելով ընդարձակ հետազոտություններ։

Բեղմնավոր գործունեություն է ունեցել էդ. Դյուլորիեն, իր ամբողջ կյանքը հայագիտությանը նվիրած մի գիտնական, որը մեր լեզուն սովորել էր Մխիթարյանների Փարիզի Մուրադյան վարժարանում։ Նա հայ հին և նոր գրականության, պատմության, մշակույթի մասին գրել է տասնյակ հետազոտություններ, որոնք լույս են տեսել հանդեսներում կամ առանձին գրքերով։ Նա 1850—1858 թթ. Փարիզում հրատարակել է Միքայել Ասորու, Մատթեոս Ուռհայեցու երկերի ֆրանսերեն թարգմանությունները, «Հետազոտություն հայկական ժամանակագրության» աշխատությունը և այլ գրքեր։ Նրա ամենից ծավալուն հրատարակությունն է «Հավաքումն խաչակրաց պատմըչաց» ժողովածուն, որտեղ տեղ էր տրված Մատթեոս Ուռհայեցուն, Միքայել Ասորուն, Ներսես Լամբրոնացուն և խաչակիրների արշավանքների մասին խոսող այլ պատմիչների։ Դյուլորիեն հետաքրքրվել է նաև հայ ժողովրդական երգերով ու ավանդություններով, հրատարակելով «Ուսումնասիրություն հին Հայաստանի պատմական երգոց և ժողովրդական ավանդությանց» վերնագրով մի գիրք։

Հայագիտության զարգացման գործում նվազ դեր չի կատարել Մ. Բրոսեն։ Նա ճանապարհորդել է Վրաստանում և Հայաստանում, եղել Էջմիածնում, Անիում, ուսումնասիրել հայ հին ձեռագրերը, ծանոթացել հնություններին, գրել իր ճանապարհորդական տպավորությունները, հատուկ գրքույկներ հրատարակել Էջմիածնի վանքի, Անիի ավերակների, առանձին ձեռագրերի մասին։ Չնայած նրա հետաքրքրության հիմնական շրջանակը եղել է վրացագիտությունը և այդ բնագավառը օժտել է մեծարժեք հետազոտություններով, որոնց համար լայնորեն օգտագործել է հայկական սկզբնաղբյուրները, սակայն պատկառելի թիվ են կազմում նաև նրա հայագիտական հետազոտությունները[34]։ Նա բեղմնավոր աշխատանք է կատարել հայ հին մատենագիրնե-

34 Գ. Զարպհանալյան, Ուսումնասիրություն հայ լեզվի և մատենագրության (ըստ Ֆ. Ա. Շրումպֆի), Վենետիկ, 1895, էջ 136—160։

րի թարգմանության ու գիտական հրատարակության ուղղությամբ։ Նրա թարգմանությամբ լույս են տեսել Կիրակոս Գանձակեցու, Ուխտանեսի, Ստ. Օրբելյանի, Թովմա Արծրունու, Սամուել Անեցու և այլ պատմագիրների երկերն ամբողջապես կամ հատվածաբար[35]։

Ֆրանսիացի հայագետներից հիշատակության արժանի է նաև Վ. Լանգլուան, որը նույնպես ունի հին Հայաստանի հոգևոր մշակույթին վերաբերող հետազոտական և թարգմանչական մի շարք հրատարակություններ։ 1852—1853 թթ. նա գիտական ուղևորություն է կատարում Կիլիկիայում, հավաքում հին արձանագրություններ, դրամներ, նյութական կուլտուրայի նըմուշներ, վերադառնալով Փարիզ, հրատարակում է իր տեղեկագիրը՝ 1854 թ., իսկ 1861 թ. լույս է ընծայում ավելի ընդարձակ եզրակացությունները՝ «Ուղևորություն Կիլիկիայում և Տավրոսյան լեռներում» վերնագրով։ Ի թիվս շատ բնագավառների, Լանգլուան հետաքրքրվել է նաև դրամագիտության հարցերով, հրատարակել «Դրամագիտություն Հայաստանի միջին դարու» (Փարիզ, 1852), «Ընդհանուր դրամագիտություն Հայաստանի» (1858) գրքերը։ Կատարել է գիտական հրատարակություններ, որոնցից հիշենք Հեթում պատմիչի ֆրանսերեն թարգմանությունը[36]։

Հայագիտության նկատմամբ լուրջ հետաքրքրություն են ցուցաբերում գերմանացի արևելագետները։ Նրանց է պատկանում հայերեն լեզվի համգամանալից հետազոտության, հնդեվրոպական լեզվախմբում նրա տեղի որոշման, պատմա-համեմատական լեզվաբանության մեթոդով բազմաթիվ հայերեն բառերի ստուգաբանության պատիվը, ծանրակշիռ մի աշխատանք, որ սկիզբ առավ 1830-ական թվականներին՝ Ֆրանց Բոպպի, Հայնրիխ Պետերմանի, Ֆրեդերիխ Վինդիշմանի, Ռիխարդ Գոշեի ջանքերով և իր ավարտին հասավ Հյուբշմանի, Մեյեի, Հր. Աճառյանի հետազոտություններով։ Պետերմանը հայոց լեզուն հիմնովին ուսումնասիրել էր Մխիթարյանների մոտ։ Նա 1837 թ. հրատարակում է «Հայոց լեզվի քերականությունը» գերմաներեն աշխատությունը, հետագայում մի քանի հրատարակությամբ լույս ընծայում նաև նրա համառոտ խմբագրությունը, քերականական հարցերին զուգընթաց ստուգաբանելով հայերեն մի շարք բառեր։ Պետերմանը հրատարակել է հայագիտական աշխատություններ՝ նվիրված Մովսես Խորենացուն, հայկական երաժշտությանը, Ագուլիսի բարբառին և այլն։ Ճանապարհորդելով Արևելքում, նա տպագրել է իր երկհատոր ուղեգրությունը, որտեղ հարուստ տեղեկություններ է տալիս հայ ժողովրդի կենցաղի, սովորությունների, հոգևոր մշակույթի մասին[37]։

Պետերմանի քերականությունից մոտ մեկ տասնամյակ անց, 1846 թ., Բավարիայի գիտությունների ակադեմիայի արևելագետ պրոֆեսորներից Վինդիշմանը հրատարակում է «Հայերենի տեղը արիական լեզուների մեջ» աշխատությունը նույն ակադեմիայի տեղեկագրում և հիմնավորում հայերենի կապը հնդեվրոպական լեզուների հետ, առաջ քաշելով նրա իրան-

35 Նույն տեղում, էջ 187—218։
36 Նույն տեղում, էջ 219—228։
37 Նույն տեղում, էջ 279—284։

յան լեզվաճյուղին պատկանելու տեսությունը։ Նույն հարցի խորացմանն ու հիմնավորմանն են նվիրված Ռիխարդ Գոշեի «Ներածություն հայկական լեզվի և ցեղի արիական բնույթի մասին» լատիներեն հետազոտությունը (Բեռլին, 1847), Ֆրանց Բոպպի, Ֆրիդրիխ Մյուլլերի աշխատությունները։

1831—1833 թթ. լույս է տեսնում Ս. Ն. Գլինկայի «Հայ ժողովրդի պատմության տեսությունը», որը առաջինն է ռուս հասարակությանը ծանոթացնում հայ ժողովրդի պատմության հիմնական դրվագներին։ Նույն թվականներին Մոսկվայում լույս են տեսնում «Собрание актов, относящихся к обозрению истории армянского народа» ժողովածուի երեք հատորները, որոնք պարունակում են հայ ժողովրդի պատմությանը վերաբերող կարևոր վավերագրեր։

Սկսած 1840-ական թվականներից հայոց լեզվով զբաղվում են Ռուսաստանի բարձրագույն ուսումնական հաստատությունները։ 1842 թ., գերազանցապես Ստ. Նազարյանցի օժանդակությամբ, Կազանի համալսարանում ստեղծվում է հայոց լեզվի ամբիոն։ Մի քանի տարի անց, 1845 թ., Մկ. Բերոյանի ջանքերով Պետերբուրգում հիմք է դրվում հայերեն, վրացերեն, ադրբեջաներեն լեզուների ամբիոնի, որը նկատելի գործունեություն է ծավալում այդ լեզուների գիտական ուսումնասիրման բնագավառում։ Հետագայում ամբիոնը վերածվում է արևելյան լեզուների ֆակուլտետի՝ հայերենի, վրացերենի և ադրբեջաներենի բաժիններով։

Հայագիտությունը որոշ զարգացում է ապրում նաև արևելահայ և արևմտահայ կյանքում։ 1826 թ. Կ. Պոլսում տպագրվում է Գևորգ դպիր Պալատեցու «Պարսկերեն-հայերեն» ստվար բառարանը, որի վերջում հեղինակը տալիս է հայերեն մի շարք բառերի ստուգաբանությունը, կապված պարսկերենի հետ, նաև հիշատակում հունարենից, պարսկերենից վերցված շատ բառեր։

Արևելահայ իրականությունում այս բնագավառում մեծ դեր են կատարել Ստ. Նազարյանցը, Պ. Շանշյանը, Մկրտիչ Էմինը, Ք. Պատկանյանը, Գևորգ Ախվերդյանը և ուրիշներ։ Էմինը և Ստ. Նազարյանցն իրենց աշխատությունները հրատարակելով ռուսերեն՝ նպաստում են հայ մատենագրության ու լեզվի ծանոթացմանը ռուսական գիտական շրջաններին։

1844 թ. Կազանի համալսարանը հրատարակում է Ստ. Նազարյանցի «Беглый взгляд на историю Гайканской литературы до конца XIII столетия» աշխատությունը, որտեղ տրվում է հայ հին մատենագրության ընդհանուր ուրվագիծը։ Դարձյալ Կազանում, երկու տարի անց, լույս է տեսնում Նազարյանցի ռուսերեն մի այլ աշխատությունը՝ «Обозрение истории Гайканской письменности в новейшие времена» գիրքը։

1853 թ. ռուսերեն լույս է տեսնում Եղիշեի «Վարդանանց պատերազմը»՝ Պ. Շանշյանի թարգմանությամբ և հմուտ առաջաբանով, որը լայն հետաքրքրություն է առաջացնում ռուս մտավորականության շրջանում։ Այդ թարգմանությունը դրական արձագանք է գտնում «Օտեչեստվեննիե զապիսկի» և «Սովրեմեննիկ» ամսագրերում։

Ռուսաստանում հայագիտության զարգացմանը խթանում է Լազարյան ճեմարանի դասախոսներից Մկրտիչ Էմինը։ Նա հրատարակել է պատմա-

բանասիրական բնույթի մի շարք ուսումնասիրություններ ռուսերեն լեզվով, կատարել հայ պատմագիրների երկերի գիտական հրատարակություններ, նրանց կցելով համալից առաջաբաններ, ծանոթագրություններ։ 1850 թ. Մոսկվայում լույս է տեսնում Էմինի «Վեպք հնոյն Հայաստանի» նշանավոր աշխատությունը, որտեղ հեղինակը քննության է առնում հայ ժողովրդի հոգևոր մշակույթի շատ կարևոր հարցերից մեկը՝ Մովսես Խորենացու «Պատմության» մեջ հիշատակված նախաքրիստոնեական շրջանին վերաբերող առասպելները, դրանց մեջ գտնում օրգանական կապ և հանգում այն եզրակացության, թե այդ առասպելները նախապես մի ամբողջություն են կազմել։ Փաստորեն հայ ժողովրդական բանահյուսության գիտական ուսումնասիրումն սկսվում է Մ. Էմինի արժեքավոր այս աշխատությամբ, որը հանդիսացավ ուղեցույց հետագա տասնամյակների բանասիրական մտքի համար։



Մկրտիչ Էմին

Էմինը գրավոր սերտ կապ է պահպանել արևմտաեվրոպական հայագետների, մասնավորապես, Դյուլորիեի, Լանգլուայի և այլոց հետ։

Հայագիտական բեղուն գործունեություն է ունեցել Քերովբե Պատկանյանը։ Կրթություն ստանալով Մոսկվայի Լազարյան ճեմարանում, Դորպատի համալսարանում և Պետերբուրգի մանկավարժական ինստիտուտում, նա հիմնովին տիրապետում է հին և նոր հայերեններին, ռուսերենին, գերմաներենին, ֆրանսերենին։ Հայ հին մատենագրության հետ կապված հարցերի, գրաբար լեզվի, բարբառների մասին ռուսական գիտական պարբերականներում կամ առանձին գրքերով նա հրատարակում է մեծարժեք հոդվածներ, որոնցից շատերն արտատպվում են նաև ֆրանսիական ու գերմանական արևելագիտական հանդեսներում։ Բանասիրական ծանրակշիռ մի հետազոտություն է հատկապես Պատկանյանի «Исследование о составе армянского языка» աշխատությունը (1864), որը Դյուլորիեի ջանքերով զետեղվում է նաև «Journal Asiatique»-ում և ջերմորեն գնահատվում արևելագետների կողմից[38]։

Շոշափելի աշխատանք է կատարվում նաև միջնադարյան և ժամանակակից ժողովրդական բանահյուսության հավաքման, հետազոտման և հրատարակման ուղղությամբ։ Թիֆլիսի «Արարատ» պարբերականում լույս են տեսնում նյութեր Սայաթ-Նովայի և աշուղ Շիրինի մասին, Վենետիկում Ղ. Ա-

38 Մանրամասն տե՛ս Գ. Ջահուկյան, նշվ. աշխ., էջ 372—384։

լիշյանը հրատարակում է «Ռամկական երգք հայոց» ժողովածուն՝ հայերեն և անգլերեն լեզուներով, Պոլսում լույս են տեսնում երգարաններ, Պետերբուրգում հրատարակվում է Մ. Միանսարյանի «Քնար հայկական» ժողովածուն և այլն։ Թիֆլիսի հայերի մտավոր կյանքի, բանահյուսության և աշուղական գրականության հետազոտման գործում մեծ երախտիք ունեն Գևորգ Ախվերդյանը, Գ. Տեր-Աղեքսանդրյանը և ուրիշներ։ Սրանցից առաջինը, որը, ինչպես ինքն է ասել, մի քանի տարի հավաքել էր «կենդանի աղբյուրից հանած կենդանի նյութեր»՝ առակներ, առածներ, վիճակախաղեր, աշուղական երգեր և այլն, 1852 թ. Մոսկվայում հրատարակում է Սայաթ-Նովայի հայերեն երգերի ժողովածուն ընդարձակ առաջաբանով, ծանոթագրություններով և Թիֆլիսի բարբառին նվիրված արժեքավոր մի ուսումնասիրությամբ, հաստատուն պատվանդանի վրա դնելով ոչ միայն սայաթնովագիտությունը, այլև առհասարակ ժողովրդական-աշուղական գրականության հետազոտման գործը։

Ախվերդյանը հնարավորություն չունեցավ լույս ընծայելու իր մոտ գտնվող ժողովրդական երգերը, ծիսակատարությունները և այլն։ Այդ գործը կատարեց նրա հետքերով ընթացող Գևորգ Տեր-Աղեքսանդրյանը, որն իր հավաքած հարուստ նյութի մի մասը հետագայում հրատարակեց «Թիֆլիսի հայոց մտավոր կյանքը» ժողովածուի Ա հատորում։

Այսպիսով, մինչև XIX դարի 50—60-ական թվականները հայագիտությունը բուռն զարգացում ապրեց թե՛ հայերի մոտ և թե՛ Ռուսաստանում ու Արևմուտքում, մեծ հետաքրքրություն առաջացնելով դեպի հայ ժողովրդի հին մատենագրությունը, լեզուն, պատմությունը։

ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐԵՔԵՐՈՐԴ

# ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԱՐՎԵՍՏ

## 1. ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*XIX դարասկզբի հայ գրականության տիրապետող ուղղությունը կլասիցիզմն էր։ Հայկական կլասիցիզմը, միաժամանակ, գեղարվեստական արտահայտությունն էր ազգային մի մտայնության, որը կարելի է անվանել «հայկական գաղափարաբանություն» և որը, սկզբնավորվելով XVII դարասկզբին, տևում է ավելի քան երկու դար։*

*Մտավոր-գրական այդ շարժումը, ազգային-հասարակական ուրույն խնդիրներ էր արծարծում և յուրովի արձագանք էր վերածննության ու լուսավորական դարերի եվրոպական մտայնության։ Նշանավորելով քաղաքական շրջադարձ միջնադարյան Հայաստանի իշխող գաղափարաբանությունից, այն նախապատրաստեց հայ կյանքի ազգային զարթոնքը, որի իմաստը հանգում էր մի որոշակի նպատակի՝ լուսավորել ու կրթել ազգը, պահպանել ազգի հարատևությունը։ «Հայկական գաղափարաբանությունը» վերակենդանացնում է հայոց պատմության մոռացված անցյալը, աշխարհիկ և հոգևոր կյանքի վերանորոգությամբ խանդավառված, լույս աշխարհ հանում փոշեծածկ ձեռագրերն ու մագաղաթները, վերստեղծում գրաբարն իբրև մշակված լեզու և, վերջապես, ուրվագծում ապագա հայրենիքը՝ «դրախտ Հայաստանի» մտապատկերով։ Յուրացնելով եվրոպական կլասիցիզմի գաղափարական ու գեղագիտական սկզբունքները, հայկական կլասիցիզմը, սակայն, հասկանալի պատճառով, չկարողացավ պահպանել նրա հեղափոխական ոգին և հաղթահարվեց կրոնական մտայնությամբ մի կողմից՝ հանձնվելով երանավետ անցյալի մեծարանքին, և մյուս կողմից աստվածային նախախնամության մեջ երաշխիք որոնելով ազգային իդեալների իրագործման համար։*

*Կլասիցիզմը ազգային հող գտավ հայկական իրականության մեջ։ Հայկական կլասիցիզմը հարուստ նյութ էր հայտնաբերում հայոց հին գրականության դասական հուշարձաններում՝ Խորենացի, Եղնիկ, Փավստոս և ուրիշներ. որտեղից նա քաղում էր սյուժեներ ու էպիկական դրվագներ։ Թերևս սրանով պետք է բացատրել այն իրողությունը, որ գրական այդ դպրոցը բավական հարատև եղավ հայ իրականության մեջ և, բացի զուտ գեղարվեստական արտա-*

հայտությունից՝ ունեցավ նաև փիլիսոփայական ու տեսական հիմնավորում։ Կլասիցիզմի հայ առաջին տեսաբանը Խաչատուր Էրզրումցին է։ Կլասիցիզմի տեսության հարցերը զբաղեցրին նաև այլ հեղինակների։ Ուշագրավ են Ստեփանոս Ագոնցի «Ճարտասանությունը» (Վենետիկ, 1775), Սարգիս Տիգրանյանի «Ինչ-ինչ զեղերերգութենէ»՝ Ռասինի «Գոթողիա» ողբերգության առաջաբանը (Մոսկվա, 1834) և հատկապես Էդուարդ Հյուրմյուզյանի «Առձեռն բանաստեղծութիւն համառօտեալ» (Վենետիկ, 1839) աշխատությունը, ուր ավելի սիստեմատիկ են շարադրված արվեստի տեսության, ժանրերի, սեռերի, ոճի ու լեզվի հարցերը։ Հայկական կլասիցիզմն արձագանքում էր ազգային միասնության, ազգային ազատության ու ինքնուրույն պետականության այն ձգտումներին, որոնք համապատասխանում էին հայ ժողովրդի քաղաքական երազանքներին։

Կլասիցիզմը հայ մշակույթը հարստացրեց համաշխարհային գրականության գեղարվեստական արժեքների թարգմանությամբ։

Ձևավորվելով XVIII դարի երկրորդ կեսին, հայկական կլասիցիզմը հարատևեց մինչև XIX դարի 50-ական թվականները, թողնելով բավական հարուստ գեղարվեստական ժառանգություն՝ հատկապես երեք ժանրերով՝ բանաստեղծություն, վիպերգություն, դրամատուրգիա։

Հայկական կլասիցիզմի բանաստեղծությունը համարյա ամբողջապես ամփոփված է «Տաղք Մխիթարյան վարդապետաց» եռհատոր ժողովածուներում (հաջորդաբար լույս են տեսել 1852, 1853, 1854 թվականներին) և Լազարյան ճեմարանի սաների կազմած «Մուզայք Արարատյան» (1829) գրքում։ Բնության գովերգ՝ առավելապես արտաքին-նկարագրական ընկալումներով, խրատա-բարոյական ու կրոնական քարոզ, պատմական ներբող, առտնին զվարճանք— այսպիսին են կլասիկական քերթվածների նյութն ու ընդգրկումը։ Թեև կլասիկական բանաստեղծությունը տառապում էր ներքին անձկությամբ ու ձևի միօրինակությամբ, այնուամենայնիվ նա ստեղծեց կանոնավոր տաղաչափություն և մասնավորապես հայրենասիրական մոտիվներով խթանեց ապագա հայ պոեզիայի զարգացումը։ Գնահատելով նրա գրական-պատմական դերը, Մ. Աբեղյանը գրում է. «Սակայն այսպես լինելով հանդերձ՝ այդ ժողովածուն մի մանկական թոթովանք է, որ ցույց է տալիս, թե լեզուն պիտի բացվի։ Դրա մեջ արդեն երևում է, որ «մուզաները» ոչ միայն բարոյական խրատներ ու Աստվածաշունչ են սիրում և տաղաչափում նրա հատվածները, այլև ոգևորվում են մեր անցյալով ընդհանրապես. ունին արդեն հայրենիքի գաղափար, որով պարծենում են, որովհետև այդ հայրենիքը դրախտն է. ցույց են տալիս ուսման սեր և ուրախանում են, որ պարսից բռնակալ լծից ազատվում է հայ ազգը։ Դրանք ոգևորության նոր նյութեր են, որ Լազարյան սաներն առաջարկում են մեր բանաստեղծներին մշակելու, և որոնցով այնուհետև պիտի զբաղվեր մեր ապագա բանաստեղծությունը»[1]։

Հայկական կլասիցիզմն ավելի արգասավոր եղավ վիպերգի և դրամատուրգիայի ասպարեզում։ Ունենալով բացառապես պատմական դիմորոշում,

---

1 Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, հատ. 2, Երևան, 1945, էջ 509—510։

վիպերգն ու դրամատուրգիան իրենց նյութն ու սյուժեներն առնում էին պատմական Հայաստանի քաղաքական անցքերից, այստեղ իսկ հայտնաբերում ազատության և հայրենասիրության գաղափարն իբրև գերագույն խորհուրդ ու առաքինություն։

Հատկանշական է, որ հայ հեղինակները հիմնականում շրջանցում են ընտանիքի ու մարդկային այլևայլ կրքերի դրամատիկ սյուժեները և նախընտրում են ազգային-քաղաքական թեմաներ, նյութ ընտրելով բացառապես պատմական անցյալի դրվագներից։ Ողբերգությունը համարելով վսեմ ժանր և հատկապես ելնելով դաստիարակչական այն սկզբունքից, թե թատրոնը պետք է «երկյուղ և գութ» հարուցի հանդիսատեսին, կլասիցիզմի դրամատուրգները այն յուրովի համահնչեցնում են ազգային-հայրենասիրական իրենց միտումներին՝ մեծարելով հայրենասիրությունն ու առաքինությունը և պատժելով հայրենիքի ու հավատի դեմ ծառացող չարիքը։

Հայ առաջին կլասիկական դրաման՝ «Արկածք Տիգրանայ», ասպարեզ եկավ Մխիթարյանների դպրոցական թատրոնում 1776 թվականին։ Հետագա տասնամյակներում պատմական ողբերգություններով հանդես եկան Մ. Ջախջախյանը («Հաղթութիւն Տրդատայ ի վերայ Հռչեի», «Դաւագործ մահ մեծին Խոսրովայ»), Ե. Թովմաճյանը («Հայկ դյուցազն», «Հանդէս մենամարտութեան Որատեանց»), Ա. Բագրատունին, կլասիկական դրամայի ամենաականավոր դեմքը՝ Պետրոս Մինասյանը և այլ հեղինակներ։

Հովհան Վանանդեցին (1772—1841) իր չափածո վեպերում՝ «Ոսկի դար Հայաստանի», «Տեսարան հանդիսիցն Հայկայ, Արամայ և Արայի», «Արփիական Հայաստանի», որոնց սյուժեները վերցված են հայ պատմիչներից, հատկապես Խորենացուց և Ագաթանգեղոսից, ներկայացնում է հայոց պատմության հնագույն շրջանի դրվագները։

Վանանդեցին հայ գրականության մեջ բերեց քաղաքական մոտիվը, առաջադրեց ազգային-հայրենասիրական այն մոտրումները, որոնք նախորոշում էին ազգային վերածնության գաղափարաբանությունը։

Առաջադրելով Հայաստանի քաղաքական ազատագրության գաղափարը, Վանանդեցին հայրենասիրական ջերմ զգացումներով գովերգում է «Դրախտ Հայաստանին», փարում հայրենի գեղատեսիլ բնությանը, հայրենիքի հանդեպ ունեցած սերը պարզում որպես գերագույն պարգև։ Նրա հայրենասիրական զգացումների ամենավառ արտահայտությունը «Առ Հայաստան» բանաստեղծությունն է, որը հանճարեղ Կոմիտասի մշակմամբ դարձել է մի անկրկնելի հիմն և այսօր իսկ մնում է ազգային-հայրենասիրական լավագույն երգերից մեկը.

Հայաստան, երկիր դրախտավայր,
Դու մարդկային ցեղիս օրրան,
Դու և բնիկ իմ հայրենիք,
Հայաստան, Հայաստան, Հայաստան։

Ի վեհ անունդ սիրտ իմ, ոհ, հույժ
Ոգևորի ի նոր խրախույս,
Եվ անձկայրայց ի քեզ հասում,

*Ի քեզ՝ ի քեզ հույս իմ միայն,*
*Հայաստան, Հայաստան, Հայաստան...*

*Ժամանակի գրականության մեջ Վանանդեցու քաղաքական-հայրենասիրական մոտիվները հնչում էին ամբողջ թարմությամբ ու նախերգանքի ըսթափեցնող շեշտերով։ Այս իմաստով էր Աբեղյանը նրան դիտում «մեր նոր բանաստեղծության սկիզբը», նրա գրվածքներում նշմարելով «մեր XIX դարու գեղեցիկ գրականության գրեթե բոլոր գաղափարներն ու զգացումները»[2]։*

*Արսեն Բագրատունու դրամատիկական երկերը կազմում են կրոնական սյուժեներով մի քանի օրատորիաներ, գրված Մետաստազիոյի ազդեցությամբ և «Երվանդ Բ» (1815), «Արտաշես» (1818) պատմական ողբերգությունները։ Երկու ողբերգությունների մեջ հեղինակը դատապարտում է բռնակալությունն ու ոճրագործությունը։*

*Բագրատունու գրչին են պատկանում բանաստեղծությունների հինգ շարք՝ «Տերունականք», «Կրոնականք», «Բարոյականք», «Կենցաղականք», «Մթափականք», որոնց անվանումներն ինքնին ցուցադրում են նրանց թեման ու բովանդակությունը։ Եթե այդ բանաստեղծությունները որևէ թարմություն կամ գաղափարական որոնումներ չէին խոստանում, բացի բնության հիանալի պատկերներից՝ ապա Բագրատունին, այնուամենայնիվ, կլասիկական բանաստեղծությունը օժտում էր ճոխ, պատկերավոր նկարագրություններով, բառապաշարի հարստությամբ։ Նրա բանաստեղծական երևակայության այդ շնորհը առավել հուժկու թափով դրսևորվեց «Հայկ դյուցազն» (1858) վիպերգում, որն իրավամբ համարվում է հայ կլասիցիզմի գլուխ-գործոցը։ Վիպերգի սյուժեն կառուցված է Խորենացու «Հայոց պատմության» Հայկ և Բելի առասպելի վրա։*

*Բագրատունին իրար դեմ է կանգնեցնում բռնակալությունն ու ազատությունը և հանգույցը լուծում հօգուտ վերջինի։ Հայկ նահապետը ազատության խորհրդանիշն է, Բելը՝ բռնության, և որքան առաջինը բանական, առաքինի ու խոհեմ է, նույնքան երկրորդը անբանական է, կրքամոլ ու արգահատելի, իսկ այն, ինչ չի արդարացվում բանականությամբ՝ ենթակա է կործանման։*

*«Հայկ դյուցազն» չափածո վեպը տոգորված է էպիկական հայրենասիրությամբ։ Այն մի վսեմ դրվատանք է ազատության ու առաքինության, հերոսության ու գեղեցկության։ Բագրատունին արտակարգ փայլի նկարագրող է. գեղարվեստական երևակայությունը վիպերգում հասնում է մեծ թռիչքի ու լայն չափանիշների ընդգրկման։*

*«Հայկ դյուցազն» վիպերգը հարուստ է հեթանոսական կենցաղի, ծեսերի, տոնախմբությունների նկարագրություններով։ Մի առանձին բանաստեղծական շունչ են տալիս պոեմին հերոսների ներաշխարհի զեղումները՝ սիրո, կարոտի, երազանքի էպիկական վերապրումներով։*

*Լինելով Հոմերոսի «Իլիականի» թարգմանիչը, Բագրատունին որոշակի ազդվել է հունական վիպերգության գլուխ-գործոցի գեղարվեստական մի-*

---

2 Մ. Աբեղյան, *Հայ հին գրականության պատմություն, հատ. 2, էջ 518։*

ջոցներից, որը նկատելի է ինչպես «Հայկ դյուցազնի» առանձին տեսարանների ու պատկերների նկարագրություններում, նույնպես և հեթանոսական կենցաղի, դիցաբանական հերոսների պատկերման մեջ։

Պետրոս Մինասյանը (1799—1867) հայ կլասիկական դրամայի ամենախոշոր դեմքն է և այդ դրամատուրգիայի տեսաբանը։ Մի շարք աշխատություններում նա արծարծել է դրամայի տեսության հարցերը՝ փորձելով լուսաբանել ոչ միայն ժանրի պոետիկայի առանձնահատկությունները, այլև դիտել այն հասարակական կոչման տեսակետից։ Ելնելով թատրոնի հասարակական դերից՝ Մինասյանը դաստիարակչական է դիտում այն դրամատուրգիան, ուր «հանդես են գալիս քաղաքական, բարոյական մեծ կոնֆլիկտներ, քաղաքացիական առաքինություններ, հայրենասիրության՝ ազնիվ և վսեմ արտահայտություններով»[3]։ Այս իմաստով նա դրամայի դասական օրինակներ էր դիտում Ռասինի «Գոթողիան» և Վոլտերի «Կեսարի մահը»։

Պ. Մինասյանի գրչին են պատկանում «Խոսրով Մեծ», «Սմբատ Առաջին», «Արշակ Բ», «Երվանդ» պատմական ողբերգությունները և մի քանի կատակերգություններ։ Ելնելով իր տեսական դրույթներից, Մինասյանը պատմական ողբերգություններում ներկայացրել է պատմական Հայաստանի քաղաքական իրադարձությունները և մեկնաբանել այն քաղաքացիական առաքինության ու հայրենասիրության բարոյական սկզբունքի տեսակետից։ Այս իմաստով ուշագրավ է «Խոսրով Մեծ» դրաման։ Դրամայի հերոսը՝ տասներկուամյա Զարեհը, հանդես է գալիս որպես հեղինակի իդեալի կրողը։ Նրա հայրը՝ Անակը, որ ուներ պարսկական կողմնորոշում, երդում էր արել սպանել հայոց թագավոր Խոսրովին։ Որդին գիտեր հոր հայրենադավ դիտավորության մասին, սակայն չէր բաժանում նրա վարքագիծը, քանի որ այն դեմ էր գերագույն առաքինությանը՝ հայրենասիրությանը։ Այստեղ իսկ Զարեհը դրվում է հոգեբանական բարդ կացության առաջ։ Դավադիր հայրը որսի ժամանակ մահացու վիրավորում է թագավորին, իսկ սա վերջին վճիռն է արձակում՝ ոչնչացնել Անակի ամբողջ սերունդը, բացի Զարեհից։ Վշտահար պատանին սգում է իր հարազատների կորուստը, բայց բանականությամբ անխուսափելի է համարում չարության արժանի պատիժը։ Կատարվում է ողբերգությունը, բայց և հաղթում է առաքինությունը և սա է դրամայի դաստիարակչական իմաստը։

* * *

Հայկական կլասիցիզմի ազգային-հայրենասիրական ու քաղաքական ծրագրերը, ինչպես նաև գեղագիտական սկզբունքները պատմական զարգացման հանդեպ ի հայտ բերեցին իրենց սահմանափակությունը։ Գրական այդ դպրոցը ոչ միայն չկարողացավ ընդգրկել լուսավորության դարի գաղափարներն իրենց ամբողջ արմատական բովանդակությամբ, այլև դեմ ընթաց գնաց գաղափարական այն նոր շարժումներին, որոնց ընդառաջում էր եվրոպական միտքը XIX դարի 30—40-ական թվականներին։ Հայկական կլասի-

[3] Վ. Թերզիբաշյան, Հայ դրամատուրգիայի պատմություն, հատ. 1, Երևան, 1959, էջ 169։

ցիզմը նիրհում էր «դրախտ Հայաստանի» և «բարի հին անցյալի» դափնիների վրա։

Այս կետում հայկական ռոմանտիզմը գտավ իր գրական նախորդին։ Նոր ուղղությունը կոչվեց փարատելու «հայկական գաղափարաբանության» աստվածաբանական շղարշը, կասկածի տակ դնելու նրա ազգային ծրագրերի հեղինակությունը և հայ միտքը զբաղեցնելու ազգային ու սոցիալական նոր ուղիների որոնումով։ Շրջադարձ է կատարվում ինչպես հայ հասարակական մտքի, նույնպես և գեղարվեստական մտածողության ասպարեզում, սկիզբ է առնում գրական մի նոր շարժում՝ ռոմանտիզմը։ Բայց քանի որ հայկական կլասիցիզմը կիսակատար էր թողել XVIII դարի լուսավորական գաղափարների յուրացումը, ուստի նորածագ գրական շարժումը ստիպված էր նորից դիմելու նրան և այս անհրաժեշտությամբ է, որ ի տարբերություն եվրոպական ռոմանտիզմի, հայկական ռոմանտիզմը ստանում է լուսավորական բովանդակություն։

Այն ընդհանուր նշանաբանը, որով նոր ուղղությունը հակադրվում էր իր նախորդին՝ գրականության դեմոկրատացումն էր, ժողովրդայնությունը։ Ռոմանտիզմի մուտքը հայ գրականության մեջ նշանավորվում է ժանրային վերաձևումներով, հանդես են գալիս գրական անձնապատում սեռեր, կլասիկական վիպերգին փոխարինում է պոեմը, զարգանում է անձնական լիրիկան, ստեղծվում է իսկական իմաստով գեղարվեստական արձակ։

Ամբողջ սրությամբ ծառանում է նաև գրական լեզվի հարցը։ Սկսվում է գրապայքարը, որի իմաստը և քաղաքական էր, և գաղափարական, և գեղագիտական։ Սա, հիրավի, գեղարվեստական մտածողության շրջադարձի հիմքն էր։ Լեզվի աշխարհականացումը ենթադրում էր նաև մտածողության աշխարհականացում։ Գրականությունը ձեռք է մեկնում ժողովրդի հոգևոր ստեղծագործությանը, բանահյուսությունը դառնում է գրականության կենսարար աղբյուրներից մեկը, ուր նա գտնում է նոր սյուժեներ ու մոտիվներ, նոր պատկերամտածողություն։ Գրականությունը մերձենում է կյանքին, թափանցում ոչ հետազոտված անկյուններ, առօրեականն ու կենցաղայինը, որ առաջ արհամարհվում էին դասական արվեստի մուսաներից, հաշտեցվում են գեղարվեստի հետ, գրական կյանքի է կոչվում հասարակ մարդն իր խոհերով, հույզերով, անձնական զգացումներով, բայց և ազգային-քաղաքական իդեալներով։

Անցումը կլասիցիզմից ռոմանտիզմին առաջինը նշանավորեցին Հարություն Ալամդարյանը և Մեսրոպ Թաղիադյանը։

Մեծ չէ Հարություն Ալամդարյանի (1796—1834) թողած գրական ժառանգությունը՝ շուրջ երեք տասնյակ բանաստեղծություններ, որոնք 1884 թ. լույս տեսան Պետերբուրգում՝ «Ջափաբերականք» խորագրի տակ։ Ալամդարյանը հայ նոր քնարերգության հիմնադիրներից է։ Նրա մի շարք քնարական ոտանավորներ՝ «Նազելույս դէմքն է ճերմակ ու կարմիր», «Պարերգութիւն», «Անուրջք», «Թշվառութիւն սոխակի», «Գարուն» և այլն բանաստեղծական նոր մտածողություն են բերում հայ պոեզիայում։ Ի հակակշիռ կլասիցիզմի բանական սկզբի, Ալամդարյանի պոեզիայի իմացաբանական ելակետը զգացմունքն է։ Մի շարք էլեգիական բանաստեղծություններում Ալամդարյանը

արտահայտում է մարդու խորտակված սիրո կսկիծը, կորսված երջանկության անամոք ցավը։ Իրականությունից դժգոհ բանաստեղծը ճիգ է անում իր վիշտը բարձրացնել «համաշխարհային թախծի» և ներքին խռովքը խաղաղել ռոմանտիկական փախուստի մտորումով։ Սերը, արդեն զուտ փիլիսոփայական իմաստով, բարձրացվում է էթիկական հումանիզմի բարոյախոսության։



Հարություն Ալամդարյան

Մեսրոպ Թաղիադյանը (1803—1858) մեկն էր XIX դարասկզբի մտավոր-գրական շարժման այն առաջնեկներից, որոնք ձգտում էին հայ գրականությունը կլասիցիզմից դիմորոշել դեպի ռոմանտիզմը։ Թաղիադյանի պատմագիտական, բանասիրական հետազոտությունները ու ուղեգրությունները՝ «Դիցաբանություն», «Հնդկաստանի պատմություն», «Քրիստոնեություն ի Հնդիկս», «Պատմություն Պարսից», «Ճանապարհորդություն ի Հայս», «Ճանապարհորդություն ի Պարս» և այլն, վկայում են հեղինակի լայն իմացությունների մասին և հարուստ նյութ են պարունակում Հայաստանի ու Արևելքի պատմության վերաբերյալ։ Թաղիադյանի ազգային-սոցիալական հայեցության ելակետը լուսավորականությունն է։ Նրա համոզմամբ ազատության և առաջադիմության միակ ուղին լուսավորությունն ու գիտությունն են։ Սակայն վաղ շրջանի լուսավորիչը չկարողացավ կտրվել հնի կապանքներից և փորձեց այն հաշտեցնել կրոնական իմաստասիրության հետ։ Այս երկվությունն ու հակասությունն իր կնիքը դրեց թե՛ նրա աշխարհայացքի և թե՛ գեղարվեստական ըմբռնումների վրա։ Կողմնորոշվելով դեպի գրականության դեմոկրատացումը, նա միաժամանակ իր տուրքը տվեց կլասիցիզմին և ստեղծեց մի գեղագիտություն, որը հատկանշվում է կլասիցիզմի և ռոմանտիզմի ոճական խառնուրդով։ Բայց նրա գրական-պատմական դերը հենց դեպի ռոմանտիզմ կատարած անցման մեջ է, որ բանաստեղծի մոտ արդեն հանդես է գալիս որպես գիտակցված ըմբռնում։

Թաղիադյանի բանաստեղծությունները, որոնք ամփոփված են «Թութակ Թաղիադեանց» (Կալկաթա, 1847) և «Ներբերգութիւն յօրհաս Թանգայ Թաղիադեանց» (1893) ժողովածուներում, հատկանշվում են մոտիվների հարստությամբ, ոճի թարմությամբ և շատ կողմերով նախանշում են հայ քնարերգության սկզբնավորման պատմությունը։

Թաղիադյանի քնարերգության գլխավոր մոտիվներից է հայրենասիրությունը։ Մի շարք բանաստեղծություններում՝ «Հայկ ի տեսիլ Հայկազնին», «Նոր Ջուղա», «Երազ», «Մի մոռանար» և այլն, հեղինակը մի կողմից դրվա-

տում է նախնիների մեծագործությունը, մյուս կողմից՝ փառում հայրենի հողի ու հիշատակների սրբությունը։

Թաղիադյանի պոեզիան անհաղորդ չմնաց սիրո, վայելքի, բնության խորհրդի տրամադրություններին («Տուտու», «Երեկո»), սակայն նրա քնարերգության մեջ ավելի տիրական շեշտով է հնչում ռոմանտիկական իրոնիան կյանքի չարիքի ու անարդարության դեմ։ Մի շարք բանաստեղծություններում նա ծաղրում է հոգևոր դասի տգիտությունն ու շահասիրությունը։

Թաղիադյանը ռոմանտիկական ձևափոխման ուղու վրա դրեց հայ պոեմի ժանրը։ «Սոս և Սոնդիպի», «Եղերերգութիւն ի Թանկ» չափածո երկերում, համադրելով կլասիցիզմի և ռոմանտիզմի պոետիկական ձևերը, նա վերջին հաշվով լուծում էր ռոմանտիկական պոեմի գեղագիտական խնդիրը։



Մեսրոպ Թաղիադյան

Նշանակալից է Թաղիադյանի դերը հայ վեպի զարգացման պատմության մեջ։ «Վեպ Վարսենկան» (1847) և «Վեպ Վարդգեսի» (1846) երկերը հայ առաջին տպագիր վեպերը լինելով, ուրույն տեղ են գրավում գեղարվեստական արձակի պատմության մեջ։ «Վեպ Վարսենկան»-ը, ինչպես հավաստում է հեղինակը, ազգային բարոյական վեպ ստեղծելու մի փորձ է։ Վեպի սյուժեն առնված է «Փեշակը ոսկի ա» ժողովրդական հեքիաթից։ Ժողովրդական սյուժեի յուրացումն իբրև ազգային վեպի ստեղծման ուղեգիծ, գրական նորույթ էր։ Իր վեպում Թաղիադյանը երջանկության իդեալը դուրս է բերում վերին պալատներից և հատկացնում խաղաղ խրճիթների հասարակ մարդուն։ Արքայադստեր հրաժարումը պալատական պերճությունից ու դասային արժանապատվությունից, սիրո և աշխատանքի մեջ երջանկության որոնումը, ինքնին հասարակ մարդու մեծարման փիլիսոփայությամբ է իմաստավորված։

«Վեպ Վարդգեսի» երկ-փոխադրությունում Թաղիադյանը արծարծում է ազգային-հայրենասիրական խնդիրներ, առաջադրելով մի ուրույն մտայնու-

թյուն, որը պիտի դառնար հայկական ռոմանտիզմի պատմահայեցության հիմնական դրույթներից մեկը։ Դա անմիաբանության ու երկպառակության գաղափարական հայտնությունն է որպես հայ ժողովրդի պատմական դժբախտության նախապատճառ։ Վեպը պատմական բովանդակություն ունի և վերաբերում է Արմավիրի Երվանդ թագավորի ժամանակներին։ Թաղիադյանը քննադատում է երկպառակությունն ու ազգուրացությունը։ Նա հայրենասիրությունն ու միասնությունը համարում է ազգային ազատագրության երաշխիք։

Պատկառելի է Ղևոնդ Ալիշանի (1820—1901) թողած գիտական-բանասիրական վաստակը։ Նրա գրչին են պատկանում տասնյակ ստվարածավալ ուսումնասիրություններ՝ պատմագիտական, հնագիտական, աշխարհագրական, բնագիտական, կրոնա-փիլիսոփայական, բանասիրական և այլն, ինչպես՝ «Քաղաքական աշխարհագրություն» (1852), «Տեղագիր հայոց մեծաց» (1855), «Շնորհալի և պարագայ իւր» (1873), «Ընդ եղեննաւ» (1874), «Շիրակ» (1881), «Սիսուան» (1885), «Այրարատ» (1890), «Սիսական» (1893), «Հայ-Բուսակ» (1895), «Հին հաւատք կամ հեթանոսական կրօնք հայոց» (1895), «Հայ-Վենետ» (1896), «Հայապատում» (1901) և այլն։

Որպես բանաստեղծ Ալիշանը հանդես եկավ իր գործունեության առաջին շրջանում՝ 40—50-ական թվականներին և թողեց բավական հարուստ գրական ժառանգություն, արտահայտելով հայկական ռոմանտիզմի մի քանի էական առանձնահատկությունները։ Նրա չափածո երկերը 1857—1858 թթ. հրատարակվել են հինգ հատորով՝ «Նուագք» ընդհանուր խորագրի տակ, որոնք բաղկացած են ինը ցիկլից՝ «Մանկունի», «Մաղթունի», «Բնունի», «Հայրունի», «Խոհունի», «Տխրունի», «Տերունի», «Բանք պանդխտի», «Երգք Նահապետի»։ Մոտիվների ցիկլային այս սկզբունքը նորույթ էր հայ պոեզիայի պատմության մեջ։ Գրական տեսակետից ուրույն արժեք ունեն նաև «Հովիւք Շիրակայ» հովվերգական պատկերներն ու «Հուշիկք հայրենեաց հայոց» երկհատոր պատմա-գեղարվեստական էտյուդը։

Ալիշանի պոեզիայում ուժեղ է արտահայտված քրիստոնեական ռոմանտիզմի հետադեմ հայեցությունը։ Բոլոր ռոմանտիկների նման կանգնելով տրոհված աշխարհի առեղծվածի հանդիման, և այդ չարիքը կանխելու համար այլ ուղիներ չնշմարելով, քան ավետարանական ուսմունքը, Ալիշանը «Մանկունի», «Մաղթունի», «Տերունի» և «Բանք պանդխտի» շարքերում պատվիրաններ է կարդում երկրայիններին՝ ապավինելու աստծու և հանդերձյալի նախախնամությանը։

Զուտ էսթետիկական հրապույրը չէր Ալիշանին մղում դեպի բնություն. մի ամբողջ փիլիսոփայություն, հասարակական մի ուրույն հայեցություն էր ակնկալում նրա ռոմանտիկ բնապաշտությունը։ Մարդուն զբաղեցնելու, բարոյապես դաստիարակելու, գեղեցկակրթելու մեծ խորհուրդ էր տեսնում Ալիշանը «բնության գրքի» իմաստուն էջերում. «Բնությունը ամենեն առաջի կրթողն ու հրահանգողն է. ամեն կրթությանց աղբյուրն է. ամեն դժվարության դյուրացնողն է»։ Այն փաստը, որ Ալիշանը Ավետարանի փոխարեն առաջադրում է «բնության գիրքը» որպես իմաստության ու գործնական մար-

դակրթության ուղիցույց, ինքնին ուշագրավ է։ Բնությունը այն կամուրջն է, որով Ալիշանը գտնում է կապը իրական աշխարհի հետ։ Այս ելակետով պիտի գնահատել «Բնումին»՝ բնության բանաստեղծական այդ հանրագիտարանը։

Ալիշանի ռոմանտիկական պոեզիայի ամենափայլուն էջը հայրենասիրական քերթվածներն են, որոնք ամփոփված են «Հայրունի» խորագիրը կրող հատորում։ Ազգ ու հայրենիքը այն հանգրվանն էին, ուր բանաստեղծը գտավ իր ռոմանտիզմի ազգային-պատմական բովանդակությունը։

«Հայրունին» իր ամբողջության մեջ «մի հերոսամատյան է՝ լի հայ ժողովրդի պատմական անցյալի հերոսական անցքերին ու անձերին նվիրված ներբողներով...»[4]։ «Ի Հայկն և ի բաստ հայկազանց», «Երկհազարեակն Արշակունեաց», «Ճակատամարտ Զիրաւայ և քաջակորովն Մուշեղ», «Երթ ու գնացք զօրացն հայոց ընդ Վահանայ Մամիկոնեայ», «Զայնարկութիւն բանակի Աշոտոյ Բ», «Ի բամբիռն հայկազնի» և այլ քերթվածներում Ալիշանը ներբողում է հայոց պատմության հերոսապատումը։

Ալիշանի հայրենասիրական քերթվածների պսակը «Երգք Նահապետի» շարքն է, որով նա հիմնադրեց ազգային-հայրենասիրական պոեզիայի այն ուղղությունը, որի հետևորդներն էին Պեշիկթաշլյանը, Պատկանյանը, Շահազիզը և ուրիշներ։ «Հայոց աշխարհիկ», «Հայ հայրենիք», «Ողբամ զքեզ Հայոց աշխարհ», «Մասիսու սարերն», «Հրազդան», «Պլպուլն Ավարայրի», «Աշոտ Երկաթ ի ծովուն Սևանայ», «Հայ հանճար» հոյակապ քերթվածներում բանաստեղծը մեծարում է անցյալի հերոսությունը, ողբում անմխիթար ներկան, մարդու զգացմունքների աշխարհը ցողում հայրենի հողի ու բույրի կարոտով և ապա պատմական հերոսության ու հոգու հանճարի մեծության զորավիգներով սթափեցնում ազգը նոր մաքառումների ու ստեղծագործ վերածնության.

Սագե հայ հանճար, փայլե բյուր բոցեր,
Իմանան ազգեր՝
Թե հայք չեն անցեր։

Ճշմարիտ է, Ալիշանի ռոմանտիկ հայրենասիրությունը ցողված է ազգային մեսիանիզմի կրոնական հավատով, սակայն նա գտնում է նաև այն նեցուկը, որ «նյութական» իմաստ և մարտական ջիղ էր տալիս նրա ռոմանտիզմին։ Այդ նեցուկը հայոց պատմությունն է իր հերոսական դրվագներով։

XIX դարի գրական-լուսավորական շարժման ամենամեծ ու համապարփակ դեմքը Խաչատուր Աբովյանն է (1809—1848), որը շատ կողմերով նախանշեց գրական-հասարակական մտքի զարգացման հետագա տասնամյակների ընթացքը։ Աբովյանը ծնվել է 1809 թ. Քանաքեռում, նահապետական ազդեցիկ գյուղացու ընտանիքում։ Տասը տարեկանից սովորել է Էջմիածնի վարժարանում, ապա կրթություն ստացել Թիֆլիսում՝ նախ ժամանակին հայտնի Պողոս Ղարադաղցու ուսումնարանում, ապա՝ Ներսիսյան դպրոցում։

---

4 «Հայ նոր գրականության պատմություն», հատ. 1, Երևան, 1962, էջ 482։ Ա. Ինճիկյան, Ղևոնդ Ալիշան։

1828 թ. նա վերադառնում է Էջմիածին և նշանակվում կաթողիկոսի թարգման ու գրագիր։

1829 թ. Էջմիածին է գալիս Դորպատի համալսարանի պրոֆեսոր Ֆրիդրիխ Պարրոտի արշավախումբը՝ Արարատի գագաթը բարձրանալու։ Աբովյանն իբրև թարգման միանում է արշավախմբին, լինում առաջիններից մեկը, որ ոտք է դնում բիբլիական լեռան գագաթը։ Ուշիմ ու սրամիտ պատանին գրավում է Պարրոտի ուշադրությունը և սրա ջանքերով Աբովյանը 1830 թ. մեկնում է Դորպատ՝ կրթություն ստանալու։ Վեց տարի սովորելով Դորպատի համալսարանում, Աբովյանը վերադառնում է հայրենիք և նվիրվում գրական-կրթական գործունեության, նախ՝ Թիֆլիսում, ապա՝ Երևանում։



Խաչատուր Աբովյան

1848 թ. ապրիլի 2-ի վաղ առավոտյան Աբովյանը դուրս է գալիս տնից և ավարտում իր կյանքը մինչև այսօր անհայտ մի առեղծվածով։

Հարուստ ու համապարփակ էր Աբովյանի ստեղծագործական անհատականությունը. նա արձակագիր էր և բանաստեղծ, մանկավարժ էր և հրապարակախոս, ուղեգրող էր և ազգագրագետ։ Նա կոչված էր նորարար լինելու և հիմնադիր։ Նրա ստեղծագործությունը մի հանրագիտարան է, ուր արտացոլվել է ժամանակաշրջանի հայ հասարակական միտքը իր բոլոր դրսևորումներով՝ փիլիսոփայական, տնտեսագիտական, պատմագիտական, մանկավարժական, գեղագիտական և այլն։ Աբովյանը նոր դարագլուխ նշանավորեց հայ հասարակական մտքի և գեղարվեստական զարգացման պատմության մեջ։

Աբովյանի պատմական ծառայությունը հայ գրականության բնագավառում այն էր, որ վերջնականապես լուծեց գեղարվեստի դեմոկրատացման էսթետիկական խնդիրը, հեղաշրջելով գրականության թե ձևը և թե բովանդակությունը։ Նա քաղաքացիական իրավունք տվեց աշխարհաբարին, գրականության մեջ բերեց ժողովրդական մտածողությունը, ճանաչեց ժողովրդական բանահյուսությունն իբրև գրականության կենսատու աղբյուր։ Աբովյանը արմատապես հեղաշրջեց գրականության թեմատիկան՝ պատմությունից դիմորոշելով այն դեպի ժամանակակից կյանքը՝ ազգային, քաղաքական, սոցիալական խնդիրների գործնական նշանակությամբ։ Նա գեղարվեստորեն հայտնաբերեց ժողովրդի մարդուն՝ որպես գրականության գլխավոր հերոսի։

Այն, ինչ առաջնահերթ նշանակություն և լուծում պահանջող հրատապություն էր հանձնառում Աբովյանի գեղագիտական ծրագրերում, հայ իրականության և գեղարվեստի հարաբերակցության հարցն էր։ Հայ իրականությունը գեղարվեստակա՞ն է, հայկական հոգևոր կերտվածքը ընդունա՞կ է գեղարվեստական արտադրության՝ ահա հանգուցային հարցը, որին Աբովյանը տալիս է և՛ տեսական, և՛ գործնական լուծում։ Նա առանձնահատուկ դեր էր հատկացնում արվեստին՝ հայ ազգի լուսավորության և առաջադիմության գործում։ «Ոչինչ այնպես չէր բորբոքում իմ միտքը եվրոպական կրթության համար,— գրում է Աբովյանը,— ոչինչ այնպես բուռն կերպով չէր համապատասխանում իմ ձգտումներին, ինչպես բանաստեղծությունը, երաժշտությունը և նկարչությունը։ ...Եթե Ասիան պիտի ստանա լուսավորության իսկական լույսը, ասում էի ես իմ մտքում, ապա այդ բանը ոչ մի այլ միջոցով չէր կարող ամենից լավ և արագ կատարվել, քան դրանց միջոցով, և իմ այս կարծիքը, ավելի հաճախ, քան մեկ անգամ, հաստատվել է դրանք իմացողների կողմից»[5]։

Աբովյանը վեհացնում է հայկական բնաշխարհը, մեծարում հայոց պատմության հերոսական դրվագները, որպեսզի հավաստի Հայաստան աշխարհի գեղարվեստական բովանդակությունը. «Եվ որքան առարկաներ, որքան նյութեր ունի Հայաստանը, որոնք կարող էին բանաստեղծությանը վերին թռիչք տալ։ Հայերի կյանքը, նրանց մտածելակերպը, նրանց պատմությունը, նրանց վիճակը, նրանց դրախտային երկիրը, նրանց հիշողությունները հրաշալի ժամանակների գործաշարքերի մասին՝ իրենց անցքերով հանդերձ՝ լի են պատկերներով, որոնց նմանները սակավ ժողովուրդների և եթե չեմ սխալվում, և ոչ մի ժողովրդի մեջ գոյություն չունեն»[6]։

Հաստատելով գոյաբանական հիմքը, Աբովյանը տեսական ու գործնական լուծում է տալիս հայկական ազգային գրականության ձևի ու բովանդակության հարցերին։

Աբովյանի գեղագիտական իդեալը հայ ժողովրդի պատմական շրջադարձի գաղափարով ու հոգեբանությամբ է իմաստավորված։ Նրա իդեալ-հերոսը նոր ժամանակների մարդ-քաղաքացին է, ազգային-քաղաքական գործնական ծրագրերով, հասարակականորեն օգտակար բարոյականությամբ, գիտակից ու լուսավորված անհատը։ Այստեղ էլ Աբովյանի գեղագիտությունը ձեռք է բերում բարոյաբանական շեշտ՝ «ռեալ հումանիզմի» էթիկական շաղախով։ Ուշագրավ է Աբովյանի «Պարապ վախտի խաղալիք» առակաշարքը, ուր բարոյաբանական ընդհանրացումը ուղեկցվում է կյանքի արատավոր երևույթների քննադատությամբ. բարու վեհությունը հաստատվում է չարի պախարակումով, առաքինության դրվատանքը ծնվում է մոլության քննադատությունից. այլասիրության շնորհը ելնում է եսասիրական բնազդների մերժումից, գավառական սահմանափակության ու գռեհկության ծաղրը արդարացվում բարեկիրթ ու լուսավորված անհատի գեղեցկությամբ և այս ամե-

5 Խ. Աբովյան, ԵԼԺ, հատ. 10, Երևան, 1961, էջ 167։

6 Նույն տեղում, էջ 185։

նը իմաստավորվում սիրով, բանականությամբ և խղճով ներդաշնակված հասարակության երազանքի գեղագիտական իդեալով։

Գրական ասպարեզ մտնելով որպես բանաստեղծ, Աբովյանը գրաղեցրել է իրեն ժանրային բարդ որոնումներով, որոնք ուրույն նշանակություն են ըստանում հայ նոր քնարերգության սկզբնավորման պատմության տեսակետից։ Միջնադարյան պոեզիայի, կլասիկական չափաբերության և աշուղական երգի պոետիկական նախադրյալների վրա Աբովյանը հայ բանաստեղծությունը բարձրացրեց գեղարվեստական նոր աստիճանի, գրական ինքնություն տալով ժանրային բազմազան ձևերի՝ քնարական բանաստեղծություն, ներբող, քառյակ, պոեմ, առակ և այլն։ Նա կլասիկական վիպերգին հակադրեց ռոմանտիկական պոեմը («Աղասու խաղը»), ուր դրվագի էպիկական պատումին փոխարինում է սուբյեկտիվ լիրիկական վերապրումը, հայրենասիրական չափերգը ներարկեց էլեգիական ռոմանտիզմով («Կարօտութիւն նախնի վայելչութեանց հայրեննեաց իմոց», «Երեւակայութիւն ի վերայ ճանապարհորդութեան ի լեառն Արարատ», «Մուտ Հայկայ ի Հայաստան...»), ստեղծեց «Հազարափեշեն» պոեմը, որը քաղաքական պամֆլետի հազվագյուտ օրինակ է։

Աբովյանի գեղարվեստական հանճարն ավելի ցայտուն արտահայտություն գտավ արձակի ժանրում։ Նա իսկական իմաստով գեղարվեստական արձակի ստեղծողը եղավ, ժանրային մի քանի սեռերի հիմնադիր ու նորարար (վեպ, պատմվածք, արձակ բանաստեղծություն, մեմուար և այլն)։ «Առաջին սերը», «Թուրքի աղջիկը» պատմվածքները, «Մուտ գարնան», «Ամառային առավոտն ի գյուղս», «Գիշերը ամարային» արձակ բանաստեղծությունները, «Վերք Հայաստանի» դարակազմիկ վեպը նոր էջ են բացում հայկական գեղարվեստական արձակի պատմության մեջ։

«Վերք Հայաստանին» համանշանակ է համաշխարհային գրականության այն բացառիկ երկերին, որոնք մի ամբողջ ժողովուրդ են խորհրդանշում։ Աբովյանը հայ գրականությունը դուրս բերեց ռացիոնալիստական միագծությունից և գեղարվեստական մտածողության մեջ համադրեց աշխարհի անսահման բարդությունների բազմանշանակ կապերը։

«Վերք Հայաստանին» գրվել է 1840 թ., սակայն լույս է տեսել հեղինակի անհայտացումից հետո՝ 1858 թվականին Թիֆլիսում։ Լինելով առաջին հայ վեպը, «Վերքի» պատմական իմաստը, սակայն, չի սպառվում սոսկ գրականժանրային նշանակությամբ։ Նա կյանքի մի ամբողջ հանրագիտարան է, որը ներառնում է գաղափարական հարստության անեզր մաշտաբներ, միացնում դարեր, ամփոփում դարերի հոգեբանությունը և պատմականորեն դիմորոշում մի ամբողջ ժողովուրդ։ Այս իմաստով հայ ժողովրդի պատմությունը դարձավ վեպ և հայ առաջին վեպը՝ ժողովրդի պատմություն։

Վեպի գաղափարական բովանդակությունն ու գեղարվեստական նպատակադրումը բացահայտելու տեսակէտից հատկանշական է գրողի հետևյալ նկատողությունը. ակնարկելով այն իրողությունը, որ օտար հեղինակների գրքերը շատ հաճախ ավելի հափշտակությամբ են կարդացվում, քան հայ գրողների երկերը, Աբովյանը ցավով նկատում է. «Բայց պատճառը շատ բնական էր. էն լեզվըներումը նրանք կարդում էին երևելի մարդկանց

գործերքը, նրանց արածներն ու ասածները, նրանք կարդում էին էն բաները, որ մարդու սիրտ կարող է գրավել, չունքի սրտի բաներ էին՝ ով չի սիրել։ Ով չի ուզիլ լսել թե սերը, բարեկամությունը, հայրենասիրությունը, ծնողը, զավակը, մահը, կռիվը ի՞նչ զատ են...»։

«Վերքի» գեղարվեստական ծրագիրը նախապես էր ենթարկված մարդկային «սրտի բաների» նկարագրությանը. այնտեղ, հիրավի, զգացմունքի ամբողջ տարերքով մարդիկ վերապրում են սիրո ամենազորությունը, բարեկամության ու ընկերասիրության առաքինությունը, մահի փիլիսոփայությունը, ծնողի, զավակի բնական թրթիռը, հայրենիքի սերը և այլն։ Այս ամենը վեպում իրացվում է կառուցվածքային բարդ համադրությամբ։ Սոցիալ-կենցաղային պատկերներ՝ ճանաչողական նշանակությամբ, մարդու անհատական ինքնության հայտնաբերում՝ զգացմունքի հախուռն տարերքի մեջ, նոր մարդու իդեալ՝ քաղաքացիական հոգեբանությամբ ու ազգային ինքնագիտակցությամբ, ազգային ու համամարդկային իդեալների երազանք՝ դիդակտիկ-հրապարակախոսական խորհրդածություններում, բնության, տիեզերքի, աշխարհի առեղծվածային խոհեր՝ փիլիսոփայական զեղումների մեջ — այս ամենի միասնությամբ է պայմանավորվում «Վերք Հայաստանի» վեպի բովանդակությունն ու տիպաբանությունը։

Հիմք ընդունելով 1826—1828 թթ. ռուս-պարսկական պատերազմի և Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միանալու իրադարձությունները, Աբովյանը պատմական շրջադարձի կիզակետում գտնում է հայ ժողովրդին և գեղարվեստորեն իմաստավորում այդ բեկման նշանակությունը՝ ազգային գոյության հեռանկարի տեսակետից։ Իսկ պատմական այդ շրջադարձի իմաստը ազգային գոյության տեսակետից ինքնին երկակի է. պարսկական բռնատիրության թոթափումը հայ ժողովրդին բաժանում է բարբարոսական անցյալից և կապում քաղաքակրթության դարի խոստացած առաջադիմության հետ։ Եվ հենց այստեղ վեպի գաղափարական հանգույցներում ի հայտ է գալիս հայ ժողովրդի ռուսական կողմնորոշման խնդիրը, որ հեղինակը թրծում է ջերմ զգացումներով՝ «օրհնվի էն սհաթը, որ ռսի օրհնած ոտը հայոց լիս աշխարհը մտավ ու ղզլբաշի անիծած չար շունչը մեր երկրիցը հալածեց»։

Աբովյանը ձգտում էր ոչ միայն կանխել ազգային պեսիմիզմի հոգեբանությունը, այլև հայ ժողովրդի հերոսական ոգու հայտնությամբ հավաստել նրա կենսունակության ու գոյության իրավունքը։ Այս իմաստով հայ ժողովրդի մեծության դիֆերամբը վեպում ոչ միայն ինքնաճանաչման կոչ էր, այլև ապագայի ազդարար։ Պատմության ողբերգական հանգույցներում մաքառման ու հերոսության ոգու հայտաբերումը մի մեծ գրավական էր, որպեսզի Աբովյանը ի լուր աշխարհի պարզեր հայոց ազգի գոյության իրավունքը. «Ով թուր ունի առաջ իմ գլխին խփի, իմ սիրտս խրի, ապա թե ոչ՝ քանի բերնումս լեզու կա, փորումս սիրտ, ես լեղապատառ ձեն կտամ. «էդ ո՞ւմ վրա եք թուր հանել, հայոց մեծ ազգին չե՞ք ճանաչում»։

Այս կանչը պատմության գեղարվեստական ընկալման լայն տեսահորիզոն է գծում։ Հայերի ազատագրությունը անակնկալ չէր առկա իրադարձությունների տեսակետից, այլ պատմության տրամաբանությամբ երաշխավոր-

ված անհրաժեշտություն։ Այս իմաստով էլ պատմավեպի աբովյանական ըմբռնումը ուրույն գեղարվեստական լուծում է ստանում։ «Վերք Հայաստանին» պատմավեպ է ոչ միայն պատմական իրողությունների հավաստիությամբ, այլև այն իմաստով, որ ժողովրդի պատմության դարերն է կապակցում, նրա հոգեբանությունն ու կերտվածքը վավերացնում պատմության փիլիսոփայությամբ։

Պատմական անցյալի զորավիգներն անիմաստ են, եթե հող չեն գտնում ներկայի մեջ։ Աբովյանը կամրջում է անցյալը ներկայի հետ, միացնում ժողովրդի պատմության թելերը, գործնական ազգապահպանության նշանաբան պարզում հայրենիքի և հայրենասիրության գաղափարը։ Գեղարվեստական հետաքրքիր ասոցիացիաներով և փիլիսոփայական խոր իմաստավորումներով է գրողը վեպի հիմնադրույթի մեջ հայտնաբերում այդ գաղափարը։ Նա բացում է աշխարհի անսահմանության առեղծվածները՝ բնություն, տիեզերք, աստված, կարդում մարդու բնական զգացմունքի բոլոր էջերը, չափում այդ ամենը երկրային անցողիկ գոյության խորհրդով և այս ամենի դիմաց պարզում հայրենիքն ու հայրենասիրությունը որպես կյանքի ու գոյության գերագույն նպատակ։ Մարդիկ հեղում են իրենց անձնական զգացմունքները, սիրում են որպես ընկեր, բարեկամ, տխրում ու ողբում են իրենց կորուստը, հանուն զգացմունքի դիմում անձնազոհության. բայց կա մի գաղափար, որ նույնպես արժանի է սիրո, վշտակցության և անձնազոհության՝ հայրենիքը։ Այս անհրաժեշտությամբ է գրողը հայտնվում վիպական պատումի հանգույցներում. Նա բանաստեղծացնում է մարդկանց զգացմունքները, վիշտըն ու տառապանքները, որպեսզի ինքն էլ իր հայրենական վիշտը բացի մարդկանց ու աշխարհի առաջ, հուշի նրանց փառքի ու հիշատակի վեհությունը այն անձնազոհության, որ արվում է հանուն ազգի ու հայրենիքի։

«... Ախր մեր ազգը, որ խեղճ ա մնացել, թրի, կրակի եսիր, բոլորի պատճառն էս ա, որ մեզ մեկ ասող չի ըլում՝ թե մենք ո՞վ ենք, մեր հավատն ի՞նչ ա, ինչի՞ համար ենք էկել աշխար. քոռ գալիս ենք, քոռ գնում», այսպես են դատում վեպի հերոսները։ Ժողովրդի ազգային զգացումների այս տարերային գեղումները որսալով, Աբովյանը ձգտում էր այն բարձրացնել քաղաքացիական ինքնագիտակցության։ Այս ուղիներում է նա գտնում իր գլխավոր հերոսի՝ Աղասու կերպարի գեղարվեստական զարգացման ներքին խթանը։ Պատմական հեռատեսության և աշխարհայացքի խոր դեմոկրատիզմին պիտի վերագրել այն փաստը, որ «Վերք Հայաստանիի» հեղինակը իդեալ-հերոս է դարձնում ժողովրդի մարդուն։ Համաշխարհային ռոմանտիզմի պատմության մեջ բացառիկ օրինակներից է դա, երբ գեղագիտական իդեալն այդքան մերձեցվում է իրականությանը։ Աղասին իդեալականի և իրականի մի հետաքրքիր ձուլվածք է։ Գտնելով իրականության մեջ, գրողը նրան բարձրացնում է այդ իրականությունից, օժտում ռոմանտիկական անհատի բնորոշ գծերով և հակադրում նույն միջավայրի ավանդական սահմանափակությանը։

Ազատասիրության մի բնածին տրվածք խռհական երանգ է տալիս Աղասու բնավորությանը։ Նա փորձում է յուրովի ըմբռնել բնության ու տիեզերքի գաղտնիքները և մի տարերային պանթեիզմով սուզվում է արարչագործության առեղծվածի մեջ։ Այստեղ իսկ բնության հրաշքը, տիեզերքի իմաստուն·

նպատակաբանվածությունն ու ներդաշնակությունը կյանքի մի ուրույն փիլիսոփայությամբ են լուսավորում Աղասու ռոմանտիկական բնազդը։ Եթե ազատ է բնությունը, ուրեմն ազատ է ծնվել նաև մարդը, եթե արարիչը բարեգութ է բնության շռայլ հրաշալիքներով, ուրեմն մարդն էլ պետք է բարի լինի մարդու հանդեպ և անուն թողնի բարի գործով։ Ազատասիրության այս զգացումն Աղասու էության մեջ վերաճում է ավելի մեծ ընդհանրացման և ի վերջո հանգում ազգի ու հայրենիքի ազատագրության գաղափարին։ Եթե բռնությունը հերքվում է բանականությամբ ու բնական ազատությամբ, ուրեմն մի ազգի բռնությունը մյուսի նկատմամբ իրավունք չէ, այլ անարդարություն։ Եթե բռնությունն իրավունք չէ, բայց գործող օրենք է, իսկ ազատությունն իրավունք է, բայց օրենք չէ, ուրեմն բարոյախոսությանն ու աղոթքին ապավինելը սին պատրանք է և բռնությունը պետք է ոչնչացնել բռնությամբ։ Ինչպես տեսնում ենք, Աբովյանը վեպի գաղափարական դրույթները չի արտահայտել մերկապարանոց տիրադներով և որպես գեղագետ դրանց տվել է հոգեբանական ու փիլիսոփայական լուծումներ։

«Վերք Հայաստանին» մի անկրկնելի գեղարվեստական համապատկեր է, ուր արտացոլում են գտել դարաշրջանի սոցիալ-փիլիսոփայությունը, կյանքն ու կենցաղը իրական, գունեղ, կենդանի պատկերների մեջ։ Աբովյանը հայտնաբերեց հայոց աշխարհաբար լեզվի հարստությունը, հմայքն ու ճկունությունը, նրա գեղեցկագիտական անսահման կարողությունը։

* * *

50—60-ական թվականների հայ իրականությունը հատկանշվում է տնտեսական, քաղաքական կյանքի վերելքով։ Կապիտալիստական հարաբերությունների զարգացումը նոր տեղաշարժեր է ստեղծում հասարակական կյանքում, նպաստում մշակույթի և մտավոր գործունեության այլևայլ բնագավառների ու կուլտուր-կրթական ձեռնարկումների աշխուժացմանն ու առաջընթացին։ Ստեղծվում են բարեգործական ընկերություններ, բացվում դպրոցներ, հիմնադրվում թատրոններ, ընդլայնվում են հասարակական մտքի հետաքրքրության շրջանակները, բուռն վերելք է ապրում հրապարակախոսությունը, ձևավորվում է հեղափոխական-դեմոկրատիզմը որպես դարաշրջանի մտածողության բարձրագույն արտահայտություն։

50—60-ական թվականների գրական շարժումը հատկանշվում է գրական տարբեր ուղղությունների ու հոսանքների գոյակցությամբ։ Թեև կլասիցիզմը դեռևս հարատևում էր, այնուամենայնիվ այն դադարել էր գործնական ու տեսական հարց լինելուց։ Բայց արդեն ձևավորվում է գրական մի նոր ուղղություն՝ ռեալիզմը, իսկ ռոմանտիզմը ավելի ու ավելի էր ցուցադրում երկփեղկումը՝ առաջադիմական ու հետադիմական թևերի։

Սարսափած Եվրոպայի քաղաքական ցնցումներից ծնունդ առած հասարակապետության ուրվականից, հայ «ազգայինները» ճգնում էին հայկական միտքը հեռու պահել այդ գաղափարների ներթափանցումից։ Հետադեմ ռոմանտիզմի առավել աչքի ընկնող գաղափարախոսներն էին Ջամուռճյանը,

Փափազյանը, Մսերյանը, Այվազովսկին, գրականության մեջ՝ Նար-Պեյը, Թերզյանը, Հիսարյանը և ուրիշներ։

Մինչդեռ ազգային-պահպանողական ռոմանտիզմը ձգտում էր ետ դարձնել պատմության անիվը, ռոմանտիզմի առաջադիմական թևը սոցիալական և ազգային այլ գաղափարներով էր ոգեշնչված։ Աշխարհը համակած քաղաքական հեղաբեկումներն ու ազատագրական շարժումները և այն իդեալները, որոնք խորհրդանշում էին այդ տեղաշարժերը, ռոմանտիկական ոգի էին ներշնչում հայկական ազգային հոգեբանությանը։ Եվ հիրավի, ոչ մի բան չէր կարող ավելի հուսավառ հնչել պատմության քառուղիներում տրորված մի ժողովրդի համար, որքան դարի նշանաբանած գաղափարները՝ ազգ, հայրենիք, ազատություն, եղբայրություն, հավասարություն։

Բայց այս ոգևորությունը գրականության մեջ տևեց մինչև 60-ական թվականների կեսը։ Վերահաս քաղաքական հանգամանքները թե՛ Արևելահայաստանում և թե՛ Արևմտահայաստանում ցրեցին ազգային-ազատագրության պատրանքները, որը և գուշակեց հայկական ռոմանտիզմի առաջին վայրէջքը։

Հասարակական միտքն ու գրականությունը բուռն որոնումներից հետո հանձնվում են տեղատվության ալիքին։ Դադարում են «Հյուսիսափայլն» ու «Կռունկը», հոգեվարք է ապրում «Մեղու Հայաստանին», աստանդական ու օրամեջ կյանք է վիճակվում «Հայկական աշխարհին», Պոլսի «Մեղուն» այլևս առաջվա սրությամբ չէր հնչում, իսկ «Բազմավեպը» Վենետիկի միաբանության բանասիրական հետախուզումներով էր զբաղված։ Մյուս քիչ թե շատ աչքի ընկնող պարբերականները («Արշալույս Արարատյան», «Արարատ», «Սիոն» և այլն) իրենց նեղ ու հետահայաց հարցասիրություններով, իսկ «Մասիսն» ու «Փունջը» գրական ամլությամբ, ի վիճակի չէին ընթացք տալու մտավոր շարժմանը։

Մինչդեռ կլասիցիզմը հեռանում էր պատմության ասպարեզից, իսկ ռոմանտիզմը ջղաձգվում էր ազգային-ազատագրական շարժման տարուբերումների հետ, ծնունդ է առնում գրական մի նոր ուղղություն՝ ռեալիզմը, առաջադրելով կյանքի ուսումնասիրության ու սոցիալ-հոգեբանական վերլուծության գեղագիտական իր սկզբունքները։ Այդ ուղղությունը նշանավորվում էր այնպիսի գրողների երկերով, ինչպես Մ. Նալբանդյանը, Գ. Սունդուկյանը, Ղ. Աղայանը, Գ. Տեր-Հովհաննիսյանը, Պ. Պռոշյանը և ուրիշներ։

50—60-ական թվականներին հայ գրականությունը դրվում է զարգացման լայն ուղիների վրա։ Արդեն բավականաչափ ժառանգություն ու ավանդներ էին ստեղծել պոեզիան, արձակը, դրամատուրգիան, ձևավորվում է գրական քննադատությունը, գրականությունն ավելի ու ավելի ներազդող ուժ էր ստանում հասարակական կյանքի ասպարեզներում։

Այն ժանրը, որ այդ տասնամյակներում հնչում էր ամբողջ ձայնով՝ պոեզիան էր։ Մեծ էր պոեզիայի հասարակական արձագանքը, հայկական իրականությունը շնչում էր բանաստեղծությամբ։ Բնության, սիրո, կարոտի անձնական խոհերի նուրբ, լիրիկական տրամադրությունների հետ, ամբողջ լիությամբ հնչում էր քաղաքական-հայրենասիրական մոտիվը։ Հայրենիքի կարոտը շարժում է հայ բանաստեղծների ազգային զգացմունքները։

Դորպատյան ուսանողների հավաքույթներում ստեղծվեցին հայկական մի քանի ազգային երգեր՝ Գ. Միրիմանյանի «Հայոց աղջիկները», Ք. Պատկանյանի «Ինձ համար չէ գարնան գալը», Գ. Դոդոխյանի «Մեծեռնակը», Խ. Ավագյանի «Հայոց գինին», որոնք այսօր իսկ պահպանում են իրենց հմայքը։

Ռոմանտիկական պոեզիան թոթափում է «Երկիր դրախտավայրի» տեսիլքը և շոշափում իրական հայրենիքի մտապատկերը, որն այնպես գեղեցիկ է ուրվագծվում Ն. Ռուսինյանի «Կիլիկիա» բանաստեղծության մեջ.

Երբոր բացվին դռներն հուսո,
Եվ մեր երկրեն փախ տա ձմեռ,
Չքնաղ երկիրն մեր Արմենիո,
Երբ փայլե յուր քաղցրիկ օդեր,
Երբոր ծիծառն ի բույն դառնա,
Երբոր ծառերն հագնին տերև.
Ցանկամ տեսնել զիմ Կիլիկիա,
Աշխարհ, որ ինձ ետուր արև...

Հայկական պոեզիան հեղափոխական լիցք է ստանում. Մ. Նալբանդյանը երգում է մարդկության ազատագրության քաղաքական հիմնը, Ռ. Պատկանյանն իր ազգային-ազատագրական երգը նշանաբանում է «ռազմի քնարով», Ս. Շահազիզը ռոմանսների նվագը խլացնում է մարտակոչի հրավերով, Մ. Պեշիկթաշլյանը հնչեցնում է Զեյթունի հերոսամարտի հավերժության երգը։

Բայց երբ տեղի են տալիս ազատագրության ռոմանտիկական հույսերը և լռում է Պատկանյանի «ռազմի քնարը», Շահազիզը ընդմիշտ հրաժեշտ է տալիս պոեզիային, իսկ Պեշիկթաշլյանն անձնատուր է լինում մռայլ ու մահահաշտ էլեգիային, ասպարեզ է գալիս Պետրոս Դուրյանը՝ ազգային վիշտը վերապրելու որպես համաշխարհային թախիծ։

Էական տեղաշարժեր են տեղի ունենում դրամատուրգիայի բնագավառում։ Կլասիցիզմի ազդեցությունն այստեղ բավական տևական եղավ։ Եթե արևմտահայերը նախապատվում էին կլասիկական և պատմա-ռոմանտիկական դրաման, ապա արևելահայ թատրոնն ու դրամատուրգիան հակված էին առաջնություն տալու ռեալիստական կատակերգությանը։

Պատմա-հայրենասիրական դրամայի անցումը կլասիցիզմից ռոմանտիզմին վավերացվեց ժանրային մի տիպով, որը հատկանշվում է ռոմանտիզմի և կլասիցիզմի ուրույն համադրությամբ։ Միջակա տեղ գրավելով կլասիցիզմի և ռոմանտիզմի արանքում, այդ դրամատուրգիան պահպանում էր կլասիկական դրամայի օրենքները, բայց միաժամանակ յուրացնում էր ռոմանտիկական դրամայի սկզբունքները։ Պատմական հանգամանքների քաղաքական սրությունն այստեղ ավելի էր գործում, քան գրական ավանդույթը։ Այդ մի ժամանակ էր, երբ թատրոնը ամբիոն էր և կոչված էր ազդելու հասարակական մթնոլորտի վրա։ Ռոմանտիկական մելոդրաման անկատար էր հնչում այդ պահանջի տեսակետից և հայ դրամատուրգները ձեռք էին մեկնում Վոլտերին։ Այն, ինչ ամենից ավելի հատկանշական է հայ պատմա-հայրենասիրական դրամային, դա նրա քաղաքական-տենդենցիոզ բնույթն էր, արծարծած

գաղափարների արդիական շեշտվածությունը։ Պատմական անցյալի համանըման դրվագների մեջ օրվա քաղաքական դեպքերն ակնարկող այդ դրաման հատկանշվում է ենթատեքստային արտահայտություններով, թափանցիկ ակնարկումներով, հուշող իրադրություններով։ Հերոսները հանդես են գալիս որպես առաջադրված թեզերի արտահայտիչներ, գործողության հանգամանքներն ու հոգեբանական վերապրումները տեղի են տալիս գաղափարական տիրադների առաջ։ Դերասանի խոսքը շատ անգամ ուղղված է լինում ո՛չ թե դիմացինին, այլ հանդիսատեսին, ուր անմիջական արձագանք էին գտնում նրա ակնարկներն ու պաթետիկ-հայրենասիրական կոչերը։ Դրամայի հաջողության գաղտնիքը ոչ թե էսթետիկականն էր, այլ էթիկականը, որքան որ հագուրդ էր տալիս հանդիսատեսի ազգային-հայրենասիրական զգացումներին։ Սրանով պետք է բացատրել Սրապիոն Հեքիմյանի («Արտաշես և Սաթենիկ», «Հմայակ և Աշխեն», «Սամվել» և այլն), Հակոբ Կարենյանի («Շուշանիկ», «Վարդան Մամիկոնյան»), Թովմաս Թերզյանի («Հովսեփ գեղեցիկ», «Մովսես», «Հռիփսիմե») և այլ հեղինակների դրամատիկական երկերի հասարակական հնչումը, դրամաներ, որոնք գրված լինելով օրվա պահանջի թելադրանքով, այժմ միայն գրական-պատմական նշանակություն ունեին։

Ի՞նչ է ուսուցանում պատմա-հայրենասիրական դրաման։ Առաջադրելով ազգային-ազատագրության իդեալը, պատմա-հայրենասիրական դրաման փորձում էր պատմության դասերի մեջ կռահել ազգային դժբախտության շարիքը և պատժել այն, ինչը արժանի է դատապարտման։ Եվ նրանք գտնում են այդ շարիքը ի դեմս դավաճանության ու անմիաբանության։ Այստեղ էլ լուծվում են պատմա-հայրենասիրական դրամայի գաղափարական ու գեղարվեստական հանգույցները։ Իդեալն ու հակաիդեալը ելնում են դեմ-հանդիման, կանխորոշում հերոսների վարքը՝ բարի կամ չար և լուծում հանգույցը բարու հաղթանակով։

Մինչդեռ արևմտահայ դրամատուրգիան կլասիցիզմից ռոմանտիզմին անցնելու և արդիական թեմայի որոնումներով էր զբաղված, արևելահայ թատրոնը իր արվեստն էր կատարելագործում ռեալիստական կատակերգության բնագավառում։

Արևելահայ դրամատուրգիայի զարգացումը, որ զգալի չափով պայմանավորված էր ազգային թատրոնի ստեղծմամբ, նախապես ուղեկցվում է տեսական պայքարով։ Ո՞րն է հայ թատրոնի ու դրամատուրգիայի ուղին՝ պատմական անցյալը մեծարող դասական ողբերգությունը, թե կենցաղային ռեալիստական կատակերգությունը։ Առաջադրված հարցը ազգային պահպանողականները լուծում էին հօգուտ դասական ողբերգության, հեգնելով կենցաղային կատակերգության «գռեհիկ» արվեստը։ Դեմոկրատական հոսանքի գրողներն, ընդհակառակը, պաշտպանում էին ռեալիստական թատրոնի ու դրամատուրգիայի սկզբունքները, այստեղ նշմարելով ժողովրդի առաջադիմության, սոցիալական ու ազգային ինքնագիտակցության խորհուրդը։ Գրական բանավեճն ավարտվում է ռեալիզմի հաղթանակով, որը մեծապես խթանում է ռեալիստական կատակերգության զարգացմանը։ Ասպարեզ են գալիս մի շարք դրամատուրգներ, գրվում, բեմադրվում և հրատարակվում են տասնյակ ոդևիլներ ու կատակերգություններ։ Ն. Ալադաթյանի «Վա՜յ իմ կորած

50 ոսկի», Ն. Փուղինյանի «Հազար Թումաննոց կարա», «Դալալ Ղազո», Գ. Շիրմազանյանի «Իմ նշանածն Արաղն ա», «Ազգային հարսանիք», Միք. Պատկանյանի «Միջի մարդ կամ մոցիքուլ», «Մեկը նշանած մյուսը կին», «Սատանի փայ», «Սուտ բարեկամ», «Քաղքի հանաք», Միք. Տեր-Գրիգորյանի «Պառվներում խրատ», «Ով է մեղավոր», «Վայ քի իմ վեչեր», «Էս էլ քեզ դալալություն», այլ հեղինակների պիեսները և, վերջապես, Գ. Սունդուկյանի երկերը հիմք են դնում հայկական ռեալիստական դրամատուրգիային։

Առավել դժվար էր ընթանում գեղարվեստական արձակի ձևավորման պրոցեսը։

Նկատելի փաստ է, որ հայ նոր արձակի սկզբնավորումը առավելապես կապվում է վեպի հետ։ Վեպը ավելի շուտ ինքնորոշվեց և ավելի շուտ գտավ ազգային ձևը, քան «փոքր» ժանրի արձակը։ Այսուհանդերձ, այստեղ ևս նըկատելի էր որոշ շարժում և ժանրային որոնում։ Մամուլի թերթոններում հետզհետե լույս են տեսնում բարոյախոսական զրույցներ, մանրապատումներ ու կենցաղապատկերներ, որոնք մի կողմից ժանրային խոսքի ձևեր են որոնում, մյուս կողմից գեղարվեստական մտածողությունը մերձեցնում կենցաղագրական ռեալիզմին։ Դրական այս նախափորձերի կողքին երևան են գալիս նովելներ ու պատմվածքներ՝ արդեն ժանրային տարատեսակների տիպաբանական որոշությամբ։

Գեղարվեստական արձակի առավել տիրապետող ժանրը՝ վեպը, արդեն 50—60-ական թվականներին հանդես էր գալիս իր ներքին ճյուղավորումներով՝ սենտիմենտալ, ազգային-ռոմանտիկական և կենցաղային-ռեալիստական։

Սենտիմենտալ վիպագրության ամենաբնորոշ օրինակը Հ. Հիսարյանի «Խոսրով և Մաքրուհի» (1851) վեպն է։ Սյուժե ընտրելով դժբախտ սիրո պատմությունը, հեղինակը փորձում է հաստատել ճակատագրի ու նախախնամության գոյությունը։ Միստիցիզմի ու ֆատալիզմի ջատագովության այս հետադեմ հայեցությունը քաղաքական կերպարանք է ստանում նույն հեղինակի մյուս վեպում՝ «Նեռն կամ կատարածն աշխարհի» (1866), ուր մաղձ է թափվում դեպի հասարակապետություն դիմորոշված հայ մտավորականության հասցեին և ապոկալիպտիկ թվերի մեջ գուշակում Նեռի ծնունդն ու աշխարհի կործանումը։

Ստ. Ոսկանի «Հայ դյուցազնուհի մը», Խ. Միսաքյանի «Սոփիա», Ա. Հայկունու «Էլիզա» վեպերն այլ ուղի են գծում արևմտահայ վիպագրության մեջ։ Առաջադիմական ռոմանտիզմի այս գրողները նախընտրում են ազգային-քաղաքական թեման, վեպը ծառայեցնում ազգային-ազատագրության գաղափարների արծարծմանը։ Պատկերելով ազգային կացության սարսափները, նրանք մի կողմից քարոզում էին հայրենասիրություն, արթնացնում ազգային արժանապատվության զգացումը և մյուս կողմից փայփայում ազգի ազատագրության ռոմանտիկական երազանքը։

Հայ կնոջ սխրանքի լեգենդանման մի պատումի սյուժեով Ստ. Ոսկանը «Հայ դյուցազնուհի մը» (1859) վեպում պատկերում է պարսկական բռնության սարսափները և միաժամանակ վեհացնում հայ կնոջ ազգային արժանապատվության զգացումն ու հերոսական բնավորությունը։ Խաչատուր Մի-

սաքյանի «Սոփիա» վեպում դրվատվում է հայկական մտքի ու ձիրքի ստեղծագործ կարողությունը։

Ա. Հայկունու «Էլիզա» (1861) վեպը պատկերում է թուրքական բռնապետության աղետներին ենթարկված հայ ժողովրդի իրավազուրկ կացությունը և խտալացի հերոսի այլաբանական խոհերում արտահայտում հայրենիքի սերն ու կարոտը, ազատագրության հույսն ու երազանքը։

Արևմտահայ վիպագրության մեջ առանձնահատուկ տեղ է գրավում «Ագապին» («Ագապի հիքեայեսի»), որը ժամանակին արժանացել է Մ. Նալբանդյանի բարձր գնահատականին։ «Ագապին» լույս է տեսել 1851 թվականին՝ հայատառ թուրքերենով[7]։ Թեմա ընտրելով պոլսահայ կյանքում սուր բնույթ ստացած դավանաբանական երկպառակությունը, հեղինակը դատապարտում է այդ իրողությունը և առաջադրում ազգային միասնության գաղափարը։ «Ագապին» հարուստ է ռեալիստական պատկերներով, պոլսահայ արիստոկրատական բուրժուազիայի կենցաղային ու ընտանեկան բարքերի սուր մերկացումներով։

Արևելահայ վիպագրության ժողովրդային ուղին կանխորոշվեց Խ. Աբովյանի «Վերք Հայաստանիի» հայտնությամբ՝ 1858 թվականին։ Նա գրական ուղենիշ հանդիսացավ արևելահայ վիպագրության ապագա երկու թևերի՝ ազատագրական-ռոմանտիկական, որի առաջին նմուշները տվեց Րաֆֆին («Սալբի», «Հարեմ») և կենցաղագրական-ռեալիստական, որը գեղարվեստական արտահայտություն գտավ Մ. Նալբանդյանի «Մինին խոսք, մյուսին հարսն», «Մեռելահարցուկ», Պ. Պռոշյանի «Սոս և Վարդիթեր», Ղ. Աղայանի «Արություն և Մանվել», Գ. Տեր-Հովհաննիսյանի «Տեր-Սարգիս» ստեղծագործություններում։

Գաբրիել Տեր-Հովհաննիսյանի (1837—1920) «Տեր-Սարգիս» վեպը լույս է տեսել «Հյուսիսափայլ» ամսագրում՝ 1861 թվականին։ Թեև այն անավարտ է (ինչպես հավաստում են փաստերը, վեպի տպագրությունը կասեցվել է պահպանողական տարրերի բանսարկության հետևանքով), բայց առկա հատվածները ցույց են տալիս, որ վեպը սոցիալ-կենցաղային մի խական պամֆլետ է հայ հոգևոր դասի հասցեին։ Հեղինակը ստեղծել է Տեր Սարգսի հավաքական տիպը, որը խտացնում է հոգևոր դասի արատավոր գծերը՝ այլասերում, շահասիրություն և մտավոր սահմանափակություն։ Այս անողոք ռեալիստական քննադատությունը նկատի առնելով, Մ. Նալբանդյանը Գ. Տեր-Հովհաննիսյանին անվանեց «հայկական Գոգոլ», ակնկալելով գրական մի «փայլուն գալուստ»։

Մ. Նալբանդյանը թողել է գրական-հրապարակախոսական հարուստ ժառանգություն։ Լինելով դարաշրջանի հայ ամենախոշոր անհատականություններից մեկը և ուղղություն ու ընթացք տալով հայ հասարակական մտքի պատմությանը, նա ուրույն տեղ հատկացրեց իրեն նաև հայ գրականության պատմության մեջ որպես բանաստեղծ, արձակագիր և գրական քննադատ։

Մ. Նալբանդյանի պոեզիան հարուստ է թեմատիկ որոնումներով ու արծարծած մոտիվներով։ Նա գրել է հայրենասիրական բանաստեղծություններ

[7] Վեպը հայերեն լույս է տեսել 1953 թ. Գ. Ստեփանյանի թարգմանությամբ։

(«Հիշենք», «Մամիկոնյան մեծ Վահանի պատասխանը», «Օշական», «Իտալացի աղջկա երգը» և այլն), երգիծական ոտանավորներում ծաղկել հետամնացությունը, ազգային մեծատունների ու հոգևոր դասի արատավոր վարքագիծը («Հիմարաց ուսման վերա ունեցած կարծիքը», «Ну хорошо», «Ճշմարտություն», «Հայ մարդու հայրենիքը», «Առօրյա աշխարհ», «Աղցմիք», «Կընդուկ պոչատ...»), ներբողել երևելի անունների հիշատակի մեծությունը («Հենրիկոս Թովմաս Բոքլի հիշատակին», «Ժ. Ժ. Ռուսսոյի հիշատակին»)։ Սակայն նրա պոեզիայի ամենաարժեքավոր էջերը կազմում են խոհական-փիլիսոփայական բանաստեղծությունները՝ «Վազող ջրին», «Անցած օրերի», «Մըտածություն», «Լուսին», «Բանաստեղծ», «Ապոլոնին», «Մանկության օրեր» և այլն։ Բանաստեղծը ձգտում է իմաստավորել իր գոյությունը մեծ իդեալների որոնումով։ Պոետական այս մտորումները փիլիսոփայական ընդհանրացման են հասնում «Ազատություն» բանաստեղծության մեջ, որը հայ պոեզիայի գլուխ-գործոցներից է, ազատության մի իսկական հիմն.

— Ազատությո՛ւն,— գոչեցի,—
Թող որոտա իմ գլխին
Փայլակ, կայծակ, հուր, երկաթ,
Թող դավ դնե թշնամին,
Ես մինչ ի մահ, կախաղան,
Մինչև անարգ մահու սյուն,
Պիտի գոռամ, պիտի կրկնեմ
Անդադար ազատությո՛ւն...

Նալբանդյանի խոհական-փիլիսոփայական քնարերգությունը մեծ գաղափարների պոեզիա է, ուր ազգային իդեալներն ու անձնական խոհերը բարձրացվում են տրամադրությունների համամարդկային հնչման։

Նշանակալից է Նալբանդյանի դերը հայ գեղարվեստական արձակի ձևավորման պատմության մեջ։ «Մինին խոսք, մյուսին հարսն» և «Մեռելահարցուկ» երկերն արևելահայ ռեալիստական վիպագրության առաջին նըմուշներն էին։

«Մինին խոսք, մյուսին հարսն» (1857) վիպակի սյուժեն վերցված է Նոր Նախիջևանի կյանքից։ Հելսինկիի համալսարանի բնագիտական ֆակուլտետն ավարտած Գևորգ Շահումյանը վերադառնում է հայրենի քաղաքը՝ լուսավորություն տարածելու խանդավառ ցանկությամբ։ Սոցիալական արմատական բախումներ չէր ակնկալում գաղափարական երիտասարդը. նա քննադատում է հետամնաց բարքերն ու կենցաղային նախապաշարմունքները և շատ շուտով իրեն ամբողջովին գտնում բախման հանգույցում, որից, սակայն, դուրս է գալիս հաղթանակով։ Ակներև է, որ Նալբանդյանը վեպի կոնֆլիկտին տվել է լուսավորական ռեալիզմին յուրահատուկ բարոյաբանական լուծում, սակայն դա բնավ էլ չի բացառում հայ վիպագրության առաջին նմուշներից մեկի ճանաչողական ու գրական արժեքը։

Թեմատիկ և սյուժետային նորույթ էր Նալբանդյանի «Մեռելահարցուկ» («Հյուսիսափայլ», 1859, № 8—10) վեպը, ուր գրողի ռեալիզմը հասնում է սոցիալական խոր թափանցումների՝ ի հակակշիռ սիրապատում սյուժեների,

որոնք ըստ մի որոշ գրական կարծիքի, պարտադիր են վեպի համար։ Նալբանդյանը վիպական իրականություն է դարձնում հասարակական կյանքի բոլորովին նոր բնագավառներ, սյուժեն, կոնֆլիկտը, գաղափարական հանգույցը կառուցում հասարակական հոսանքների և դրանց կրող սոցիալական ուժերի բախման վրա։ Վեպի գաղափարական հերոսը՝ Կոմս Էմմանուելը լուսավորության, առաջադիմության, գիտության ու ճշմարիտ հայրենասիրության ջատագով է, իսկ հակոտնյաները՝ Շաքարյանց, Մանթուխյանց և սրանց հովանավոր բուրժուա Հովնաթանյանցը՝ խավարամտության, սնապաշտության և կույր նախապաշարմունքի կրողներ, որոնց անձնավորությունը, կենցաղն ու ընտանեկան բարքերը ենթարկված են սուր ծաղրի ու քննադատության։

Մ. Նալբանդյանի անվան հետ է կապվում հայ գրական-քննադատության կոչումը։ Հիմնավորելով քննադատության անհրաժեշտությունը և չափանիշ դիտելով այն «որևիցե ազգի լուսավորության աստիճանի», Նալբանդյանը, մասնավորապես, շեշտում էր քննադատության դերը ազգային գրականության զարգացման գործում։ «Այն ազգը,— գրում է նա,— որ չունի կրիտիկա, չունի և մատենագրություն. պատճառ՝ մատենագրությունն առանց կրիտիկայի, միևնույն է, ինչպես մարմինն առանց հոգու»։

Նալբանդյանի քննադատական հայացքների առանցքը ռեալիզմն է։ Առաջադրելով կյանքի ու գրականության փոխադարձ կապի պահանջը, նա գեղարվեստականության չափանիշ էր պարզում ճշմարտությունն ու բնականությունը, գեղեցկի հասկացությունը կապում կյանքի ու բնության հետ։ Էական է դիտել, որ ռեալիզմի գեղագիտության հարցերը Նալբանդյանի քննադատական հայացքներում չեն արտահայտվում սոսկ գործնական նշանակությամբ, այլ ստանում են տեսական-փիլիսոփայական հիմնավորում։ Այս տեսակետից ուշագրավ են հատկապես «Հեգելը և նորա ժամանակը», «Աշխարհաբարի քերականության ներածություն» և «Կրիտիկա «Սոս և Վարդիթերի» աշխատությունները։ «Կրիտիկան» գրական երևույթների գեղագիտական փիլիսոփայական վերլուծության մի բացառիկ օրինակ է և որպես այդպիսին մնում է հայ քննադատական գրականության դասական նմուշներից մեկը։

Առաջին չափածո գործերը Ռափայել Պատկանյանը տպագրել է Գ. Պատկանյանի «Արարատ» շաբաթաթերթում՝ 1850 թ., բայց նրան ազգային բանաստեղծի համբավ բերեց «Արաքսի արտասուքը» (1855) հայրենասիրական լիրիկական աքը, որը, հիրավի, գծեց արևելահայ ազատագրական-հայրենասիրական պոեզիայի ուղին։

Տակավին 50-ական թվականներին Ռ. Պատկանյանը առաջադրում էր ազգային-մտավոր գործունեության մի ծրագիր, որը բնորոշում է նրա պոեզիայի ոգին և ուղղությունը։ Մերժելով սենտիմենտալ-բարոյախոսական ազգասիրությունը, նա դրան հակադրում է ակտիվ հայրենասիրության մի ըմբռնում, որը պայքարի ու անձնազոհության, զենքի ու արյան հառուցման մեջ էր գտնում ազգի փրկությունը։ Այստեղ իսկ օրինակ պարզելով Գուստավ Ադոլֆի, Վիլհելմ Տելի, Դմիտրի Դոնսկոյի, Պուգաչովի, Ստենկա Ռազինի անունները, Պատկանյանը ստեղծում է հայ ռոմանտիկ բռնտարի բա-

նաստեղծական կերպարը՝ հանձին Աղասու և Քյոռ-օղլու, որոնք մարմնավորում են ազատագրական պայքարի իր իդեալը («Աղասու մոր երգը», «Քյոռ-օղլի» և այլն)։

Պատկանյանի հայրենասիրական պոեզիան առաջադրում է մի ուրույն պատմահայեցություն. եթե մի դեպքում պատմական անցյալը հայելի է դառնում անփառունակ ներկան ողբալու համար («Արաքսի արտասուքը»), իսկ մի այլ դեպքում պատմության էջերում կարդում է ազգային դժբախտության չարիքը («Քաջ Վարդան Մամիկոնյանի մահը» պոեմը), ապա մի երրորդ հետևությամբ, նա մոռացության է կոչում անցյալի հերոսներին և մարտահրավեր կարդում ներկա սերնդին («Հայ պատանին երգում է»)։

Ազատագրական պայքարի ռոմանտիկական մարտակոչը, սակայն, անխառն բանաստեղծական ներշնչում չէր Պատկանյանի պոեզիայում։ Նրան յուրահատուկ էր մի զգոն ու մտրակող հայացք իրականության հանդեպ։ Եվ այստեղ ռոմանտիկական հեգնանքը մի սուր զենք է ներկայանում ծաղրելու իրական-այլանդակը, այն, ինչ դեմընթաց է առաջադիմությանն ու ազատագրության իդեալի կենսագործմանը («Մայրաքաղաքում կրթած հայ երիտասարդ», «Մայրաքաղաքում կրթած հայ աղջիկ», «Ավեն տանն է», «Հայ և հայություն», «Բարոյավեպ» և այլն)։

Պատկանյանի պոեզիան մի որոշ չափով տուրք տվեց ազգային ռոմանտիզմի վերացական պատրանքին։ «Տարաշխարհիկ» երիտասարդության հայրենասիրական հովերից էր սնվում այս ռոմանտիզմը, երիտասարդություն, որ գաղափարներ էր մտորում և ծրագրեր հորինում «գեղեցիկ հեռվում», առանց խորապես ճանաչելու ժողովրդին, առանց շոշափելու իրական այն ուժերը, որոնք պիտի իրականացնեին ազատագրական պայքարի գործը։

1866 թ. Պատկանյանը տեղափոխվում է Նոր Նախիջևան և նվիրվում դպրոցական-կրթական գործունեության։ Այլևս չէր հնչում բանաստեղծի ազգային-հայրենասիրական քնարը և երբեմնի մարտական բանաստեղծը գրում է արձակ ու չափածո երկեր՝ Նոր Նախիջևանի բարբառով, և հենց նույն միջավայրի կենցաղի ու բարքերի թեմաներով։ Գրողը սուր ծաղրի է ենթարկում տեղական վերնախավի սոցիալական չարարկումները, քննադատում հետամնացությունն ու գավառական սահմանափակությունը, պատում ազգային «բարերարների» երեսպաշտ դիմակը։ Բարբառային արձակ գործերից ուշագրավ են հատկապես «Ջախու», «Փորսուղին Ավագը», «Պաց աղպար», «Նոր տուն, հին տուն», «Քուլական մեռելները», «Խոռթլուխ» պատմվածքները։

70-ական թվականների ազգային-քաղաքական իրադարձությունները նոր բեկում առաջացրին Պատկանյանի ստեղծագործական կյանքում։ Ռուս-թուրքական պատերազմը վերստին հուսավառում է հայերի ազատագրության երազանքները։ Դեռ Բուլղարիայի ազատագրության հեռավոր արձագանքները էին լսվում, երբ Պատկանյանը գուշակեց նաև Հայաստանի ազատագրության արշալույսը։ Նրա ռոմանտիկական պոեզիան ամբողջ տարերքով հանձնըվում է երկունքի պահի ջղաձիգ ապրումներին։ Մեկ մեկու հաջորդում են մարտական բանաստեղծությունները՝ «Մշեցու հեկեկանքը», «Ղարիբ մշեցի», «Վանեցոց աղոթքը», «Վանեցի մոր երգը», «Վանեցի գեղջուկի տաղը» և այլն։

Հազիվ քսանամյա պատանի էր Սմբատ Շահազիզը, երբ լույս ընծայեց բանաստեղծությունների անդրանիկ ժողովածուն՝ «Ազատության ժամերը»։

60-ական թվականների ազգային-քաղաքական իրադարձությունները նոր լիցք հաղորդեցին Շահազիզի բանաստեղծական ներշնչումներին։ «Հյուսիսափայլի» գաղափարական համախոհը միանգամից գտնում է մի պատրաստի աշխարհայացք և իր պոեզիան վերաձևում ազգային-քաղաքական մոտիվների առանցքի վրա։ «Նախ քաղաքացի և ապա պոետ»՝ ահա նրա ռոմանտիզմի գեղագիտական հավատամքը։ Նա արդեն գաղափարի երգիչ է, սերն ու վայելքն այլևս չեն հրապուրում նրան, նրա էությունը համակված է ազգի ազատագրության և մարդկության բարօրության ռոմանտիկական վեհությամբ։ Քաղաքացի բանաստեղծն իր քնարը նվիրաբերում է «ազգի պիտույքին», երգում հայրենի սերը, մեծարում նրա պատմական հերոսությունը և հուսավառում ազատագրական պայքարի նրա իղձերը։ «Ազգային վիճակ», «Ինձ մի սիրիր», «Խորհրդածություն բանաստեղծի», «Բռնավոր սուլթան», «Եզվիտներ և Ջեյթուն», «Պոետ, նյութապաշտ և քաղաքացի», «Իտալուհիք և իտալացիք» բանաստեղծություններով, ինչպես և «Լևոնի վիշտը» պոեմով Շահազիզը անփոխարինելի տեղ նվաճեց XIX դարի հայ ազատագրական-ռոմանտիկական պոեզիայի պատմության մեջ։ Շահազիզը ստեղծել է նաև մի քանի քնարական երգեր, որոնցից «Երազը» («Ես լսեցի մի անուշ ձայն...») մինչև այսօր էլ հուզում է իր երգային հմայքով։

Ազգային-ազատագրության հարցում անմասն չմնալով ժամանակի հեղափոխական մտայնությունից, Շահազիզը, սակայն, սոցիալ-քաղաքական իր ընդհանուր հայեցությամբ մնաց լիբերալ-լուսավորչության սահմաններում։ Դրա ցայտուն գեղարվեստական արտահայտությունն էր «Լևոնի վիշտը» (1864) պոեմը, որն իբրև չափածո վեպ ժանրային նորույթ էր հայ գրականության մեջ և որոշակիորեն կրում էր Բայրոնի ու Պուշկինի գրական ազդեցությունը։

Պոեմի ռոմանտիկ հերոսը՝ հայրենի եզերքից վաղուց հեռացած, ժամանակի առաջադիմության և գիտության ոգուն հաղորդակից Լևոնը, ազգային գիտակցությամբ առնված, մեկնում է հայրենի եզերքը, իր կյանքը նվիրաբերելու թշվառ հայրենիքին, լուսավորությամբ փրկելու իր տառապած ու հարստահարված ազգը։ Նա մի յուրատեսակ Չայլդ Հարոլդ էր, սակայն ոչ համաշխարհային թախծի տրամադրությամբ և դեպի էկզոտիկ եզերք ռոմանտիկական փախուստով, այլ մի անհատ, որ «հայրենի վիշտն» է կրում և ձգտում հայրենիք՝ փարատելու նրա տառապանքը՝ դարի առաջադիմության լույսով։

«Լևոնի վիշտը» Շահազիզի գեղարվեստական հավատամքի ամփոփումը հանդիսացավ։ Հետագայում նա հանդես եկավ «Հրապարակախոս ձայն» (1881), «Ամառային նամակներ» (1897) և այլ հրապարակախոսական երկերով, գրեց բանաստեղծություններ, որոնք, սակայն, էական երանգներ չբերեցին նրա հայեցության մեջ և նրա անունը կապված մնաց 60-ական թվականների գրական շարժման հետ։

Գաբրիել Սունդուկյանը հայ ռեալիստական դրամատուրգիայի հիմնադիրն է։ Յուրացնելով ռուս և եվրոպական դրամատուրգիայի ավանդները,

նա հայ ռեալիստական դրամատուրգիան բարձրացրեց սոցիալական մեծ ընդհանրացումների և գեղարվեստական կատարելության։ Սունդուկյանը ստեղծեց գեղարվեստական մնայուն կերպարների մի ամբողջ շարք, որոնք նախօրինակ հանդիսացան հայ քննադատական ռեալիզմի ապագա գրական տիպերի համար։ «Խաթաբալա», «Էլի մեկ զոհ», «Քանդած օջախ», «Պեպո» երկերով Սունդուկյանը հայկական կատակերգությունը դուրս բերեց կենցաղային պատկերների նեղ ոլորտից և ազգային թեման բարձրացրեց համամարդկային հնչման։ Արտաքուստ միայն կատակերգական՝ նրա պիեսները սոցիալական դրամաներ են՝ ուժեղ բախումներով, հոգեբանական լուծումներով ու բարդ կոլիզիաներով։ Ռեալիստորեն արտացոլելով բուրժուականացող քաղաքի սոցիալական ու բարոյական այլափոխումները, Սունդուկյանը վեր է հանել հայ առևտրական բուրժուազիայի գաղափարազրկությունը, շահամոլությունն ու սոցիալական էգոիզմը, մտավոր սահմանափակությունն ու կենցաղի ճղճիմությունը, ուր ամեն մի բարձր զգացմունք տրորվում է շահախնդրության մոլուցքի մեջ։ Դրամատուրգը խորապես համակրել ու կարեկցել է անմարդկային այդ հարաբերությունների անմեղ զոհերին։ Սունդուկյանի պիեսները ցուցադրում են հայկական առևտրական բուրժուազիայի սոցիալական կենսագրությունը։



Սմբատ Շահազիզ

Սունդուկյանի ստեղծագործական խիզախումը «Պեպոն» էր՝ հայ դրամատուրգիայի գլուխ-գործոցը։ Անփոխարինելի հմայքով օժտված ժողովրդական հերոսի հոյակապ կերպարը, համարձակ սոցիալական կոլիզիան, բեմական խոսքի շեքսպիրյան լիությունը, շեշտուն ու իմաստավոր մենախոսությունը, գործողությունների դրամատիկական ընթացքը գեղարվեստական արտակարգ հմայք են տալիս երկին։ Բուրժուազիային և աշխատավորին կանգնեցնելով դեմ առ դեմ, հեղինակը իրար է հակադրում երկու աշխարհ, ուր ամենազուրկ աշխատավորը վեհանում է իր առաքինությամբ, արժանապատվությամբ, հոգու մաքրությամբ և խիզախ ու հանդուգն ընդվզումով փշրում «վերին» հասարակության պայմանական պատրանքները։

Սունդուկյանը հայ գրականությանը տվեց մնայուն գեղարվեստական մի քանի տիպեր՝ Պեպո, Զամբախով, Զիմզիմով և ուրիշներ. նրա պիեսները շուրջ հարյուր տարի զբաղեցնում են հայ թատրաբեմը։

Մկրտիչ Պեշիկթաշլյանը գրական-հասարակական ճանաչում գտավ որպես դրամատուրգ։ Նա հեղինակել է մի քանի պատմական ողբերգություններ՝

«Կոմնակ», «Արշակ Երկրորդ», «Վահե», «Վահան Մամիկոնյան», որոնք ժամանակին բեմադրվում էին պոլսահայ թատրոններում և բուռն ընդունելության արժանանում։ Արձագանքելով ազգային-ազատագրական շարժման իրադարձություններին, Պեշիկթաշլյանն իր ողբերգություններում փառաբանում է հայրենասիրությունը, պատմական Հայաստանի հերոսականությունը և, ի ցույց դնելով դավաճանությունն ու երկպառակությունն իբրև ազգային դժբախտության նախապատճառ, դատապարտում ու պատժում է այն որպես չարիք։ Ժանրի ասպարեզում Պեշիկթաշլյանի բերած նորույթն այն է, որ նա հրաժարվեց գրաբարից ու բեմը տրամադրեց հանդիսատեսին հասկանալի ընտիր աշխարհաբարին և, խախտելով դասական ողբերգության սկզբունքները, պատմա-հայրենասիրական դրաման մերձեցրեց ռոմանտիզմին, լայն տեղ տալով հերոսների զգացական-հոգեբանական ապրումների բացահայտմանը։ Որքան էլ Պեշիկթաշլյանի դրամաները ժամանակին մեծ արձագանք էին գտնում, այնուամենայնիվ, այժմ դրանք միայն պատմական նշանակություն ունեն։ Նրա տաղանդը մնայուն արժեքներ ստեղծեց քնարական բանաստեղծության բնագավառում. նա դասվեց հայ գրականության դասականների շարքը։

Պեշիկթաշլյանի պոեզիան ռոմանտիզմի և դասականության մի ներդաշնակ ձուլվածք է, որն ի հայտ է բերում արվեստի կատարելության ամբողջ հմայքը։ Պեշիկթաշլյանի գրական խառնվածքը չի հանդուրժում ուժեղ պոռթկումներ, կրքերի հախուռն տարերք, փիլիսոփայական առեղծվածների ներխույզ որոնումներ. նա հանդարտ է, ներդաշնակ և զգայուն։ Պեշիկթաշլյանի պոեզիայի ամենասուրբ և փայփայած գաղափարը հայրենիքն է և հայրենասիրությունը։ Նա ոգեշնչվել է քաջագործ նախնիների հերոսությամբ («Քերթողական ոգին Հայաստանու ի քուն», «Դիւցազունք հայոց», «Ջրոսանք Արտաշեսի առաջնոյ», «Հրաւեր ի մարտ խոսրովու մեծի», «Ի նահատակութիւն Վարդանանց» և այլն), վերապրել պատմական Հայաստանի կործանման էլեգիան, հուսավառվել ազգային զարթոնքի ռոմանտիկ հովերով, բայց ի վերջո, փշրված հույսերով անձնատուր եղել տխուր մահերգությանը։

Պեշիկթաշլյանի հայրենասիրական պոեզիայի լավագույն նմուշներից են «Մերն Վանա», «Եղբայր եմք մեք», «Գարուն», «Ո՜հ, ինչ անուշ և ինչպես գով...» և զեյթունյան շարքի բանաստեղծությունները՝ «Հայ քաջորդի», «Մահ քաջորդւոյն», «Թաղումն քաջորդւոյն», «Հայ քաջուհին»։ Սրբագործելով գեղեցիկ զգացմունքով փայփայված քնարական հայրենիքը, որպես անփոխարինելի կարոտ, հոգու հանգրվան և մասունք դարձած հիշատակներ, բանաստեղծը անմահությամբ է փառապսակում Զեյթունի հերոսներին, որոնք նահատակությամբ հուսավառեցին հայ ժողովրդի ազգային-ազատագրական պայքարի հավատը.

Ու ծափ զարկին մեր հարց ոսկերք,
Զի չէ մեռած հայոց կրակ,
Ու ցնծացին այնչափ զոհեր,
Զի լուծավ վրեժ յարեան վտակ.

Խնդաց Մասիս, մայր իմ, և դուն
Ուրախ լուրեր տար ի Զեյթուն։

Պեշիկթաշլյանը հայ պոեզիան հարստացրեց սիրո և բնության բանաստեղծական գոհարներով, որոնք աչքի են ընկնում ձևի կատարելությամբ, ներդաշնակ ռիթմով ու երաժշտականությամբ։ «Թուլլ տուր», «Քնար և շիրիմ», «Աշուն», «Առ զեփյուռն Ալեմտաղի», «Գացեք, իմ տաղք...», և այլ քնարական երգերում բանաստեղծը հրմայում է սիրո զգացմունքի թրթռումներով, բնության նուրբ ու խորհրդավոր շարժումների զգացողությամբ։


Մկրտիչ Պեշիկթաշլյան

Պետրոս Դուրյանը գրել սկսել է վաղ պատանության հասակից և ապրելով հազիվ քսան տարի, թողել է գեղարվեստական մի ժառանգություն՝ դրամատուրգիայի և պոեզիայի ասպարեզում, որը զբաղեցնում է հայ դասական գրականության փայլուն էջերից մեկը։

Դուրյանի բանաստեղծական քնարին չվիճակվեց իր նախորդների ռոմանտիկ-հայրենասիրական ոգեշնչումը. հույսի ու հավատի ժամանակներն անցել էին։ Ոչ ոք այնպես չվերապրեց քաղաքական ռեակցիայի մռայլը, ինչպես Դուրյանը։ «Նոր սև օրեր», այսպես նրան ներկայացավ արևմտահայության իրական կացությունը։ Բանաստեղծը մի վերջին ճիգ ևս արեց, փորձեց վերապրել հույսերի երբեմնի ռոմանտիկ ոգևորությունը, ճչաց «ահագին ցավի» ազգային բողոքը, «զենքին դեմ զենք» մարտակոչեց, խաղաղվեց «սիրո և միության» գեղեցիկ պատրանքով, բայց դրանք այնպես էլ մնացին որպես անձնական արձագանքներ։ Ռոմանտիկ բանաստեղծը մեն-մենակ մնաց տխրամած հայրենիքի հետ և փարեց նրան սիրո ու գորովանքի անձնականորեն այնքան մոտ ու հուզաթաթավ նվիրումներով («Իղձք առ Հայաստան», «Իմ ցավը»)։

Ինքնամոռաց ու թրթռուն ազնվությամբ բանաստեղծը հայրենիքը ձուլեց իր էության հետ, որպեսզի այն չաղարտի որևէ այլ գայթակղությամբ։ Նա պատրաստ է նոճի դառնալ և շուք տալ հայրենիքին, արցունք լինել և ցողել հայրենի դամբաններ, հուր դառնալ և ազատություն տալ հային, պատրույգ լինել և լուսավորել հայրենիքի փառքը, արյուն դառնալ և կարմիր ներկել հայրենի սեր, գերեզմանում իսկ քնարի ձայն լինել և երգել հայրենի երգը։ Ոչ մի բան այնքան ցավալի չէ բանաստեղծին, որքան հեռանալ կյանքից՝ առանց մի շյուղ դնելու հայրենիքի օգտին.

Հեք մարդկության մեկ ոստը գոս՝
Հայրենիք մը ունիմ թշվառ.
Զօգնած անոր մեռնի՜լ աննշան.
Ո՜հ, ա՜յս է սոսկ ցավ ինձ համար։

Դուրյանը վիթխարի նորարար է հայ պոեզիայի պատմության մեջ. հայ բանաստեղծական արվեստը նա բարձրացրեց ձևի կատարելության և համապարփակ ընդգրկումների։ «Հանճարեղ անհատի» ռոմանտիկական մեծությամբ նա ականկալեց աշխարհն իր ամբողջ բարդությամբ. զգացմունքների, խոհերի մի անհուն աշխարհ, որն ավելի լայն է, ավելի տարբերքոտ, ավելի դրամատիկ, քան երբևէ ընդգրկել է հայ պոեզիան։ Դուրյանը խախտեց լիրիկական մոտիվի միագծությունը և բանաստեղծությունը հարստացրեց հույզերի լիությամբ, տրամադրությունների բարդ համադրությամբ։ «Սիրել», «Դրժել», «Լճակ», «Իմ մահը», «Տրտունջք» և այլ բանաստեղծություններ համապարփակ ընդգրկումների երկեր են, որոնք ընդլայնում են հայ քնարական պոեզիայի գեղարվեստական հնարավորությունները։ Դուրյանը հայ պոեզիային հաղորդեց փիլիսոփայական խորություն, զգացմունքների մեծությունը հանգեցնելով տիեզերական մասշտաբների և առեղծվածային խորհումների։ Նրա ռոմանտիկական «եսը» իր մեջ բեկեց մարդկության ճակատագրի տիեզերական կնճիռը. անձնական ողբերգությունն ու ազգային վիշտը բարձրացրեց համաշխարհային թախծի։ Եթե մի կողմից նրա «ռոմանտիկ պանթեիզմը» միտում էր լուծել ոգու և գոյի, կյանքի ու մահվան, ոչնչի ու հավերժության, երկնքի ու երկրի գաղտնիքը, այստեղ իսկ ընդվզում տիեզերական անարդարության դեմ և հեգնելով արարչագործին՝ ժխտում է հանդերձյալը և անմահություն գտնում «մեկ շյուղի» հավերժության մեջ, ապա, մյուս կողմից, կանգնում է իդեալի ու իրականության խզման հանգույցում և ողբում տրոհված մարդկության ճակատագիրը։ Եվ ինչքան էլ նրա պոեզիայում իդեալը թրթռում է մի հանգչող նրբությամբ ու պարուրող քաղցրությամբ, որքան էլ բանաստեղծը ռոմանտիկորեն վեհացնում է սերը, փորձում խաղաղ ու ներդաշնակ բնության մեջ փարատել իր խռովքը, այնուամենայնիվ, այդ ամենը հնչում է որպես պատրանք։ Ոչ մի բանով նա չի կարողանում լցնել իդեալի և իրականության միջև բացված ճեղքը, համեցրել նպատակը ձգտման հետ, սերը՝ վայելքին, գեղեցիկը՝ զգացումին։

Պ. Դուրյանին ուրույն տեղ է պատկանում հայ դրամատուրգիայի պատմության մեջ։ Նա թողել է թատերական մի շարք երկեր՝ «Վարդ և Շուշան», «Սև հողեր», «Ասպատակություն պարսկաց ի Հայս», «Անկումն Արշակունի հարստության», «Թատրոն կամ թշվառներ», որոնք նոր վերաձևումներ են կատարում ժանրի ասպարեզում։ Առաջին նորամուծությունն այն էր,՛որ Դուրյանը պատմական դրաման ենթարկեց ռոմանտիկական արվեստի սկզբունքներին։ Դուրյանի պատմահայեցողությունը շատ կողմերով վերանայում է գեղարվեստական նախորդ չափանիշները։ Ամենից առաջ նա ի հայտ բերեց նյութի ազատ տնօրինում և դրամայի սյուժեն հարստացրեց կենցաղի ու անձնական կյանքի պատկերներով։ Նրա պատմական դրամայի իդեալ-հերոսը ոչ թե արքան է կամ իշխանը, այլ ժողովրդի մարդը՝ իր ճշմարիտ հայրենասիրու-

*թյամբ և անձնազոհ քաղաքացիությամբ։ Այստեղ էլ Դուրյանը ժողովրդական կյանքի փիլիսոփայությունը հակադրում է վերին պալատներին, երջանկության, առաքինության խորհուրդը խլում պալատական կյանքի աղտեղությունից և հատկացնում գեղջկական հյուղակի մաքրությանը։ «... Ի՞նչ է Թագը, Թուշուն ատող մը, ի՞նչ է ծիրանին, ժողովրդական արյամբ կարմրած պատանքի կտոր մը, զոր դարձյալ ժողովուրդը կը կարկտե. ի՞նչ է պալատը, վիրապ մը, ուր մարդիկ շղթա և տապար կկռեն իրենց նմանները հարվածելու. ի՞նչ է Թագավորը, Թագ կրող չոր գանգ մը, որ մութին մեջ կը հարվածե», «Եվ միթե աշխարհի վրա կա Թագ մը, որ արյունոտ չըլլա»,—սոցիալական հակասությունների, տերերի ու հպատակների հակադրության, պալատական բարքերի այսպիսի սուր մերկացումը նոր երևույթ էր հայ պատմա-գեղարվեստական գրականության մեջ։ Դուրյանը առաջադրում էր բոլորովին նոր ու «դաժան» պատմահայեցություն. Նա անողոքաբար պատռում է պատմության գունազարդված քողը և շքեղ վարագույրների ետև տեսնում բարքերի այլասերում, ճղճիմ շահասիրություն, խարդավանք, բամսարկություն, ոճիրներ ու դավեր։ Այս էլ Դուրյանը համարում է հայոց պատմական ողբերգության չարիքներից մեկը։ Սա արդեն նշմարումն է ազգային-ազատագրական պայքարի ժողովրդական այն ուղու, որին պիտի հանգեր հետագա տասնամյակների ռոմանտիկական պատմահայեցությունը։*



Պետրոս Դուրյան

*Հայ դրամատուրգիայի պատմության մեջ Դուրյանի բերած նորույթը նաև այն է, որ ռոմանտիկական դրաման ազատեց պատմական թեմայի մենաշնորհից և զբաղեցրեց արդիական-սոցիալական խնդիրների արծարծումով։ «Թատրոն կամ թշվառները» այս իմաստով նոր խոսք էր արևմտահայ դրամայում։ Սյուժեի ողբերգական լուծումը, հերոսների կործանումը մի ուժգին սոցիալական բողոք էր կյանքի անարդարությունների դեմ, մարդու և մարդկայնության պահպանության հումանիստական բաղձանք։*

## 2. ԹԱՏՐՈՆ

*XIX դարի առաջին կեսին աշխուժացում ապրեց թատերական արվեստը։ Ամենուր կազմակերպվող սիրողական ներկայացումները հնարավոր դարձրին հայ նոր՝ արևելահայ և արևմտահայ պրոֆեսիոնալ թատրոնի ստեղծումը։ Վենետիկի ս. Ղազարի վանքում, սկսած 1770-ական թվականներից, աշակերտական ներկայացումներ են տրվել։*

1790-ական թվականների կեսերից Մխիթարյանների խաղացանկում նըկատելի փոփոխություն է կատարվում։ Մի ամբողջ տասնամյակ գերազանցապես ցուցադրվում են հայ պատմական անցյալը ներկայացնող պիեսներ՝ «Վահան Մամիկոնյանը» (1792), «Ղևոնդյանց նահատակությունը» (1795), «Մեծն Վարդան Մամիկոնյան» (1799), «Հայկ դյուցազն» (1805) և այլն։ Այդ շրջանում ընդամենը երկու ողբերգության ենք հանդիպում, որոնք ունեն կրոնական բովանդակություն՝ «Տրդատա հաղթությունը» և «Վաճառումն Հովսեփա»։ Բնորոշ է, որ «Վարդանաց պատերազմը» 1795 թ. ներկայացվում է որպես «Ղևոնդյաց նահատակություն»։ Նույն դրվագը 1799 թ. ներկայացվում էր «Մեծն Վարդան Մամիկոնյան»։ Վարդան զորավարի բեմհանումը շրջադարձ էր, որը հետագայում այնքան ամուր պատվանդան ստեղծեց հայ բեմում ու գրականության մեջ։

1820—1860 թթ. բեմադրված պիեսների մեջ պատմական ողբերգություններին զուգընթաց նկատում ենք հակում դեպի կենցաղային կատակերգությունը՝ «Սաղրածու Յուսուֆ», «Ճիմիճի Ահմեդի նկարագիրը», «Ավրամ հրեա», «Վաճառական Մոշոն» և այլն, որոնց մեջ քննադատվում են հասարակական չարիք հանդիսացող երևույթները։ Ուշագրավ բացառություն է «Խելոք Դավթին գյուղերու հարկերը թեթևացնելու համար մայրաքաղաք երթալը և հոն, այն է Պոլիս, տխրահռչակ հայի մի հնարամտությամբը խաբվիլը»։ Այս պիեսը ունի սոցիալական բովանդակություն։

Այս շրջանին է վերաբերում Մոլիերի դրամատուրգիայի մուտքը հայ իրականություն՝ Մխիթարյանների միջոցով։ 1812 թ. բեմադրվում է «Երևակայական հիվանդը», իսկ հաջորդ ձմռանը՝ «Ակամա բժիշկը», երկուսն էլ փոխադրություն Արսեն Բագրատունու[8]։

Դեռևս 1810-ական թվականներից Մխիթարյանները ներկայացումներ են կազմակերպում Կ. Պոլսի իրենց դպրոցներում։

Թիֆլիսի Ներսիսյան դպրոցում նրա հիմնադրման առաջին տարիներից կազմակերպվում են աշակերտական ներկայացումներ, այդ թվում Գրիբոյեդովի «Խելքից պատուհասը»։ Թատերական արվեստը դպրոցական պատերից դուրս բերելու առաջին պատիվը արևելահայ կյանքում պատկանում է Գալուստ Շիրմազանյանին, որը 1840-ական թվականների կեսերից կենցաղային հարցեր շոշափող կատակերգություններ է բեմադրել, այդ թվում՝ Շիրմազանյանի «Ինչ ինչ գործոց Կարապետ եպիսկոպոսի» պիեսը[9]։

1846 թ. Կ. Պոլսում հիմնվում է Արամյան թատերական ընկերությունը, որը գործում է մոտ քսան տարի, ներկայացումներ տալով ոչ միայն Թուրքիայում, այլև Կովկասում (Թիֆլիս, Էջմիածին, Երևան, Նախիջևան)։ Արամյան խումբը գործում էր կանոնավոր ռոճիկով, ուներ թատերական շենք, բեմական հարմարություններ, անգամ նկարիչ-ձևավորող։ Թատերախումբը զգալի տեղ էր հատկացնում պատմական անցյալը ցուցադրող պիեսների («Թագավորացն հայոց»)։ Ուշագրավ է, որ նրա խաղացանկում եղել է Շիլլերի «Ավա-

---

8 Հ. Բ. Սարգսյան, Երկհարյուրամյա գրական գործունեություն և նշանավոր գործիչներ Վենետիկո Մխիթարյան միաբանության, Վենետիկ, 1905։

9 «Մատենադարանի գիտական նյութերի ժողովածու», № 2։

զակների» սյուժեով գրված «Ռոբերտ ավազակապետ» պիեսը։ Իր ներկայացումները տալով գերազանցապես բաց հրապարակներում պատրաստված մեծ տաղավարներում, իսկ Թիֆլիսում՝ բազմահազար հանդիսականների բավարարող փայտաշեն թատրոնում, Արամյան խումբը նպաստել է ժողովրդական լայն զանգվածներին թատերական արվեստին հաղորդակից դարձնելու գործին։

1858 թ. հունվար ամսին Մոսկվայի համալսարանի հայ ուսանողները բեմադրում են իրենց ընկերներից Հ. Գուրգենբեկյանի «Հաջի Սուլեյման» վոդևիլը, որի նյութը վերցված էր Թիֆլիսի չարչիների կյանքից։ Մեկ տարի անց նույն ուսանողները ներկայացնում են Նիկ. Ալադաթյանի «Վայ իմ կորած հիսուն ոսկին» վոդևիլը։ Այն դիտել են Մ. Նալբանդյանը, Ստ. Նազարյանցը, Մ. Մսերյանցը և ուրիշներ, որոնք առաջին անգամ արևելահայ մամուլում գրախոսականներ են գրել այդ ներկայացման մասին։

Այդ տարվա հունվար ամսից վերսկսվում են թատերական երեկույթները Թիֆլիսի Ներսիսյան դպրոցում։ Հակոբ Կարենյանը դպրոցի դահլիճում բեմադրում է իր «Շուշանիկ» պատմական ողբերգությունը։ Ներսիսյան դպրոցի օրինակով թատերական երեկույթներ են կազմակերպում գիմնազիայի հայ աշակերտները, ցուցադրելով Թիֆլիսի բարբառով գրված կենցաղային պիեսներ, ինչպես «Հայոց լեզու կամ Պետրոս և Բարբարե»[10]։

Մամուլում սկսվում է պայքար գրական ուղղությունների, թատրոնի դերի վերաբերյալ։

Գրական հին ուղղությունը խստորեն քննադատում է կենցաղային դրամատուրգիայի ջատագով Միքայել Պատկանյանը։ «Մեղու Հայաստանի» թերթում նա գրում է մի «Կրիտիկա»՝ «Շուշանիկի» մասին և, օգտագործելով Բելինսկու գրականագիտական հայացքները, փորձում է հիմնավորել թատրոնի հասարակական դերը, առաջ է քաշում իրական կյանքի արտացոլման անհրաժեշտությունը դրամատուրգիայում։

Հ. Կարենյանը պատասխանում է Միք. Պատկանյանին, Վերջինս նորից է հանդես գալիս մամուլում, և այդպիսով բորբոքվում է ուժեղ պայքար իր դարն ապրած կլասիցիստական ուղղության և հայ թատրոնի վերելքն ազդարարող նոր ռեալիստական ուղղության միջև։

Միք. Պատկանյանը չի բավարարվում տեսական պայքարով։ Նա գրում է «Միջի մարդ կամ մոցիքուլ», «Մեկը նշանած, մյուսը կին» վոդևիլները, որոնք հաջողությամբ բեմադրվում են նրա կազմակերպած տնային թատրոնում։ Պահպանողական տարրերը Հ. Կարենյանի գլխավորությամբ վայնասուն են բարձրացնում, մեղադրելով Պատկանյանին, որ ցուցադրելով Թիֆլիսի հարուստ հայերի ընտանիքներում կատարվող դեպքերը, վարկաբեկում է «երևելի» մարդկանց։ Հասարակությունը ջերմ վերաբերմունք է ցույց տալիս դեպի կենցաղային ռեալիստական դրամատուրգիան։

Մոսկվայում և Թիֆլիսում կազմակերպված ներկայացումները հետա-

10 Արամ Երեմյան, Ռուսահայ թատրոնի պատմությունը, Ա հատոր, Վենետիկ, 1933, էջ 187—391։

քըրքրություն են ստեղծում թատրոնի շուրջը։ Արևելահայ մամուլը արձագանքում է թատրոնի հետ կապված հարցերին, իր էջերում պարբերաբար հրատարակելով գրախոսականներ՝ ընթացիկ ներկայացումների մասին, բանավիճային հոդվածներ՝ բեմական ուղղությունների վերաբերյալ։ «Հյուսիսափայլ», «Ճռաքաղ», «Կռունկ Հայոց աշխարհին», «Մեղու Հայաստանի» և այլ պարբերականներում լույս տեսած նման հոդվածները առատ նյութ են տալիս արևելահայ թատրոնի պատմության վաղ շրջանի մասին։

Վերոհիշյալ ներկայացումների ընթացքում աճում են դերասանական ուժերը, որոնք 1863 թ. սկզբներին Թիֆլիսում ստեղծում են արևելահայ պրոֆեսիոնալ թատրոնը՝ Պռոշյանի և ուրիշների ջանքերով։ Խումբը, նախապատրաստական անհրաժեշտ աշխատանքից հետո, նույն թվականի հունվար ամսին բեմադրում է Խ. Գալֆայանի «Արշակ Բ» ողբերգությունը, որը արևմտահայերենից արևելահայերենի է փոխադրում Պ. Պռոշյանը։

«Արշակ Բ» մեծ հաջողություն է գտնում և հասարակության պահանջով կրկնվում երկրորդ անգամ։ Այնուհետև խումբը տալիս է կանոնավոր ներկայացումներ, բեմադրում է պատմական ողբերգություններ, կատակերգություններ և վոդևիլներ։

Այս թատերախմբի գործունեության ընթացքում բեմ են բարձրանում նաև կանայք։ Առաջին խիզախ քայլը կատարում է Սոփիա Շահինյանը, որին հետևում են Սաթենիկ Ջմշկյանը և Քեթևան Արամյանը։

Արևելահայ պրոֆեսիոնալ թատերախմբի հիմնական ուժեր են դառնում Միհրդատ Ամիրկյանը, Գ. Ջմշկյանը, Արտաշես Սուքիասյանը և ուրիշներ։

Խմբի ավելի խոստումնալից ու տաղանդավոր ներկայացուցիչներից Գ. Ջմշկյանը 1860-ական թվականների կեսերից իր ձեռքն է վերցնում թատերական գործի ղեկավարությունը և դրամատուրգ Գ. Սունդուկյանի հետ միասին թատրոնը բարձրացնում մի նոր աստիճանի, ապահովում ռեալիզմի հաղթանակը։ Պատմական ողբերգությունները աստիճանաբար իրենց տեղը զիջում են կենցաղային դրամատուրգիային։ Հայ բեմում երևում են ժամանակի հասարակական կյանքը ներկայացնող տարբեր դասակարգերի պատկանող մարդիկ՝ առևտրականներ, վաշխառուներ, նաև իրենց սեփական աշխատանքով ապրող ազնիվ մարդիկ։ Մերկացվում են փողի վրա խարսխված բուրժուական խավի ընտանեկան այլանդակ ու ապականված բարքերը, կեղծիքը, խաբեությունը։

Եթե Սունդուկյանը արևելահայ թատրոնի նոր շրջադարձն էր ավետում գեղարվեստական խոշոր արժանիքներ ունեցող իր դրամատուրգիայով, ապա Գ. Ջմշկյանը նույն այդ դերը կատարում էր տաղանդավոր դերակատարումներով և թատերական գործի կազմակերպման բնագավառում հանդես բերած եռանդով։ Նրա կերտած Պեպոն («Պեպո»), Մասիսյանը («Խաթաբալա»), Միքայելը («Էլի մեկ զոհ») և այլն տասնամյակներ մնացել են անգերազանցելի։ Գ. Ջմշկյանը Սունդուկյանի կերպարների բացահայտման, ըմբռնման իր վարպետությամբ ստեղծել է մի դպրոց, ուր հետագա տասնամյակներում սովորել են շատ դերասաններ։

Գ. Ջմշկյանը համառ ու հետևողական պայքար է մղել հայ թատրոնը կլասիցիզմի կաղապարներից ազատելու, անարվեստ մելոդրամաների փո-

խարեն հայկական բեմում ռուս դասական դրամատուրգների պիեսները, արևմտաեվրոպականականավոր հեղինակների ստեղծագործությունները բեմադրելու գործում։ Մեծ է նրա դերը թատրոնը ժողովրդական զանգվածներին մոտեցնելու, բեմը ժողովրդին ծառայեցնելու ուղղությամբ։ Նա, առաջինը արևելահայ իրականության մեջ, ներկայացումներ է կազմակերպել գավառներում, շրջել մի շարք քաղաքներում, եղել Շուշում, Երևանում, Ալեքսանդրապոլում և այլուր։

Գրեթե նույն տարիներին է համընկնում Ռուսաստանի գավառական մի քանի քաղաքների հայ գաղթօջախների հաղորդակցումը թատերական արվեստին, Թովմաս և Պայծառ Ֆասուլաճյանների ջանքերով։ Ֆասուլաճյան ամուսինները 1866 թ. ամռանը Թիֆլիսից դուրս են գալիս շրջագայության, 1867 թ. հասնում են Մոզդոկ, կազմակերպում ժամանակավոր թատրոն և տեղի սիրողական ուժերի մասնակցությամբ տալիս հայերեն ներկայացումներ։ Մասնավորապես երիտասարդությունը մեծ հետաքրքրություն է հանդես բերել դեպի թատրոնը։ Ժամանակի մամուլը անդրադարձել է այդ փաստին, հիշատակել մի քանի երիտասարդների անուններ, որոնք մասնակցել են ներկայացումներին։

Մոզդոկից հետո խումբը մեկնել է Ղզլար, այնտեղից՝ Աստրախան, Նոր Նախիջևան, ներկայացնելով պատմական ողբերգություններ, կենցաղային պիեսներ, նաև արևմտաեվրոպական և ռուսական դասական դրամատուրգիայից նմուշներ, ինչպես Մոլիերի մի քանի կատակերգությունները։

1850-ական թվականների կեսերից դպրոցական ներկայացումների հիմքի վրա ստեղծվում են Պոլսի թաղային թատրոնները՝ Խասգյուղում, Բերայում, Օրթագյուղում և այլուր։ Սրանք գերազանցապես կազմված էին սիրողներից և բեմադրում էին պատմական ողբերգություններ։ Օրթագյուղի թատրոնը ղեկավարում էր բանաստեղծ և դրամատուրգ Մկրտիչ Պեշիկթաշլյանը։ 1856 թ. նա բեմադրում է ինքնուրույն և թարգմանական պիեսներ, այդ թվում իր «Արշակ Բ», «Կոռնակ», որոնց անդրադարձել է մամուլը։

Նույն ժամանակամիջոցում թատերական աշխույժ գործունեություն է ծավալում դրամատուրգ Սրապիոն Հեքիմյանը։ Բերա կենտրոնական թաղամասում այդ թվականներին դեռևս արգելված էր հայերեն ներկայացումներ տալը, ուստի Հեքիմյանը նախ բեմադրում է թարգմանական մի քանի պիես՝ թուրքերեն լեզվով, նաև իր ողբերգություններից մեկը՝ իտալերեն, սակայն 1859 թ. լրջորեն զբաղվում է հայ ազգային թատրոն հիմնելու հարցով։ Մեկ տարի անց Բերայում տրվում են առաջին ներկայացումները հայերեն լեզվով, իսկ 1861 թ. դեկտեմբերի 14-ին հանդիսավոր պայմաններում բացվում է հայ ազգային «Արևելյան թատրոնի» վարագույրը։ Դա ըստ էության առաջին պրոֆեսիոնալ թատերախումբն էր Մերձավոր Արևելքում և իր գոյության մի քանի տարիների ընթացքում խոշոր դեր կատարեց պոլսահայ առաջավոր երիտասարդության գաղափարական դաստիարակության գործում։

Խանդավառ այդ օրերին, դեպքերի բերումով, Պոլսում է գտնվել Մ. Նալբանդյանը։ Նա ներկա է լինում թատրոնի հանդիսավոր բացմանը և արտասանում ծրագրային մի ճառ, որը տպագրվում է «Մեղու» պարբերականում՝ «Ազգային թատրոն Պոլսի մեջ» վերնագրով։ Նալբանդյանը այս ճառում ավե-

լի համգամանորեն, քան Մոսկվայի ուսանողների առաջին ներկայացման առթիվ գրած նկատողության մեջ, քննության է առնում թատրոնի հեռանկարի հետ կապված հարցերը և գծում հայ թատրոնի զարգացման ուղին։ Նա խորհուրդ է տալիս զգույշ լինել արևմտաեվրոպական թարգմանական երկերից, զարկ տալ ինքնուրույն, կենցաղային դրամատուրգիային և իրական կյանքի հարազատ ցուցադրումով նպաստել ժողովրդի ինքնագիտակցության բարձրացմանը։ Մ. Նալբանդյանի դիտողությունները ծրագրային նշանակություն են ունենում թատրոնի ու դրամատուրգիայի համար։

«Արևելյան թատրոնը» քաղաքական խստագույն պայմաններում իր գործունեությունը շարունակում է մինչև 1867 թ., բեմադրելով ինքնուրույն և թարգմանական բազմաթիվ պիեսներ, որոնց մեջ նկատելի տեղ են բռնում հայ պատմական անցյալը պատկերող ողբերգությունները։ Դրանք, չնայած հիմնականում գրված էին կլասիցիզմի ոգով, իրենց բարձրացրած հայրենասիրական գաղափարներով հասարակության կողմից ընդունվում էին օվացիաներով։ Նման պիեսներից հիշատակության արժանի են Ս. Հեքիմյանի «Հարմակ և Աշխեն», «Սամվել», Մ. Պեշիկթաշլյանի «Արշակ Բ», «Կոռնակ» և այլ ողբերգությունները։

«Արևելյան թատրոնի» խումբը հաջողությամբ բեմադրում է Մոլիերի կատակերգություններից «Տարտյուֆը» և «Բռնի ամուսնությունը», Վ. Հյուգոյի «Թագավորը զվարճանում է» դրաման, Վոլտերի «Ալզիրը» և համեմատաբար քիչ թիվ կազմող ֆրանսիացի երկրորդական հեղինակների մի քանի մելոդրամաներ։

Այն փաստը, որ թատրոնը բարձրացնում էր սոցիալական անհավասարության խնդիրներ և խթանում ազգային-ազատագրական գաղափարների տարածմանը, լրջորեն անհանգստացնում է հետադեմ խավերին, որոնք բացեիբաց հանդես են գալիս թատրոնի դեմ, այն համարելով վտանգավոր մտքեր սերմանող մի վայր։

1867 թ. գարնանը սուլթանական կառավարությունը փակում է «Արևելյան թատրոնը» իր ծաղկման ամենաբուռն շրջանում։ Փակման համար առիթ է ծառայում Մ. Նալբանդյանի մահվան առաջին տարեդարձին նվիրված երեկույթը, որը հասարակության պահանջով կրկնվել է երեք անգամ, բուռն խանդավառություն առաջացնելով երիտասարդության մեջ և վերածվելով յուրահատուկ քաղաքական ցույցի[11]։

«Արևելյան թատրոնի» փակումից հետո, նույն 1867 թ., Պոլսում թատերական մի մեծ խումբ է կազմակերպում Հակոբ Վարդովյանը։ Վարդովյանի խումբը գործում է մինչև 1877—78 թթ. ռուս-թուրքական պատերազմից հետո սկսված քաղաքական խստությունները։ Այն եղել է ամենից մեծ և կանոնավոր ծրագրով ու դրամագլխով գործող թատերախումբը ամբողջ Մերձավոր Արևելքում։ Խումբն իր կազմում ունեցել է 70—80, երբեմն մինչև 90 մարդ։

Վարդովյանի խաղացանկն էլ առաջին տարիներին բաղկացած էր պատմական ողբերգություններից և թարգմանական երկերից։ Ի տարբերություն

11 Գ. Ստեփանյան, Ուրվագիծ արևմտահայ թատրոնի պատմության, Ա հատոր, Երևան, 1962, էջ 213—242։

զուտ ազգային՝ «Արևելյան թատրոնի», այդ խումբը ներկայացումները փոխն ի փոխ տալիս էր հայերեն և թուրքերեն լեզուներով և դրանով էլ սկիզբ դնում թուրքական թատրոնին։

Արևմտահայ իրականության մեջ 50—60-ական թթ. ուժեղ թափով զարգանում է դրամատուրգիան։ Հանդես են գալիս մի շարք դրամատուրգներ, որոնց մեջ աչքի ընկնող դեմքեր էին Մ. Պեշիկթաշլյանը և Ս. Հեքիմյանը։

Այդ տարիներին որպես դրամատուրգ հանդես են եկել Խորեն Գալֆայանը, Թովմաս Թերզյանը, Սրապիոն Թղլյանը և ուրիշներ, որոնց պատմական ողբերգությունները նույնպես ներկայացվել են տարբեր քաղաքներում։ Սրանցից Թ. Թերզյանը հեղինակն է «Արշակ Բ» հայկական առաջին օպերայի լիբրետոյի, որը գրվել է նախ իտալերեն, ապա թարգմանվել հայերեն։

Ի տարբերություն արևելահայ իրականության, որտեղ գերակշռողը իրական կյանքը արտացոլող կենցաղային դրամատուրգիան էր, արևմտահայերի մոտ տիրապետողը մնաց պատմական անցյալի պատկերումը։ Այդ պետք է բացատրել նրանով, որ այնտեղ հուզող հարցը ազատագրական պայքարն էր, իսկ պատմական անցյալի պատկերումը խթանում էր դրան։

Կ. Պոլսին զուգընթաց թատերական աշխույժ գործունեություն է ծավալվում Զմյուռնիայի հայ գաղութում, որտեղ 1860 թ. հիմնվում է «Վասպուրական» թատրոնը, որը մեծ դեր է կատարել հայ ժողովրդի ազատագրական պայքարի նախապատրաստման գործում, «Վասպուրականի» բեմի վրա մի ամբողջ թատերաշրջան գործել է «Արևելյան թատրոնի» խումբը՝ Ստեփան էքշյանի գլխավորությամբ, խաղալով մեծ մասամբ ազգային պատմական ողբերգություններ։ Թե զմյուռնահայ երիտասարդությունը այդ ներկայացումների օրերին ազատագրական ինչպիսի պոռթկումներ է ունեցել, երևում է այն ընդունելությունից, որ երիտասարդները ցույց են տվել առաջին հայ դերասանուհի Արուսյակ Փափազյանին՝ օթյակներից դեպի բեմ բաց թողնելով աղավնիներ, մատուցելով ծաղկեփնջեր, նաև հայկական դրոշակ։

Վաթսունական թվականների կեսերից արևմտահայ գրականության մեջ ևս հանդես են գալիս դեմոկրատ գրողներ, որոնք դրամատիկական ստեղծագործության նյութ են դարձնում սոցիալական պայքարի հարցը։

Հ. Պարոնյանը հիմք է դնում արևմտահայ կենցաղային դրամատուրգիային իր «Ատամնաբույժն արևելյան», «Երկու տերով ծառա մը», «Շողոքորթը», հետագայում «Պաղտասար աղբար» կատակերգություններով, մեծ տաղանդով ցուցադրելով դեպի այլասերում գնացող պոլսահայ քաղքենիական ընտանիքների կյանքը, անվերապահորեն պաշտպանելով աշխատավոր ժողովրդի շահերը։

Իր դրամատուրգիայով նոր խոսք է ասում Պետրոս Դուրյանը։ «Անկումըն Արշակունի հարստության», «Ասպատակություն պարսկաց ի Հայս» և այլ պիեսներում նա ցույց է տվել հակամարտ դասակարգերի գոյությունը պատմական անցյալում։ Նրա պիեսները գրված են կլասիցիզմի կանոններին միանգամայն հակառակ, շեքսպիրյան դրամատուրգիայի սկզբունքներով։

Հայ թատրոնի ու դրամատուրգիայի զարգացման այդ բուռն շրջանը բընութագրական է նաև պոլսահայ դերասանական մի ստվար կոլեկտիվի ըստեղծումով։ Այդ երկու տասնամյակներում որպես ականավոր արվեստագետ-

ներ ասպարեզ եկան Պետրոս Ադամյանը, Մարտիրոս Մնակյանը, Սիրանույշը, Աստղիկը, Ազնիվ Հրաչյան, Ս. Պենկլյանը, Թ. Ֆասուլաճյանը և ուրիշ դերասան-դերասանուհիներ, որոնցից մի քանիսը գալով Կովկաս ու հաղորդակից դառնալով ռուսական առաջավոր թատերական արվեստին, ձեռք են բերել մեծ հռչակ, իսկ Ադամյանն ու Սիրանույշը՝ համաշխարհային համբավ։

## 3. ԿԵՐՊԱՐՎԵՍՏ

XIX դարի առաջին կեսում հայ կերպարվեստի պատմության մեջ ավարտվում է միջնադարյան արվեստից նոր շրջանին անցնելու պրոցեսը։

Զարգանում են կերպարվեստի բոլոր ճյուղերը՝ գեղանկարչությունը, կիրառական արվեստը, գրաֆիկան, քանդակագործությունը, հատկապես՝ զարդաքանդակը։ Երկրաչափական միօրինակ զարդանախշը իր պարզ հյուսվածքով զուգորդվում է փոքրաչափ խաչերին և քանդակագործության այդ բարձր արվեստը զրկում նրան բնորոշ երբեմնի մոնումենտալությունից։

Մեծ ծաղկում է ապրում գորգագործությունը, որի նախշերում մուտք են գործում սյուժետային թեմատիկ կոմպոզիցիաներ։ Ոսկերչական իրերում, հատկապես կանացի հարդարանքի զարդերում, զգալի տեղ է հատկացվում թանկարժեք քարերին, նրանց մեծությանը, ընդհանուր կոմպոզիցիայում նրանց կենտրոնական տեղ գրավելուն։ Օտար մոտիվների մուտքը սակայն չի խանգարում կատարողական բարձր վարպետության, ժողովրդական արվեստներին բնորոշ ավանդների պահպանմանը և զարգացմանը։ Այդ հատկապես դրսևորվում է կարպետագործության, խեցեգործության և ասեղնագործության բնագավառներում, որտեղ ժողովրդական գեղարվեստական մտածելակերպը զուգակցվում է ուտիլիտար պահանջներին։

Գրաֆիկայի բնագավառում, արդեն ավանդական դարձած գրքի նկարազարդման արվեստին զուգահեռ, մուտք է գործում թերթերի և ամսագրերի ձևավորումը։ Զգալի տեղ է տրվում զանազան հասկացություններ խորհրդանըշող իմաստների կերպարային լուծումներին։ Հրատարակությունների զանազան երկրներում տեղավորված լինելը յուրատիպ կնիք է դնում նաև արվեստի այդ ճյուղի վրա։ Էկլեկտիկ բնույթի գրքային ու ամսագրային ձևավորումների կողքին տեսնում ենք նաև ազգային պրոֆեսիոնալ գրաֆիկների գոյությունը։ Հատկապես աննախընթաց ծաղկում է ապրում ծաղրանկարչությունը («Մեղու», «Թատրոն»), որտեղ առաջին պլան է մղվում տաղանդավոր նկարիչ Սիմոն Ցաղըճյանի անունը։ Պետերբուրգի գեղարվեստների ակադեմիայում մասնագիտական կրթություն են ստանում մի շարք շնորհալի նկարիչներ, որոնց թվում նաև Հ. Քաթանյանն ու Աղ. Հովնաթանյանը։

Հովհաննես Բաբայի Քաթանյանը (1824—1894), ոսկե մեդալով ավարտելով Պետերբուրգի գեղարվեստների ակադեմիան (1857), իր ողջ կյանքը նվիրում է մանկավարժական գործունեության, դասավանդելով Թիֆլիսի Ներսիսյան և այլ դպրոցներում։ Նա, միաժամանակ, թատերական գործի ակտիվ մասնակիցներից էր, «Հյուսիսափայլի»-ի եռանդուն պրոպագանդիստներից Կովկասում, ժամանակի առաջադեմ մտածողներից, որին իր նամակներից մե-

կում Մ. Նալբանդյանը բնորոշում է որպես «անաչառ և ազգի օգտի վերա մըտածող»։ Հասարակական գործունեության համար Հ. Քաթանյանը 1859—1862 թթ. արտաքսվում է Ստավրոպոլ։ Մի շարք բարձրարվեստ վիմագրություններ հեղինակ («Ուգոլինոյի մահը», «Քրիստոսի փորձությունը») Հ. Քաթանյանի ստեղծագործության մեջ առանձնակի տեղ են գրավում նրա գեղագրական ալբոմները, որոնք եզակի են հայ արվեստի պատմության մեջ։

Աղաթոն Մկրտումի Հովնաթանյանը (1816—1893) տաղանդավոր տոհմի միակ ներկայացուցիչն է, որը մասնագիտական կրթություն է ստացել։ Վրաստանի կառավարիչ բարոն Գ. Ռոզենի միջնորդությամբ Աղ. Հովնաթանյանը ընդունվում է Պետերբուրգի գեղարվեստների ակադեմիա (1836), սովորում ռուս նշանավոր նկարիչ Կ. Բրյուլովի արվեստանոցում։ Սկզբնական շրջանում Ա. Հովնաթանյանի ընդունակությունները երևան են գալիս դիմանըկարչության, բնանկարի և պատմական նկարչության բնագավառներում, սակայն XIX դարի կեսերին ռուս իրականության մեջ մեծ զարգացում ապրող գրաֆիկայի անմիջական ազդեցության շնորհիվ, նա վերջնականապես հակվում է դեպի հաստոցային գրաֆիկան։ Աղաթոն Հովնաթանյանը հիմնականում վիմագրության տեխնիկայով բազմացնում է իր եղբոր՝ Հակոբ Հովնաթանյանի դիմանկարչական ստեղծագործությունները («Գեներալ Ջասի դիմանկարը», «Կոմս Մ. Վորոնցովի դիմանկարը»), Ի. Շառլեմանի «Հիշողություններ Պաժերի կորպուսի մասին» նկարաշարքը, մի շարք դիմանկարներ՝ լուսանկարներից, այլ նկարիչների կատարած գրքերի նկարազարդումներ, որոնցում նկարիչը ձգտում է գրաֆիկական գծի արտահայտչականության, ճըկունության։ Աղաթոն Հովնաթանյանը, իր քանակով քիչ աշխատանքներում անգամ, հանդես է գալիս որպես վարպետ փորագրիչ, վիմագրության տեխնիկայի գիտակ արվեստագետ։

XIX դարի հայ կերպարվեստի կարևորագույն հատվածն է կազմում գեղանկարչությունը։ Դեռևս XVII—XVIII դարերում մեծ թափ ստացած որմնանկարչական արվեստն իր տեղը վերջնականապես զիջում է հաստոցային գեղանկարչությանը։ Որմնանկարչության վերջին օրինակները երևան են գալիս XIX դարի առաջին կեսում (Մեղրու եկեղեցին 1842 թ., Թիֆլիսի Նորաշենի եկեղեցին, 1834—1835 թթ.)։ Ավարտվում է նաև համքարական արվեստանոցներում արտադրվող սրբանկարների պատրաստումը (Ախալցխա, Վան, Թիֆլիս, Ալեքսանդրապոլ), քանի որ նրանց փոխարինելու են գալիս գունավոր վիմագրություններն ու լուսանկարչական աշխատանքները։

Խանական լուծը թոթափած Երևանը թեպետ դեռևս չէր դարձել հայ կերպարվեստագետների մշտական ստեղծագործության կենտրոն, բայց և զուրկ չի եղել նկարիչներից։ Երևանում է ստեղծագործել ադրբեջանցի նկարիչ Միրզա Կադիմ Երևանին (1825—1875), որի դիմանկարչական և դեկորատիվ բընույթի ստեղծագործություններում շարունակվում էին Երևանում մինչ այդ փորձած մահմեդական նկարիչների արվեստի ավանդները։ Երևան էին գալիս ռուս նկարիչները։ Երևանում որոշ ժամանակ աշխատել են նկարիչներ Հակոբ Հովնաթանյանը, Հովհաննես Քաթանյանը։ Պատմական երևույթների բերումով արևելահայ գեղանկարչության կենտրոնն է դառնում Թիֆլիսը։

Կովկասում արվեստները և մասնավորապես գեղանկարչությունը տարա-

ծելու մասին Կովկասի կառավարչապետ Ի. Պասկևիչն իր նամակներից մեկում գրում էր, որ անհրաժեշտ է «տեղի բնակիչներին ծանոթացնել գիտությունների և եվրոպական գեղարվեստների հետ»[12]։ Այդ նույն հարցը հուզել է նաև Խաչատուր Աբովյանին, որը Վ. Ժուկովսկուն և Գ. Պարրոտին հասցեագրած 1835 թ. հունվարի 21-ի և 25-ի նամակներում շարադրում է իր վերաբերմունքը դեպի գեղեցիկ արվեստները։ Խ. Աբովյանը գտնում է, որ իր հայրենակիցները նրանց միջոցով կկարողանան «ամենից լավ՝ և արագ ինկական կրթության և լուսավորության հասնել»[13]։ Որպես հիմնական առարկա Խ. Աբովյանը նկարչությունն ընդգրկում է նաև Երևանի դպրոցական ծրագրերում։

XIX դարի սկզբին Թիֆլիսում անվանի դիմանկարչի համբավ ուներ Մկրտում Հովնաթանի Հովնաթանյանը (1779—1845)։ Նկարչական արվեստի գաղտնիքներին ծանոթանալով իր հոր՝ Հովնաթան Հովնաթանյանի մոտ, Մ. Հովնաթանյանը շարունակում է իր նախնիների սկսած գործը Էջմիածնի տաճարում, վերանորոգում նրա զարդանկարները, նկարում նոր սրբապատկերներ։ Թիֆլիսում նա արվեստանոց ուներ։ Պահպանված աշխատանքներից հատկապես ուշագրավ են Թիֆլիսի Նորաշեն եկեղեցու որմնանկարները, որտեղ հին և նոր կտակարանների թեմաները մեկնաբանված են որպես առանձին հաստոցային նկարներ։ Ժամանակի մշակույթին բնորոշ կլասիցիզմը հատկապես վառ արտահայտություն է ստացել Մկրտում Հովնաթանյանի հայ թագավորների դիմանկարների շարքում («Հայկ», «Արտաշես», «Աշոտ Ա», «Լևոն Բ» և այլն)։ Ժամանակի հայրենասիրական տրամադրություններն արտահայտող այս դիմանկարներում նկարիչը խուսափում է միօրինակությունից, տարազների ընտրության ժամանակ ձգտում պահպանել պատմական ճշմարտացիությունը, ներմուծում տվյալ կերպարին բնորոշ բազմաթիվ ատրիբուտներ։ Մկրտում Հովնաթանյանի դիմանկարչական արվեստին բնորոշ վարպետությունը հատկապես հանդես է եկել Եփրեմ կաթողիկոսի, Ս. Գուրգենբեկյանի դիմանկարներում, որոնք իրենց մի փոքր ռոմանտիկ մեկնաբանումներով և կոմպոզիցիոն ինքնատիպությամբ նախապատրաստեցին նրա որդու՝ հայ անվանի դիմանկարիչ Հակոբ Հովնաթանյանի արվեստը։

Հակոբ Մկրտումի Հովնաթանյանը (1806—1881) նկարչական կրթությունը ստացել է հոր մոտ, իսկ 1841 թ. Կովկասի կառավարչապետ Ե. Գոլովինի դիմանկարի համար Պետերբուրգի գեղարվեստների ակադեմիայից ստանում է «ոչ դասական» նկարչի կոչում։ Կովկասում դիմանկարչական արվեստի զարգացման և Ղարաբաղում վիմագրական քար գտնելու համար գնահատվում է կառավարության կողմից։ Ժամանակակիցները հատկապես բարձր են գնահատել Հակոբ Հովնաթանյանի դիմանկարների նմանությունը պատկերվող անձանց հետ։ Սակայն Հակոբ Հովնաթանյանի արվեստի նշանակությունը բնորոշվում է այն խոշոր դերով, որ նա խաղաց XIX դարի առաջին կեսի հայ ու վրաց արվեստների զարգացման գործում ընդհանրապես, և դիմանկարչության ժանրում՝ մասնավորապես։

---

12 ՍՍՀՄ ԿՊՊԱ, ֆ. 780, ցպ. 1, վավ. 186, էջ 1։

13 Դիվան Խաչատուր Աբովյանի, հատ. 2, Ե. 1948, էջ 25։

Հովնաթանյանի դիմանկարների պատկերասրահում հանդիպում ենք վաճառականների, մոքալաքների, աստիճանավորների, նրանց կանանց, Կովկաս աքսորված լեհ հեղափոխականի, գիմնազիստի դիմանկարների։ Նրա կտավները փոքրածավալ են, մարդիկ տեղավորված են կտավի կենտրոնում, պատկերված կրծքից կամ ծնկներից։

Հակոբ Հովնաթանյանի պատկերած կանայք (Մելիքովայի, Անանյանի, Ն. Օրբելյանի, Ս. Անդրոնիկաշվիլու, Շ. Նադիրյանի, նկարչի դստեր՝ Նունե Հովնաթանյանի դիմանկարները) սև, մուգ կապույտ կամ բաց կանաչ ազգային տարազներ են կրում, որոնք զրվագված են կարմիր, դեղին, բաց վարդագույն երիզներով։ Տարազների գունային հարաբերությունները հարստացվում են կանացի հարդարանքի իրերի դեկորատիվ էլեմենտներով։ Կանացի դիմանկարներին բնորոշ են թախծոտ, նշաձև աչքեր, բաց վարդագույն սեղմված շուրթեր, մաշկի փղոսկրյա թափանցիկություն։ Նկարիչը հատկապես նրբորեն է մոդելավորում դեմքն ու ձեռքերը, խիստ ուրվագծելով ֆիգուրների եզրագծերը։

Տղամարդկանց դիմանկարները հիմնականում կառուցված են սև, սպիտակ, կանաչ և կարմիր գույների համադրությունների վրա (Մելիքով, Գ. Քաբաջյան, Գ. Մալինցյան, Գ. Միշևսկի, Մ. Լիլիպարյան, Դե Կորմիկ և այլք)։ Այս դիմանկարներում արտահայտչական միջոցներն ավելի զուսպ են ու խիստ։ Հոգեբանական բնութագրմամբ, կոլորիտի առանձնահատկություններով Հակոբ Հովնաթանյանի լավագույն գործերի թվին են պատկանում Նատալիա Թեումյանի, Թամար Սագինյանի և Ներսես V Աշտարակեցու դիմանկարները, որոնք ոչ միայն Հակոբ Հովնաթանյանի, այլև XIX դարի հայ կերպարվեստի լավագույն գործերից են։

1860-ական թվականներին Հակոբ Հովնաթանյանը մեկնում է Թավրիզ, ապա հրավիրվում պարսկական պալատ, արժանանում «Նաղըշ բաշի» (նկարիչների գլխավոր) տիտղոսի, ինչպես նաև ստանում «էլիմի» (գիտություն) շքանշան։ Այդ շրջանից պահպանված դիմանկարներից երկուսը հատկապես առանձնանում են իրենց կոմպոզիցիայով։ Նասր-էդ-դին շահի և Մոզաֆֆեր-էդ-դին գահաժառանգի դիմանկարները օժտված են Հովնաթանյանի արվեստին բնորոշ նրբությամբ։

Հակոբ Հովնաթանյանը նոր ժամանակաշրջանի նկարիչ էր, Թիֆլիսի զարգացող մտավորականության հետաքրքիր դեմքերից մեկը։ Եթե XIX դ. սկզբին տեղի նկարիչներն իրենց գեղանկարչական կարողություններով զիջում էին ժամանակի խոշորագույն արվեստագետին՝ Հակոբ Հովնաթանյանին, ապա վերջինս էլ նրանցից վերցնում ու ստեղծագործական ինքնատիպ մշակման էր ենթարկում այն ուշագրավը, որը բնորոշ էր այդ ժամանակի Թիֆլիսի արվեստին։ Այս փոխընկալումները օժանդակել են հայ և վրաց ժողովուրդների արվեստների զարգացմանը, իսկ Հակոբ Հովնաթանյանի ստեղծագործությունը մնում է որպես հայ-վրացական մշակութային կապերի փայլուն էջերից մեկը։

Հակոբ Հովնաթանյանի ստեղծագործությամբ ավարտվեց XVII—XVIII դարերում սկիզբ առած նոր շրջանի հայ կերպարվեստի զարգացումը և յու-

րատիպ օղակ դարձավ հետագա տասնամյակների արվեստի ազգային ավանդների հիմնավորման համար։

XIX դարի հայ արվեստի նշանակալից դեմքերից է նաև Ստեփանոս Հակոբի Ներսիսյանը (1815—1884)։ Նա ծնվել է Երևանում, սովորել Ներսիսյան դպրոցում, ապա՝ Խ. Աբովյանի միջնորդությամբ ընդունվել Պետերբուրգի գեղարվեստների ակադեմիան, որտեղ սովորել է հայ նկարիչներ Աղ. Հովնաթանյանի, Մ. Մելիքովի (ծնվել է 1818 թ.), Տ. Ճաշենկոյի, վրաց նկարիչ Գ. Մայսուրաձեի հետ։

Ստեփանոս Ներսիսյանի գեղագիտական ըմբռնումների համար խոշոր նշանակություն է ունենում նրա ծանոթությունը Ստ. Նազարյանի, Խ. Աբովյանի, Հովհ. Այվազովսկու և ժամանակի առաջավոր մի շարք մտավորականների հետ։ Հետագայում Ստ. Ներսիսյանը աշխատում է որպես նկարչության ուսուցիչ՝ Ներսիսյան դպրոցում, Շուշում, որտեղ միաժամանակ մեծ ջանք է գործադրում «Թանգարան վերածնության» անունը կրող հասարակական գրադարանը հիմնելու համար։ Վաթսունամյա նկարիչը մահացավ Թիֆլիսում, հիշատակ թողնելով ժողովրդին նվիրված, անձնուրաց արվեստագետի մի կերպար և հետաքրքիր ստեղծագործությունների շարք։

Ստ. Ներսիսյանը ստեղծել է պատմական թեմաներով կտավներ, ժանրային պատկերներ, դիմանկարներ և վիմագրություններ, որոնց զգալի մասը մեզ չի հասել։ Միակ պահպանված ժանրային ստեղծագործությունը, «Ջրոսախնջույք Քուռ գետի ափին» կտավն է։ Ակադեմիական նկարչության սկզբունքներով կատարված այս աշխատանքում Ստ. Ներսիսյանը պատկերել է Թիֆլիսի մոքալաքների կյանքից մի տեսարան, ռուսական-ժանրային նկարչության իր ընկալումները զուգակցելով տեղական արվեստի դպրոցի սկզբունքներին։

Ժամանակի հայ արվեստի համար միանգամայն օրինաչափ և ինքնատիպ երևույթ էր Ներսիսյան-դիմանկարիչը։ Ա. Տեր-Ղուկասյանի, Գ. Իզմիրյանի, Դ. Ակիմյանի, Ա. Մելիք-Ադամյանի և այլոց դիմանկարներում, որոշ չափով պահպանելով տեղական դիմանկարչական արվեստին բնորոշ կոմպոզիցիայի կառուցման արտաքին կողմը, Ստ. Ներսիսյանը ձգտում է պատկերված անձնավորությունների կերպարների ամբողջական բնութագրմանը, նրանց ներքնաշխարհի գեղարվեստական դրսևորմանը։ Այդ տեսակետից հատկապես ուշագրավ է գեներալ Վ. Բեհբութովի դիմանկարը, որը օժտված է ներքին կամքով, խստությամբ, բնավորության զուսպ արտահայտությամբ։

Մեծ ու անգնահատելի է Ստեփանոս Ներսիսյանի վաստակը հատկապես Սահակ Պարթևի և Մեսրոպ Մաշտոցի հանրահայտ դիմանկարների ստեղծման գործում։ Այս դիմանկարներն իրենց ռոմանտիկ տրամադրությամբ, կերպարների պարզ ու արտահայտիչ ներգործությամբ, կատարման բարձր վարպետությամբ հիմնավոր տեղ են գրավել հայ մշակույթի պատմության մեջ և հոգեհարազատ դարձել ժողովրդին։

XIX դարի կերպարվեստի խոշորագույն դեմքերից է աշխարհահռչակ ծովանկարիչ Հովհաննես Կոստանդինի Այվազովսկին (1817—1900)։

Հովհաննես Այվազովսկին ծնվել է Թեոդոսիայում (Ղրիմ)։ Վաղ մանկության տարիներին դրսևորած նկարչական ընդունակությունները նրան հասցրին Պետերբուրգի գեղարվեստների ակադեմիա։ Շնորհալի նկարչի համբավ ձեռք բերած երիտասարդ Այվազովսկին 1840 թ. մեկնում է Իտալիա, կյանքի հետագա տարիներին լինում բազմաթիվ երկրներում ու քաղաքներում, կազմակերպում անհատական ցուցահանդեսներ։ Սակայն մշտական բընակություն է հաստատում իր հայրենի քաղաքում, որտեղ և մահանում է 1900 թ. մայիսի 2-ին։

Հովհաննես Այվազովսկու նկարների թիվը մոտավորապես 6000-ի է հասնում։ Նա նկարել է ծովը օրվա բոլոր ժամերին, տարվա բոլոր եղանակներին։ Նրա սկզբնական շրջանի աշխատանքներում (իտալական տեսարաններ, ծովանկարներ Ղրիմից և այլն) առկա են ռոմանտիզմին հատուկ երևույթի իդեալականացում, գունային պայմանականություն։ Ժամանակի ընթացքում նրա արվեստը ավելի է կապվում իրականությանը, դառնում առավել իրապատում և հասկանալի։

Հասուն շրջանի լավագույն ստեղծագործություններից է «Իններորդ ալիքը», որտեղ Այվազովսկին հանդես է գալիս ոչ միայն որպես տաղանդավոր գեղանկարիչ, այլև որպես մեծ հումանիստ, որը հավատում է մարդու ամենակարող, ամենահաղթ ուժին։ Հովհ. Այվազովսկու տաղանդը փայլել է նաև «Սև ծովը», «Ալիքների մեջ», «Անդորրություն» և այլ աշխատանքներում։ Այվազովսկին չի սահմանափակվել միայն ծովանկարչությամբ։ Նա անտարբեր չի մնացել դեպի ռուսական ծովային նավատորմի հերոսապատումը։ Եվ ստեղծվել են ռուս իրականության մեջ առաջին կտավները՝ նվիրված ռուսական ծովայինների հերոսական գործերին՝ «Չեսմենյան ճակատամարտը», «Բրիգ Մերկուրիի ճակատամարտը թուրքական նավերի դեմ», «Նավարինի ճակատամարտը» և այլն։ Հովհաննես Այվազովսկուն հրապուրել են նաև բիբլիական թեմաները։ Նա կատարել է բազմաթիվ գծանկարներ, դիմանըկարներ։ Այս ամենի ֆոնի վրա հատկապես արժեքավոր է այն, ինչը նրան կապում է հայ իրականության հետ։ Դրանք միայն անձնական ծանոթություններ չեն հայ մշակույթի անվանի գործիչների հետ (Ղ. Աղայան, Պ. Ադամյան, Ս. Սպենդիարյան, Վ. Սուրենյանց և այլք), կամ այն մեծ նյութական օգնությունը, որ նա ցույց էր տալիս հայ գաղթականներին։ Դրանք այն ուշագրավ ստեղծագործություններն են, որոնք կատարվել են հայկական թեմաներով։

Այվազովսկու մեծությունը նրանումն է, որ իր ստեղծագործություններում նա կարողանում է գեղեցիկ զգացմունքներ ու տրամադրություն հաղորդել մարդկանց, իրականությունը վերարտադրել գեղարվեստական բարձր արտահայտչականությամբ։ Իրականության ընդհանրացված գեղարվեստական կերպարներով նա ստիպում է մարդկանց մտածել, խորհել, ուրախանալ, տրտմել, ոգևորվել, առավել զգալ իրականության գեղեցկությունը և այդ գեղեցկության մեջ տեսնել մարդու ստեղծագործական կարողությունները։ Եվ իր արվեստի այս կողմերով էլ Այվազովսկու արվեստը դուրս եկավ ազգային սահմաններից ու դարձավ համամարդկային։

XIX դարում հայ կերպարվեստը դուրս եկավ միջնադարյան նկարչության կանոնիկ դարձած սահմաններից, ընդունեց զարգացման նոր հուն, որի ձևավորմանը նպաստեց դեպի ռուսական ակադեմիական նկարչությունն ունեցած հայ նկարիչների կողմնորոշումը։ Ստեղծագործական անհատականությունների բազմազանությունը, հետաքրքրությունների լայն շրջանակները հող նախապատրաստեցին հայ դասական նկարչության նոր, աչքի ընկնող դեմքերի հանդես գալու համար։

## 4. ԵՐԱԺՇՏՈՒԹՅՈՒՆ

Հայ ժողովուրդը թևակոխեց XIX դարը՝ չունենալով կազմակերպված երաժշտական կյանք, պրոֆեսիոնալ կոմպոզիտորներ ու երաժիշտ-կատարողներ։ Տիրապետողը բանավոր ավանդույթի ուժով սերնդից սերունդ փոխանցվող ժողովրդական ու գուսանական երաժշտությունն էր, որ ապրում էր ժողովրդի հիշողության մեջ։

Ըստ Ի. Շոպենի տվյալների, Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միացնելու առաջին տարիներին ամբողջ հայկական մարզում կային 96 երաժիշտներ, որոնցից 85-ը հայեր էին[14]։ Դրանք թափառաշրջիկ աշուղներ էին, զուռնաչիներ ու դուդուկահարներ, որոնք մասնակցում էին ժողովրդական տոնախմբություններին, խնջույքներին ու հարսանիքներին։

Երաժշտական գործիքներից տարածված էին. փողայիններից՝ զուռնան, դուդուկը, հովվական սրինգը, լարայիններից՝ թառը, քամանչան, քանոնը, սանթուրը, սազը և այլն։ Մշտապես գործածվում էին նաև զանազան հարկանային գործիքներ (թմբուկը, դափը, նաղարան և այլն)։ Դարի կեսերին հետզհետե մուտք են գործում երգեհոնը (գլխավորապես հայ կաթոլիկ եկեղեցում), դաշնամուրը, ջութակը և կիթառը, որոնք հայ իրականության մեջ նոր էին սկսում տարածվել։

Արևելյան Հայաստանի տերիտորիայում ռուսական կայազորներ ըստեղծվելուց հետո մուտք են գործում նաև առաջին փողային նվագախմբերը և ռուսական ժողովրդական երաժշտական գործիքները։

Հայ ժողովրդական և գուսանա-աշուղական երաժշտությունը կազմում էր ժողովրդի երաժշտական կենցաղի անբաժանելի մասը։ Սակայն նրա հավաքման և ուսումնասիրության ուղղությամբ դեռ երկար ժամանակ (մինչև դարի վերջին քառորդը) կազմակերպված աշխատանք չէր կատարվում։ Ղևոնդ Ալիշանն էր, որ 1840-ական թվականներից սկսած հավաքում և «Բազմավեպ»-ում պարբերաբար հրապարակում էր ժողովրդական (իր տերմինով ասած՝ «ռամկական») երգերի առաջին նմուշները, որոնք հետագայում ամփոփվեցին նրա «Հայոց երգք ռամկականք» (Վենետիկ, ս. Ղազար, 1852) գրքույկում։ Սա առաջին հավաքածուն էր, որի մեջ միջնադարյան հայ ժողովրդական երգերի կողքին տեղ էին գտել հարսանեկան, ղարիբության և այլ երգեր։ Ընդամենը 19 երգ էր զետեղված այդ գրքույկում, բայց դժբախտաբար,

---

[14] *И. Шопен*, Исторический памятник состояния Армянской области в эпоху ее присоединения к Российской империи. С. Петербург. 1852, стр. 896—898.

առանց եղանակների։ Ղ. Ալիշանը հանդիսանում է նաև հայ ժողովրդական երաժշտության վերաբերյալ առաջին տպագիր հոդվածի[15], ինչպես և ձեռագիր մնացած մի «Երգարանի» հեղինակը[16]։

Այս տեսակետից նշանակալից էր Խ. Աբովյանի գործունեությունը։ Դորպատում ուսանելիս նա առանձին ուշադրություն էր դարձրել նաև երաժշտությանը, մշակել իր ձայնը, երգել համալսարանի երգչախմբում, ծանոթացել եվրոպական դասական երաժշտությանը և Հայաստան վերադառնալով աշխատում էր բարձր հիմքերի վրա դնել աշակերտության երաժշտական դաստիարակությունը։ Առավել կարևոր է այն, որ նա գրել և ուղարկել է Պետերբուրգի Ակադեմիա «Հայոց եկեղեցական և ժողովրդական երաժշտությունը» խորագիրը կրող հոդվածը[17]։ Հոդվածի նպատակն էր ռուս մասնագետների ուշադրությունը հրավիրել հայ ժողովրդական և աշուղական երգերի հավաքմանը։

Աբովյանի նման Մ. Նալբանդյանը նույնպես առանձին ուշադրություն է դարձրել ժողովրդական ստեղծագործության նմուշների հավաքման ու օգտագործման վրա։ Նա հոգ էր տանում նաև եվրոպական դասական երաժշտության տարածմանը հայկական միջավայրում։ Դրանով պետք է բացատրել, որ նրա նախաձեռնությամբ էր թարգմանվում Վերդիի «Տրուբադուր» օպերան։

1856 թ. Պետերբուրգում լույս տեսավ Գամառ-Քաթիպայի «Ազգային երգարան հայոց» ժողովածուն։ Դա առաջին տպագիր երգարանն էր, որի մեջ երգերի տեքստերի հետ միասին որպես հավելված տրված էին նաև նրանց եղանակները դաշնամուրային շարահարությամբ (նոտաների տակ խոսքեր չեն տեղադրված)։ Այս երգարանով սկիզբ դրվեց երգարանների հրատարակությանը հայ իրականության մեջ։

Այս շրջանում լույս տեսած երգարաններից կարևոր է նաև 1868 թ. Պետերբուրգում տպագրված «Քնար հայկական»-ը, որի կազմողն էր Մ. Միանսարյանը։ Այս երգարանն անհամեմատ հարուստ էր իր բովանդակությամբ և պարունակում էր տարբեր բնույթի բազմաթիվ երգեր, ինչպես և չերգվող բանաստեղծություններ՝ արտասանության համար։

XIX դարի առաջին կեսի հայ գուսանա-աշուղական երաժշտությունը հենվում էր մեծ Սայաթ-Նովայի ստեղծագործության ավանդույթների վրա։ Այս շրջանի, ինչպես և հետագայում հանդես եկած աշուղների համար նա մեծ հեղինակություն էր, «վարպետաց-վարպետ» («ուստաբաշի»)։ Նրա բարեբար ազդեցությունը կրեցին բազմաթիվ աշուղներ և զգալի չափով հարըստացրին իրենց աշուղական ստեղծագործությունը։ Դրանցից են՝ Շիրինը (Հովհաննես Կարապետյան, 1827—1856), Թուրինջը (Թորոս Մարթաշյան, 1792—1877), Իվանը (Հովհաննես, 1800—1864), Ազբար-Ադամը (1816—1844),

---

15 Տե՛ս «Բազմավեպ», Վենետիկ, 1845, № 7, էջ 109—111, Ղ. Ալիշան, «Ռամկական երգեր» հոդվածը՝ «Ընստյալ կայր ու լայր կաքվուկն» երգի խոսքերի հետ միասին։

16 Տե՛ս Հ. Արսեն Ղազարոս Ղազիկյան, Հայկական նոր մատենագրություն և հանրագիտարան հայ կյանքի, հատ. 1, Վենետիկ, 1909, էջ 63։

17 Պ. Հակոբյան, Դարձյալ անծանոթ էջեր Խաչատուր Աբովյանի գրական ժառանգությունից («Սովետական արվեստ», 1959, № 1, էջ 62—67)։

Ֆյանհանը (Պետրոս Գնթունյանց, 1829—1886), Միսկին-Բուրջին (1810—1847), Ջարգյարը (Աբրահամ, 1824—1874), Մայիֆը (Հարություն, 1825—1901), Ջահրին (Կարապետ Կարապետյան, 1818—1888) և ուրիշներ։ Սրանք ապրել և ստեղծագործել են ինչպես բուն Հայաստանում, նույնպես և նրա սահմաններից դուրս, հորինել են այնպիսի երգեր, որոնք հանդիսանալով իրենց ժամանակակիցների մտքերի ու հույզերի արտահայտությունը, սիրվել են ժողովրդի կողմից ու մտել երաժշտական կենցաղի մեջ։ Դրանց մեծամասնությունը սիրային երգեր էին, բայց դրանց կողքին կային նաև բարոյա-խրատական, պատմական դեպքերին նվիրված, իրենց սիրելի քաղաքներն ու գյուղերը գովերգող երգեր և այլն։

Այս շրջանի աշուղական երգերը խայտաբղետ էին իրենց լեզվով։ Դեռևս տիրապետող էին պարսկերենը, թուրքերենը, ադրբեջաներենը, երբեմն էլ ստեղծվում էին լեզվախառն երգեր։ Բայց դարի կեսերին նրանց համար հիմնականը դառնում է հայերենը, թեև այստեղ էլ միասնություն չկար։ Ոմանք օգտագործում էին գրաբար կամ տարբեր բարբառներ, և միայն դարի երկրորդ կեսին տիրապետողը դառնում է աշխարհաբար գրական լեզուն։

Երաժշտական արվեստի տեսակետից այս շրջանի աշուղական երգերը հետաքրքիր են նրանով, որ ավանդական աշուղական եղանակների հետ միասին արդեն հորինվում էին նոր մեղեդիներ, որոնց մեջ օգտագործվում էին գյուղական ու քաղաքային ժողովրդական երգերի ինտոնացիոն ու ռիթմական առանձնահատկությունները։

Դժբախտաբար, զուրկ լինելով ձայնագրման հնարավորությունից, XIX դարի առաջին կեսի աշուղների ինքնուրույն մեղեդիներից շատերը կորել են և միայն ամենացայտուն նմուշներն են պահպանվել։ Դրանցից են, օրինակ, Շիրինի «Այգեպան», «Ակնարկյա» և «Ցափընչիս կորավ», Միսկին-Բուրջու «Էշխից ջունում դառած» և «Ախչի արի», Ջարգյարի «Ախչիկ մի գնալ» և այլ երգեր։

Այս շրջանի ժողովրդական երաժշտության մեջ տիրապետողը դարձյալ գյուղական երգն էր՝ սերտորեն կապված հայ շինականի կյանքի ու աշխատանքի հետ։ Սրա հետ միասին լայն տարածում ունեին նաև աշխատանքային, ծիսական, հարսանեկան, էպիկական և այլ երգեր։ Մեծ տեղ էին գրավում հատկապես սիրային-լիրիկական երգերը, պարերգերն ու պարեղանակները, որոնք հաճախ իրենց մեջ արտացոլում էին հետզհետե արմատավորվող հասարակական նոր փոխհարաբերությունները։

Աշուղա-գուսանական ու ժողովրդական երաժշտության հետ միասին, իր գոյությունը շարունակում է նաև հոգևոր երաժշտությունը։ Միջնադարյան խազային նոտագրության անկումից հետո հայ հոգևոր երաժշտությունը խըստորեն ենթարկվում էր օտար ազդեցությունների։ Այս հանգամանքը մեծ մտահոգություն էր պատճառում ինչպես հոգևոր իշխանությանը, նույնպես և երաժշտության բնագավառում աշխատող մասնագետներին, և նրանք միջոցներ էին որոնում այդ երևույթի առաջն առնելու։ Ոմանք առաջարկում էին ընդունել եվրոպական նոտագրության սիստեմը և անմիջապես անցնել հոգևոր երգերի ձայնագրությանը՝ դրանք հետագա աղավաղումներից ու կորստից փրկելու նպատակով, ոմանք գտնում էին, որ ավելի լավ է ըն-

դունել հունական նոտագրությունը (փսալթիքա), իսկ շատերն էլ պահանջում էին ստեղծել հայկական երաժշտության առանձնահատկություններին համապատասխանող ձայնագրության նոր սիստեմ, որպեսզի դրանով իսկ ապահովվեր կատարվող ձայնագրությունների հարազատությունը։ Հաղթողը հանդիսացավ վերջին տեսակետը, և Պոլսում ձեռնամուխ եղան հայկական ձայնագրության նոր սիստեմի ստեղծմանը։ Այդ նոր սիստեմի ստեղծողը Համբարձում Լիմոնճյանն էր (1769—1839), որի անունով էլ այն կոչվում է Լիմոնճյանի սիստեմ։ Վայելելով Տյուզյան Հովհաննես Չելեբիի հովանավորությունն ու նյութական օժանդակությունը, Համբարձում Լիմոնճյանը (Բաբա Համբարձումը), որը լավ գիտեր եվրոպական նոտագրությունն ու հունական փսալթիքան, մի քանի տարի աշխատելուց հետո, 1815 թ. ստեղծեց հայկական նոր ձայնագրության սիստեմը՝ հարմարեցնելով այն միաձայն, վոկալ երաժշտության սկզբունքներին։ Հնչյունների բարձրությունը ցույց տվող յոթ նշանները և նրանց անունները վերցնելով միջնադարյան խազային նոտագրությունից, նա դրանք հարմարեցրեց եվրոպական նոտագրության նշաններին։ Լիմոնճյանի սիստեմի նշանները գրվում էին սովորական թղթի վրա և արտահայտում դիատոնիկ հնչյունաշարի ամբողջ տոներն ու կիսատոները։

Լիմոնճյանի սիստեմը կամ հայկական նոր ձայնագրությունը մեկդարյա կյանք ունեցավ, ենթարկվեց որոշ փոփոխությունների ու լրացումների, գլխավորապես իր աշակերտների կողմից։ Այն զգալի դեր կատարեց հայ երաժշտական մշակույթի պատմության մեջ, որովհետև նրա օգնությամբ ձայնագրվեցին և կորստից փրկվեցին հոգևոր երաժշտության բազմաթիվ նմուշներ՝ ամբողջ շարակնոցը, պատարագի երգեցողությունը, ժամագիրքը և հոգևոր այլ մեղեդիներ։ Այս գործում հատկապես մեծ է Ն. Թաշճյանի, Ե. Տնտեսյանի, Հ. Չերչյանի, Հ. Այվազյանի և այլոց վաստակը։

Սակայն Լիմոնճյանի սիստեմն ուներ նաև լուրջ թերություններ։ Հարմարեցված լինելով մոնոդիկ (միաձայն) երաժշտությանը, այն չէր բավարարում բազմաձայն, հատկապես գործիքային և նվագախմբային երաժշտության պահանջները։ Բացի այդ, Լիմոնճյանի սիստեմը պատճառ դարձավ այն բանի, որ եվրոպական նոտագրությունը հայկական դպրոցները մուտք գործեց միայն դարավերջում։

Լիմոնճյանն ու իր աշակերտները նույնպես փորձեր արեցին ստեղծելու կոմպոզիտորական ինքնուրույն ստեղծագործություններ։ Սակայն այդ փորձերը մեծ մասամբ կատարվում էին հոգևոր երաժշտության բնագավառում։ Կ. Պոլսում կազմակերպված Արամյան թատրոնում իր գործունեությունը ծավալեց արևմտահայ առաջին կոմպոզիտորներից ու դիրիժորներից Կարապետ Փափազյանը։ Ամբողջ 20 տարի (1846—1866) նա կապված է եղել այդ թատրոնի հետ, երաժշտություն է գրել ներկայացումների համար, բայց նրա ստեղծագործություններից ոչինչ չի պահպանվել։

XIX դարի առաջին կեսի երաժշտության նշանավոր գործիչներից է նաև Անդրեաս Քաղցածյանը (1809—1856)։ Նա Ղրիմի Ղարասուբազար քաղաքի ծնունդ էր, իր երաժշտական կրթությունը ստացել էր լեհական Բերդիչև քաղաքում և ապա վերադառնալով հայրենի քաղաքը, աշխատել որպես հայ

եկեղեցու երգեհոնահար։ 1852 թ. փոխադրվելով Սևաստոպոլ, սկզբում աշխատել է որպես երաժշտության դասատու, իսկ հետո՝ Սեծովյան նավատորմի փողային նվագախմբի ղեկավար։ Ղրիմի պատերազմի տարիներին նա շարունակում է աշխատել Սևաստոպոլում։ Երբ ծովակալ Նախիմովը Սինոպի ճակատամարտում ջախջախելով թուրքական նավատորմը, հաղթանակով վերադառնում է Սևաստոպոլ, նավամատույցում նրան դիմավորում են Քաղցածյանի նոր գրած «Սինոպյան քայլերգ»-ի հնչյուններով։

Արամյան թատրոնից բացի երգն ու նվագը որպես արվեստի բաղկացուցիչ մաս օգտագործվել են նաև Վենետիկի Մխիթարյան միաբանության Մուրադ-Ռափայելյան դպրոցական թատրոնի ներկայացումների ընթացքում։ Այդ թատրոնն ունեցել է երգչախումբ իր ղեկավարով և երգապետ, որոնց վրա էլ դրված է եղել ներկայացումների երաժշտական ձևավորման պատասխանատվությունը։

Երաժշտությունն ավելի հաճախ է օգտագործվել Կ. Պոլսի թաղային թատրոնների ներկայացումների ընթացքում։ Այսպես, Խասգյուղի թատրոնի առաջին ներկայացման համար ներբող-քայլերգ է գրել Տ. Չուխաջյանը (1859 թ., խոսք՝ Չափրաստյանի, «Ո՜ն մեր նախնի»)։ Երեք տարի անց այն, նոտաներով հանդերձ, տպագրվել է «Քնար հայկական» երաժշտական հանդեսում։

1840-ական թվականներից հայ քաղաքային բնակչության շրջաններում ուժեղանում է հետաքրքրությունը դեպի օպերային երաժշտությունը։ Դրան նպաստում են եվրոպական օպերային խմբերի հաճախակի այցելությունները Կ. Պոլիս, Զմյուռնիա, Թիֆլիս և հայաշատ այլ քաղաքներ։

Այնքան մեծ է եղել հետաքրքրությունը դեպի օպերային արվեստը, որ նույնիսկ պահանջ է առաջադրվել ազգային օպերայի ստեղծման։ Ժամանակակից հայ մամուլը հավաստիացնում էր, որ եթե հայկական օպերա ստեղծելու փորձեր լինեին, ժողովուրդը չէր զլանա իր նյութական ու բարոյական օժանդակությունը։ Նույնիսկ կոչ է արվում հասարակությանը՝ կազմակերպել հատուկ ընկերություն, որի նպատակը պիտի լիներ խոստումնալից երիտասարդների ուղարկել Եվրոպա՝ երաժշտական կրթություն ստանալու և վերադառնալուց հետո ազգային երաժշտության զարգացմանը նվիրվելու համար[18]։

Ահա այս պայմաններում էր, որ Տ. Չուխաջյանը, Միլանում երաժշտական կրթություն ստանալուց հետո Պոլիս վերադառնալով, ձեռնարկեց իր անդրանիկ օպերայի՝ «Արշակ Բ»-ի ստեղծմանը։ Տ. Չուխաջյանի «Արշակ Բ»-ն (լիբրետո՝ Թ. Թերզյանի) մեծ ստեղծագործություն էր, որի ստեղծման գործում հեղինակի կողմից հաջողությամբ օգտագործվել էր իտալական օպերայի և հատկապես Վերդիի օպերային ստեղծագործության հարուստ փորձը։

Դժբախտաբար, սուլթանական Թուրքիայի պայմաններում հնարավոր չեղավ հայկական այդ առաջին օպերան բեմադրել։ Այս բանում որոշիչ նշանակություն ունեցավ օպերայի թեման, որը ներթափանցված էր օտար բռնա-

---

18 «Արշալույս Արարատյան», Զմյուռնիա, 1863, № 704։

կալության լուծը թոթափելու և ազգային ազատագրության գաղափարախոսությամբ։

Հայկական օպերայի ստեղծման ուղղությամբ կատարված նախապատրաստական աշխատանքներում զգալի վաստակ ուներ նաև Գրիգոր Սինանյանը (1836—1914)։ Նա էր առաջինը, որ Պոլսում կազմակերպեց մասնավոր դպրոց, դաստիարակելով երաժիշտ կադրեր։ Նա էր, որ «Արևելյան թատրոնի» համար կազմակերպեց նվագախումբ, պարապում էր դերասան-դերասանուհիների հետ։ Կարևոր է նաև այն, որ Գր. Սինանյանը համագործակցել է «Քնար հայկական» երաժշտական ընկերության հետ, կազմակերպելով այդ ընկերության սիմֆոնիկ նվագախումբը։ Եվ, վերջապես, նա հայ երաժշտական գերդաստաններից մեկի՝ Սինանյանների հայրն էր, մի ընտանիք, որը հետագայում տվել է երաժիշտների մի քանի սերունդ։

XIX դարի կեսերից արևմտահայ իրականության մեջ դպրոցներում ըսկիզբ դրվեց երաժշտության դասավանդմանը։ Դա շատ կարևոր էր աճող սերունդների գեղարվեստական դաստիարակության տեսակետից։ Դժբախտաբար, այս շրջանում չկային երաժշտական կրթություն ստացած դասատուներ և այդ պատճառով էլ դպրոցներում երաժշտության դասավանդման գործը համարյա ամբողջապես գտնվում էր տիրացուների, դպիրների ու դպրապետերի ձեռքում։ Դա պայմանավորված էր նաև նրանով, որ դպրոցները գտնվում էին եկեղեցու հովանու տակ և ավանդվող նյութն էլ հոգևոր երաժշտությունն էր։ Պոլսահայ իրականության մեջ երաժշտության առաջին կրթված դասատուն Ավետիս Խորասանճյանն էր (1842—1918), որն ավարտել էր Փարիզի կոնսերվատորիան և Պոլիս վերադառնալով, երաժշտություն էր դասավանդում դըպրոցներում։ Իր նախաձեռնությամբ նա 1866 թ. սկսած աշակերտներին սովորեցնում էր եվրոպական նոտագրություն։ Նա առաջինն էր, որ ստեղծեց մանկական երաժշտություն, երեխաներին ազատելով հոգևոր երգերից։

Արևմտահայ իրականության մեջ հայ վարպետների ձեռքով պատրաստվում էին երաժշտական շատ գործիքներ (ուդ, քանոն, սանթուր, քյամանի, թառ և այլն)։ Կային ընտանիքներ, որոնք ունեին իրենց արհեստի գաղտնիքները և հարյուրավոր տարիների ընթացքում դրանք ավանդելով սերնդից սերունդ, հանդիսանում էին այդ գործի լավագույն վարպետները։ Դրանցից է, օրինակ, Զիլճյանների ընտանիքը։ Վարպետ Քերովբե Զիլճյանը (1830—1910) ունեցել է իր գործարանը, պատրաստել է բարձրորակ ծնծղաներ և հռչակվել ամբողջ աշխարհում։ Նրա պատրաստած ծնծղաներն իրենց որակով գերազանցել են եվրոպականներին թե՛ հնչողության նրբությամբ և թե՛ դիմացկունությամբ։ Սերնդից սերունդ փոխանցելով ծնծղաների ձուլման գաղտնիքը, Զիլճյանների ընտանիքն ամբողջ 200 տարի շարունակել և այժմ էլ շարունակում է այդ գործը, բազմիցս արժանանալով համաշխարհային ցուցահանդեսների մրցանակների։

Երաժշտական կյանքի կազմակերպման, ժողովրդի մեջ երաժշտական գրագիտության տարածման, դասական երաժշտության պրոպագանդայի և ազգային երաժշտության զարգացման գործում հատկապես կարևոր դեր կատարեցին երաժշտական պարբերաթերթերի հրատարակումն ու «Քնար հայ-

կական» երաժշտական ընկերության ստեղծումը։ XIX դարի կեսերից հայ երաժիշտները ոչ միայն համախմբվել էին Թատրոնի շուրջը և իրենց գրած երաժշտությամբ ամեն կերպ նպաստում էին ներկայացումների գեղարվեստագաղափարական ազդեցության ուժեղացմանը, այլև ծավալում էին լուսավորական լայն գործունեություն՝ աշակերտության և հասակավորների մեջ տարածելով երաժշտական գիտելիքներ։ Այս հանգամանքն էլ պայմանավորեց երաժշտական մամուլի ստեղծումը։ Դրանցից առաջինը «Քնար արևելյան» պարբերաթերթն էր, որը լույս տեսավ Կ. Պոլսում, 1858 թ. մայիսից, որպես ամսաթերթ։ Հրատարակիչներն էին՝ Լիմոնճյանի ամենաընդունակ և գործունյա աշակերտ Արիստակես Հովհաննիսյանը (1812—1878) և վերջինիս աշակերտ Գաբրիել Երանյանը։ Նրանք իրենց պարբերաթերթը տպագրում էին եվրոպական նոտաներով՝ յուրաքանչյուր համարում զետեղելով իրենց ձայնագրած «Թաքսիմները», «բեշրեֆները», «սեմայիններն» ու «շարքիները»։ Այսպիսով, ամսաթերթը դարձավ եվրոպական նոտագրության տարածման կարևոր նախաձեռնողներից մեկը։

«Քնար արևելյան»-ը ունեցավ ընդամենը մեկ տարվա կյանք։ Նրան փոխարինեց «Քնար հայկական»-ը, որն սկսեց հրատարակվել 1861 թ. սեպտեմբերի 1-ից որպես երկշաբաթաթերթ։ Այս անգամ նախաձեռնողը Գաբրիել Երանյանն էր, իր աշակերտ Նիկողոս Թաշճյանի հետ միասին։ Իր նախորդի համեմատությամբ, «Քնար հայկական»-ը ուներ շեշտված լուսավորական բնույթ, քանի որ յուրաքանչյուր համարում տպագրում էր սիստեմատիկ դասընթաց ինչպես եվրոպական նոտագրության, այնպես և հայկական ձայնագրության մասին։ Եվրոպական երաժշտության դասընթացը վարում էր ինքը՝ Գաբրիել Երանյանը, իսկ հայկական ձայնագրությանը՝ Համբարձում Ջերչյանը։

«Քնար հայկական»-ը ունեցավ երկու շրջան։ Առաջին շրջանն ընդգրկեց վեց ամիս և լույս տեսավ 12 համար (1861 թ. սեպտեմբերի 1-ից մինչև 1862 թ. փետրվարի վերջը), որից հետո ընդհատվեց և ապա նույն՝ 1862 թ. ապրիլի 30-ից սկսվեց նրա երկրորդ շրջանը, երբ աշխատանքի մեջ ներգրավվեցին Տ. Չուխաջյանը և իտալացի կոմպոզիտոր Կ. Ֆոսքինին։

Այս երկրորդ շրջանում «Քնար հայկական»-ը նույնանուն երաժշտական ընկերության պաշտոնական օրգանն էր։ Այդ ընկերությունը, որն առաջինն էր Պոլսում և ընդհանրապես հայ իրականության մեջ, կազմակերպվեց 1862 թ. մարտին, Գաբրիել Երանյանի նախաձեռնությամբ։ Լինելով երիտասարդ, բայց շատ ձեռներեց, կազմակերպչական արտակարգ ընդունակությունների ու մեծ եռանդի տեր մի գործիչ, նա իր շուրջը համախմբեց վերածննդի գաղափարներով տարված մտավորականների և կազմակերպեց «Քնար հայկական» ընկերությունը, որի նպատակն էր «երաժշտական ոգին արթնացնել ազգին մեջ»։ Երաժիշտներից բացի ընկերության մեջ ընդգրկվել էին նաև հայ մտավորականներ Մ. Պեշիկթաշլյանը, Գ. Օտյանը, Գ. Աղաթոնը, Ն. Ռուսինյանը, Մ. Մամուրյանը, Ս. Հեքիմյանը, Ս. Փափազյանը և ուրիշներ։ Երաժշտական երկշաբաթաթերթի հրատարակումից բացի, ընկերությունը շաբաթվա տարբեր օրերին ձրի դասախոսություններ էր կազմակերպում, նվիրված երաժշտության հարցերին, սիմֆոնիկ նվագախմբի համերգների օգնությամբ հասարակությանը ծանոթացնում էր եվրոպական դասական երաժշտությանը.

ձգտում էր բարձրացնել ժողովրդի գեղագիտական ճաշակը, ստեղծել և տարածել ազգային նոր երգեր, պարերգեր ու լիրիկական երգեր, թատերական երաժշտություն և այլն։ Ընկերության գործունեության շնորհիվ բարձրանում էր երաժշտության հասարակական նշանակությունը, այն կտրվում էր եկեղեցուց և ծառայում ժողովրդի լայն խավերի ազգային ինքնագիտակցության արթնացման գործին։

Ընկերության կազմում ընդգրկված երաժշտական գործիչները (Տ. Չուխաջյան, Ա. Հովհաննիսյան, Ն. Թաշճյան, Ե. Տնտեսյան, Հ. Ջերչյան և ուրիշներ). իրենց գործունեությունը շարունակեցին XIX դարի երկրորդ կեսին և զգալի չափով նպաստեցին հայ երաժշտության առաջընթացին։ Բայց ընկերության երիտասարդ հիմնադրի՝ Գաբրիել Երանյանի կյանքը շուտ ընդհատվեց։ Նա վախճանվեց 1862 թ. հոկտեմբերին, 35 տարեկան հասակում։ Իր կարճատև կյանքի ընթացքում երաժշտական-հասարակական բուռն գործունեության հետ միասին նա ստեղծեց մի շարք երգեր, որոնք այսօր էլ պահպանել են իրենց գեղարվեստական արժեքը։ Դրանցից են՝ «Կիլիկիա» (խոսք՝ Ն. Ռուսինյանի), «Հայաստան» (խոսք՝ Հ. Միրզա-Վանանդեցու), «Արիք Հայկազունք» (խոսք՝ Հ. Սվաճյանի) և այլն։

Գ. Երանյանի մահը մեծ հարված հասցրեց «Քնար հայկական» ընկերությանն ու նրա երկշաբաթաթերթին։ 1863 թ. նրանք դադարեցին գործելուց։ Դրան, անկասկած, նպաստեցին նաև Զեյթունի հերոսական ապստամբությանը հաջորդած թուրքական կառավարության կողմից ձեռնարկված նոր բռնությունները։

## 5. ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ

XIX դարի առաջին քառորդը արգասավոր չեղավ քաղաքաշինության և ճարտարապետության զարգացման տեսակետից, քանի որ Հայաստանի արևելյան հատվածը շարունակում էր գտնվել պարսկական, իսկ արևմտյանը՝ թուրքական տիրապետության տակ։ Այդ պայմաններում շինարարական գործունեություն ծավալելու, խոշոր մոնումենտալ շենքեր ու կառուցվածքներ իրականացնելու համար տնտեսական հնարավորությունները սահմանափակ էին։

Զգալիորեն փոխվում է դրությունը Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միացնելուց հետո, երբ ցարական, ինչպես քաղաքացիական, այնպես էլ զինվորական իշխանությունների կողմից Հայաստանի որոշ քաղաքներում և բնակավայրերում (Երևան, Ալեքսանդրապոլ, Գորիս, Նոր Բայազետ և այլն) սկսում են, ճիշտ է, դանդաղորեն, սակայն որոշակի հետևողականությամբ ու ծրագրով իրականացնել քաղաքաշինական միջոցառումներ։

Այդ տեսակետից առավել ակնառու է Երևանը[19]։

Միջնադարյան Երևանը, որի մեջ մտնում էին Բերդը, Հին քաղաքը (Շահար), Կոնդ ու Դամիր-Բուլաղ կոչվող բնակելի շրջանները, ինչպես նաև

---

[19] Երևանի մասին նյութերը քաղված են Ե. Շահազիզի «Հին Երևան», Երևան, 1930, Թ. Խ. Հակոբյանի Երևանի պատմությունը (1801—1879), Երևան, 1959, В. М. Арутюнян, М. М. Асратян, А. А. Меликян, Ереван, 1968, աշխատություններից։

Հրազդանի կիրճում տեղավորված Ձորագյուղը (որը սկզբում ինքնուրույն գյուղ է եղել ու հետո միացել Երևանին), ռուսական տիրապետության ժամանակաշրջանում սկսում է ընդարձակվել։ Քաղաքին է միանում նաև հյուսիսարևելյան, ամբողջապես այգեպատ բարձունքների վրա տեղավորված Նորքը։

Մոտավորապես նույն ժամանակաշրջանում Խանի-բաղ կոչվող բարձիթող տարածության վրա սկսում է առաջանալ Նոր Թաղը, որը կառուցապատվում է հիմնականում Թուրքմենչայի պայմանագրի համաձայն Պարսկաստանից գաղթած հայերի միջոցով։ Բնակելի այս նոր շրջանը առաջանում է Հին քաղաքի և կենտրոնական շուկայի հրապարակի արանքում, անմիջական կապ ստեղծելով Կոնդի և Հին քաղաքի միջև։

Նոր Թաղ կոչված բնակելի շրջանի կառուցապատման ժամանակ կիրառվել է ռուսական քաղաքաշինական արվեստի կանոնավոր հատակագծման առաջադիմական սկզբունքը։ Դրա շնորհիվ քաղաքի այս նոր մասում առաջանում են միմյանց զուգահեռ և ուղղահայաց փողոցներով բնակելի թաղամասեր, որոնք տարբերվում էին նախկիններից։

Երևանում իրականացված հիշյալ քաղաքաշինական աշխատանքների առաջին փաստաթուղթը նրա գլխավոր հատակագիծն է՝ կազմված 1837 թվականին։ Նրանում քաղաքի խառնիճաղանճ կառուցապատման ֆոնի վրա առանձնանում է փողոցների կանոնավոր ցանցով նոր կառուցապատվող մասը։

Հետագա տարիներին կանոնավոր հատակագծման այս նույն սկզբունքն ընկնում է Երևանի հին մասերի վերակառուցման հիմքում։ Դրա մասին է վկայում Կովկասի փոխարքայի կողմից 1856 թ. դեկտեմբերի 23-ին հաստատված գլխավոր հատակագիծը, որով քաղաքի ողջ տերիտորիան (բացառությամբ Կոնդի և Նորքի) պետք է ենթարկվեր վերակառուցման։ Քաղաքի մյուս հատակագծում, որը վերաբերում է 1865 թ., պահպանելով հիշյալ սկզբունքները, ընդգրկվում են ավելի մեծ հողատարածություններ։

Երևան քաղաքի գլխավոր հատակագծի գործնական կիրառությունը փաստորեն սկսվում է 1862 թ., երբ նախաձեռնվում են աշխատանքներ Կրեպոստնայա (հետագայում՝ Աստաֆյան, այժմ՝ Աբովյան) փողոցի բացման ուղղությամբ։ Հյուսիս-արևելքից (պլանի գլուխ) դեպի հարավ-արևմուտք ուղղությամբ ձգվող և մոտ մեկ կմ երկարություն ունեցող այս փողոցը անցնում է քաղաքի կենտրոնական մասով՝ Հին քաղաքի և Նոր Թաղի տարածությունների վրայով։ Հետագա տարիներին սկսվում է իրականացվել քաղաքի հատակագծով նախատեսված փողոցների բացումն ու կառուցապատումը։

Երևանի բերդը, որ իր գոյության ու Թուրք-պարսկական տիրապետության տակ գտնվելու ամբողջ ժամանակաշրջանում ռազմավարական տեսակետից կարևոր նշանակություն ունեցող մի ամրություն էր, գրավվելով ռուսների կողմից, որոշ ժամանակ շարունակեց ծառայել այդ նպատակին։ Բացի կայազորից, այստեղ տեղավորված էր նաև նահանգապետարանը։ Այդ պատճառով գոյություն ունեցող մյուս շենքերը (խանի պալատը, հարեմը, զորանոցները, զինապահեստները և այլն) օգտագործվում էին քաղաքացիական ու զինվորական իշխանությունների կողմից։ Դրան զուգընթաց այստեղ, սկսած 1848 թ., իրականացվեցին շինարարական որոշ աշխատանքներ (հարեմի շեն-

քը համարեցնելով զինվորական հիվանդանոցի, կառուցելով զինվորական եկեղեցու շենքը և այլն)։ Հետագայում, երբ 1864 թ. նահանգապետարանը փոխադրվում է քաղաքի կենտրոնում (Գուբերնսկայա փողոցում) կառուցված նոր շենքը, բերդը, կորցնելով ռազմական ու վարչական իր նշանակությունը, աստիճանաբար լքվում է։

Երևանի գործարար կենտրոնը շուկայի հրապարակն էր՝ ղանթարով, առևտրական ու արհեստավորական շարքերով, իջևանատներով ու այլ շենքերով։ Կային նաև երկրորդական նշանակություն ունեցող հրապարակներ, ինչպես ֆայլա-բազարը և Նոր հրապարակը (այժմ Ազիզբեկովի անվան), որը ձևավորվեց XIX դարի 50—60-ական թվականներին։

Նույն ժամանակաշրջանի քաղաքաշինական աշխատանքների արդյունքն է Անգլիական այգին (այժմ 26 կոմիսարների անվան զբոսայգի)։ Այն ընտեղծվում է Բերդի և շուկայի հրապարակի միջև ընկած ճահճապատ հողերի վրա։

Բնակչության կոմունալ սպասարկմանն էին ծառայում բաղնիքները։ Դրանց մի մասը (ինչպես նաև այլ բնույթի կոմունալ շենքերը) վերաբերում էին պարսկական տիրապետության շրջանին և ջրի անբավարար մատակարարման հետևանքով զուրկ էին հիգիենիկ պայմաններից։ Բնակչությունը հիմնականում օգտվում էր ջրհորներից և սակավաթիվ աղբյուրներից, որոնց թիվը 1851 թ. տվյալներով 200-ի էր հասնում։ Թեև 1857 թ. սկսվում է ջրամատակարարման ցանցի կառուցումը (Գետառից), սակայն խմելու համար ո՛չ ջրհորների և ո՛չ էլ Գետառի ջրերը պիտանի չէին։

Առանձին հետաքրքրություն է ներկայացնում Երևանի բնակելի տների ճարտարապետությունը։ Անկախ ոճական ու ներքին կազմակերպման տարբերությունից (որն արդյունք էր նրանց բնակիչների զբաղմունքի, կենցաղային սովորույթների, ազգային պատկանելության ու դրանից բխող գեղարվեստական պատկերացումների), բազմաթիվ են բնակարանների տեղական բնակլիմայական պայմանների համեմատ կառուցելու իմաստավորված ու ռացիոնալ լուծման ուշագրավ օրինակները։

Որպես ճարտարապետական ոչ բարձր մակարդակի օրինակ պիտի համարել Երևանի (ավելի հին եկեղեցու տեղում կառուցված) ս. Սարգիս եկեղեցու (1868) և նրա հյուսիսային կողմից կառուցված առաջնորդարանի ու դպրոցի շենքերը։ Ինչ վերաբերում է Հրազդանի ձորաբերանին կառուցված առաջնորդարանի շենքին, ապա այն ընդհանուր առմամբ օժտված էր նույն ժամանակաշրջանի Երևանի բնակելի տների հատկանիշներով։

Քաղաքի հողատարածության մեծամասնությունը զբաղեցնում էին այգիներն ու բանջարանոցները, իսկ բնակչության գլխավոր զբաղմունքը հողագործությունն էր։

Քաղաքաշինական նույն կարգի փոփոխություններ տեղի են ունենում նաև Ալեքսանդրապոլում։ Հին ամրոցի մոտ ընկած և Գյումրի անունը կրող այս փոքր բնակավայրն աստիճանաբար դառնում է ռուսական տիրապետության տակ անցած Արևելյան Հայաստանի երկրորդ կարևոր քաղաքը՝ 1837 թվականից վերանվանվելով Ալեքսանդրապոլ։ Նրա զարգացման ազդակներից մեկը հանդիսացավ 1828—30 թթ. ընթացքում Էրզրումից և Կարսից շուրջ

2500 ընտանիքի ներգաղթն այստեղ։ Դրա հետ միասին, Ալեքսանդրապոլի բնակչության աճին մեծապես նպաստեց զգալի թվով ռուսական կայազորի առկայությունը քաղաքին կից բերդում։ Դրանց շնորհիվ է, որ XIX դարից առաջ ընդամենը 70 ընտանիքից բաղկացած[20] Գյումրիում 1865 թ. բնակիչների թիվը հասնում էր մոտ 17 հազարի։

Հետզհետե աճող Ալեքսանդրապոլի կորիզը հանդիսացավ «Ջերքեզի» և «Մխչոնց» ձորերի ու քարհանքերի միջև գտնվող ձորաթմբին տեղավորված հին Գյումրին, պատմական Կումայրին։ Սրա հարավ և հարավ-արևելյան մասումն է, որ սկզբում տարերայնորեն, առանց քաղաքաշինական որոշակի ծրագրի, աստիճանաբար կազմավորվում են ու կառուցապատվում Ալեքսանդրապոլի նոր թաղամասերը, որոնցում բնակչությունը ինքնաբերաբար տեղաբաշխվում է ըստ ազգային պատկանելության («Թուրքի մահլա», «Բոշի մահլա», «Ուռումոնց մահլա», «Ռուսական թաղամաս» կամ «Սլաբոդկա»), ըստ դավանանքի («Կաթոլիկների թաղամաս» կամ «Ֆրանգների մահլա»), կամ ըստ զբաղմունքի («Ռանչպարների մահլա», տարբեր արհեստների փողոցներ և այլն)։

Եթե Ռուսաստանի հետ միացման սկզբնական շրջանում, նկատի ունենալով քաղաքի և ամրոցի ռազմավարական տեսակետից բացառիկ նշանակությունը, հիմնական հոգատարության առարկան ամրոցն էր, որի հզորացման ուղղությամբ, սկսած 1834 թ.[21] մեծ ջանքեր էին գործադրվում զինվորական իշխանությունների կողմից, ապա 1837 թ. սկսած քաղաքացիական իշխանությունների ուշադրության առարկան են դառնում նաև քաղաքի կառուցապատման հարցերը։

Ալեքսանդրապոլի բերդից և հին Գյումրիից արևելք ընկած մասի կառուցապատման ժամանակ նույնպես, ինչպես Երևանում, ղեկավարվել են կանոնավոր հատակագծման սկզբունքով։

Նոր կառուցապատված մասը, որը հետագայում հանդիսացավ քաղաքի կենտրոնը, փողոցների կանոնավոր ցանցով բաժանվեց ոչ մեծ (50×75 մ—100×150 մ) թաղամասերի։

Ալեքսանդրապոլում ևս, ինչպես Երևանում, քաղաքի հասարակական կենտրոնը շուկայի հրապարակն էր (այժմ Մայիսյան ապստամբության)։ Հրապարակի շուրջն ու նրանից սկզբնավորվող փողոցներում գտնվում էին բազմաթիվ ու բազմաբնույթ խանութներ և արհեստանոցներ։ Միևնույն ժամանակ այստեղ էին կենտրոնացած վարչական և կոմունալ (պանդոկներ, բաղնիքներ) շենքերը, եկեղեցիները։ Քարավանատների կամ պանդոկների թիվը քաղաքում տասի էր հասնում («Յոթ ախպերանց խան», «Մատնիչյանների խան», «Սհաթչոնց խան», «Սադիկենց խան», «Թարզոնց խան», «Ալմոյանների պանդոկ» և այլն)։ Սրանցից նշանավոր էր եղբայրներ Վարդան և Սարգիս Ալմոյանների պանդոկի երկհարկանի շենքը (առաջին հարկը խանութներ, երկրորդ հարկը՝ հյուրանոց), կառուցված 1865—67 թվականներին։

20 Գ. Ալիշան, Շիրակ, Վենետիկ, 1881, էջ 154։
21 Նույն տեղում։

*Բնակչության կոմունալ սպասարկմանն էին ծառայում քաղաքի տարբեր թաղամասերում, գլխավորապես «Գյումրի-չայ» և «Մուստաֆա-չայ» գետերի մոտ գտնվող բազմաթիվ բաղնիքները։*

*Կենցաղային կարիքների համար ջրամատակարարման հարցը կարգավորվում էր գերազանցապես աղբյուրների միջոցով։ Կենցաղային ջրերի կուտակումը կատարվում էր քաղաքի հյուսիս-արևելյան և հյուսիս-արևմտյան մասերից քյահրեզային տնտեսության միջոցով։ Կուտակված ջրերը քաղաքի հյուսիսային մասում առնվում էին թրծված կավե խողովակների մեջ, որոնցով նրանք հոսում էին դեպի քաղաքի Մուստաֆա-չայի ուղղությամբ։ Աղբյուրների զգալի քանակություն տեղաբաշխված էր քաղաքի տարբեր թաղամասերում։ Նրանցից շատերը («Ջիթողցոնց», «Ուստա Մուկուչի», «Քոռ Ավոյի» և այլն) իրենց վրա կրում են գյումրեցի հմուտ աղբյուրաշեն վարպետների ճարտար ձեռքերի դրոշմը։*

*Կառուցված շենքերից հիշատակելի է Ամենափրկիչ եկեղեցին։ Հավատացյալ համայնքի միջոցներով այն կառուցվում է շուկայական հրապարակում 1859—1873 թթ.[22] ընթացքում և իր ազդեցիկ տեսքով հարստացնում հրապարակի համայնապատկերը։ Նրա կառուցող վարպետները (քարտաշ-որմնադիրներ) Պապիկ և Թադևոս Կարապետյանները ու հյուսն Արդար Մանուկը նպատակադրված կերպով այս եկեղեցու շենքում ջանացել են վերարտադրել Անիի Մայր տաճարի ձևերը։*

*Մեկ ուրիշ եկեղեցի 1843—1855 թթ.[23] կառուցում են Էրզրումից գաղթած հայ կաթոլիկները՝ Կանոնիկոս Աղեքսանդր վարդապետի նախաձեռնությամբ։*

*Այսպիսով, Ալեքսանդրապոլը քաղաք է դառնում Ռուսաստանին միացվելուց հետո, կազմավորելով քաղաքաշինական առաջադեմ սկզբունքների ու տեղական շինարարական ավանդույթների հետ սերտորեն զուգակցելով իր ուրույն ճարտարապետական դեմքը։*

*Եթե նշված քաղաքաշինական սկզբունքը Երևանում և Ալեքսանդրապոլում կիրառություն է ունեցել մասնակիորեն, քաղաքատարածության որոշ մասի վրա, ապա ամբողջությամբ այն կիրառվել է Արևելյան Հայաստանի բնակավայրերից մեկի՝ Գորիսի կառուցապատման ժամանակ։ Նրա հիմնադրման աշխատանքներն սկսվել են 1850 թ., երբ Որոտան գետի վտակ Գորիս գետակի ձախափնյա լանջի վրա տեղավորված անձավային բնակարաններով հարուստ հին Կյորես գյուղի բնակիչները փոխադրվում են գետակի աջափնյա հարթավայրի վրա նոր հիմնադրվող բնակավայրը։*

*Բնակավայրի տնտեսական զարգացման պայմանները առավել նպաստավոր և հեռանկարային են դառնում հատկապես Գորիս—Շուշի խճուղային ճանապարհաշինության (1869—1879) հետևանքով։ Այդ կապակցությամբ էլ Գորիսի հատակագծման և կառուցապատման աշխատանքներն ավելի կազմակերպված են ընթանում 1870 թվականից սկսած։*

---

22 Ղ. Ալիշան, նշվ. աշխ., էջ 154։
23 Նույն տեղում, էջ 155։

Պատմական նույն ժամանակաշրջանում, Հին Գավառ (Քյավառ) բնակավայրի տեղում, 1829 թ. այստեղ գաղթած հին-բայազետցիները հիմնադրում են Նոր Բայազետ (այժմ Կամո) բնակավայրը։ Սա տարածվում է Սևանա լճի հարավ-արևմտյան ափին, Նորադուզի թերակղզուց մոտ 6 կմ դեպի արևմուտք ընկած ու հյուսիսային քամիներից լավ պահպանված գոգավորության մեջ։

Ինչպես երևում է ավելի ուշ ժամանակաշրջանի մեկ փաստաթղթից, որը վերաբերում էր Նոր Բայազետում կատարվող քաղաքաշինական աշխատանքների նկատմամբ Երևանի նահանգական վարչության կողմից իրականացվող վերահսկողությանը, բնակավայրն ունեցել է նահանգապետի կողմից հաստատված գլխավոր հատակագիծ։

Գլխավոր հատակագծում փողոցների կանոնավոր ցանցով առաջացած ուղղանկյուն թաղամասերը (և նրանցում գտնվող հողամասերը) համարակալված էին։ Նոր Բայազետն ուներ չորս հիմնական թաղ՝ Բանտի, Կալերի, Խաչերի և Տալիզի։ Վերջինս հիմնականում կառուցապատվել է 1835—1840 թթ. շուկայից հարավ և Բանտի ու Կալերի թաղերից արևմուտք։ Այստեղ էին գտնըվում ոստիկանատունը, բուժարանը, դպրոցը, բաղնիքը, հյուրանոցը և այլն։ Քաղաքի հիմնադրման և զարգացման մեջ զգալի դեր են կատարել Արծրունիների տոհմի ներկայացուցիչները։ Մկրտիչ Արծրունու գլխավորությամբ այստեղ հաստատվել են վերաբնակիչները, իսկ նրա եղբոր՝ Բարսեղ աղայի միջոցներով կառուցվել են իրար կից երկու դպրոցների շենքերը, ինչպես նաև խանութներ։ 1857—1860 թթ. ընթացքում Նոր Բայազետի գավառապետ Թիֆլիսեցի իշխան Իսահակ Աբելյան Աբա-Մելիքյանցի թելադրանքով ու նախաձեռնությամբ կառուցվում են հարյուրի չափ բարեկարգ կրպակներ[24], որոնցով բնակավայրի հասարակական և գործարար կենտրոնը ստանում է իր ճարտարապետական ձևակերպումը։

Քննվող ժամանակաշրջանը բեղմնավոր եղավ հայկական ժողովրդական բնակարանի զարգացման տեսակետից։ Հայաստանի տարբեր շրջաններում առաջացան բնակարանի տիպեր, որոնք համակողմանիորեն համապատասխանում էին ինչպես տվյալ շրջանի բնա-կլիմայական պայմաններին, այնպես էլ բնակիչների զբաղմունքին, նիստ ու կացին և այլն։

Հայաստանի լեռնային շրջաններում առավելապես տարածված էր բնակարանի ավանդական տիպը՝ տունը կամ գլխատունը (ղարադամ, մրատուն, տան-տուն, հացատուն, թոնրատուն, կրակատուն, քուրսու տուն և այլն)։ Ինչպես հայտնի է, բնակարանի այս տիպը հայերի, վրացիների ու այլ ժողովուրդների մոտ առաջացել է շատ հնուց։

Հատակագծում քառակուսի կամ քառանկյունի (2, 4), առանձին դեպքերում նաև ավելի քանակությամբ փայտյա սյուների վրա հենվող ու Հազարաշեն կոչվող փայտագմբեթ ծածկով (կենտրոնում՝ երդիկ), գետնափոր կամ կիսագետնափոր, երբեմն դրսից «շվաք» կոչվող սրահով տան այս տիպը,

---

24 Մ. Սմբատյանց, Տեղագիր Գեղարքունի ծովազարդ գավառի, Վաղարշապատ, 1895, էջ 36—82։ Տե՛ս նաև Ն. Ծ. Պապուխյան, Սյունիքի ժողովրդական ճարտարապետությունը, Երևան, 1972, էջ 30—36։

որ անհիշելի ժամանակներից կացարան է հանդիսացել միաժամանակ մարդկանց և անասունների համար, XIX դարում իր հետագա զարգացումն է ապրում։ Այն հիմք է ծառայում, այսպես կոչված, «կոմպլեքս տան» առաջացման համար։ «Կոմպլեքս տան» հիմնական կորիզը շարունակում է մնալ գլխատունը, որին ավելանում են գլխատան առանձին ֆունկցիաները անցյալում կատարող մասեր՝ լրացուցիչ սենյակներ, գոմ, մառան, հացատուն և այլն։ Այսպիսով, ավանդական գլխատան հիման վրա առաջանում է բնակարանի մի նոր տիպ, որը համեմատաբար ավելի բարեկեցիկ պայմաններ է ստեղծում բնակչի համար ու նպատակահարմար դառնում տնտեսությունը վարելու տեսակետից[25]։

Հայաստանի դաշտավայրային (Արարատյան դաշտ) ու նախալեռնային (Աշտարակ, Կոտայք) շրջաններում սկսվում է կազմավորվել բնակարանի մի այլ տիպ, որը համապատասխան լինելով հանդերձ տեղի բնա-կլիմայական պայմաններին, առավելապես հարմարեցված էր այգեգործությամբ ու խաղողագործությամբ զբաղվող բնակիչների կենցաղին։ Սրանց լավագույն օրինակները հանդիպում են Երևանում և նրա Կոնդ ու Նորք թաղերում, Քանաքեռում, Էջմիածնում, Աշտարակի շրջանի Աշտարակ, Օշական, Եղվարդ ու այլ գյուղերում։

Քննվող ժամանակաշրջանը բնորոշ է ոչ միայն արհեստների ու առևտրի, այլև կրթության օջախների զարգացմամբ։ Դպրոցական շենքերից հիշատակելի են Երևանի թեմական կամ առաջնորդարանի (1838), Հառիճա վանքի (1857), Վաղարշապատի (Էջմիածնի) վարժարանի կամ «Ժառանգավորաց դպրոց»-ի (1813) և Գևորգյան ճեմարանի (1869) դպրոցական շենքերը։

Արևելյան Հայաստանի ազատագրման համար ռուսների նկատմամբ հայ ժողովրդի երախտագիտությունը նույնպես ճարտարապետական մարմնավորում է ստացել։ 1834 թ., Էջմիածնից ոչ հեռու, կանգնեցվել է կոթող ի հիշատակ այն ռուս զինվորների, որոնք ընկան 1827 թ. օգոստոսի 17-ի Օշականի ճակատամարտում։

Տարբեր են հիշատակված շենքերն իրենց ծավալով, բովանդակությամբ ու ճարտարապետական-գեղարվեստական մակարդակով, ինչպես տարբեր են ճարտարապետական այն միջավայրերը, որոնցում նրանք դրվել են։ Եթե մի քանիսը դրանցից (Երևանի առաջնորդարանի, Հառիճա վանքի դպրոցներ) ինչ-որ չափով արտահայտում են հայկական ազգային ճարտարապետության ավանդույթները, ապա Գևորգյան ճեմարանի շենքում զգացվում է ռուսական բարոկկոյի ճարտարապետության, իսկ Օշականի ճակատամարտի հերոսների հիշատակին կանգնեցրած կոթողում՝ ռուսական կլասիցիզմի ճարտարապետության ազդեցությունը։

Հայաստանի որոշ վանքերում դեռևս XVII դարից սկսած վերաշինական ու կառուցապատման աշխատանքները շարունակվում են նաև քննվող ժամանակաշրջանում։ Այդ տեսակետից բնորոշ է նախ և առաջ Էջմիածնի վան-

---

25 Ս. Վարդանյան, *Հայկական ժողովրդական բնակելի տների ճարտարապետություն*, Երևան, 1959, էջ 43—75։ Տե՛ս նաև Է. Հակոբյան, *Աշտարակի շրջանի ժողովրդական բնակարանի ճարտարապետությունը*, Երևան, 1964։

քը, որի համակառույցը հարստանում է նոր շենքերով։ Բացի ճեմարանից, հիշատակելի է 1846 թ. Ներսես V Աշտարակեցի կաթողիկոսի օրոք կառուցված զգալի չափեր (170×70 մ) և խորություն (6 մ) ունեցող լիճը, որը ծառայում էր վանքից դեպի հարավ ընկած վանքապատկան տարածության վրա ստեղծված արհեստական անտառի ոռոգման, ինչպես նաև միաբանների հանգստի նպատակներին։

1831 թ. Եփրեմ կաթողիկոսին հաջորդած Հովհաննես Կարբեցի կաթողիկոսը շինել է տվել Սինոդի շենքը (այժմ վանքի միաբանների ճաշարանի շենքը)։

1869 թ. Մայր տաճարի արևելյան կողմից, նրա ամբողջ լայնությամբ ավելացվում է մի շենք՝ եկեղեցական սպասքը պահելու համար (այժմ ծառայում է որպես վանքի թանգարան)։ Իր ճարտարապետական ձևերով՝ լուծված կլասիցիզմի մոտիվներով, նա չի ներդաշնակում տաճարի հին ձևերին։

* * *

Հայ ժողովրդի շինարարական գործունեությունն իր բազմապիսի դրսևորումներն ունեցավ նաև բուն հայրենիքից դուրս, գաղթավայրերի ընդարձակ տարածքի վրա, ինչպես ցարական Ռուսաստանի սահմաններում (Անդրկովկաս, Հյուսիսային Կովկաս, Ղրիմ, Լեհաստան, Պետերբուրգ, Մոսկվա, Նոր Նախիջևան և Աստրախան), այնպես էլ աշխարհի մի շարք երկրներում (Պարսկաստան, Հնդկաստան, Եգիպտոս, Ռումինիա, Հունգարիա, Բեսարաբիա և այլն)։

Թիֆլիսում ու Բաքվում հայերը, բացի ժողովրդական բնակարանի բազմաթիվ ուշագրավ հուշարձաններից (հատկապես Թիֆլիսում), որոշ թվով նաև մոնումենտալ եկեղեցական ու քաղաքացիական շենքեր են կառուցել։ Դրանցից հիշատակելի են Թիֆլիսի Ներսիսյան դպրոցի (հին) շենքը (1824), Վանքի կաթողիկե եկեղեցու վերակառուցումը (XIX դ. սկզբին) և Թիֆլիսի առաջին պրոֆեսիոնալ թատրոնի շենքը Երևանյան հրապարակում (այրվել է 1874 թ.), հետագայում նրա տեղը կառուցվել է Թամամշյանի քարավանատունը[26]։

Նույն ժամանակաշրջանում շինարարական գործունեություն է ծավալվում նաև Բաքվի հայերի կողմից, որոնք 1870 թ. կառուցում են Պարապետի ս. Գրիգոր կաթողիկե եկեղեցին[27]։

Երկու եկեղեցական շենքեր՝ ս. Գրիգոր Լուսավորիչ (1783—1807) և գերեզմանատան ս. Կարապետ (1865—1881) եկեղեցիները կառուցվել են Նոր Նախիջևանում[28]։

Մոսկվայում Լազարյանների Արևելյան լեզուների ճեմարանի շենքի միջին (կենտրոնական) մասի շինարարությունն իրականացվել է 1814—1816 թթ., իսկ թևերինը՝ 1817—1823 թթ. ընթացքում։ Գլխավոր շենքի առջև ընկած բակում 1822 թ. կանգնեցվել է կոթող՝ ի պատիվ ճեմարանի հիմնադիրներ

26 *О. Х. Халпахчян*, Армяно-русские культурные отношения и их отражение в архитектуре, Ереван, 1957, էջ 37։

27 Նույն տեղում, էջ 38։

28 Նույն տեղում, էջ 32։

Հովհաննես և Հովակիմ Լազարյանների։ Բացի վերոհիշյալից, նույն ժամանակաշրջանին է վերաբերում Մոսկվայի հայկական երկու՝ ս. Վերափոխման (1820—30) և Վագանկովյան հայկական գերեզմանատան ս. Հարություն (1815) եկեղեցիների շինարարությունը[29]։

Հայերը շինարարական գործունեություն են ծավալել նաև այնպիսի նշանավոր գաղթավայրերում, ինչպիսիք են Լեհաստանը, Բեսարաբիան և Ղրիմի թերակղզին, որոնք բավականաչափ հարուստ են միջնադարին վերաբերող հայ ճարտարապետական հուշարձաններով։ Դրանցից է XIX դարի 70-ական թթ. Հնչեստում (այժմ Կոտովսկոյե, Մոլդավական ՍՍՀ) կառուցված հայկական եկեղեցին, որը հիմնադրել է Միրզայան Մանուկ բեյի որդի Հովհաննեսը։

Եթե Անդրկովկասի քաղաքներում կառուցված (գլխավորապես եկեղեցական) շենքերի հեղինակները ջանացել են վերարտադրել հայկական ճարտարապետության ավանդական ձևերը, ապա Մոսկվայում և Նոր Նախիջևանում կառուցված եկեղեցիներն իրենց վրա կրում էին ռուսական կլասիցիզմի դարաշրջանի ճարտարապետության որոշակի դրոշմը։ Նույնը կարելի է ասել նաև Լազարյան ճեմարանի շենքի ճարտարապետության վերաբերյալ։

Արևմտյան Հայաստանում ապրող հայերի շինարարական գործունեությունը բնութագրող մեր տվյալները առավել չափով վերաբերում են Կ. Պոլսին։ Այստեղ կառուցված պաշտամունքային, կրթական, մշակութային և բուժական շենքերից հիշատակվում են 1833 թ. ճարտարապետ Կարապետ Պալյանի կառուցած Պեշիկթաշի հայկական եկեղեցին, Սկյուտարի ճեմարանը (1838), Պեշիկթաշի դպրոցը, ինչպես նաև Օրթագյուղի Բարեսիրաց (1867—1870) և Բերայի արևելյան թատրոնների շենքերը, որոնցից առաջինը ստեղծվել է վերակառուցման հետևանքով, իսկ երկրորդը կառուցվել է ճարտարապետ Հակոբ պեյ Պալյանի միջոցներով։ Բացի վերոհիշյալներից, հարկ է հիշատակել նաև Եդի-Գյուլի ազգային հիվանդանոցի շենքը (1832), կառուցված ճարտարապետներ Հովհաննես ամիրա Սերվերյանի և Կարապետ ամիրա Պալյանի կազմած նախագծով[30]։

XIX դարի առաջին կեսին շինարարական որոշ գործունեություն է ծավալում Կարինի հայկական համայնքը։ Դրա արդյունք են Կարնո Ժառանգավորաց վարժարանի (բացվ. 1858 թ.) համար Մուտուրկու ս. Լուսավորիչ վանքին կից և քաղաքի «Արծնյան» վարժարանի համար ս. Աստվածածին եկեղեցու մոտ 1866 թ. կառուցված շենքերը[31]։

Բնորոշ է եղել հնդկահայերի շինարարական գործունեությունը հատկապես Մադրասում և Կալկաթայում։ Կառուցված շենքերից հիշատակելի են Մադրասի «Հայոց մարդասիրական ճեմարանի» (1821) ու Կալկաթայի «Ս. Սանդըխտյան» աղջկաց դպրոցի (1846), Մադրասի Շիրազեցու (1809) և Սար-

---

29 Նույն տեղում։

30 Թվարկված կառուցումների մասին տե՛ս «Յիշատակարան», Կ. Պոլիս, 1910, էջ 165—166, 184։

31 Ղազար Չարըգ, Յուշամատեան Բարձր Հայքի, Կարինապատում, Պեյրութ, 1957, էջ 162—164։

գիս Տատուր Աղավելյանի (1818), Կալկաթայի Մ. Թաղիադյանի «Արարատյան ընկերության» (1845), Պողոս Վիչենյանի հիմնադրած և «Արծիվ» (1846) տպարանների, ինչպես նաև Կալկաթայի եկեղեցու և գրադարանի շենքերը[32]։

Պակաս բեղմնավոր չի եղել պարսկահայերի շինարարական գործունեությունը Նոր Ջուղայում, Սպահանում և Թավրիզում։ XVII—XVIII դդ. վերաբերող եկեղեցական ինքնատիպ շենքերով հարուստ Նոր Ջուղայում XIX դարի առաջին կեսին հիմնադրվում են մի քանի կրթական օջախներ՝ Նոր Ջուղայի հայկական դպրոցը՝ 1833 թ. (գործել է մինչև 1837 թ.), Դավրեժի թաղի ս. Մինաս եկեղեցու գավթի դպրոցը (1853) և Նոր Ջուղայի Օրիորդաց դպրոցը (1858), որոնց համար, պետք է ենթադրել, կառուցվել են հատուկ շենքեր։ XIX դ. առաջին կեսին բավականաչափ շենքեր են կառուցվում հայության հանգրվան դարձած Եգիպտոսի Կահիրե և Ալեքսանդրիա քաղաքներում[33]։

Կիրակոս եպիսկոպոս Երուսաղեմցու առաջնորդության օրոք (1825—1835 թթ.) է իրականացվել Կահիրեի ս. Սարգիս եկեղեցու մոտակայքում Հայկական դպրատուն-հյուրանոցի և Հոգետուն-հիվանդանոցի երկհարկանի շենքերի շինարարությունը։ Ավելի ուշ, 1839 թ. Պեյն էլ-Սուրեյնի փողոցում կառուցվում է ս. Աստվածածին եկեղեցին։ Սա ուղղանկյուն հատակագծով (չափերը՝ 14×36 մ, բարձր. 18 մ), անսյուն, արևելյան կողմից ավագ խորանով և զույգ ավանդատներով, քարաշեն պատերով ու փայտաշեն ծածկով մի պարզ շենք է, միակ մուտքով՝ արևմտյան կողմից։

Նույնատիպ, սակայն ավելի փոքր չափի է Կահիրեի ֆում-էլ-Խալիկէ գերեզմանատանը 1843 թ. կառուցված ս. Մինաս մատուռը։ Սրա հյուսիս-արևելյան անկյան վրա կանգնեցված է անշուք մի զանգակատուն։

Կահիրեի հայկական համայնքի շինարարական ջանքերի արդյունք են նաև Պեյն էլ-Սուրեյնի փողոցում 1852 թ. կառուցված առաջնորդարանի շենքը և Խորենյան վարժարանի ու աղա Կարապետ Գալուստի նվիրատվությամբ 1854 թ. կառուցված շենքը (որի պատճառով վարժարանը հետագայում կոչվել է Գալստյան)։ Մի փոքր մատուռ՝ ս. Թադեոս-Բարդուղիմեոս անունով 1835—36 թթ. կառուցվել է Ալեքսանդրիայից ոչ հեռու գտնվող Տիսանիս գյուղում, հայազգի Աբրահամ փաշա Բարթուղի ագարակում։ Ալեքսանդրիա քաղաքում «Արամյան» կամ «Պողոսյան» դպրոցի հիմնադրումը տեղի է ունենում 1851—1866 թթ.[34]։

Ռումինահայ գաղութում կառուցված շենքերից հիշատակելի են Սուչավայի հայկական դպրոցի շենքը, Յասիի հայկական դպրոցը (1841) և տպարանը (1847)։

Հայաստանից դուրս գործել են բազմաթիվ հայազգի ճարտարապետներ։ Դրանցից էր Պալյանների ճարտարապետական տոհմը, որի մեծատաղանդ ներկայացուցիչները XIX դարի ընթացքում հաջորդաբար գրավելով սուլթա-

---

32 Տեղեկությունները քաղված են Ա. Գ. Աբրահամյանի «Համառոտ ուրվագիծ հայ գաղթավայրերի պատմության» գրքից, հատ. Բ, Երևան, 1967, էջ 271—275։

33 Ա. Գ. Աբրահամյան, նշվ. աշխ., էջ 73։

34 Նույն տեղում։

նական Թուրքիայի արքունական ճարտարապետի պաշտոնը, Կ. Պոլիսը և շրջակայքը զարդարեցին ճարտարապետական հոյակապ կոթողներով։

Առաջինը դրանցից հանդես է գալիս Գրիգոր խալֆա Պալյանը (վախճանվել է 1823 թ.)։ Սրա նախագծերով կառուցվել են 12-ից ավելի տարբեր բընույթի շենքեր (պալատներ, մզկիթներ, զորանոցներ, քեոշկեր և այլն)։ Դրանցից առավել կարևորներն են Սարա Բուրնի, Պեշիկթաշի (Դոլմա Բախչեի) և Բեյլեր բեյի պալատները։

Արքունական ճարտարապետի պաշտոնում հորը փոխարինում է Կարապետ ամիրա Պալյանը (1800—1866)։ Սրա նախագծերով կառուցվել են 10-ից ավելի շենքեր, այդ թվում նաև Պեշիկթաշի հայկական եկեղեցին (1838)։ Երևի վերջինիս նախագծելու կապակցությամբ էլ նա ճանապարհորդություն է կատարել դեպի Անի, ծանոթանալու համար Բագրատունյաց մայրաքաղաքի ճարտարապետական բարձրարվեստ կոթողների ավանդական ձևերին։ Լինելով իր ժամանակի առաջադեմ հայ գործիչներից, Կարապետ ամիրա Պալյանը հոգ էր տանում իր որդիների մասնագիտական ուսուցման մասին, նրանցից երեքին՝ Նիկողոս բեյին, Սարգիս բեյին և Հակոբ բեյին ուղարկելով Փարիզ, ուր նրանք ճարտարապետական կրթություն են ստանում Սեն-Բարբի վարժարանում (Սարգիս բեյը՝ նաև Լ'էկոլ դ'Բոզարում)։ Հաջորդաբար վերադառնալով Կ. Պոլիս, նրանք ծավալում են իրենց ճարտարապետական բեղմնավոր գործունեությունը սկզբում հոր ղեկավարությամբ, իսկ այնուհետև ինքնուրույն։

Կարճ է եղել Նիկողոս բեյ Պալյանի (1826—1858) ստեղծագործական կյանքը, ընդամենը 13 տարի (1845—1858)։ Այդ ժամանակամիջոցում նա նախագծել է Դոլմա Բախչե պալատի գահասրահն ու պատվո երկու դռները, երկու մզկիթ և մեկ քեոշկ, որոնք իրականացվել են։ Նրա ստեղծագործության մեջ կարևոր տեղ է գրավում Չրաղանի պալատի նախագիծը, որն իր վերահաս մահվան հետևանքով իրականացվել է նրա Սարգիս և Հակոբ եղբայրների ղեկավարությամբ։

Պալյանների ճարտարապետական տոհմում առավել բեղմնավոր է եղել Սարգիս բեյ Պալյանի (1835—1899) ստեղծագործական կյանքը։ Սկզբի երեք տարիները (1855—1858) նա գործակցել է իր Նիկողոս եղբորը, գլխավորապես զբաղվելով նախագծումով (ավագ եղբայրը հիմնականում հանդես էր գալիս շինարարության կազմակերպչի դերում)։ Այնուհետև, եղբոր մահից հետո, շարունակելով ստեղծագործել ինքնուրույն, նա ոչ միայն հետևում է Չրաղանի պալատի իր եղբոր նախագծի իրականացմանը, այլև նախագծում ու կառուցում 25-ի հասնող շենքեր։

Կարապետ ամիրայի կրտսեր որդին՝ Հակոբ բեյ Պալյանը (1836—1875) նույնպես ստեղծագործական համեմատաբար կարճ կյանք է ունեցել։ Ավագ եղբոր՝ Սարգսի հետ միասին զբաղվելով հանդերձ Չրաղանի և Բեյլեր բեյի պալատների կառուցմամբ, ինքնուրույն նախագծել ու կառուցել է հինգ տարբեր շենքեր։

Այսպիսով, Պալյան ճարտարապետների տաղանդավոր ներկայացուցիչների ստեղծագործական անդուլ ջանքերով սուլթանական Թուրքիայի մայրա-

քաղաք Կ. Պոլսում XIX դարի ընթացքում կառուցվել են ավելի քան 60 պալատներ, քեոշկեր, մզկիթներ, եկեղեցի, դպրոց և այլ շենքեր։ Սրանք մոնումենտալ, ճարտարապետական-գեղարվեստական բարձրարժեք շինություններ են, որոնք կարևոր տեղ են գրավում Կ. Պոլսի ճարտարապետության մեջ։

Իրենց զգալի ներդրումը Եգիպտոսի արաբական ճարտարապետության մեջ կատարել են հայազգի ճարտարապետներ Գևորգ Ռափայելյանը և Ջենոբ Միրամեթճյանը։ Դրանցից առաջինը եղել է Մուհամեդ Ալիի կառավարության շրջանում (1805—1849) Եգիպտոսում նախագծված և կառուցված մի շարք կարևոր հուշարձանների հեղինակը, իսկ երկրորդը՝ Իսմայիլ փաշայի պալատական ճարտարապետը, որը կառուցել է Կահիրեի իշխանազունների պալատների զգալի մասը[35]։ Եգիպտահայ նշանավոր ճարտարապետ Կ. Պալյանի վկայությամբ, Ջենոբ Միրամեթճյանի նախագծով կառուցված «Կեզիրեյի Բալիսի մավրիտանական սյունաբարձ ճեմելիքները Ալհամպրայի նմանողությամբ, պատիվ կբերեն հայոց տաղանդին»[36]։

Հայազգի շատ ճարտարապետներ մասնակցել են նաև այլ երկրների ճարտարապետական կոթողների ստեղծմանը։

* * *

Այսպիսով, հայ ժողովրդի պատմության 1801—1870 թթ. ընդգրկող էպոխան կարևոր իրադարձություններով հարուստ մի ժամանակաշրջան էր, որի ընթացքում Արևելյան Հայաստանը միանալով Ռուսաստանին, զարգացման առաջավոր ուղի բռնեց։ Հայ աշխատավորությունը մասնակից դարձավ Ռուսաստանի հեղափոխական պայքարին, որը հանգեցրեց ցարիզմի և բուրժուակալվածատիրական կարգերի տապալմանը, Ռուսաստանի բոլոր ճնշված ժողովուրդների, այդ թվում և հայ ժողովրդի արևելահայ հատվածի ազատագրմանը։

Հայ ժողովրդի արևմտյան հատվածը մնաց Թուրքական բիրտ լծի տակ և ենթարկվեց ծանր հալածանքների ու բնաջնջման։

---

35 Ա. Գ. Աբրահամյան, Համառոտ ուրվագիծ հայ գաղթավայրերի պատմության, հատ. Բ, Երևան, 1967, էջ 75։

36 Կ. Պալյան, Ճարտարապետությունը Եգիպտոսի մեջ և ճարտարապետների դերը (տե՛ս Ս. Պարբևյան, Եգիպտահայ տարեցույց, 1913, էջ 112)։

# ԿԱՐԵՎՈՐ ԱՆՑՔԵՐԻ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## 1800

12 հունվարի — *Թուրք-ֆրանսիական պայմանագիր, որով Եգիպտոսը վերադարձվում է Թուրքիային։*

— *Անգլո-Թուրքական պայմանագիրը, որով Սև ծովը և նեղուցները փակ են հայտարարվում։*

## 1801

18 հունվարի — *Պավել I-ի հրովարտակը Վրաստանը Ռուսաստանին միացնելու վերաբերյալ։*

Հունվար — *Անգլո-պարսկական պայմանագիրը ընդդեմ Ֆրանսիայի և Ռուսաստանի։*

9 մարտի — *Հ. Արղությանը վախճանվում է Թիֆլիսում։*

12 սեպտեմբերի — *Ալեքսանդր I-ի մանիֆեստով Արևելյան Վրաստանը միացվում է Ռուսաստանին։ Վրաստանի հետ Ռուսաստանին են միացվում Լոռի, Փամբակ, Ղազախ, Բորչալու գավառները։*

— *Զմյուռնիայում հիմնադրվեց Ազգային հիվանդանոցը։*

1801—1803 — *Գեներալ Կ. Ֆ. Կնորինգի կուսակալությունը Կովկասում և Վրաստանում։*

## 1802

26 փետրվարի — *Թիֆլիսում ծնվեց պատմաբան, հրապարակախոս և բանաստեղծ Գաբրիել Պատկանյանը (վախճ. 1889 թ. ապրիլի 13-ին, Պետերբուրգում)։*

26 սեպտեմբերի — *Թիֆլիսում բացվում է ռուսական Ազնվականական ուսումնարանը՝ ազնվական ծագում ունեցող վրացի և հայ երեխաների համար։*

14 դեկտեմբերի — *Կեսարիայում ծնվեց մանկավարժ Հակոբ Մանվելյանը (վախճ. 1870 թ. օգոստոսի 27-ին)։*

## 1803

3 հունվարի — *Զորագյուղում (Երևանի գավառ) ծնվեց գրող, մանկավարժ և հրապարակախոս Մեսրոպ Թաղիադյանը (վախճ. 1858 թ. հունիսի 10-ին, Պարսկաստանի Շիրազ քաղաքում)։*

— Վենետիկում սկսում է լույս տեսնել «Եղանակ Բյուզանդյան-Բազմավեպ» տարեգիրքը՝ Ղ. Ինճիճյանի խմբագրությամբ։ Լույս է ընծայվել մինչև 1820 թվականը։

1803—1806 — Գեներալ Պ. Դ. Ցիցիանովը Կովկասի և Վրաստանի կառավարչապետ։

— Ռուսաստանին միացվեց Մեգրելիան։

1804

1804—1813 — Ռուս-պարսկական պատերազմը։

3 հունվարի — Ռուսական զորքերը գրավում են Գյանջան, որը վերանվանվում է Ելիսավետպոլ։ Գյանջայի խանության հետ Ռուսաստանին են միացվում Շամշադինի, Ղազախի և այլ գավառներ։

Փետրվար — Սկսվում է Թուրքական բռնապետության դեմ ուղղված սերբերի ազգային-ազատագրական պայքարը։

Մայիս — Երևանի Մամադ խանը, տեղեկանալով ռուսների առաջխաղացման մասին, կարգադրում է խանության հայ բնակչությունից շուրջ 20000 հոգի բռնագաղթեցնել Կարսի փաշայություն և այնտեղ պահել մինչև պատերազմի ավարտը։

Մայիս-սեպտեմբեր — Ռուսական զորքերի Երևանյան առաջին արշավանքը՝ գեներալ Պ. Ցիցիանովի հրամանատարությամբ։

10 հունիսի — Ռուսական զորքերը Գյումրու մերձակայքում պարտության են մատնում Աբաս Միրզայի զորքերին և ազատելով Կարս քշվող հայերին՝ բնակեցնում են Փամբակում ու Թիֆլիսում։

2 հուլիսի — 5000 զինվորից բաղկացած ռուսական զորքը պաշարում է Երևանը։

3 սեպտեմբերի — Ռուսական զորքերը վերացնում են Երևանի բերդի պաշարումը և վերադառնում Վրաստան։

— Ռուսաստանին են միացվում Իմերեթը և Գուրիան։

1805

30 Մարտի — Շորագյալի սուլթանության (Արևելյան Շիրակ) կենտրոն Արթիկի գրավումը ռուսական զորքերի կողմից։ Հոկտեմբերին Շորագյալի սուլթանությունն ընդունում է ռուսական հպատակություն։

14 մայիսի — Քյուրակ-չայ գետի ափին կնքվում է պայմանագիր, որի համաձայն Ղարաբաղը միացվում է Ռուսաստանին։

21 մայիսի — Ռուսաստանին է միացվում Շաքու (Նուխիի) խանությունը։

25 դեկտեմբերի — Ռուսաստանի կազմի մեջ է մտնում Շիրվանի (Շամախու) խանությունը։

— Մամադ խանի փոխարեն Երևանի խան է նշանակվում Մեհթի-ղուլի խանը։

1806

1806—1812 — Ռուս-Թուրքական պատերազմը։

8 փետրվարի — Բաքվում դավադրաբար սպանվում է գեներալ Ցիցիանովը։

11 ապրիլի — *Խասգյուղում (Կ. Պոլիս) ծնվեց գրական-հասարակական գործիչ, մանկավարժ Ռուբեն Անդրեասի Փափազյանը (վախճ. 1857 թ. մարտի 6-ին, Զմյուռնիայում)։*

22 հունիսի — *Ռուսական բանակը գրավում է Դերբենդը։*

18 դեկտեմբերի — *Սկսվում է ռուս-թուրքական պատերազմը։*

— *Կ. Պոլսում հիմնվում է արևմտահայերի առաջին գրավաճառանոցը՝ քիթապճի Մարգարի նախաձեռնությամբ։*

1806—1809 — *Ֆելդմարշալ Ի. Վ. Գուդովիչը Վրաստանի կառավարչապետ։*

## 1807

4 մայիսի — *Կնքվում է Ֆինկենշտեյնի պայմանագիրը Ֆրանսիայի և Պարսկաստանի միջև, որն ուղղված էր Ռուսաստանի և Անգլիայի դեմ։*

30 մայիսի — *Թուրքական սերասքյար Յուսուֆ-զիա փաշան 10 հազար զինվորներով հարձակվում է Գյումրու վրա։*

18 հունիսի — *Գեներալ Գուդովիչի գլխավորած ռուսական զորքերը Ախուրյանի ափին պարտության են մատնում թուրքական բանակին։*

8 հուլիսի — *Կնքվում է Տիլզիտի հաշտությունը Ֆրանսիայի և Ռուսաստանի միջև։*

1807—1808 — *Գեներալ Գարդանի միսիան Պարսկաստանում։*

## 1808

26 սեպտեմբերի—30 նոյեմբերի — *Ռուսական զորքերի Երևանյան երկրորդ արշավանքը։*

1 նոյեմբերի — *Գեներալ-մայոր Նեբոլսինը գրավում է Նախիջևանը։*

30 նոյեմբերի — *Վերացվում է Երևանի բերդի պաշարումը։*

Հոկտեմբեր — *Թուրքական մեծ սադրազամ Յուսուֆ փաշան հրապարակում է այլադավան հպատակների քաղաքական իրավունքները սահմանափակող մի հրամանագիր։*

20 դեկտեմբերի — *Զմյուռնիայում ծնվեց բանասեր, կղերա-աղայական հոսանքի ներկայացուցիչ Մսեր Գրիգորի Մսերյանցը (վախճ. 1873 թ. օգոստոսի 2-ին, Մոսկվայում)։*

— *Մարաշի Գալանտեր փաշան 9 ամիս շարունակ պաշարում է Զեյթուն գավառը, սակայն գրավել չկարողանալով, հեռանում է։*

## 1809

17 հունվարի — *Դարդանելում կնքվում է անգլո-թուրքական պայմանագիրը. ավարտվում է անգլո-թուրքական 1807—1809 թթ. պատերազմը։*

Մարտ — *Անգլո-պարսկական նախնական պայմանագրի կնքումը, որով Անգլիան խոստանում էր օգնել Պարսկաստանին ռուս-պարսկական պատերազմում։*

2 օգոստոսի — *Կալկաթայում վախճանվեց հայ ազատագրական շարժման աչքի ընկնող ղեկավարներից մեկը՝ Հովսեփ Էմինը (ծնվ. 1726 թ., Պարսկաստանի Համադան քաղաքում)։*

15 նոյեմբերի — *Քանաքեռում ծնվեց հայ մեծ լուսավորիչ Խաչատուր Աբովյանը (անհետացավ 1848 թ. ապրիլի 2-ին)։*
1809—1810 — *Գեներալ Ա. Պ. Տորմասովը Կովկասի կառավարչապետ։*

## 1810

15 փետրվարի — *Փարիզի Արևելյան լեզուների դպրոցում հիմնադրվում է հայոց լեզվի ամբիոն՝ Հակոբ Շահան Ջրպետյանի ղեկավարությամբ։*
10 մայիսի — *Թեոդոսիայում ծնվեց Գաբրիել Այվազովսկին (վախճ. 1880 թ. ապրիլի 8-ին, Թիֆլիսում)։*
8 դեկտեմբերի — *Ռուսական զորքերը գրավում են Ախալքալաքը։*
— *Ջեյթունը ապստամբում է թուրքական տիրապետության դեմ։*
— *Աստրախանում պաշտոնապես բացվում է Աղաբաբյան հայկական դպրոցը։*

## 1811

18 փետրվարի — *Հիմնվում է Վիեննայի Մխիթարյան միաբանությունը, որը իր գործունեությունը շարունակում է առ այսօր։*
— *Վենետիկում հրատարակվում է Մ. Ջամչյանի «Պատմութիւն Հայոց» եռահատոր աշխատության համառոտագրությունը՝ «Խրախճան պատմութեան հայոց» վերնագրով։*
— *Գեներալ Պաուլուչչին Կովկասի կառավարչապետ։*

## 1812

14 մայիսի — *Թիֆլիսում ծնվեց «Հյուսիսափայլ» ամսագրի հիմնադիր, անվանի հրապարակախոս և լուսավորիչ Ստեփաննոս Նազարյանը (վախճ. 1879 թ. ապրիլի 26-ին, Մոսկվայում)։*
16 մայիսի — *Ռուսաստանի և Թուրքիայի միջև կնքվում է Բուխարեստի հաշտության պայմանագիրը։ Ռուսաստանին է միացվում Բեսարաբիան։*
12 հունիսի — *Նապոլեոնի արշավանքը Ռուսաստան։*
— *Կ. Պոլսում հիմնադրվում է հայ առաջին գրական-հասարակական կազմակերպությունը՝ «Արշարունյաց ընկերությունը»։*
— *Պետերբուրգում հիմնվում է Հովսեփ Հովհաննիսյանի տպարանը։*

## 1813

15 սեպտեմբերի — *Ալեքսանդր I-ի հրովարտակը Վրաստանի հայերին, որով ցարը շնորհակալություն էր հայտնում նրանց՝ Վրաստանում ռուսական բանակին ցույց տված օգնության համար։*
12 հոկտեմբերի — *Ղարաբաղի Գյուլիստան ամրոցում ստորագրվում է ռուս-պարսկական հաշտության պայմանագիրը, որի համաձայն Պարսկաստանը ճանաչում է Ղարաբաղի, Գյանջայի, Շաքիի, Շիրվանի, Բաքվի, Դերբենդի, Ղուբայի, Թալիշի խանությունների, Լոռու, Փամբակի, Շամշադինի, Ղազախի և Շորագյալի գավառների միացումը Ռուսաստանին։*
— *Էջմիածնում վերաբացվում է «Ժառանգավորաց դպրոցը»,*

## 1814

14 մայիսի — *Պարսկաստանի Համադան քաղաքում ծնվեց Կարապետ Շահնազարյանը (վախճ. 1865 թ. օգոստոսի 29-ին, Կ. Պոլսում)։*

25 նոյեմբերի — *Թեհրանում ստորագրվում է անգլո-պարսկական պայմանագիրը, որով Անգլիան խոստանում է նպաստել Գյուլիստանի պայմանագրի վերանայմանը։*

— *Ներսես Աշտարակեցին նշանակվում է վիրահայոց առաջնորդ։*

## 1815

12 մայիսի — *Մոսկվայում սկսում է գործել Լազարյան ճեմարանը։*

25 նոյեմբերի — *Նոր Ջուղայում ծնվեց հայագետ Մկրտիչ Էմինը (վախճ. 1890 թ. դեկտեմբերի 13-ին, Մոսկվայում)։*

Նոյեմբեր — *Կ. Պոլսում ծնվեց գրական-հասարակական գործիչ Սերվիչեն՝ Սերովբե Վիչենյանը (վախճ. 1887 թ. հոկտեմբերի 3-ին)։*

— *Սերբերի երկրորդ ապստամբությունը թուրքական բռնապետության դեմ։*

## 1816

5 հունվարի — *Աստրախանում լույս է տեսնում «Արևելյան ծանուցմունք» շաբաթաթերթը, որը* «Восточные известия» *պարբերականի տարբերակն էր, արևելահայ առաջին պարբերականը։*

2 դեկտեմբերի — *Վենետիկ է գալիսականավոր գրող Բայրոնը՝ հայոց լեզու սովորելու և ծանոթանալու հայ գրականությանը։*

1816—1827 — *Գեներալ Ա. Պ. Երմոլովը Կովկասի կառավարչապետ։*

## 1817

2 մայիսի — *Կովկասյան զորքերի գլխավոր հրամանատար, Կովկասի կառավարչապետ գեներալ Երմոլովի գլխավորած Պարսկաստան մեկնող ռուսական միսիան ժամանում է Էջմիածին։*

1 օգոստոսի — *Թեոդոսիայում ծնվեց աշխարհահռչակ ծովանկարիչ Հովհաննես Այվազովսկին (վախճ. 1900 թ. մայիսի 2-ին, Թեոդոսիայում)։*

## 1818

11 փետրվարի — *Կ. Պոլսում ծնվեց պատմաբան Մատաթիա (Անտոն) Գարագաշյանը (վախճ. 1903 թ. նոյեմբերի 19-ին)։*

5 հունիսի — *Թիֆլիսում ծնվեց բանասեր Գևորգ Ախվերդյանը (վախճ. 1861 թ. նոյեմբերի 17-ին)։*

Հուլիս — *Ջեյթունը հրաժարվում է հարկ վճարել Մարաշի փաշային և ապստամբության դրոշ է բարձրացնում։*

## 1819

3 փետրվարի — *Երևան է ժամանում ռուս ականավոր գրող, դիվանագետ Ա. Ս. Գրիբոյեդովը, որը Թեհրան էր մեկնում իբրև ռուսական միսիայի քարտուղար։*

13 օգոստոսի — *Թիֆլիսում ծնվեց գրական-հասարակական գործիչ Պետրոս Շանշյանը (վախճ. 1899 թ. մարտի 9-ին)։*

23 սեպտեմբերի — *Կեսարիայի Էվերեկ գյուղում ծնվեց բժիշկ, լեզվագետ, հասարակական-քաղաքական գործիչ Նահապետ Ռուսինյանը (վախճ. 1876 թ. նոյեմբերի 29-ին, Կ. Պոլսում)։*

## 1820

17 հունվարի — *Թեհրանից վերադարձին էջմիածին է ժամանում Ա. Ս. Գրիբոյեդովը, որտեղ և մնում է մինչև հունվարի 19-ը։*

19 փետրվարի — *Կ. Պոլսում ծնվեց պատմաբան, հայագետ Հովսեփ Գաթըրճյանը (վախճ. 1882 թ. հունվարի 9-ին)։*

4 ապրիլի — *Վանի Այգեստան թաղամասում ծնվեց Մկրտիչ Խրիմյանը (Խրիմյան Հայրիկ) (վախճ. 1907 թ. նոյեմբերի 17-ին, էջմիածնում)։*

6 հուլիսի — *Կ. Պոլսում ծնվեց մեծ հայագետ Ղևոնդ Ալիշանը (վախճ. 1901 թ. նոյեմբերի 9-ին, Վենետիկում)։*

8 օգոստոսի — *Կ. Պոլսի հայ արհեստավորների ցույցը, որը ճնշվում է թուրքական իշխանությունների կողմից։*

18 սեպտեմբերի — *Հակասուլթանական ցույցին մասնակցելու մեղադրանքով մի խումբ հայեր (կեսարացի Հակոբը, Գրիգոր Սաքայանը, դելի Բաղդասարը և այլն) մահապատժի են ենթարկվում Կ. Պոլսում։*

— *Կալկաթայում լույս է տեսնում «Հայելի կալկաթեան» շաբաթաթերթը՝ Հովհաննես Տեր-Հակոբյանի խմբագրությամբ։*

— *Զմյուռնիայում ծնվեց տպարանատեր, հրատարակիչ Ճանիկ Արամյանը (վախճ. 1879 թ. ապրիլի 17-ին, Կ. Պոլսում)։*

## 1821

Ապրիլ — *Սկսվում է Հունաստանի ազգային-ազատագրական շարժումը՝ ուղղված օսմանյան միապետության դեմ։*

— *Կալկաթայում սկսվում է լույս տեսնել «Շտեմարան» ամսագիրը՝ Մարտիրոս Շիրազեցու խմբագրությամբ։*

— *Կալկաթայում բացվում է հայկական Մարդասիրական ճեմարանը, որտեղ 1825—1826 թթ. հայոց լեզվի ուսուցիչ էր աշխատում Մեսրոպ Թաղիադյանը։*

— *Վալաքիայում սկսվում է ապստամբություն՝ ուղղված սուլթանական տիրապետության դեմ։*

1821—1823 — *Թուրք-պարսկական պատերազմը։*

## 1822

16 սեպտեմբերի — *Կ. Պոլսում ծնվեց հայ նշանավոր փիլիսոփա, հրապարակախոս Սերենցը՝ Հովսեփ Շիշմանյան (վախճ. 1888 թ. մարտի 17-ին, Թիֆլիսում)։*

— *Փարիզում, Սեն-Մարտենի նախաձեռնությամբ հիմնվում է «Ասիական ընկերությունը», որի հրատարակած «Journal Asiatique»-ը հարուստ նյութեր է բովանդակում հայ ժողովրդի պատմության վերաբերյալ։*

## 1823

Մարտ — Կարինում կնքվում է թուրք-պարսկական հաշտության պայմանագիրը, որով Բայազետ քաղաքը կրկին վերադարձվում է Թուրքիային։

4 հուլիսի — Կ. Պոլսում ծնվեց Գրիգոր Աղաթոնյանը (Աղաթոն), (վախճ. 1868 թ. ապրիլի 27-ին, Փարիզում)։

11 օգոստոսի — Կ. Պոլսում ծնվեց պատմաբան, աշխարհագետ, բանասեր Մանվել Քաջունին (վախճ. 1903 թ. դեկտեմբերի 1-ին)։

18 նոյեմբերի — Կ. Պոլսում վախճանվեց պատմաբան Միքայել Չամչյանը (ծնվ. 1738 թ. դեկտեմբերի 4-ին, Կ. Պոլսում)։

## 1824

28 հունվարի — Մադրասում վախճանվեց «Ազդարարի» խմբագիր Հարություն Շմավոնյանը (ծնվ. 1750 թ., Իրանի Շիրազ քաղաքում)։

29 հունվարի — Վենետիկում վախճանվեց անվանի գիտնական Ստեփաննոս Գովեր Ագոնցը (ծնվ. 1740 թ. նոյեմբերի 20-ին)։

1 դեկտեմբերի — Թիֆլիսում բացվեց Ներսիսյան դպրոցը (շարունակեց գործել մինչև 1924 թ.)։

## 1825

29 հունիսի — Թիֆլիսում ծնվեց դրամատուրգ Գաբրիել Սունդուկյանը (վախճ. 1912 թ. մարտի 16-ին)։

14 դեկտեմբերի — Դեկաբրիստների ապստամբությունը Պետերբուրգում։

— Զմյուռնիայում ծնվեց արևմտահայ հրապարակախոս և քաղաքական գործիչ Ստեփան Ոսկանյանը (վախճ. 1901 թ. փետրվարի 23-ին)։

## 1826

1826—1828 — Ռուս-պարսկական պատերազմը։

15—21 հունիսի — Սուլթան Մահմուդ II-ի հրամանով ենիչերիական զորքը ոչնչացվում է Կ. Պոլսում, ապա և գավառներում։

16—17 հուլիսի — Պարսկական զորքերը ներխուժում են Ղարաբաղ, Շորագյալ և Փամբակ. սկսվում է ռուս-պարսկական երկրորդ պատերազմը։

25 հուլիսի—10 սեպտեմբերի—Շուշվա բերդի հերոսական պաշտպանությունը։

18 օգոստոսի — Հրդեհի զոհ գնաց Կ. Պոլսի Գում-գափու թաղամասում գտնըվող հայոց մայր եկեղեցին, ոչնչացան նաև շատ արժեքավոր ձեռագրեր ու փաստաթղթեր։

3 սեպտեմբերի — Շամխորի ճակատամարտում ռուսական բանակը հաղթանակ է տանում պարսիկների դեմ՝ գեներալ Վ. Գ. Մադաթովի հրամանատարությամբ։

13 սեպտեմբերի — Գեներալ Պասկևիչի գլխավորած ռուսական 8 հազարանոց զորքը Ելիսավետպոլի մոտ ջախջախում է Աբաս Միրզայի 25 հազարանոց բանակը։

21 սեպտեմբերի — Արագածի ստորոտում, Միրաքի մոտ տարած հաղթանակից հետո ռուսական բանակը մուտք է գործում Երևանի խանություն։

— Կ. Պոլսում ծնվեց հայականավոր ճարտարապետ, հասարակական գործիչ Նիկողայոս Պալյանը (վախճ. 1858 թ. փետրվարի 27-ին, իր ծննդավայրում)։

## 1827

28 մարտի — Կովկասի կառավարչապետ և Կովկասյան հատուկ կորպուսի ընդհանուր հրամանատար է նշանակվում գեներալ Իվան Ֆեոդորովիչ Պասկևիչը։

Մարտ — Թիֆլիսում կազմվում է հայկական առաջին կամավորական գումարտակը։

30 մարտի — Թիֆլիսում տեղի է ունենում հայ կամավորների զորահանդեսը։

2 ապրիլի — Սկսվում է ռուսական զորքի Երևանյան երրորդ արշավանքը։

13 ապրիլի — Ռուսական զորքերը գրավում են Էջմիածինը։

17 մայիսի — Հայկական կամավորական առաջին գումարտակը Թիֆլիսից մեկնում է մարտադաշտ։ Մայիսի 15-ին Հ. Ալամդարյանը հայրենասիրական ճառ է արտասանում ռազմաճակատ մեկնողների առջև։

24 մայիսի — Թիֆլիսում կազմակերպված հայկական կամավորական գնդի կանոնադրության հրապարակումը։

26 հունիսի — Նախիջևանի գրավումը ռուսական զորքերի կողմից։

5 հուլիսի — Ջեվան-Բուլաղի ճակատամարտը։

7 հուլիսի — Ռուսական բանակը գրավում է Աբաս-Աբադ բերդը։

21 հուլիսի — Կարագիադինում հանդիպում են Ա. Ս. Գրիբոյեդովը և Աբաս-Միրզան, նպատակ ունենալով հաշտության բանակցություններ վարել։

17 օգոստոսի — Օշականի ճակատամարտը։

20 սեպտեմբերի — Ռուսական զորքերը գրավում են Սարդարապատի բերդը։

24 սեպտեմբերի — Սկսվում է Երևանի բերդի պաշարումը։

1 հոկտեմբերի — Ռուսական զորքերը գրավում են Երևանի բերդը։

6 հոկտեմբերի — Ստեղծվում է Երևանի ժամանակավոր վարչություն։

13 հոկտեմբերի — Ռուսական զորքերը գրավում են Թավրիզը։

7 նոյեմբեր—2 հունվար 1828 — Դեհխառականի հաշտության բանակցությունները։

Դեկտեմբեր 1827—փետրվար 1828 — Սուլթան Մահմուդ II-ը շուրջ 12 հազար հայ կաթոլիկներ է արտաքսում Կ. Պոլսից, որոնցից չորս հազարը ցրտից մեռնում են ճանապարհին, իսկ մնացածները անցնում Փոքր Ասիայի գավառները։

Դեկտեմբեր — Երևանի Սարդարի պալատում, ռուս սպաների ուժերով առաջին անգամ բեմադրվում է Ա. Ս. Գրիբոյեդովի «Խելքից պատուհաս» կատակերգությունը։

— Շուշում հիմնադրվում է հայկական տպարան։

## 1828

10 փետրվարի — Թուրքմենչայում կնքվում է հաշտության պայմանագիր Ռուսաստանի և Պարսկաստանի միջև, որի համաձայն Ռուսաստանին են միացվում Երևանի և Նախիջևանի խանությունների ու Օրդուբադի շրջանը։

26 փետրվարի — Սկսվում է պարսկահայերի վերաբնակեցումը Արևելյան Հայաստան և Անդրկովկաս։

21 մարտի — Նիկոլայ I-ի հրամանագիրը Հայկական մարզ կազմակերպելու մասին։ Մարզի վարչության պետ է նշանակվում գեներալ-մայոր Ա. Ճավճավաձեն։

14 ապրիլի — Նիկոլայ I-ը պատերազմ է հայտարարում Թուրքիային։

25 ապրիլի — Սենատի հրամանով Ա. Ս. Գրիբոյեդովը նշանակվեց Ռուսաստանի լիազոր-մինիստր (դեսպան) Պարսկաստանում։

14 հունիսի — Ռազմական գործողությունների սկիզբը ռուս-թուրքական պատերազմի Կովկասյան ռազմաճակատում։

23 հունիսի — Ռուսական բանակը գրավում է Կարսը։

23/24 հուլիսի — Ռուսական զորքերը գրավում են Ախալքալաքը։

15 օգոստոսի — Ախալցխայի գրավումը ռուսական զորքերի կողմից։

28 օգոստոսի — Ռուսական զորքերը գրավում են Բայազետը։

12 սեպտեմբերի — Ռուսական զորքերը և հայկական աշխարհազորը գրավում են Թոփրախ-կալեն և ազատագրում Ալաշկերտը։

— Կ. Պոլսի Միջագյուղ թաղամասում ծնվեց բանաստեղծ, հասարակական-քաղաքական գործիչ Մկրտիչ Պեշիկթաշլյանը (վախճ. 1868 թ. նոյեմբերի 29-ին)։

## 1829

30 հունվարի — Թեհրանում սպանվեց Պարսկաստանում ռուսական դեսպան Ա. Ս. Գրիբոյեդովը (ծնվ. 1795 թ. հունվարի 4-ին, Մոսկվայում)։

27 հունիսի — Էրզրումի գրավումը ռուսական բանակի կողմից։

7 հուլիսի — Բայբուրդի (Բաբերդի) գրավումը։

2 սեպտեմբերի — Ադրիանապոլսում ստորագրվում է ռուս-թուրքական հաշտության պայմանագիր։ Ռուսաստանին են միացվում Ախալքալաքը, Ախալցխան, Սև ծովի արևելյան ափը. Անապա ու Փոթի նավահանգիստները։

26 սեպտեմբերի — Դորպատի (այժմ Տարտու) համալսարանի պրոֆեսոր Ֆրիդրիխ Պարրոտի հետ Խ. Աբովյանը սկսում է վերելք դեպի Արարատի գագաթը։

2 նոյեմբերի — Նոր Նախիջևան քաղաքում ծնվեց հեղափոխական-դեմոկրատ Միքայել Նալբանդյանը (վախճ. 1866 թ. մարտի 31-ին, Սարատովի նահանգի Կամիշին գյուղաքաղաքում)։

Աշնանը — Կեսարիայի կառավարիչ Քեոսե փաշան հարձակվում է Զեյթունի վրա, սակայն պարտվում և ետ է շպրտվում։

29 դեկտեմբերի — Գեներալ Պասկևիչը կարգադրում է գաղտնի կոմիտե ստեղծել Թիֆլիսում, որը պետք է մշակեր հայ եկեղեցու կանոնադրությունը։

1829—1830 — Արևմտյան Հայաստանից 90—100 հազար հայեր գաղթում են Արևելյան Հայաստան և Անդրկովկաս։

— Բացվում է Լազարյան ճեմարանի տպարանը։

## 1830

8 հունվարի — *Սուլթան Մահմուդ II-ը Կ. Պոլսի կաթոլիկ հայերին ինքնուրույն համայնք ունենալու իրավունք է շնորհում։*

22 հունվարի — *Լոնդոնի պայմանագրով ճանաչվում է Հունաստանի անկախությունը։*

Փետրվար 1830—1838 — *Գեներալ-մայոր Վ. Բեհբութովը Հայկական մարզի վարչության պետ։*

17 փետրվարի — *Ղրիմի Գոգենլո գյուղում ծնվեց բանաստեղծ Գևորգ Դոդոխյանը (վախճ. 1908 թ. հունիսի 8-ին)։*

17 օգոստոսի — *Թուրքիան ճանաչում է Սերբիայի ինքնավարությունը։*

17 նոյեմբերի — *Զմյուռնիայում ծնվեց հրապարակախոս, թարգմանիչ, վիպասան Մատթեոս Մամուրյանը (վախճ. 1901 թ. հունվարի 2-ին)։*

8 նոյեմբերի — *Նոր Նախիջևան քաղաքում ծնվեց Ռափայել Պատկանյանը (վախճ. 1892 թ. օգոստոսի 22-ին)։*

## 1831

Հունիս — *Ցարական հրամանագրերով վերացվում են տարանցիկ առևտրականների արտոնությունները Անդրկովկասում։*

6 սեպտեմբերի — *Կ. Պոլսում ծնվեց բանաստեղծ և հասարակական գործիչ Խորեն Գալֆայանը (Նար-Պեյ), (վախճ. 1892 թ. նոյեմբերի 4-ին)։*

22 նոյեմբերի — *Կ. Պոլսում ծնվեց հասարակական-քաղաքական գործիչ, հրապարակախոս, «Մեղու» պարբերականի խմբագիր Հարություն Սվաճյանը (վախճ. 1874 թ. ապրիլի 22-ին)։*

1831—1833 — *Եգիպտոսի կառավարիչ Մուհամեդ Ալին պատերազմում է սուլթանական կառավարության դեմ, գրավելով Թուրքիայի մի շարք նահանգներ, մասնավորապես Հայկական Կիլիկիան։*

— *Կովկասի նոր կառավարչապետ է նշանակվում բարոն Ռոզենը։*

## 1832

14 հունվարի — *Երևանի գավառական դպրոցի բացումը։*

27 մայիսի — *Եգիպտական բանակը Իբրահիմ փաշայի գլխավորությամբ ջարդեց թուրքական զորքերին, գրավեց Հայկական Կիլիկիայի դաշտային մասը։*

21 դեկտեմբերի — *Ռեշիդ փաշան գերի է ընկնում եգիպտացիներին։*

— *Սեբաստիայից, Կարինից, Վանից բռնությամբ հավաքվեցին հայ երիտասարդներ և տեղափոխվեցին Կ. Պոլիս՝ Իփլիկ խանե նավաշինարանում աշխատելու։*

— *Թուրքական բանակը Սուլեյման փաշայի գլխավորությամբ արշավում է Զեյթունի վրա, սակայն լեռնականների կողմից ջարդվում է Ջերմուկի դաշտում։*

— *Կ. Պոլսում, Գևորգ Գրիգորյանի խմբագրությամբ սկսում է հրատարակվել «Լրո գիր մեծի տերության Օսմանյան» շաբաթաթերթը։*

## 1833

27 փետրվարի — *Հայկական մարզի զինանշանի հաստատումը Նիկոլայ I-ի կողմից։*

4 մայիսի — *Նոր Նախիջևանում ծնվեց նշանավոր հայագետ, արևելագետ Քերովբե Պատկանյանը (վախճ. 1889 թ. ապրիլի 2-ին, Պետերբուրգում)։*

23 հունիսի — *Ցարի հրապարակած նոր օրենքով փոփոխություններ են մտցըվում Հայկական մարզի վարչական կառուցվածքում։*

2 հուլիսի — *Վենետիկում վախճանվեց հայագետ, աշխարհագրագետ Ղուկաս Ինճիճյանը (ծնվ. 1758 թ. մարտի 21-ին)։*

26 հունիսի — *Հունքիար-Իսքելեսիի պայմանագրի ստորագրումը Ռուսաստանի և Թուրքիայի միջև։*

Հուլիս — *Հիմնվում է «Անդրկովկասի բարենորոգման հատուկ կոմիտե»՝ զինվորական մինիստր Չերնիշևի նախագահությամբ։*

— *Զմյուռնիայում ծնվեց անվանի հրապարակախոս և թարգմանիչ Գրիգոր Չիլինկիրյանը (վախճ. 1923 թ. փետրվարի 23-ին, իր ծննդավայրում)։*

## 1834

24 մայիսի — *Նոր Նախիջևանում սպանվեց Հարություն Ալամդարյանը (ծնվ. 1796 թ. սեպտ. 25-ին, Աստրախանում)։*

31 մայիսի — *Կ. Պոլսում հիմնվում է ս. Փրկչյան Ազգային հիվանդանոցը, որը գործում է առ այսօր։*

4 սեպտեմբերի — *Պադուայում (Հյուսիսային Իտալիա) իր առաջին տարեշրջանն սկսեց Մխիթարյանների հիմնած Մուրադյան վարժարանը։*

14 նոյեմբերի — *Կ. Պոլսում ծնվեց հրապարակախոս, հասարակական-քաղաքական գործիչ Գրիգոր Օտյանը (վախճ. 1887 թ. օգոստոսի 14-ին, Փարիզում)։*

— *Մահմուդ II-ը վարչական նոր բաժանման ենթարկեց Թուրքիան, այդ թվում և Արևմտյան Հայաստանը։ Նախկին փաշայությունները վերացվեցին և ստեղծվեցին վարչական նոր միավորներ՝ վիլայեթներ։*

— *Ռազմա-լենային հողատիրության ոչնչացումը Թուրքիայում։*

— *Թուրքական բանակը արշավանք է սկսում Արևմտյան Հայաստան և Քուրդիստան՝ դերեբեյներին հպատակեցնելու նպատակով։*

## 1835

5 սեպտեմբերի — *Մոսկվայում ծնվեց հայագետ Կարապետ Հարությունի Եզյանը (Էզով), (վախճ. 1905 թ. մայիսի 28-ին, Պետերբուրգում)։*

-- *Կ. Պոլսում ծնվեց գրող, հրապարակախոս, թարգմանիչ Արմենակ Հայկունին (Համբարձում Ճիզմեճյան) (վախճ. 1866 թ. հոկտեմբերի 29-ին)։*

— *Պարսկաստանի Սալմաստ գավառի Փայաջուկ գյուղում ծնվեց հայ մեծ վիպասան Րաֆֆին (Հակոբ Մելիք-Հակոբյան), (վախճ. 1888 թ. ապրիլի 25-ին, Թիֆլիսում)։*

## 1836

11 մարտի — *Նիկոլայ I-ը վավերացնում է Ռուսաստանի հայ լուսավորչական եկեղեցու կանոնադրությունը* (Положение)։

11 սեպտեմբերի — *Վենետիկում բացվում է Մխիթարյանների Ռափայելյան վարժարանը։*

— *Հովհաննես Տատյանը Նիկոմիդիայում հիմնում է մահուդի գործարան, քիչ անց նաև Հրեքեի կայսերական չուխայի գործարանը։*

— *Վենետիկում լույս է տեսնում «Նոր բառգիրք Հայկազեան լեզուի» աշխատության առաջին հատորը, իսկ 1837 թ.՝ երկրորդը։*

— *Կ. Պոլսում ծնվեց կոմպոզիտոր Տիգրան Չուխաջյանը (վախճ. 1898 թ. մարտի 10-ին, Զմյուռնիայում), հայկական առաջին օպերայի ստեղծողը։*

## 1837

28 հունվարի — *Կ. Պոլսում ծնվեց բանասեր, Կ. Պոլսի հայոց պատրիարք Ներսես Վարժապետյանը (վախճ. 1884 թ. հոկտեմբերի 26-ին)։*

22 փետրվարի — *Հայկական եկեղեցական բարձրագույն խորհրդի՝ Սինոդի հիմնումը էջմիածնում։*

Մարտ — *Անդրկովկաս է գալիս սենատոր Գանը՝ երկրամասն ուսումնասիրելու և ռեֆորմների նախագիծ կազմելու նպատակով։*

1 մայիսի — *Բացվում է Երևանի կոնսիստորիան։*

3 հունիսի — *Աշտարակում ծնվեց ականավոր վիպասան Պերճ Պռոշյանը (վախճ. 1907 թ. նոյեմբերի 23-ին, Բաքվում)։*

7 օգոստոսի — *Թուրքական բանակը Ալաջա-դաղի բարձունքներում ճակատամարտ տվեց և հպատակեցրեց քրդական ցեղերին։*

2 սեպտեմբերի — *Երևանում իր գործունեությունն է սկսում հայոց հոգևոր թեմական դպրոցը։*

Հոկտեմբեր — *Հայաստան է այցելում ռուսական կայսր Նիկոլայ I-ը։*

4 հոկտեմբերի — *Գյումրին վերանվանվում է Ալեքսանդրապոլ (այժմ՝ Լենինական)։*

5 դեկտեմբերի — *Թիֆլիսում վախճանվեց հայագետ Հակոբ Շահան-Ջրպետյանը (ծնվ. 1772 թ. դեկտեմբերի 16-ին, Ուրֆայում)։*

— *Մոլդավիայի Բոդուշան քաղաքում ծնվեց հայագետ Ստեփաննոս Պալասանյանը (վախճ. 1889 թ. փետրվարի 19-ին, էջմիածնում)։*

— *Արաբկիրից Խարբերդ տեղափոխվելով Գրիգոր Իփեքճյանը այնտեղ հիմնում է մետաքսի գործարան։ Քիչ անց Անգլիայից, ապա Ամերիկայից նա նոր մեքենաներ է բերում և եվրոպական ձևով վերասարքավորում իր գործարանը։*

## 1838

Հունվար — *Գյուղացիական շարժումներ Փամբակ-Շորագյալի (Շիրակի) շրջանում։*

Փետրվար—մարտ — *Նոր Բայազետի շրջանի գյուղացիության ելույթները։*

22 հունիսի — *Շուշում բացվում է հայոց հոգևոր թեմական դպրոցը։*
13 սեպտեմբերի — *Սկյութարի ճեմարանի բացումը Կոստանդնուպոլսում։*
— *Արմավիր հայաբնակ քաղաքի հիմնադրումը Հյուսիսային Կովկասում։*

## 1839

12 հունիսի — *Նիզբիի տակ (Հյուսիսային Սիրիա) թուրքական բանակը ջախջախվում է եգիպտական փոխարքայի զորքերի կողմից։*
3 նոյեմբերի — *Գյուլխանեի խաթթը-Շերիֆ կոչվող հրովարտակի («Թանզիմաթ») հրատարակումը Աբդուլ Մեջիդի կողմից։*
— *Ալեքսանդրապոլի հոգևոր դպրոցի բացումը։*
— *Զմյուռնիայում, ամերիկյան բողոքականների ջանքերով, սկսում է հրատարակվել «Շտեմարան պիտանի գիտելյաց» ամսագիրը՝ աշխարհաբարով։*

## 1840

5 ապրիլի — *Բոլնիս-Խաչեն գյուղում ծնվեց նշանավոր մանկավարժ, գրող, հրապարակախոս Ղազարոս Աղայանը (վախճ. 1911 թ. հունիսի 20-ին, Թիֆլիսում)։*
10 ապրիլի — *Հայկական մարզի վերացումը. կազմվում են Վրացա-իմերեթական նահանգը և Կասպիական մարզը։*
10 օգոստոսի — *Զմյուռնիայում սկսում է լույս տեսնել «Արշալույս Արարատյան» պարբերականը՝ Ղ. Պալթազարյանի խմբագրությամբ։*
12 դեկտեմբերի — *Վանում ծնվեց բանահավաք, հրապարակախոս, հասարակական-քաղաքական գործիչ Գարեգին Սրվանձտյանցը (վախճ. 1892 թ. նոյեմբերի 5-ին, Կ. Պոլսում)։*
— *Կ. Պոլսում սկսեց լույս տեսնել «Ազդարար Բյուզանդյան» շաբաթաթերթը, որի արտոնատերն էր Խաչատուր Ոսկանյանը։*

## 1841

11 փետրվարի — *Կ. Պոլսում ծնվեց բանասեր, պատմաբան Մաղաքիա Օրմանյանը (վախճ. 1918 թ. նոյեմբերի 19-ին)։*
6 ապրիլի — *Հակաամիրայական «Միակամ» ընկերության ստեղծումը Կ. Պոլսում։*
1 հուլիսի — *Լոնդոնի կոնվենցիան սևծովյան նեղուցների ռեժիմի վերաբերյալ։ Դարդանելը և Բոսֆորը փակ են հայտարարվում բոլոր տերությունների, այդ թվում Ռուսաստանի նավերի առջև։*
Հուլիս — *Զմյուռնիայում բռնկված հրդեհին զոհ են գնում հայկական փայտաշեն երկու թաղամաս։*
24 օգոստոսի — *Կոստանդնուպոլսի 3000 արհեստավորների հակասուլթանական և հակաամիրայական ցույցը։*
18 սեպտեմբերի — *Կ. Պոլսի արհեստավորները նոր ցույց են կազմակերպում։*
3 հոկտեմբերի — *Ամիրաները փակել են տալիս Սկյութարի ճեմարանը։*

9 նոյեմբերի — Կ. Պոլսի արհեստավորները ցույց են կազմակերպում ամիրաների և պատրիարքի դեմ։

12 դեկտեմբերի — 27 արհեստավորից բաղկացած վարչություն է ստեղծվում, որին և Բ. Դուռը հանձնարարում է Սկյութարի ճեմարանի խնդրի կարգավորումը։

— Զեյթուն ներխուժող թուրքական զորքերը դուրս շպրտվեցին լեռնադավառից։

## 1842

22 սեպտեմբերի — Թիֆլիսում ծնվեց պատմաբան Ալեքսանդր Երիցյանը (վախճ. 1902 թ. փետրվարի 9-ին)։

3 դեկտեմբերի — Զմյուռնիայում ծնվեց լեզվաբետ, թարգմանիչ Մեսրոպ Նուպարյանը (վախճ. 1929 թ. դեկտեմբերի 14-ին, Մարսելում)։

— Ծնվեց արևմտահայ փիլիսոփա Սրբուհի Տյուսաբը (վախճ. 1901 թ. հունվարի 3-ին)։

— Ցարական կառավարությունը Ռուսաստանից գաղթեցնում և Թիֆլիս—Երևան ճանապարհի շուրջն ընկած (Սևանի, Ղարաքիլիսայի, Դիլիջանի, Լոռու շրջաններ) գյուղերում բնակեցնում է ռուս աղանդավորներին։

## 1843

1 մայիսի — Վենետիկում Մխիթարյանները հրատարակում են «Բազմավեպ» ամսագիրը, որը գոյատևում է մինչև օրս։

18 մայիսի 1843—1857 — Ներսես Ե Աշտարակեցի, կաթողիկոս ամենայն հայոց։

Նոյեմբեր — Ադրիանապոլսում ծնվեց մեծ երգիծաբան Հակոբ Պարոնյանը (վախճ. 1891 թ. մայիսի 27-ին, Կ. Պոլսում)։

— Բեդեր-խան բեյը ապստամբեց թուրքական կառավարության դեմ և գրավեց Արևմտյան Հայաստանի մի շարք շրջաններ։

— Զմյուռնիայում սկսում է լույս տեսնել «Հայրենասեր» շաբաթաթերթը՝ Խաչատուր Հ. Մելիքսելումյանցի խմբագրությամբ։

— Կազանի համալսարանում բացվում է հայոց լեզվի ամբիոն, որի վարիչ է նշանակվում Ստեփաննոս Նազարյանը։

## 1844

17 ճուլիսի — Կ. Պոլսում ստեղծվում է Ազգային ժողով՝ բաղկացած 16 ամիրաներից և 14 արհեստավորներից։

Նոյեմբեր — Կովկասում հիմնվում է փոխարքայություն։ Առաջին փոխարքա նշանակվեց իշխան Մ. Ս. Վորոնցովը։

— Թուրքիայում օտարերկրյա մասնագետներն առաջին անգամ մարդահամար են անցկացնում, ըստ որի արևմտահայերի թիվը կազմում էր 2,4 միլիոն մարդ։

## 1845

12 փետրվարի — *Կ. Պոլսում ծնվեց Մատթեոս Իզմիրլյանը (վախճ. 1910 թ. դեկտեմբերի 11-ին, Էջմիածնում)։*

27 փետրվարի — *Մոսկվայում ծնվեց հրապարակախոս Գրիգոր Արծրունին (վախճ. 1892 թ. դեկտեմբերի 19-ին, Թիֆլիսում)։*

3 հունիսի — *Ալեքսանդրապոլում բացվում է Հայաստանում առաջին տոնավաճառը։*

20 հունիսի — *Արդուլ Մեջիդի հրամանով, Սըրի փաշան մեծ բանակով մըտնում է Արևմտյան Հայաստան՝ կիսանկախ իշխանությունները վերացնելու հանձնարարությամբ։*

16 օգոստոսի — *Կալկաթայում Մ. Թաղիադյանի խմբագրությամբ սկսում է հրատարակվել «Ազգասեր» շաբաթաթերթը։ 1848 թ. այն վերանվանվում է «Ազգասեր Արարատյան» և շարունակում լույս տեսնել մինչև 1852 թվականը։*

— *Պետերբուրգի համալսարանում հիմնվում է հայ-վրաց-թաթարական լեզուների ամբիոն, որը 1855 թ. վերածվում է Արևելյան լեզուների ֆակուլտետի։*

## 1846

12 հունվարի — *Թիֆլիսում սկսում է լույս տեսնել հայերեն «Կովկաս» շաբաթաթերթը, որը շարունակում է իր գոյությունը մինչև 1848 թվականի ըսկզբները։*

1 ապրիլի — *Կ. Պոլսում Պետրոս Մինասյանի (նախագահ) և Մկրտիչ Պեշիկթաշլյանի (քարտուղար) նախաձեռնությամբ հիմնվում է մշակութային «Համազգյաց ընկերությունը»։*

1 նոյեմբերի — *Վերաբացվում է Սկյութարի ճեմարանը։*

6 դեկտեմբերի — *Ցարական կառավարությունը ռեսկրիպտ է հրապարակում, որով խաներին, բեկերին, աղալարներին և մելիքներին ճանաչում է իբրև հողի ժառանգական սեփականատերեր։*

14 դեկտեմբերի — *Անդրկովկասը վարչական նոր բաժանման է ենթարկվում. ստեղծվում են Թիֆլիսի, Քութայիսի, Շամախու և Դերբենդի նահանգները։*

## 1847

9 մայիսի — *Ամիրաների և արհեստավորների մասնակցությամբ Կ. Պոլսում կազմվում են Ազգային, Հոգևոր և Գերագույն ժողովներ, որոնք, փաստորեն, ապագա «Սահմանադրության» ստեղծման առաջին քայլերն էին։*

12 մայիսի — *Բեդեր-խան բեյի պաշարումը Օրագ բերդում։*

17 հունիսի—1863 — *Վիեննայում Մխիթարյանները հրատարակում են «Եվրոպա» շաբաթաթերթը, ապա կիսամսյա հանդեսը։*

1 հուլիսի — *Բեռլինում ծնվեց գերմանացի հայագետ Հենրիխ Գելցերը (վախճ. 1906 թ. հուլիսի 11-ին)։*

## 1848

2 ապրիլի — *Անհետացավ Խաչատուր Աբովյանը։*

Մարտ — *Խոշաբի կիսանկախ իշխանության վերացումը։*

10 մայիսի — *Մոսկվայի Լազարյան ճեմարանը վերածվում է Արևելյան լեզուների ինստիտուտի։*

Հուլիս — *Վերացվում է Մարաշի փաշայությունը և այն դառնում է Ադանայի վիլայեթի մեջ մտնող մի սանջակ։*

9 նոյեմբերի — *Կ. Պոլսում ծնվեց գրական, հասարակական-քաղաքական գործիչ Մկրտիչ Փորթուգալյանը (վախճ. 1921 թ. սեպտ. 27-ին, Մարսելում)։*

## 1849

27 ապրիլի — *Փարիզում սովորող արևմտահայ ուսանողները կազմում են «Արարատյան ընկերությունը»։*

9 հունիսի — *Կազմվում է Երևանի նահանգը, որի մեջ մտնում էին Երևանի, Նախիջևանի, Ալեքսանդրապոլի, Նոր Բայազետի ու Օրդուբադի գավառները։*

Հուլիս — *Գրիգոր Գալստյանի խմբագրությամբ Սինգապուրում սկսում է հրատարակվել «Ուսումնասեր» կիսամսյա լրագիրը, որը շարունակում է լույս տեսնել մինչև 1853 թվականը։*

27 դեկտեմբերի — *Կ. Պոլսում ծնվեց մեծահամբավ դերասան Պետրոս Ադամյանը (վախճ. 1891 թ. հունիսի 2-ին)։*

— *Դարալագյազի Ռինդ գյուղի գյուղացիության ելույթը տեղական կալվածատերերի և ցարական կառավարության դեմ։*

## 1850

2 հունվարի — *Երևանի պետական իգական առաջին (Հռիփսիմյան) դպրոցի բացումը։*

29 հուլիսի — *Թիֆլիսում հիմնադրվեց ռուսական աշխարհագրական ընկերության Կովկասյան բաժանմունքը։*

1 սեպտեմբերի — *Թիֆլիսում սկսում է հրատարակվել «Արարատ» շաբաթաթերթը՝ Գաբրիել Պատկանյանի խմբագրությամբ։*

— *Զանգեզուրում կառուցում են Փիրդաուդանի և Կավարտի պղնձաձուլական գործարանները։*

## 1851

20 մայիսի — *Զեյթունի իշխանները էջմիածնի կաթողիկոսին գրում են, որ Աբդուլ Մեջիդն իրենց կանչել է Կ. Պոլիս և պայմանագիր ստորագրել՝ հարկը կանոնավոր վճարելու մասին։ Փաստորեն չեղյալ էր հայտարարվել Մուրադ IV-ի տված հրովարտակը։*

20 մայիսի — *Կ. Պոլսի Սկյուտար թաղամասում ծնվեց Պետրոս Աբրահամի Դուրյանը (վախճ. 1872 թ. հունվարի 22-ին, իր ծննդավայրում)։*

8 նոյեմբերի — *Թիֆլիսում բացվեց ճարտարապետ Գաբրիել Թամամշյանի հայոց թատրոնը, որը գործեց մինչև 1874 թ. հոկտեմբերը։*

21 դեկտեմբերի — *Թուրքիայի Սամսոն քաղաքում ծնվեց գրող և հրապարակախոս Արփիար Արփիարյանը (վախճ. 1908 թ. փետրվարի 12-ին, Կահիրեում)։*

— Կ. Պոլսում Հ. Հիսարյանի խմբագրությամբ լույս է տեսնում «Բանասեր» հանդեսը։

## 1 8 5 2

2 փետրվարի — Կ. Պոլսում Կարապետ Ութուճյանի խմբագրությամբ լույս է տեսնում «Մասիս» պարբերականը, որը «Հայաստանի» շարունակությունն էր և որոշ ընդհատումներով հրատարակվեց մինչև 1908 թվականը։

Մարտ — Շուշավերի գյուղացիները ելույթ են ունենում կալվածատերերի դեմ։

3 հուլիսի — Կ. Պոլսի Խասգյուղ արվարձանում ծնվեց ուսուցիչ, հրապարակախոս և քաղաքական գործիչ Մինաս Չերազը (վախճ. 1929 թ. մարտի 27-ին, Մարսելում)։

## 1 8 5 3

18 փետրվարի — Ղրիմի Ղարասուբազար քաղաքում ծնվեց Քրիստափոր Կարա-Մուրզան (վախճ. 1902 թ. մարտի 27-ին)։

22 մարտի — Կ. Մարքսը գրում է «Ազգությունները Թուրքիայում» հոդվածը, որտեղ տեղեկություններ կան տարբեր դավանանքի պատկանող հայերի թվաքանակի, արևմտահայության կրած սոցիալական ու ազգային ճնշումների մասին։

4 հոկտեմբերի—18 մարտի 1856 — Ղրիմի կամ Արևելյան պատերազմը։

21 հոկտեմբերի — Կ. Պոլսում Ն. Ռուսինյանի նախագահությամբ և Գ. Օտյանի, Ն. Պալյանի անդամակցությամբ ստեղծվում է «Ուսումնական խորհուրդ»։

30 հոկտեմբերի — Սկսվում են պատերազմական գործողություններ Ղրիմի պատերազմի Կովկասյան ռազմաճակատում։

18 նոյեմբերի — Սինոպի ճակատամարտը։

19 նոյեմբերի — Բաշ-Քադըկլարի ճակատամարտը։

4 դեկտեմբերի — Ցարական կառավարությունը Գաբրիել Սունդուկյանին Թիֆլիսից աքսորում է Դերբենդ։

## 1 8 5 4

15—16 մարտի — Անգլիան և Ֆրանսիան, դաշնակցած Թուրքիային, պատերազմ են հայտարարում Ռուսաստանին։

19 հուլիսի — Ռուսական զորքերը գրավում են Բայազետը։

24 հուլիսի — Քյուրուկ-Դարայի ճակատամարտը։

26 օգոստոսի — Արևմտահայերի ներքին կյանքին վերաբերող կանոնադրության առաջին տարբերակի կազմումն ավարտվում է, ներկայացվում պատրիարքին, որը և, որոշ ժամանակ պահելով, մերժում է։

14 սեպտեմբերի — Դաշնակիցները դեսանտ իջեցրին Ղրիմի Թերակղզում (Եվպատորիայի մոտ) և սեպտեմբերի 19-ին սկսեցին շարժվել դեպի Սևաստոպոլ։

20 սեպտեմբերի — Ալմայի ճակատամարտը Ղրիմում։

5 հոկտեմբերի—8 սեպտեմբերի 1855 — Սևաստոպոլի հերոսական պաշտպանությունը։

Աշնանը — *Ծավալվեց Եզդանշիրի ապստամբությունը՝ ուղղված սուլթանական բռնապետության դեմ։*

1 դեկտեմբերի — *Շուշում ծնվեց Մուրացանը (Գրիգոր Տեր-Հովհաննիսյան) (վախճ. 1908 թ. օգոստոսի 30-ին, Թիֆլիսում)։*

— *Երևանի նահանգի հայ և ադրբեջանցի գյուղացիները 500 մարդուց զորաջոկատ են կազմում և ուղարկում Ղրիմի պատերազմի Կովկասյան ճակատ։*

## 1855

15 հունվարի — *Գաբրիել Այվազովսկու խմբագրությամբ Փարիզում հրատարակվում է «Մասյաց աղավնի» ամսագիրը։ 1859—1865 թթ. այն լույս էր տեսնում Թեոդոսիայում։*

Հունվար — *Եզդանշիրի գլխավորած քուրդ ապստամբները գրավեցին Բաղեշը, Մուշը և Արևմտյան Հայաստանի մի շարք այլ շրջաններ։*

10 մայիսի — *Սուլթանի հրամանով Թուրքիայի քրիստոնյաներին առաջին անգամ բանակ զորակոչեցին։ Հրամանը համարյա չգործադրվեց։*

31 մայիսի — *Ռուսական բանակը գրավում է Արդահանը։*

Հունիս — *Կ. Պոլսում լույս է տեսնում «Արծվի Վասպուրական» պարբերականը՝ Մ. Խրիմյանի խմբագրությամբ. 1858—1864 թթ. հրատարակվում էր Վարագա վանքում։ 1872 թ. կրկին հրատարակվում է Կ. Պոլսում՝ Մանվել Անանյանի խմբագրությամբ։*

Հուլիս — *Փարիզում, Ստեփան Ոսկանյանի խմբագրությամբ, լույս է տեսնում «Արևելք» կիսամսյա հանդեսը. դադարեց 1856 թ.։*

16 նոյեմբերի — *Ռուսական զորքերը գրավում են Կարսը։*

— *Կ. Պոլսում սկսում է լույս տեսնել բողոքականների «Ավետաբեր» շաբաթաթերթը, որն ընդմիջումներով շարունակեց հրատարակվել մինչև 1915 թ.։*

## 1856

1 հունվարի — *Աշտարակում ծնվեց Երվանդ Շահազիզը (վախճ. 1951 թ. օգոստոսի 12-ին, Երևանում)։*

6 փետրվարի — *Սուլթան Աբդուլ Մեջիդը հրապարակում է խաթթը Հումայուն կոչվող բարենորոգումների հրովարտակը՝ «Թանզիմաթի» երկրորդ ակտը։*

18 մարտի — *Կնքվում է Փարիզի հաշտության պայմանագիրը, որով ավարտվեց Ղրիմի պատերազմը։*

28 հուլիսի — *Փարիզի պայմանագրով Կարսը վերադարձվում է Թուրքիային։*

15 սեպտեմբերի — *Կ. Պոլսում Հ. Սվաճյանի խմբագրությամբ լույս է տեսնում «Մեղու» կիսամսյա, ապա տասնօրյա հանդեսը։ 1872—1874 թթ. պարբերականը խմբագրում էր Հ. Պարոնյանը։*

## 1857

Հունվար—1866 դեկտեմբեր — *Կ. Պոլսում հրատարակվում է «Երևակ» կղերամիրայական հանդեսը՝ Հովհաննես Տերոյենցի (Ջամուռճյանի) խմբագրությամբ։*

1 մարտի — Վարագա վանքում բացվում է ժառանգավորաց վարժարանը, ուր սովորելու իրավունք ստացան նաև «որբ ու անտերունչ» երեխաները։
10 հունիսի — Գերցենը և Օգարևը Լոնդոնում հրատարակում են «Կոլոկոլ» պարբերականը։
Հուլիս — Մ. Նալբանդյանը մեկնում է արտասահման։
3 հոկտեմբերի — Աղնախում ծնվեց գրող և նկարիչ Գևորգ Բաշինջաղյանը (վախճ. 1925 թ. հոկտեմբերի 4-ին, Թիֆլիսում)։

## 1858

1 հունվարի — Թիֆլիսում Ստ. Մանդինյանի խմբագրությամբ լույս է տեսնում «Մեղու Հայաստանի» պարբերականը։ 1862 թ. խմբագիր է դառնում Պետրոս Սիմեոնյանը։
Հունվար — Մոսկվայում, Ստեփաննոս Նազարյանի խմբագրությամբ լույս է տեսնում «Հյուսիսափայլ» ամսագիրը. հրատարակվել է մինչև 1864 թվականը (1863 թ. լույս չի տեսել)։
7 ապրիլի — Շամախիում ծնվեց գրող, դրամատուրգ Ալեքսանդր Շիրվանզադեն (վախճ. 1935 թ. օգոստոսի 7-ին, Կիսլովոդսկում)։
21 ապրիլի — Սուլթան Աբդուլ Մեջիդը ձևակերպեց ագրարային օրենք, որը սահմանում էր հողատիրության նոր ձևեր։
— Շահագործման են հանձնվում Ղափանի և Հալիձորի պղնձաձուլական գործարանները։
— Թիֆլիսում առաջին անգամ հրատարակվում է Խ. Աբովյանի «Վերք Հայաստանի» վեպը։
1858—1862 — Մոսկվայում, Մսեր և Ջարմայր Մսերյանների խմբագրությամբ հրատարակվում է «Ծռաքաղ» պարբերականը։

## 1859

Հունվար — Ստ. Ոսկանյանը Փարիզում հրատարակում է «Արևմուտք» հանդեսը։ Նույն թվականի վերջին դադարում է, ապա ընդմիջումներով հրատարակվում 1864—1865 թվականներին։
24 մարտի — Մ. Նալբանդյանը Մոսկվայից ուղևորվում է արտասահման։
Մայիս — Կ. Պոլսում ընտրվում է «Սահմանադրության» տեքստը կազմող նոր հանձնաժողով՝ 5 եկեղեցականների և 14 աշխարհականների մասնակցությամբ։ Նախագահ՝ Ն. Ռուսինյան։
30 նոյեմբերի — Վախճանվում է արևմտահայ նշանավոր տնտեսագետ Նիկողայոս Զորայանը (ծնվ. 1821 թ.)։
— Կ. Պոլսում Կ. Փանոսյանի խմբագրությամբ սկսում է հրատարակվել դեմոկրատական ուղղության պատկանող, հայատառ թուրքերեն «Մյունատի էրճիաս» (Շեփոր այգաբացի) պարբերականը, որը փակվում է 1862 թ. օգոստոսին։

## 1860

Հունվար 1863 — Թիֆլիսում, Մարկոս Աղաբեկյանի խմբագրությամբ, լույս է տեսնում «Կռունկ հայոց աշխարհին» պարբերականը։

14 ապրիլի — *Շուշում ծնվեց պատմաբան Լեոն (Առաքել Բաբախանյանը) (վախճ. 1932 թ. նոյեմբերի 14-ին, Երևանում)։*

24 մայիսի — *Կ. Պոլսի Ազգային ընդհանուր ժողովն ընդունում և պատրիարքը վավերացնում է արևմտահայերի Ազգային սահմանադրությունը։*

8 հունիսի — *Մարաշի կառավարիչ Խուրշիդ փաշան արշավում է Զեյթունի վրա, սակայն ջարդվում և ետ է շպրտվում։*

1 սեպտեմբերի — *Կ. Պոլսում հիմնվում է Հայոց Բարեգործական ընկերությունը։*

— *Կ. Պոլսում, Մ. Տեյիրմենճյանի խմբագրությամբ լույս է տեսնում «Արևելյան դար» կիսամսյա հանդեսը։*

1860—1863 — *Փարիզում, Աբրահամ Մուրադյանի խմբագրությամբ լույս է տեսնում «Փարիզ» շաբաթաթերթը, ապա կիսամսյա հանդեսը։*

— *Ստ. Ոսկանյանը գնում է Իտալիա, ուր խմբագրում է* «L' Italie» *պարբերականը։*

## 1861

Հունվար — *Ախթալայում պղնձաձուլական գործարան է հիմնվում։*

19 փետրվարի — *Ալեքսանդր II-ի մանիֆեստը ճորտատիրական իրավունքի վերացման մասին։*

Ապրիլ — *Փարիզում հրատարակվում է Մ. Նալբանդյանի «Երկու տող» պամֆլետը։*

28 հունիսի — *Կ. Պոլսում ծնվեց ականավոր գրող և քաղաքական գործիչ Գրիգոր Զոհրապը (թուրք ջարդարարների կողմից սպանվեց 1915 թ. հուլիսի 7-ին)։*

1 հուլիսի — *Զմյուռնիայում, Գր. Չիլինկիրյանի և Ա. Հայկունու խմբագրությամբ սկսում է լույս տեսնել «Ծաղիկ» տասնօրյա հանդեսը, որը 1865 թ. տեղափոխվում է Կ. Պոլիս։ Խմբագիրներ են դառնում Զարեհ Ստեփանյանը, ապա՝ Մ. Մամուրյանը։*

10 օգոստոսի — *Մոսկվայում Մսեր և Զարմայր Մսերյանները սկսում են հրատարակել «Համբավաբեր Ռուսիո» կիսամսյա պարբերականը։*

8 հոկտեմբերի — *Հայկական Օրիորդաց ուսումնարանի բացումը Նոր Նախիջևանում։*

1 սեպտեմբերի — *Պոլսում Գ. Երանյանի, Ն. Թաշճյանի և Տ. Չուխաջյանի խմբագրությամբ սկսում է հրատարակվել «Քնար հայկական» երաժշտական կիսամսյա հանդեսը։*

14 դեկտեմբերի — *Կ. Պոլսում հիմնվում է Արևելյան թատրոնը։ Բացման առթիվ ճառ է ասում Միք. Նալբանդյանը։*

— *Զմյուռնիայում հիմնվում է «Վասպուրական» թատրոնը, որի ներկայացումներին ներկա է եղել Մ. Նալբանդյանը։*

## 1862

Փետրվար — *Վանի զինված ելույթը թուրքական կառավարության դեմ։*

Մարտ—մայիս — *Մ. Նալբանդյանը Լոնդոնում հանդիպումներ է ունենում ռուս վտարանդիների հետ։*

14 մայիսի — *Մ. Թագվորյանի հայտնի նամակը Մ. Նալբանդյանին, որտեղ նյութեր կան հայ-ռուս-իտալական ազատագրական շարժման կապերի մասին։*

Մայիս — *Փարիզում, Ճանիկ Արամյանի տպարանում, Սիմեոն Մանիկյան կեղծանունով լույս է տեսնում Մ. Նալբանդյանի «Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ» աշխատությունը։*

14 հուլիսի — *Նոր Նախիջևանում ոստիկանությունը ձերբակալում է Մ. Նալբանդյանին։ Հուլիսի 27-ին, ոստիկանության հսկողությամբ, նա փոխադրվում է Պետերբուրգ և բանտարկվում Պետրոպավլովյան բերդում։*

24 հուլիսի — *Կ. Պոլսից Հաճըն մեկնեց Եղիա Տնտեսյանը, որը կապեր հաստատեց ապստամբ զեյթունցիների հետ։*

27 հուլիսի — *Ազիզ փաշայի բանակը դուրս է գալիս Մարաշից և շարժվում Զեյթունի վրա։*

1 օգոստոսի — *Կ. Պոլսում տեղի է ունենում հայ աշխատավորության ցույցը, որի մասնակիցները սուլթանից պահանջում էին վավերացնել Ազգային սահմանադրությունը։*

2 օգոստոսի — *Զեյթունի հերոսական ապստամբությունը։*

## 1863

Հունվար — *Կ. Պոլսում, Ստեփան Փափազյանի խմբագրությամբ սկսում է լույս տեսնել «Ժամանակ» կիսամսյա հանդեսը։*

17 մարտի — *Սուլթանական կառավարությունը հաստատում է արևմտահայերի Ազգային սահմանադրության կրճատված տարբերակը։*

1 ապրիլի 1865 — *Մշո ս. Կարապետի վանքում Գարեգին Սրվանձտյանցի խմբագրությամբ հրատարակվում է «Արծվիկ Տարոնո» պարբերականը. լույս է տեսել 43 համար։*

21 նոյեմբերի — *Հռոմից Կ. Պոլսի հայերին Հայաստանի ազատագրության վերաբերյալ ծրագիր-նամակն է ուղարկում Պ. Նորատունկյանը։*

6 դեկտեմբերի — *Մարաշ ուղևորվեց եվրոպացիների և հայերի մասնակցությամբ կազմված Զեյթունի գործը քննող հանձնախումբը։*

— *Ռափայել Պատկանյանի խմբագրությամբ Պետերբուրգում լույս է տեսնում «Հյուսիս» շաբաթաթերթը։*

— *Մուշի զինված ելույթը քուրդ դերեբեյների դեմ։*

## 1864

8 հունվարի — *Ալեքսանդրապոլում ծնվեց ազգագրագետ Երվանդ Լալայանը (վախճ. 1931 թ. փետրվարի 24-ին, Երևանում)։*

21 հունվարի — *Հեռախոսային կապ է հաստատվում Երևանի և Թիֆլիսի միջև։*

21 մայիս — *«Հայոց մարդասիրական ընկերության» հիմնումը Բաքվում։*

Մայիս — *Թուրքական զորքերը արշավում են Սասունի վրա, սակայն հանդիպելով հայ-քրդական ուժերի դիմադրությանը, նահանջում են։*

28 սեպտեմբերի — *Առաջին ինտերնացիոնալի հիմնադրումը։*

Հոկտեմբեր — *Թուրքիան, այդ թվում և Արևմտյան Հայաստանը, վարչական նոր բաժանման է ենթարկվում։*

Նոյեմբեր — ԽորենՍտեփանեի խմբագրությամբ Թիֆլիսում սկսում է հրատարակվել «Հայկական աշխարհ» պարբերականը։
10 դեկտեմբերի — Սենատի դատավճռով Մ. Նալբանդյանը աքսորվում է Կամիշին։

## 1865

17 մարտի — Նախիջևանի Աստապատ գյուղում ծնվեց Մանուկ Աբեղյանը (վախճ. 1944 թ. սեպտեմբերի 25-ին, Երևանում)։
27—28 հունիսի — Թիֆլիսի հայ աշխատավորության հակացարական ելույթը։
Հոկտեմբեր — Հայկական թատրոնի հիմնումը Երևանում։
— Սկսվում է Երևան—Թիֆլիս, Երևան—Ջուլֆա խճուղիների կառուցումը։
— Զարսանչակի հայերի ելույթը քրդական դերեբեյների դեմ։
— 1865 թ. սկսվում և 1872 թ. ավարտվում է Փոթի-Թիֆլիս երկաթուղու կառուցումը։
— Ավարտվում է «Զեյթունի գործը» քննող հանձնաժողովի աշխատանքը։ Վերացվում է լեռնագավառի մինչ այդ պաշտպանած կիսանկախ վիճակը։ Բ. Դուռը թուրք կառավարիչ է նշանակում և գավառը դնում ծանր հարկերի տակ։

## 1866

Հունվար — Երուսաղեմում սկսում է հրատարակվել Երուսաղեմի հայկական պատրիարքարանի պաշտոնական օրգան «Սիոն» ամսագիրը։
Հունվար — Զիրուխլեցիների պայքարը Սևանա վանքի վանականների դեմ։
31 մարտի -- Կամիշինում վախճանվեց Մ. Նալբանդյանը։
13 ապրիլի — Վանում ծնվեց գրող, հրապարակախոս Վրթանես Փափազյանը (վախճ. 1920 թ. ապրիլի 26-ին, Երևանում)։
7 մայիսի — Կ. Պոլսի Գույե-գափու թաղամասում հիմնադրվեց ֆրանկմասոնական «Սեր» գաղտնի ընկերությունը, որի անդամներն էին Մ. Մամուրյանը, Հ. Սվաճյանը, Ս. Թագվորյանը և ուրիշներ։
29 մայիսի — Ելիսավետպոլում (Գանձակ) ծնվեց պրոլետարական հայ պոեզիայի հիմնադիր Հակոբ Հակոբյանը (վախճ. 1937 թ. նոյեմբերի 17-ին, Թիֆլիսում)։
— Գայանյան օրիորդաց դպրոցի բացումը Երևանում։

## 1867

1 մարտի — Թիֆլիսում ծնվեց Նար-Դոսը (վախճ. 1933 թ. հուլիսի 12-ին, իր ծննդավայրում)։
9 դեկտեմբերի — Անդրկովկասում դատարանական սիստեմը փոփոխության է ենթարկվում։
— Թուրքիայում հրապարակվեց «Վիլայեթների վարչության մասին օրենքը», որով փոփոխություններ մտցվեցին Արևմտյան Հայաստանի վարչական բաժանումների և կառավարման ձևի մեջ։
— Թիֆլիսում կազմակերպվում է Կովկասի վիճակագրական կոմիտե։

## 1868

1 մայիսի — *Էջմիածնում սկսում է հրատարակվել «Արարատ» ամսագիրը, շարունակելով իր գոյությունը մինչև 1918 թվականը։*

1 սեպտեմբերի — *Երևանի պրոգիմնազիայի բացումը։*

— *Ելիսավետպոլի (Գանձակ) Բանանց գյուղում ծնվեց ականավոր հեղափոխական Մելիք Մելիքյանը (Դեդուշկա), (սպանվեց Բաքվում, 1918 թ. սեպտեմբերի 18-ին)։*

— *Տիգրան Չուխաջյանը ավարտում է «Արշակ Երկրորդ» հայ անդրանիկ օպերան։*

## 1869

7 փետրվարի — *Լոռու Դսեղ գյուղում ծնվեց Հովհաննես Թումանյանը (վախճ. 1923 թ. մարտի 23-ին, Մոսկվայում)։*

Ապրիլ — *Ալեքսանդրապոլում հիմնվում է «Բարենպատակ ընկերությունը»։*

17 հունիսի — *Թիֆլիսում իր առաջին տարեշրջանն սկսեց Գայանյան օրիորդաց դպրոցը։*

26 սեպտեմբերի — *Փոքր Ասիայի Կուտինա գյուղաքաղաքում ծնվեց Կոմիտասը (Սողոմոն Սողոմոնյան), (վախճ. 1935 թ. հոկտեմբերի 22-ին, Փարիզում, աճյունը փոխադրվեց Երևան 1936 թ.)։*

16 նոյեմբերի — *Սուեզի ջրանցքի բացումը։ Կառուցման աշխատանքը ըսկըսվել էր 1859 թ.։*

## 1870

14 մայիսի — *Ալեքսանդր II-ի մանիֆեստը Հայաստանում և Ադրբեջանում՝ գյուղացիական ռեֆորմ անցկացնելու վերաբերյալ։*

24 հուլիսի — *Թերեքի մարզի Ղզլար քաղաքում ծնվեց լենինյան գվարդիայի ականավոր ներկայացուցիչ Իսահակ Քրիստափորի Լալայանցը (վախճ. 1933 թ. հուլիսի 14-ին, Մոսկվայում)։*

— *Առաջին ինտերնացիոնալի ռուսական սեկցիայի կազմակերպումը։*

— *Կ. Պոլսում լույս է տեսնում «Հայրենիք» պարբերականը, որը շարունակում է իր գոյությունը մինչև 1896 թ.։*

— *Ախալցխայի Եղիսաբեթյան օրիորդաց դպրոցը սկսում է իր անդրանիկ տարեշրջանը*[1]*։*

---

[1] *Ժամանակագրությունը կազմելիս, հատորի ամփոփած թվական տվյալներից բացի օգտվել ենք* Ա. Ալպոյաճյանի, Վ. Զարդարյանի, Ա. Ղազիկյանի, Ա. Պերպերյանի, Թեոդիկի, Մ. Օրմանյանի, *սովետահայ հեղինակներ* Շ. Ռ. Հարությունյանի, Ս. Ա. Տաթևյանի, Գ. Խ. Սահփազյանի *աշխատություններից։*

# ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## 1. ՄԱՐՔՍԻԶՄԻ ԿԼԱՍԻԿՆԵՐ

Մարքս Կ., *Կապիտալ, հատ. 1—3, Երևան, 1954*։
Էնգելս Ֆ., *Անտի-Դյուրինգ, Երևան, 1952*։
Էնգելս Ֆ., *Ֆեոդալիզմի քայքայման և բուրժուազիայի զարգացման մասին, Երևան, 1937*։
Մարքս Կ., Էնգելս Ֆ., *Կոմունիստական կուսակցության մանիֆեստը, Երևան, 1938*։
*К. Маркс* и *Ф. Энгельс,* Сочинения, тт. 3, 8, 9, 10, 11, 12, 16, 19, 21, 23, 29, 32, 35.
*К. Маркс,* Хронологические выписки по истории Индии, М., 1947.
Լենին Վ. Ի., *Երկեր, հատ. 1, 3, 4, 5, 6, 8, 9, 11, 12, 15, 16, 19, 22, 25*։

## 2. ՀԱՅ ԱԿԱՆԱՎՈՐ ՄԱՐՔՍԻՍՏՆԵՐ

Շահումյան Ստ., *Երկեր, հատ. 1—3, Երևան, 1955—1958*։
Սպանդարյան Ս., *Երկեր, հատ. 1—2, Երևան, 1959*։
*Кнунянц Б. М.* Избранные произведения, Ереван. 1958.
Մյասնիկյան Ալ., *Ընտիր երկեր, Երևան, 1957*։

## 3. ՍԿԶԲՆԱՂԲՅՈՒՐՆԵՐ

### Ա. Ձեռագիր աղբյուրներ

Մ. Մաշտոցի անվան մատենադարան, *ձեռագիր №№ 2622, 2939, 4177, 4179, 4180, 4181, 4183, 4184, 4442, 4447, 4515, 4580, 5463, 6232, 6337, 8540, 8916, 9027, 9424, 9821, 9839*։
Երուսաղեմի Սրբոց Հակոբյանց վանքի մատենադարան, *ձեռագիր № 2738*։
Եղիշե Չարենցի անվան գրականության և արվեստի թանգարան (ԳԱԹ), Ա. Ալպոյաճյանի, *Տըպագրության արվեստ և Հայք, ձեռագիր աշխատությունը*։
ՀՍՍՀ ԳԱ պատմության ինստիտուտի արխիվ, Հ. Աճառյանի, *Հայ գաղթականության պատմությունը, ձեռագիր աշխատությունը*։

### Բ. Արխիվային նյութեր

Մ. Մաշտոցի անվան մատենադարան, *արխիվային բաժին, ֆոնդ* Կաթողիկոսական դիվան, *թըղթապանակ №№ 1 (վավ. 64), 4 (վավ. 46ա), 7 (վավ. 116), 8 (վավ. 62), 17 (վավ. 46), 21 (վավ. 117), 22ա (վավ. 41), 23 (վավ. 60, 116), 24 (վավ. 96, 139), 25 (վավ. 6), 27 (վավ. 125, 132), 31 (վավ. 187, 204), 32 (վավ. 155), 33 (վավ. 263), 36 (վավ. 329), 39 (վավ. 335), 45 (վավ. 142բ), 53 (վավ. 8, 303), 88 (վավ. 105ա), 90 (վավ. 58), 105 (վավ. 332), 138 (վավ. 323), 160 (վավ. 159ա), 193 (վավ. 145, 148, 152, 155, 156, 157, 159), 202 (վավ. 549), 219 (վավ. 121—325), 230 (վավ. 325), 247 (վավ. 855), 258 (վավ. 130)*։ Գալուստ Տեր-Մկրտչյանի *արխիվ, թղթ. 16 (վավ. 7, 10, 100)*, Կարապետ արքեպիսկոպոսի *արխիվ, թղթ. 163, (վավ. 12բ, 203), թղթ. 163ա, (վավ. 12, 31, 67, 82, 203, 433, 437)*։ Իզմիրլյանի *արխիվ, թղթ. 14 (վավ. 162, 616)*։

